# ԼԻԱԿԱՏԱՐ ՎԱՐՔ

## ԵՒ ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## ՍՐԲՈՑ

Որք կան ՚ի հին Տօնացուցի Եկեղեցւոյ Հայաստանեայց :

Յօրինեալ վաւերական բանից Ճառընտրաց մերոց և այլոց ազգաց, հանդերձ ծանօթութեամբք :


՚Ի Հ. Մկրտիչ վարդապետէ Աւգերեան, յաշակերտ ուխտէ Մեծին Մխիթարայ Աբբայհօր :


Հրամանաւ Տն Տն Ստեփաննոսի Ագոնց Աբբայի և Արքեպիսկոպոսի :

Ար[illegible]ք ծախիւք Մանուկ Աղայի Կարնեցւոյ մահտեսի Ածատուրեան :



## ՀԱՏՈՐ. Գ.

Միջոց Վարդավառի մինչեւ ցԱ̃ծածին .

[illegible] մարգարէէ, մինչեւ ՚ի փոխումն սրբոյ Կուսին .




1813 . ՚Ի ՎԵՆԵՏԻԿ . ՌՄԿԲ :

՚Ի Վանս Սրբոյն Ղազարու :

[redacted]



Ոչ արասցէ տր ած իրս ինչ․ եթէ ոչ յայտնեսցէ ծա-
ռայից իւրոց մարգարէից ։

'ի Հինգերորդ դար զկնի ք՟ի . և յայնժամ յայտնեցաւ, և ածաւ 'ի քրիստոնէից 'ի պանիադ քաղաք՝ որ և կեսարիա փիլիպպեայ կ՟մ պաղեստինոյ ։ Օր տեղեկացեալ կայսրն յունաց փոքրն Թէոդոս, կ՟մ յաջորդ ինքնակալութե՟ն ն՟ր մարկիանոս, ետ բերել 'ի Թագաւորեալ քաղաքն 'ի կոստանդինուպօլիս . և եդ զայն պատուով մեծ 'ի վլաշերնաս 'ի տաճար ս՟բյն լաւրենտիոսի, շինեալ առ նմին առանձին վկայարան կ՟մ մարգարէարան յանուն ս՟բյն եսայեայ մարգարէի, ուր հանդիսապէս տօնախմբութի՟ն լինէր ն՟ր (4) . մինչև զկնի ժամանակաց յաւուրս վրդովմանց մեծի քաղաքին այնորիկ՝ գողացեալ ոմանց զնշխարս եսայեայ՝ տարան սփռեցին յարևմուտս . ուր և ցարդ գտանին 'ի զանազան եկեղեցիս այլևայլ մասունք ոսկերաց նորա ։ (5)

Այլ մանաւանդ՝ որ զմարգարէն մեր չարաչար սպան, նորին սքանչելի տեսանողին աղօթիւք՝ ո՛չ արժան է հաւատալ, թէ անյիշաչարութ՟բ բարիս մաղթեաց չարարարին իւրոյ, խրատեալ յԱ՟յ՝ գայր 'ի դարձ անկարծելի, յօրինակ ի՟մ ծանրաբեռն ապաշխարողաց . զի ո՛չ յայտ է 'ի պատմութե՟ն, զերի վարեալ 'ի բաբելոն՝ 'ի կապանս անդ եկն 'ի զղջումն յոյժ, և արար զայն աղօթս կատարեալ ապաշխարողի, ո՟ր ամենաչել . և ո՟ր դարձոյց ընդ նա անդրէն յաթոռ իւր և 'ի թագաւորութիւն իւր ։

ՕՄ

,, րացն բազմութիւն սուսերաւ մահու խողխողեալ. ընտանի դաւաճան, մերձաւոր վաճառիչ, հարազատ սատակիչ, կցորդակից սպանող ||։

(4) Կեդրենոս գրէ յամի տն 442 թէ * 'ի լն ամի (թէոդոսի փոքու) 'ի պէնէկադայ բերեալ եղեն (նաւու 'ի բիւզանդիա) նշխարք մարգարէին եսայեայ, և հանգուցան 'ի տաճար սբյն լաւրենտիոսի ||։ Իսկ կոդինոս գրէ յւ ծագման կոսփ. էջէս. 18. այսպէս. * Տաճարք սբյն եսայեայ և լաւրենտիոսի շինեցան 'ի մարկիանոսէ կայսերէ և 'ի կնոջէ նր պուղքերայ, յորոց 'ի ժամանակս նր մարմինն եսայեայ մարգարէի բերեալ եղև յնէմ ||։ Զոր այսպէս միաբանեն քննիչք. որպս թէ առ թէոդոսիւ բերեալ լիցեն նշխարքն, և առ մարկիանոսիւ շինեալ լիցեն վկայարանքն ։

(5) Աստանօր ծանիր, զի որպս յեսանի յօրինակս ինչ տօնացուցից. յառաջ քան զաւուրս շնորհալւոյն՝ որ եւօրեայ կարգեալ զպաշտամունս տօնի վարդավառին, մինչդեռ միօրեայ էր տօն այլակերպութեն յաւուր կիւրակէի եւեթ, անընդմիջապէս 'ի Բշբ կատարիւր տօն սբյն աբրահամու և խորենայ, և անուանեալ բժշկացն կոզմայի և դամիանոսի. 'ի Գշբի տօն խզախբուզաւ վկային, որ է ծածատուր. և ապա 'ի Եշբի տօն եսայեայ մարգարէի ։ Այլ.քանզի այժմ Բշբի և Գշբի են տրուռնական, վսյ և տօնք այդց վկայից փոխադրեցան 'ի միջոցն յիսնակաց՝ մօտ 'ի կատարած տօնացուցին. վսյ անդ մնայ և մեզ գրել զնց վրս ։





# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

**Սրբոյն Թադէոսի առաքելոյն, և Սանդխտոյ կուսին, և որոց ընդ նմա ։**

Հռ. գլխ. 23 ։ Տեղեկագ. գլխ. 17. և 23 ։ Ճա- ռընտիր. Բ. ԺԴԷ = ԺԵ. և ՉԷԴ = ՉԷԸ ։ և Ս. ԾԹԳ = ԾԹԴ ։ Խորեն. Բ. 30. 31. և այլ պատմիչք հայոց, նա և Յայսմ. պատմ. եկեղ. Ա. 13. և այլք 'ի Ն. գրք. և այլք ։ (1)



ՀԱՅՐ ՀՈԳԵՒՈՐ ԱՌԱՋԻՆ՝ ՍՐԲՈՅ ԱՌԱՔԵԼՈՅՆ ԹԱԴԷՈՍ Հայր Հոգևոր առաջին՝ սրբոյ ա- ռաքելոյն Թադէոս՝ էր մի յե- րանելեաց և 'ի գլխաւորաց 'ի մէջ եօթանասնից և երկու աշակերտացն քրիստոսի, երկուորեակ եղբայր համարեալ սրբոյն Թովմայի առաքելոյ՝ որ մին է յերկոտասա- նից (2) ։ Սա եւս յետ համբառնալոյ փրկչին՝ յորժամ բաժանեցին առաքեալքն վիճակաւ- րս 'ի մէջ իւրեանց՝ գնալ և աշակերտել զամենայն հեթանոսս ընդ ամենայն բանի, գործակցութեամբ եօթանասնից և երկու աշակերտաց՝ որպէս թէ վէց վէց 'ի նոցանէ թևակից գոլով միոյ միոյ յառաքելոց, յիշեաց սրբոյն Թովմաս զխոստ- մունսն յետ առ Աբգար արշամեան արքայ հայոց՝ առաքել զոմն յաշակերտաց իւրոց առ

նա

նա զկնի համբառնալոյ իւրոյ՝ առ 'ի լուսաւորել եւ բժշկել զնա ։ Այլ եւ հաւանութ̃ սորին պետրոսի եւ այլոց առաքելոց առաքեաց անյապաղ զեղբայր իւր զերանելին Թադէոս իբր առանձին առաքելութ̃ 'ի կողմանս քոյ առ աբգար ։

Արդ՝ եկաւորեալ սորին Թադէի 'ի միջագետս ասորւոց եւ հայոց՝ քարոզեր եւ սերմաներ զբանն կենաց իբրեւ 'ի սեպհական միճակի իւրում , եւ առներ նշանս եւ սքանչելիս անուամբն յս̃ի ․ մինչեւ եկն եհաս յեդեսիա քաղաք , որ եւ ուռհայ՝ աթոռ թագաւորութեան աբգարու հայոց արքայի , միանգամայն եւ իշխանի [illegible] ասորւոց ․ զի 'ի ձեռս արշակունի թագաւորաց մերոց էին 'ի ժամանակին համօրէն կողմանք միջագետաց ։ Նա իջեւանս կալեալ Թադէոս զառաջինն 'ի տան տուբիայ կմ̃ տուբիայ բագրատունւոյ՝ մեծի նախարարին հայոց , որ հայրենեօք 'ի հրէից անուանի էր ․ եւ սկսաւ բժշկել անդ զազգս 'ի պէսպէս ախտից եւ 'ի հիւանդութեանց , եւ լուսաւորեաց զնա երկնային լուսովն՝ 'ի ներգործութիւն շնորհաց հոգւոյն սրբոյ ․ մինչեւ ինքնին հասցէ լուրն 'ի լսելիս թագաւորին՝ որ մն̃ առաւելապէս առաքեալ էր ․ ում̃ եւ եղեւ իսկ ։

Վասնզի լուեալ արքային զգործս Թադէոսի՝ իսկ եւ իսկ ծանեաւ , եթէ նա է առաքեալն քս̃ի եւ 'ի քս̃է առ ինքն ․ նմին իրի մեծապէս փափագ կարօտանօք եւ մեծարանօք հրաւիրեաց զնա յարքունիս ։ Նա իբրեւ յանդիման եղե-

աւ

արքային սր՟ն Թադէոս, տեսեալ աբգարու
տեսիլ սքանչելի՝ ’ի դէմս սր՟ առաքելոյն՝ իբ-
րև նշան երկնաւոր հրեշտակի լուսափայ-
լելոյ յա՟ծուստ, զարհի հարեալ անկաւ ’ի վ՟ր
երեսաց իւրոց, և երկիր եպագ նմա: Իսկ
սր՟ն Թադէոս կանգնեաց զնա, և մատու-
ցեալ եդ ձեռն ’ի վերայ նորա, և բժշկեաց
զնա բոլորովին ’ի բազմամեայ ցաւոց նորա.
և լուսաւորեաց զա՟մ տունն նր՟ քր՟ստոնէական հա-
ւատով: Բժշկեաց և զաբդիու որդի աբդեայ
’ի չար ցաւոց՝ զայլոն երևելի ’ի դրան Թա-
գաւորին. և օր ըս՟ օրէ հրապարակաւ քարո-
զեալ ’ի քաղաքին ուռհայի ա՟մ բազմութեան
զհաւատս քր՟ի ա՟յ՝ լուսաւորեաց զնո՟ մկրտու-
թե՟ սր՟ աւազանին հանդերձ Թագաւորաւն.
մինչ զի կռոցնին իսկ Թէ՟ւորն աբգար լինէր
այնուհետև քարոզ ճանապարհին ճշմար-
տութե՟, և յորդորիչ ա՟մեն յա՟մ բարիս:
Ընդ յեղեսիա՝ ուր էր և անձեռագործ
պատկերն քր՟ի առաքեալ փաղագոյն ըն-
ծայ առ աբգար, հիմնարկեաց նախ սր՟ն Թա-
դէոս, և այն՝ յառաջ քան զայլ առաքեալսն՝
շինել զեկեղեցի, ուր հանգոյց զայն սր՟
պատկերն. այն տաճար է՝ որ յետոյ նուի-
րեցաւ յանուն սր՟ ա՟ծածնի. կարգեաց և
քահանայս և պաշտօնեայս. և ձեռնա-
դրեաց եպս՟կ քաղաքին զադդէ կերպասա-
գործն՝ զոր աշակերտեաց, որ՟ ասի՝ ’ի տանէ
բագրատունեաց. և դրեալ կանոնս զգուշա-
ւոր՝ եւտ ’ի նա, և յանձնեաց ’ի նր՟ ձեռս
զհօտն ա՟յ: Ապա օրհնեալ սր՟յն Թադէի

զԹագաւորն և զհաւատացեալ ժողովուրդ-նորա, և Թողեալ անդ զոմանս յաշակերտաց իւրոց 'ի հոգևոր վերակացուԹի նց, և 'ի գործակցուԹի Ադդէի հայրապետի, ինքն էառ Է̃ իւր զայլս յաշակերտաց, և դիմեաց 'ի ներքսակողմն հայոց աշխարհին, ունելով և հրովարտակ յաբգարէ առ քեռորդին իւր սանատրուկ, որ նստէր յարտազ գաւառի 'ի շաւարշան քաղաք 'ի Թէքրական հովանոցն` իբրև իշխան արքունի զօրաց, և փախանորդ արքայի ։

Հասեալ անդր սր̃ առաքելոյն` քարոզեր զբանն կենաց առ ամենեսին` նշանօք և զօրուԹբ̃ սր̃ հոգւոյն ։ մինչև հաւատալ բազմաց 'ի քն̃, ընդ որս հաւատաց և ինքն սանատրուկ ։ այլ ոչ կատարեալ սրտիւ ։ քանզի երկեալ էր 'ի մտի Թագաւորել 'ի վր̃ ազգին ։ և գիտէր` զի նախարարք գիցապաշտք չառնուն յանձն զհաւատացեալ Թագաւոր ։ սարին վասն չետ տեղի և սր̃յն Թադէի կալմեալ զբազում ժամանակս առ իւր ։

Յայնժամ եԹող անդ սր̃ առաքեալն զմի յաշակերտաց իւրոց` զաքարիա անուն, և ինքն ելեալ շրջէր յայլևայլ կողմանս հայոց մեծաց մինչև 'ի սահմանս աղուանից ։ և յամեալ ոչ սակաւ ժամանակս` եգիտ գրեԹէ զամենեսին ընկղմեալս 'ի խոր խաւար հեԹանոսուԹե, և յոյժ սակաւս` որք յօժարեցին ընդունել զլոյս ածգիտուԹե ։ բայց ուր և ետ նմա ած աշակերտս հաւատոց` ձեռնադրեաց 'ի նոցանէ քահանայս ։ զի արմա-

տասցի քրիստոնէութիւն զոնէ 'ի ծածուկ։
Գնաց սբն Թադէոս և 'ի մաժակ գամրաց, որ և կեսարիա կապադովկացւոց. և աշակերտեալ անդ զամանս՝ հաստատեաց եկեղեցի ուրոյն. և ձեռնադրեաց նոցա եպս զմի ումն յաշակերտելոց՝ Թէոփիլոս անուն. որում յաջորդեցին և այլք զկնի առաքելական
շաւղօք։

Այս մինչդեռ սբ առաքեալն շրջէր 'ի քարոզութն, մեռաւ երջանիկ Թգւորն Աբգար. և սանատրուկ Թագ. կարգեալ անձին՝ Թագաւորեաց 'ի մեծն հայս, և հաստատեցաւ անդրէն 'ի հեթանոսական կրօնս իւր. և զկնի սակաւուց 'ի մեռանիլ նաև անանուն որդւոյ աբգարու՝ տիրեաց և իշխանութն նորա. և եղև ահարկու ըդէմ ամենեցուն. Այսմ ժամանակի 'ի գալ միւսանգամ սբյն Թադէի 'ի սահմանս միջագետաց՝ այց առնել զաշակերտելովքն, պատահեցան նմա զճանապարհայն արք հինգ պատուականք և Թագաւորազունք, որք գային 'ի հռովմայ դեսպանութբ առ նոր արքայ հայոց սանատրուկ. և անուն գլխաւորի նոցա խուրիսի, ծե ոսկի. սոքա իբրև լուան զքարոզութիւն սբյն Թադէի, և տեսին զնշանսն՝ զոր առնէր, հաւատացին 'ի քս. և մկրտեալ 'ի նմանէ՝ աշակերտեցան նմա. և երանելին ոսկի ձեռնադրեցաւ քահանայ։ Որջեալ սբյ ըդժամանակ ինչ ը առաքելոյն 'ի քարոզութն յետոյ առանձնացան 'ի միայնարան Ճգնութն 'ի լեառն ծաղկէոյ մերձ յակունս եփրատայ.

ուր

տր և նահատակեցան իսկ յետ բազում ժա-
մանակաց՝ 'ի պատճառս աշակերտելոյ նոցա
զուգքրիստոնեայս ։

Իսկ սրբն Թադէոս դեմ եդեալ գնաց ան-
դրէն յարտաք գաւառ՝ հաստատել զառա-
ջին աշակերտեալսն ․ և Թագաւորին սանա-
տրուկ լուր լինէր 'ի ժամուն ․ քանզի տեսա-
նէր զնշանսն մեծամեծս՝ զորս առնէր երա-
նելի առաքեալն անդէն իսկ 'ի համբաւոյն
բանակսն , և բժշկէր զամենայն հիւանդու-
թեց ․ մինչև եկեալ և բազմաց յորքուն-
կան դրանէն՝ լսէին 'ի սրբ առաքելոյն զքաղց-
րաբարբառ քարոզութիւն աւետարանին , և
սքանչանայսն ի՞ զօրութիւն՝ որք 'ի ձեռն նր
լինէին ․ քանզի տեսանէին՝ զի զկաղս ուղ-
ղէր , զկոյրս գնացուցանէր , զխուլս հանէր ,
և զամ ցաւս անբուժելիս փարատէր ան-
ուամբն քի ․ վոյ բազումք հաւատացին 'ի
քս , և յաւելան յառաջին հաւատացեալսն ։
Յուռս զայս ժմ և դուստր Թագաւորին՝ կոյս
օրիորդ , որում անուն էր Սանդուխտ ( թս աւա-
նատրկոյ դուստր ) , ծաղկահասակ և տղայ
տիօք , իբ ամաց իբրև ժամանեալ , կմ ժեա-
մեալ (3) , այլ իմաստուն միտօք , փայլեալ-
տակ , և անհամեմատ գեղով երեսաց ։ Նա-
սա եկեալ 'ի գիշերի առ սրբ առաքեալն՝ նըս-
տաւ առ ոտս նր , և լսէր ախորժ կամօք ըղ-
բան քարոզութե աւետարանին , և ուսանէր
մի առ մի զամենայն փրկական խորհուրդս ,
և քաղցրանայր 'ի հոգին ․ անկանէր առաջի
սրբ ոտից Թադէի , և արտասուօք համբու-

րեր՝ կարդալով զնա իւր հօգւոյ հայր. և ոչ թողոյր զնա զբազում աւուրս. զի իսպառ վառեցաւ ՚ի սրտէ, և միացաւ ՚ի սէրն Քն̃ի: Տեսեալ սբ̃ առաքելոյն զջերմեռանդն գութ սիրոյ նր̃ առ Քն̃՝ առեալ մկրտէր զնա յանուն Հօր և որդւոյ և հոգւոյն սբ̃յ. և ահա նոյն ժամայն եղև նշան լուսեղէն յերկնից ՚ի վր̃ սբ̃յ կուսին սանդխտոյ. և ՚ի միջոյ լուսոյն լսելի լինէր ձայն երկնաւոր զուարթնոց, որք ասէին. զուարճացիր և ուրախ լեր դուստր գովելի և հարսն բարի երկնաւոր փեսային: Մինչև տեսեալ բազմաց զլոյսն, և լուեալ զձայնն՝ նոյնժամայն հաւատացին ՚ի Քն̃: Իսկ ոմանք ՚ի քրմածողով դիցապաշտից ընթացեալ վաղվաղակի՝ պատմեցին զայս ա̃մ խստերախ թագաւորին իւրեանց Սանատրկոյ: Յայնժամ չարագինեալ անօրէն արքային՝ իսկ և իսկ հրամանս տայր ունել և կապել զԹադէոս, և սրամահ առնել զհաւատացեալսն. և զոմանս ՚ի գլխաւորաց գան հարկանել և դնել ՚ի դիպահոջ բանտի. ըն̃ որս և զսանդուխտ:

Այլ և իբրև սուր ՚ի վր̃ եդեալ՝ սպանին զբազումս, անդէն եղև նշան յերկնից. զի ծագեաց լոյս մծ̃ և ահաւոր ՚ի վերայ սպանելոցն վս̃ անուանն տն̃. զոր տեսեալ այլոց՝ հաւատացին ՚ի Քն̃. և անկաւ ահ ՚ի վերայ անհաւատից. և բազումք ՚ի նոցանէ կուրացան յահէ լուսոյ ճառագայթիցն. և ոչ իշխեցին ձեռն արկանել ՚ի սբ̃ առաքեալն: Յայնմ վայրի երևեալ նմա փրկիչն ՚ի բարձանց՝

ձանց՝ ասէ. պի՛նդ կաց Թա՛դէոս, զի ես ընդ
քեզ եմ 'ի փրկել զքեզ: Իսկ տեսեալ սուրբն
Թադէոսի զվարդապետն իւր և զփրկիչն Քրիստոս՝ լցաւ
անպատում ուրախութեամբ. և անկեալ առաջի
նորա հանդերձ արտասուօք ասէր. տէր իմ
և Աստուած՝ մի՛ թողուր զիս միայն. զի ահա իբրև
եկի 'ի բարբարոս ազգս 'ի դուռն թագաւո-
րիս՝ հրամանաւ և զօրութեամբ քով, որպէս և
ասացերդ մեզ ելանել և քարոզել զբանն կե-
նաց, և սկսայ քարոզել զբանս սուրբ աւետա-
րանին քո՝ զոր եդիր 'ի բերանի իմում, ոչ-
կամին լսել. զի և զորս հաւատացին 'ի
քեզ տէր՝ սրամահ կորուսին, և զմանս զա-
նիւ տանջեալ եդին 'ի բանտի. կամէին և
յիս արկանել ձեռն, այլ յահէ փառաց քոց
սասանեալ կորեան, և ոչ կարացին հանդի-
պել ինձ:

Իսկ ասէ տէր. արի, և երևեսց դոցա, և համ-
բերեա, զի բազում նեղութիւնք հասանեն քեզ.
զի ոչ են ընդունելոց զքարոզութիւն աւետա-
րանի իմոյ աստ, բայց միայն սակաւք 'ի բազ-
մաց. և ես պահեցից զնոսա, և առից զնոսա առ
իս. և որք կատարեցան վասն անուան իմոյ՝
տաց նոցա տեղի 'ի տան հօր իմոյ: Ասէ Թա-
դէոս ցտէր. տէր և ես փութամ հասանել 'ի
լոյս աստուածութեան քո, և լինել երկնայինն սիրողս
'ի լուսեղէն փառաց քոց: Իսկ ասէ տէր. խնդա
և ուրախ լեր, զի կատարեցից զկամս հայց-
մանն քո: և զայս ասացեալ՝ օրհնեաց զնա, և
համբարձաւ:

Իսկ 'ի գիշերին յայնմիկ գնաց ինքնակամ սուրբ

առաքեալն ուրախութեամբ մեծաւ 'ի բանտն արքունի, ուր պահէին զսուրբն Սանդուխտ և զորս ընդ նմա հաւատացեալս 'ի պատուհականացն . և ահա բացան դրունքն իւքնին, և եմուտ սուրբն Թադէոս 'ի ներքս՝ ասելով . խաղաղութիւն ընդ ձեզ սիրելիք իմ . զոր տեսեալ երանելի կապելոցն՝ զօրացան յանձինս իւրեանց : Նոյն մատուցեալ մեծին Թադէի սուրբ կոյսն Սանդուխտ՝ որ փոխանակ ոսկի կամարաց և զարդուց արկեալ էր զիւրև զշղթայս, համբուրեաց զկապանս նորա, և ասէ . երանի է քեզ զուարթ երկնաւոր Թագաւորին : Իսկ սուրբն Սանդուխտ համբուրեալ զոտս առաքելոյն՝ խնդրէր անդրէն լսել 'ի նմանէ փափաքանաց զբանս կենաց 'ի սփոփանս հոգւոյ իւրոյ, և առ անդարար պահել զանձն մինչև իսպառ :

Նա սուրբ առաքեալն բարեյորդոր բանս բարբառեալ ասէր . զօրացիր և մարտիր զբարւոք մարտն հաւատոց . դիր 'ի սրտի քում զՔրիստոս, և կարդա բոլորով սրտիւ քով զնա . և հասցէ քեզ յօգնականութիւն, և զօրացուսցէ զքեզ . և յամօթ առնէ զհակառակորդան քո : Մի քաղցրասցի քեզ սէր երկրայինս և անցաւոր, որ այսօր է՝ և վաղիւ կորնչի, և ոչ ևս երևի . այլ հաւատով և յուսով և սիրովն Քրիստոսի ամրացո զքեզ . և ոչ մերձեսցի առ քեզ չարն . և ոչ կարիցեն հնարք չարին դրդուել զքեզ 'ի յուսոյն յաւիտենից և յանանց ուրախութեանցն, յորս վայելեցուսցէ զքեզ ընդ սրբս և սիրելիս անուանն իւրոյ՝ 'ի ձեռն կամաւորնա-

հա

հաստատկութեան, զոր ընդունելոց եմ վն ան-
ուանն քսի յսի և այ ։

Ըստ սմին օրինակի սրտապնդեալ սրբոյն Թա-
դէի և զամենեսին, և հաստատեալ 'ի սէրն
քսի՝ հրաման ետ լռութիւն յաղօթս կալ. և
ինքն տարածեալ զձեռս իւր յերկինս՝ ասէ.
Պաղատանամ զքեզ տէր իմ և ած յս քս՝ միածին
որդի այ, որ վն փրկութեան ազգի մարդկան
եկիր յերկիր. հայեաց այժմ յերկնից 'ի պատ-
րաստ բնակութենէ քումմէ յազգախնին քո սան-
դուխտ, որ ընծայեաց զտղայութի իւր քեզ.
արդ պահեա զսա տէր իմ, և զօրացո՛ յառա-
ջինկայ հանդէս մրցանացս հանգերձ ընկե-
րօքն. և ծագեա զլոյս ածութեն քո 'ի վերայ
սոցա, և արա յամօթ զխաւարական թշնա-
մին. երևեցո՛ զնշան զօրութեն քո 'ի վտան-
գեալս մարմնով. զի քո՛ են, և 'ի քո ահեղ
անուանդ եկիցեն զօրացեալք մինչև յաւիտեան.
վասն զի դու միայն ես ած աստուծոց, և տէր
տերանց. և քեզ վայելէ փառք յաւմի ։

Եւ 'ի կատարել աղօթից սորին՝ յանկարծակի
եղև Թնդիւն սաստկութեան, և վերացաւ
ձեղուն բանտին. և ծագեաց լոյս յերկնից
առաւել պայծառ քան զճառագայթս արե-
գական. և 'ի մէջ լուսոյն ձայն երկնաւոր
աւետեաց՝ որ ասէր առ նահատակսն. Քա-
ջալերեցարո՛ւք և պինդ կացէք, զի ես եկից
և առից զձեզ առ իս. և դու սանդուխտ՝ որ
եկիր զկնի իմ, և արհամարհեցեր զերկրա-
ւոր պատիւս, և կոչեցեր զիս հայր, տաց
քեզ զվերագոյն լոյսն, և առաւել պայծառ

քան զբազմաց ։

Եւ 'ի լսել սոցա կապելոյն զերկնաւոր զձայնն՝ լուծան կապանք նոցա, և ողջացան անդամք մարմնոց նոցա. և յարուցեալ փառաւորէին զքս ած, և ասէին միաբան. Տէր յս քս ած մեր՝ գոհանամք զքոյոյ մարդասիրութեդ, որ եկիր յայց և 'ի խնդիր մեզ կորուսելոցս, և փրկեցեր զմեզ 'ի դիւցապաշտութեց, և ետուր մեզ յաղթօղ լինել 'ի վր աներևոյթ թշնամւոյն, և սփոփեցեր զմեզ քոյով այցելութդ և այսպիսի սքանչելի երևմամբ. արդ՝ մեք զի՞նչ կարեմք մատուցանել քում ածութդ, բայց զանձինս մեր մատուսցուք 'ի հոտ անուշից հօրդ ։

Իսկ բանտապանացն տեսեալ զայն նշանս՝ ընթացան 'ի դուռս բանտին, և տեսին՝ զի դեռ բաց կային. և սրբ առաքելոյն յաղօթս կային 'ի մէջ կապելոց. վայ զահի հարեալ դիմեցին 'ի ներքս, և անկան առաջի սրբյն թադէի գոչելով և ասելով. և մեք հաւատամք յածն քո, զոր դու քարոզես սրբդ ածյ. ընկալ և խառնեա զմեզ 'ի թիւ հաւատացելոցդ ։ Եւ դարձեալ փարէին զոտիւք նր արտասուօք, աղաչէին և ասէին. թո՛ղ մեզ սրբդ ածյ, զի ո՛չ 'ի կամաց, այլ ակամայ պահէաք զծառայսդ ածյ 'ի ծանր նեղութն վր ահի անօրէն թագաւորին. և իբրև տեսաք զփառս բարձրելոյն՝ զոր դուն քարոզես, ծանեաք հաւաստեաւ՝ զի նա է արարիչ երկնի և երկրի. և մեք հաւատամք 'ի նա ամ խորհրդովք, և խոստովանիմք զածութն նորա. և

ոչ

ոչ որք կարէ այսու հետև մեկնել զմեզ 'ի նմա-
նէ , ո՛չ կապանք և ո՛չ նեղութիւնք . արդ՝ արի՛
փութա՛ սի՛րտ իմ . և խառնեա՛ զմեզ ընդ տամբ
'ի գունդն քո . գուցէ մեռանիմք յաւէտ փա-
ռաց այն քո :

Յայնժամ գիտաց ոգի առաքելոյն , եթէ 'ի
տանէ այ եղև կոչումն նց . և քաջալերեալ զօ-
րացոյց զնս . մի՛ երկնչիք ասէ եղբա՛րք իմ ,
զի մարդասէր է տրն մեր և ողորմած , և կա-
մի գտանել զամենեսեան՝ որք կորուսեալ էին
'ի մեղս , ո՛չ և դուքդ էիք . արդ սիրեաց զձեզ
վասն բազում ողորմութեն , և ազդեաց զլոյս
ածութեն իւրոյ 'ի սիրտս ձեր . համբա պի՛նդ
կացէք և զօրացարո՛ւք 'ի հաւատսն քսի այ ,
'ի մոռացօնս արկեալ զձեր մտօք եղծիկեա-
կան մոլորութիւնդ .

Նա ասէ ցնս . արի՛ք աղօթեցէ՛ք . և ինքն
հայեցեալ յերկինս՝ հառաչելով ասէր . Հա՛յր
տն մերոյ յսի քսի , որով կամեցար և ծանու-
ցար սոցա , և կոչեցեր առ քեզ . արդ պահեա՛
զսոսա սբ աջովդ , և մի՛ տար խոտորիլ յաջ
կամ յահեակ , և բնակեա՛ զսոսա 'ի ջերմե-
ռանդն գութ ածութե քո . սրբեա՛ զսոսա երկ-
նային ազատութեդ . զի միաւորեալ բնակես-
ցին 'ի սէր միածնի որդւոյ քո սիրելւոյ : Նա և
կատարեալ զաղօթսն , առեալ 'ի նմին գիշե-
րի մկրտեաց զնս . որք էին թուով արք երե-
սուն և երեք ԺԵ այր և ԺԵ կին՝ 'ի տանէ բան-
տապանացն :

Նաև սատանայ եղեալ 'ի կերպարանս առն
միոյ , և եկեալ 'ի բանտն՝ կայր 'ի հեռաստա-
նէ ,

նէ , և ձայն բարձեալ ասէր ցպահապանսն . զի՞նչ պակաս էր ձեզ , զի թողէք զմեծ տէծն արամազդ և զպիսիդոնն , և զմայր տծոցն անահիտ զբարերարն հայոց Յիս , և մոլորե֊ցայք զհետ առն միոյ հրէի՝ որ ուսոյց ձեզ նոր ուսումն , և խաբէր զմիտս ձեր՝ կորոյս . եկա՛յք դարձարո՛ւք և պագէ՛ք երկի՛ր անահ֊տայ , և ես աղաչեցից զտծսն տմ՝ որ առնեն ձեզ թողուլ . Յայնժամ տեսեալ թադէոսի զխորամանկութի չարին՝ ասէ . ո՜վ բանսար֊կու չարեաց , լե՛ր յետս դարձեալ թշուառա֊կանս . Նա լռեալ սատանայի 'ի ներքուստ զձայն սրբ առաքելոյն՝ ասէր . զձայնդ քո լսեմ , այլ զքեզ տեսանեմ ոչ , ո՞ւր ես . Ասէ սրբ առա֊քեալն . և այլ մի՛ անեսցես զծառայս քսի տյ ո՜վ ազգատեղք և պիղծ՝ չար և անամօթ . մինչև յե՞րբ ոչ ամաչես դու յտյ . երկի՛ր 'ի զօրու֊թէ տն , և եր՞թ յետս չարագլուխ վիշապ . Նա է սատանայ առաքելոյն՝ գտաւ դևն զլխոյ վիճն խառնարեալ՝ ոտք խանձող դժոխականն , և տանջիւք չարաչար 'ի հրեշտակաց սրբոց ակնե֊րև աներևեցան . և տեսեալ նորահաւատիցն զանհներելի տանջանս չարին՝ հաստատեցին 'ի հաւատսն քսի : Նաև սատանայ լալով դառնա֊գին , և ասէր . եղո՜ւկ եղէ ես , որ յաղթե֊ցայ 'ի խաչելոյն , և կորեայ . բայց գիտեմ՝ զի՛նչ արարից . մտից 'ի սիրտ իշխանացն , և գրգռեցից զնա հանդերձ թագաւորաւն , զի մահուամբ սրոյ կոտորեսցեն զձեզ առ հա֊սարակ : Ասէ անդրէն սրբ առաքեալն . երթ յետս սատանայ , ատամնեցէ՛ 'ի քեզ տր . Նա

նոյն

նոյնժամայն անհետ լինէր չարն. և երթեալ
դրդուէր զԹագաւորն և զիշխանսն նորա ընդդէմ
սրբոցն ։

Իսկ և առաւօտ եղև, խորհուրդ արար Թա-
գաւորն ընդ դստերն իւրոյ սանդխտոյ, թէ
զինչ պարտ իցէ առնել. ընդ սպանմանն նորա
ոչ կարէր տալ հրաման առ աղէտից գթոյ
հայրութեան, զի յոյժ սիրէր. և 'ի յիշելն զնա
լայր դառնապէս ։ Նա պա յղեաց զոմն 'ի նա-
խարարաց` երթալ հանել զսանդխտոյ 'ի
բանտէն, և ածել առաջի իւր. յղեաց և զայլս
ընդ նմա ընդ Թադէոսի` յուզել այսր և անդր,
և ձերբակալ առնել զնա իբրև մոլորեցու-
ցիչ դստերն իւրոյ. զի ոչ գիտէր զմեկնականն
երթ նր 'ի բանտէն ։

Յորժամ եհաս իշխանն 'ի բանտն բազում
ամբոխիւ, տեսեալ զդուրս բանտին 'ի բաց`
զարմացաւ. հայեցեալ տեսանէր 'ի ներքս
բազմութիւն աւելի քան զոր կարծէրն, և լոյս
սաստիկ շուրջ զնոքօք. և սբ առաքեալն յանձն
կալով ուսուցանէր զբանն կենաց ։ Յայն-
ժամ պակուցեալ իշխանին և որոց ընդ նմա յե-
րեսաց ահաւոր լուսոյն` յերկիր կործանեցան
առ դուրս արտաքոյ, և տագնապէին անե-
րևոյթ տանջանօք, և լսէին ձայնս ահեղս ։
Խմբեցեալ սրբոյն Թադէի զմտանս նց` ել 'ի
դուրս, և եգիտ զնս` զի անկեալ թաւալէին
ընդ գետնի. եդ ձեռն 'ի վր, և անուամբ տն
բժշկեաց զնոսա ։ Իսկ անդէն հաւատաց իշ-
խանն, և յիսուն այր ընդ նմա. և էր այրն մեծ`
հրամանատար ՌՄ տանն արքունի, և երկ-
րորդ

րորդ՝ տրտմութեան հայոց ։

Յայնժամ միւսանգամ՝ երևեցաւ սատանայ իբրև վարանեալ ոք ի կորուստ անհնարին · և նստեալ արտաքոյ դրրաց բանտին՝ խիղճս ընկնով արկեալ լայր դառնութեամբ, և ասէր · զմեծ զէն գլխոյս իմոյ կորուսի ։ Եւ զի ոչ կարէր մտանել 'ի բանտն յահէ երկնաւոր զօրութեն, փութով հասանէր յարքունիս՝ շարժել զթագաւորն ընդդէմ հաւատացելոցն ։ Նոյն և 'ի լսել արքայի զիրսն՝ որ եղեն, զշարեցաւ յոյժ, և հրամանս ետ սրով սպանանել զայնոսիկ՝ որք աշակերտեցան բանիցն Թադէոսի ։ Եւ կատարեցան յաւուր յայնմիկ ոգիք երկերիւր՝ արք և կանայք · և եղև 'ի տեղւոջն ձայն ահեղ և թնդիւն երկնաւոր զօրացն, որք իջեալ ողջունէին զսուրբ նահատակսն · յորոց երկիւղէ բազումք յանօրինացն կորեան ։

Իբրև եղև գիշեր, կայր լոյսն երկնաւոր համատարած 'ի վերայ սրբոց վկայիցն ։ Յայնժամ յղեաց սուրբն Սանդուխտ զոմանս 'ի հաւատացեալ պաշտօնէից իւրոց 'ի տուն իւր գաղտ 'ի հօրէն իւրմէ, և ետ բերել բարակ կտաւս · և առեալ ինքնին զմարմինս սրբոց ընկերաց իւրոց՝ ամփոփէր զնոսա համբուրելով արտասուօք, և ասելով · երանի է ձեզ եղբարք իմ և քորք, որք արժանի եղէք երկնաւոր ուրախութեանցն · յիշեցէք և զիս զաղախինս ձեր ։ Եւ տարեալ թաղէր զնոսա 'ի ձեռն սպասաւորաց իւրոց մօտ յապարանս իւր · և տայր ըզգուշութիւն զի մի ոք գիտասցէ յարքունի տանէն · և ինքն փութով հասանէր 'ի բանտն ։

Եւ

Իսկ գտեալ զնա առաքեալն յաղօթս՝ շուրջ պատեալ սքանչելի լուսով, դիմեաց սրբուհին Սանդուխտ յոտս նորա, և համբուրէր զգարշապարս առնն Աստուծոյ. հեղոյր արտօսր բազում, և ասէր հառաչմամբ. տէր իմ և հայր, որ գտեր զիս զմոլորեալս, և ծանուցեր ինձ զերկնաւոր Տէրն իմ զՔրիստոս զմիածին որդին Աստուծոյ, այժմ աղօթեա վասն իմ, և օրհնեա զիս. զի և ես փութացեալ հասից ընկերացն իմոց՝ որք կատարեցան ի Քրիստոս, և եղէց արժանի տեսանել զՏէրն Քրիստոս՝ քեւ հանդերձ: Իսկ տեսեալ նա առաքելոյն զարտասուս սրբոյ կուսին Սանդխտոյ, և զջերմեռանդն փափաք սրտոյ նորա առ Քրիստոս, ասէ. երանի է քեզ դուստր երկնաւոր թագաւորին. համբերեա սակաւ ժամանակ, և առ ժամայն տեսանես զլոյսն ամենայն արարածոց:

Նոյնպէս քաջալերէր և զմնացեալսն ի հաւատացելոց՝ ասելով. պինդ կացէք, զի այժմ առնուք զլուսեղէն պսակն: Իսկ ի կատարել նորա զբանսն՝ մատուցին առաջի հաց. և նա առեալ զհացն՝ օրհնեաց և ետ սրբոյ Սանդխտոյ և ընկերացն. ճաշակեաց սակաւուկ մի և ինքն. և իբրև յարեան, օրհնեցին և գոհացան զսուրբ Երրորդութենէն. և կնքել զանձինս նշանաւ սրբոյ խաչին՝ ննջեցին: Իսկ առաքեալն Թադէոս կայր յաղօթս, և ասէր. տէր Աստուած իմ՝ հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, չեմ բաւական գոհանալ զառատ ողորմութենէ քումմէ, որ կոչեցեր զիս զանարժանս ի կոչումն առաքելութեան, և սրբեալ մաքրեցեր և

և արարեր զիս տաճար Սրբ Հոգւոյդ . և ե-
տուր ինձ միջնորդ զՔս զայս՝ քարոզել զբանս
նր աւետարանի քո . զի որ հաւատասցեն 'ի
Սբ ահեղ անուն քո , կատարեսցին ընկալցին
զնա 'ի հոտ անուշից՝ 'ի լոյս ա(ստուա)ծութեան քո ,
և խառնեսցես զնա 'ի հրեշտակերամ դասս
վերին բանակացն : Ընկալ և զմեզ պատա-
րագ 'ի հոտ անուշից տրութեան քո . պահեա
և զորդայս զայս սանդուխտ , զի է Սբ կուսու-
թե . և տուր համբերութիւն սմա՝ կատարել
քաղցրութեամբ զհանդէս մարտիրոսական ընթա-
ցիցն , և առնուլ զանթառամ պսակն լուսոյ
'ի զգլուխ իւր՝ փոխանակ անցաւոր և եղծա-
նելի պսակի 'ի տան հօր իւրոյ :

Յայսմ յաղօթել անդ սրբոյն թադէոսի՝ երևեաւ
անդրէն փրկիչն ասէ . խաղաղութիւն ընդ ձեզ
սիրելիք իմ : Յայս տեսեալ առաքելոյն զՏր՝
անկաւ 'ի միջ երեսաց իւրոց , և երկիրպագ-
նէր . և ասէ փրկիչն . Լուայ աղօթից քոց , և
զոր ինչ խնդրեցեր յինէն՝ ետու քեզ . և կա-
տարեսցին մարտիրոսական հանդիսիւ հան-
դերձ սանդխտով և այլ աշակերտելովքդ .
և ծաղկեսցին զլոյս ա(ստուա)ծութե իմոյ 'ի մ(ե)ջ ոսկե-
րաց ձերոց . և որք կատարեսցեն զյիշատակս
ձեր , և նուէրս նուիրեսցեն ուխտից մ(եր)ոց ան-
ուան իմոյ , լուայց խնդրուածաց նց , և ա-
րարից զնոսա առաւել մ(եր)ոց քո :

Յայնժամ ասէ թադէոս փրկիչն . Տր իմ և
Ա(ստուա)ծ իմ՝ գիտեմ , զի սիրեցեր զիս , և ոչ թո-
ղեր զիս . մի թողուր աղաչեմ և զայնոսիկ՝
որ ինև հաւատացին 'ի Սբ անուն քո . և պա-
հեա

դարձեալ ասէր ցնոյն առաքեալն . պէ՛նդ կացէք և համբերեցէ՛ք , զի այժմ առնուք ըզպսակն լուսոյ 'ի գլուխս ձեր ։ Իսկ հայեցեալ 'ի սուրբն սանդուխտ՝ ետես զերեսս նորա արտասուօք լի . և ասէ . մի՛ վատասրտիր դուստր , և մի՛ երկնչիր . զի 'ի կարծիս եղև՝ թէ գուցէ յերկիւղէն լայ ։ Իսկ երանելին սանդուխտ լի հոգւով և վառեալ սիրով փրկչին ետ պատասխանի , և ասէ . տէր իմ և հայր հոգւոյ իմոյ՝ ոչ եմ վատասրտեալ , այլ՝ ցնծամ և ուրախ եմ . և փութամ ժամ 'ի ժամէ տեսանել զքեզն իմ . և եթէ լացի՝ զի գնամ առ նա , և լինիմ առաջի նորա յամ ժամ . զի կարի անձկացեալ եմ տեսանել զլոյսն երկնային ։ Յայն ժամ ուրախ եղև յոյժ նա առաքեալն , և ասէ ցնա . երանի քեզ քոյր իմ և դուստր , զի այժմ հասանես՝ առ որ անձկացեալն ես . և առնուս զպսակն լուսեղէն 'ի գլուխ քո , և լինիս յանդիման առաջի նոյ երկնաւոր թագաւորին . զի պարզերես և պանծալի լինիս , և գեր 'ի վերոյ գտանիս քան զբազումս մր ջերմեռանդն գնացից քոյ ։

Յետ այսորիկ իբրև առաւօտ եղև , եկին հանին իշխանք և սպասաւորք թագաւորին 'ի դուռն բանտին . և հանեալ արտաքս զսուրբն թադէոս և զայլ քրիստոնեայսն՝ որ 'ի բանտին , ածին կապանօք յապարանս թագաւորին . ընդ որս և զկոյսն սանդուխտ արձակ ։ Իսկ 'ի մտանել նոցա 'ի դաւիթն արքունի , ձայն եբարձ սրբուհին սանդուխտ , և աքանչելի համարձակութբ իբրև յատենի արքայ-

ակամն տան իւրոյ խօսել ակատ առ երանե-
լի նահատակակիցս իւր, և ասէ. եղբա՛րք
իմ, պի՞նդ կացէք և զօրացարո՛ւք ՚ի քս. զի
ոչի՛նչ են սպառնալիք երկրաւոր Թագաւո-
րացս. յա՛յն միայն հայեցարո՛ւք, յոր հաւա-
տացի՛քն՝ յերկնաւորն. Նմա՛ տուք զմիտս և
զխորհուրդս ձեր, և Նա տայ ձեզ զօրութի.
զի Նա միայն է ած, և չի՛ք այլ ոք. Նա պա-
հեսցէ զձեզ ՚ի մնոտի և ՚ի խաբէական պատ-
րանացս։

Եւ մինչդեռ խօսէր Ընն, խնդրեաց ՚ի Ներքս Թագաւորն զսբն սանդուխտ. և իբրև ե-
մուտ կոյսն, ասէ ցնա արքայ սանատրուկ. մօտ եկ առ իս դուստր իմ, և հօրս որդէ սանդուխտ, և համբուրեցից զքեզ. Իսկ սբ կոյսն ոչ հայեցաւ ՚ի նա, և ոչ գնաց մօտ. այլ կայր իբրև հեզիկ գառն առ ՚ի դատիլ։
Ասէ Թագաւորն. ուրացա՞ր զիս որդեակ, և զմոլորեցուցիչն զա՞յն սիրեցեր. ասեմ քեզ. եթէ ոչ դառնաս ՚ի յամառ մտաց քոց, երդուեալ յածածն ածմ, չար մահուամբ կորուսից զքեզ և զնա։

Պ՟նի ետ սանդուխտ հոգելից բարբառով, և ասէ. զոր դու մոլորեցուցիչ կոչես, նա եղև ինձ անմոլար առաջնորդ ՚ի ճանապարհս ճշմարտութե, և փոխեաց զիս ՚ի խաւարէ ՚ի լոյս. և ծանոյց ինձ զտէրն իմ և զհայր՝ զարարիչն երկնի և երկրի, և զորդին միածին, և զսբ հոգին՝ որ ՚ի Նոցունց. և արդ ես փութամ առ տէրն իմ քս, որ տէրն է տերանց, և թգր թգրաց, լոյս և կեանք ամ արարածոց։

Թագաւորին ասէ · ո՞վ է նա՝ զոր կոչես ած և Հայր ։ Սանդուխտ ասէ · Ա՛ծ նա է ած , որ արար զամ յոչնչէ , և հաստատեաց զամ արարածս բանիւ բերանոյ իւրոյ · այլ ձեր մոլորեալ են միտք , և խաւարեալ խորհուրդք , զի թողեալ զած զհաստիչն ձեր՝ որ զձեզ յոչնչէ արար , պագանէք երկիր ուրուականաց կռոց մեռելոտեաց , որ ոչ տեսանեն և ոչ լսեն , յորս բնակեալ են նոքին իսկ դևք՝ որք խաւարեալ կուրացուցին զմիտս ձեր , և կորուսին զոգիս ձեր՝ առնելով զձեզ որդիս գեհեննին · որպէս և ունիք երթալ 'ի խաւարն արտաքին գործակցաւն ձերով սատանայիւ , ուր լալ աչաց է և կրճել ատամանց ։

Յայնժամ սրտմտեալ թագաւորին՝ ետ ապտակել զնա և գանել · և մոռացեալ զգութ հայրութեն՝ ասէ · կապեցէք զդա և քերեցէք երկաթով , և հրով այրեցէք զքերանս մարմնոյն ։ Իսկ մատուցեալ դահճապետն կապեաց զսբն սանդուխտ · և սկսան դահիճքն պատրաստել զգործիս տանջանաց ։ Յայնմ վայրի ընթացեալ ոմն 'ի հաւատացելոցն՝ պատմեաց սբյ առաքելոյն , զոր պահէին 'ի փոքր ձորակի՝ ոչինչ հեռի 'ի տեղւոջէն , եթէ զսանդուխտ կապեցին և կամին չարչարել ։ Իսկ սբ առաքեալն յարտասուս եղեալ ասէր · տր իմ յս քս հայեա՛ց յաղախին քո , և զօրացո՛ զնա · և արա՛ յամօթ ըզչար թշնամին Ճշմարտութե ։

Իսկ սբն սանդուխտ մինչդեռ կայր կապեալ , և ձեռն արկեալ կամէին քերել , գոչեաց

յեր

յերկինս արիաբար, և ասէ. Տր իմ յս քս փութա՛ հասա՛ ինձ յօգնականութի, և ծանիցեն ամենեքին զամենազօր տէրութիւն քո. զի դու ես իմ հայր և արարիչ, ապաւէն և կեանք. մի թողուր զտկար ոչխարս հօտի քո ։ Եւ յաղաղակել անդ սրբոյ աղջկանն մեծաբարբառ, եղև յանկարծակի շարժումն, և ծագեաց լոյս յերկնից. և եղև ձայն 'ի վերուստ՝ որ ասէր. քաջալերեա՛ դուստր իմ, զի ես ընդ քեզ եմ 'ի փրկել զքեզ ։ Եւ նոյնժամայն լուծան կնքելին կապանք նր, և 'ի լուսոյ փայլատականցն շանթահարել կորեաւ զդահճապետն, և բազումք ընդ նմա. և պատեաց ահ զամենեսեան թագաւորական հանդերձ, զի կարծէին առ հասարակ 'ի կորուստ մատնիլ ։

Յայնժամ արձակ գտեալ սրբոյն աստուածախօսոյ՝ ել աղաղակէն յատենէն անտի, և փութացեալ եհաս 'ի տեղին՝ ուր պահէին զՏր առաքեալն. և եկեալ փարէր զոտիւք նր, և ասէր. Տէր իմ և հայր հոգւոյ իմոյ՝ ահա զիս քս փութով արձակեաց 'ի կապանաց. և յամօթ արար զդատաւորսն և զարքայնեակս նր. և յաղթացեալ գոհացան միաբան զԱծ ։

Յայնժամ վայրի գայր իշխանն ամն հրամանաւ Սանատրկոյ, և անկանէր առաջի նր առաքելոյն՝ ասելով. թագաւորն ինքնին յղեաց զիս առ քեզ, և ասէ. մեղայ քեզ և Այն քում. թող մեզ, և աղօթեա, զի անցցէ բարկութի ահեղ սաստկութեանս, զի կորնչիմք իսպառ. և զոր ինչ կամիս դու՝ առնեմք. Հրամայ-

եաց արքայ և զձեզ արձակել 'ի կապանաց ։
Յայնժամ յաղօթս եկաց արտասուօք Թադէոս, և ասէ. Հա՛յր տն մերոյ յսի քի Հայեա՛ց 'ի ժողովուրդս քո, և մի՛ առներ ըստ դացա մեղանաց. Թո՛ղ դոցա տր, զի ոչ գիտեն զի՛նչ գործեն ։ Այլ 'ի կատարել սէջն զաղօթս՝ լուծան աքանչելեօք կապանք ամ Հաւատացելոցն. և դադարեաց ձայն աՀեղ շարժման ։

Այլ իբրև զաՀի Հարաւ իշխանն ընդ իւրսն՝ որ եղեն, ասէ ցնա առաքեալն. մի՛ երկնչիր, եթէ պատմեա՛ Թագաւորին քում, զոր ինչ տեսեր ։ Այլ նա երթեալ ասէ ցԹագաւորն. տեսի զառաքեալն ա՛րքայ՝ ո՛չ որպ մարդ, այլ առաւել քան զմարդ. և լոյս շուրջ զնովաւ. և որպէս աղօթեաց՝ եանց ամ ցասումն յերկրէս ։ Իսկ Թագաւորն դրդռեալ 'ի չարէն՝ ասէ. մինթէ նա՛ անցոյց զբարկութինս. այլ արամազդ և անաՀիտ մեծ ածքն, որ են շինութի Տիս և փառք Թագաւորացս ։ Յայնժամ ելեալ իշխանին յերեսաց արքայի իբրև զայլրացեալ՝ գնաց ինքն անդրէն առ սբն Թադէոս, և Հաւատաց 'ի քս, և մկրտեցաւ ամ տամբ իւրով. և կոչեցաւ անուն նր սամուէլ. փոքրեաց զՀերս իւր, և եղև աշակերտ նր առաքելոյն ։

Իբրև զայն լուաւ Թագաւորն, ընկղմեցաւ 'ի խոր տրտմութի և 'ի դառնութի մաղձի. զի էր այրն երևելի, և մտօք խորՀրդական. և ոչ գտանէր նման նր 'ի մէջ Տիս Հայոց ։ Ապա առ չժուժել տրտմութենն՝ Հրաման

եառ

Եւ սանատրուկ վարել բեւեռս հրացեալս ը̄ ոտս նորա, (կմ̄ ը̄ ոտս, ք̄ո 'ի ներբանս ոտից նր̄․) և այնպէս կատարեցաւ երանելին սամուէլ 'ի ք̄ս ։ Ընդ նմին նահատակեցան և քանի մի աշակերտք առաքելոյն՝ որք ը̄ նմա իսկ եկեալ էին, և որք յԵտէն հայոց ընտրեալք յաշակերտութի̄ նր̄, յորոց միոյն անունն էր խորայել․ քանզի և զոսսա չարչարեալ՝ զոմանց զլսուունս ծնգաց հրացեալ երկաթով ծակեցին, և զոմանս սրով սպանին․ և կատարեցան յաւուր յայնմիկ ը̄ ամ̄ ութ նահատակք․ և եղև նշան լուսոյ 'ի վր̄ նց̄, և ահ սոսկութե̄ 'ի վր̄ անօրինացն ։

Եւ 'ի հասանել գիշերոյ՝ եկեալ ոք առաքեալն հանդերձ կուսիւն սանդխտով և այլովք ևս ուխտընկալ հաւատացելովք, էառ զմարմինս նահատակացն, և պատեաց պատուական հանդերձիւք՝ իւղովք և խնկօք, զորս պատրաստեալ էին հաւատացեալ կանայք և նաժիշտք սանդխտոյ․ և եդ 'ի փոքր ձորակին՝ ուր էին օթեվանք նց̄․ և ետ զգուշութի, զի մի ոք յանհաւատից գիտասցէ ։ Յայնժամ խնդակից եղեալ սանդխտոյ կուսին ասէր ցառաքեալն ք̄սի․ երանի է քեզ տ̄ր իմ և հայր, զի զբազումս արարեր արժանի ք̄նական պսակին ։ Ասէ ցնա առաքեալ․ երանի ևս քեզ է, որ արժանի եղեր յղարկել զն̄ս․ խնդա և ուրախ լեր, զի և դու փութով հասանես առ ք̄ս ։

Իսկ որբուհին սանդուխտ ևս քան զևս բորբոքեալ սիրով փրկչին՝ 'ի նոյն սէր վառէր և

զԱմ հաւատացեալսն զարս և զկանայս. քաջալերէր և մխիթարէր զնս, յանձանձէր և սփոփէր. կերակրէր զնս հացիւ, և զզգեստուցանէր համնդերձիւ, և ոչինչ առնէր նց պակաս. և առաքելաբար քարոզէր զբանն կենաց. և դարձուցանէր զբազումս յանհաւատից 'ի սբ հաւատս՝ առնելով նշանս և լուքանչելիս անուանմբն քի:

Յայնժամ հաւատաց և կին ոմն ազնուատոհմ և մեծատուն 'ի մերձաւորաց Թագաւորին՝ զարմանդուխտ անուն, ամ տամբ իւրով. և առեալ սբյ առաքելոյն մկրտեաց զնս ազիս երկերիւր: Նա լուեալ Թագաւորին՝ տայր հրաման զզարմանդուխտ միայն սպանանել սրով. և իբրև կատարեցաւ երանելին կինն, եղև 'ի վր նր նշան. և բազումք 'ի տեսողացն հաւատացին:

Նաև սանատրուկ արքայ իբրև իմացաւ զայն ամ, ոչ գիտէր՝ թէ զի՞նչ արասցէ. մրմռայր իբրև զառիւծ 'ի վր սբյն սանդխտոյ, և ասէր. նա զամենեսեան առաւել մոլորեցուցանէ. վյ և ոչ ևս խնայեալ 'ի դուստր իւր՝ հրամանն տայր, զի 'ի վաղիւ անդր սրով սպանացի: Նա լուեալ սբյն Թադէի զհրամանն անօրէնն Թագաւորին՝ աղօթէր առ քս զԱմ զգիշերն վս սբյն սանդխտոյ: Իբրև եղև առաւօտ, եկն անկաւ սանդխտ առ ոտս առաքելոյն, համբուրէր և ասէր. Տէր իմ, խորհէի 'ի սրտի իմում ընդ երեկս աւուրն, թէ զի՞նչ արասցէ ինձ քս լոյսն իմ. և այն ինչ եղէ 'ի քուն յայսմ գիշերի, լոյս սաստիկ ծա-

գեաց

դեաց 'ի վ̃ր իմ. և 'ի մէջ լուսոյն այր մի լու-
սազգեստ, զորոյ ոչ կարէի առնուլ զկատա-
րեալ նմանութիւն յառաւել լուսոյ ճառագայ-
թիցն. ձայնեաց զիս, և ասէ. սանդուխտ
արի փութա՛, և զգեցի՛ր զլոյս իմ: Եւ ես
յարտասուս եղեալ ահի՛ւ և խնդութեամբ՝
ասեմ. Տ̃ր իմ չե՛մ արժանի. և սաստելով
զգեցոյց ինձ զլոյսն ոսկ̃ զվերարկու. եդ և
պսակ լուսեղէն 'ի գլուխ իմ, և զարդարեաց
զիս լուսեղէն զարդուք. և ես հիացեալ կայի:
Եւ ասէ ցիս. ուրա՛խ լեր սանդուխտ, ո՛չ
թողից զքեզ. և յանկարծակի եղև թնդիւն
ահեղ, և զարթոյց զիս. և ես յարուցեալ փա-
ռաւորեցի զք̃ս ա̃ծ, որ արժանի արար զիս
այսպիսի սքանչելի տեսլեան:

Զայս ա̃մ լուեալ՝ իմացաւ սր̃բն Թադէոս,
թէ այսօր փոխի կոյսն յՏ̃է, և զգենու զփառս
լուսեղէն դասուց հրեշտակաց, և առնու
զպսակն նահատակութ̃ն 'ի գլուխ իւր: Եւ
յարտասուս եղեալ սր̃բ առաքեալն՝ ասէ. երա-
նի՛ է քեզ սանդուխտ, զի այն՝ որ երևեցաւ
քեզ, ինքն ք̃ս է. մ̃ն զի ետես զջերմեռանդն
դութ սիրոյ քո առ ինքն, մ̃ն այնորիկ երևե-
ցաւ քեզ, զի առաւել հաստատեսցէ զքեզ
'ի լոյս ա̃ծութ̃ն իւրոյ. և լոյսն՝ զոր զգեցոյց
քեզ ոսկ̃ վերարկու, և պսակն լուսեղէն՝ զոր
եդ 'ի գլուխ քո, զայն յայտ առնէ, զի թող-
ցես զթանձրամած մարմին քո, և զգենուս
զլոյսն երկնաւոր, և արժանի լինիս առնուլ
'ի գլուխ քո զպսակն լուսոյ մարտիրոսական
յաղթութ̃ն. և զարդարեալ վերագոյն լու-

դատէր շնորհաց քոց , և ընկալ զաղախին քո
յանուն որդւոյ քոյ սիրելւոյ 'ի հօտ անուշից .
և արա զիս արժանի երկնաւոր լուսոյ մեծու-
թե քո , վայելել յանապական և յաւիտենական
բարիսն՝ զոր խոստացար սիրելեաց քոց ։
Ապա հրաժարեալ 'ի սիրոյ առաքելոյն՝ ընկա-
լաւ զօրհնութի 'ի նմանէ . և զուարթութբ
մատուցեալ 'ի տեղի հանգստին՝ առէ ցարբա-
նեակս չարին . արի՛ք կատարեցէ՛ք զկամս հօրն
ձերոյ սատանայի . և զայս ասացեալ՝ մատոյց
երջանիկ կոյսն և անարատ ողջն քնի ինքնին
կամաւորութբ զպարանոցն 'ի բերան սրոյ ։
Իսկ այն ինչ ձգեալ դահճին զսուրն՝ կամէր
սպանանել զանմեղութիւն , եհար զդահճա-
պետն և սատակեաց զնա ։ Օ այն իբրև տե-
սին բարբարոսքն , լցան յիմարութբ չարու-
թե , և զայրացեալ կատաղեցան . վէմ ա-
ռեալ զսուրբն միաբան դիմեցին 'ի վե կու-
սին . այլ անդէն միմեանց պատահեալք՝ զի-
րեարս կոտորէին ։
Իսկ աղախինն քնի կայր յաղօթս , և աղա-
չէր՝ զի մի զրկեսցի 'ի նահատակութէ , այս-
պէս ասելով . Տր յս քս ընկալ զիս 'ի յարկադ
յաւիտենից , զի ցանկամ և ուրախ եմ ը̄ չար-
չարանս և ընդ մահ՝ որ վս անուան քո . որ
զօրացուցեր զիս յաղթել այնոցիկ՝ որ մար-
տեան ընդ իս . զի քո է յաղթութի . և քեզ
վայելէ փառք յաւիտեանս , ամէն . Յայնժամ
վայրի պատանի մի 'ի զօրականէ անտի եհար
սուսերաւ զկուրծս երանելի կուսին . և ել
արիւն յորդ , և բուրեաց հոտ անուշութեան .
և

և անդէն աւանդեաց զոգին 'ի ք̃ն բարի խա-
տովանութ̃ք պանծալի վկայուհին սանդղուխտ,
որ և առաքելուհի և կուսանմայր հայաստա-
նեայց . զոր և արժան է նախավկայ անուա-
նել 'ի մէջ ամ̃ դասուց կուսանաց վկայելոց,
ոմ̃ կոչի հաւասարակ կարծեօք սրբուհին Թեկ-
ղի աշակերտ առաքելոյն պօղոսի . բայց հա-
տատուն̃ք երեւի մեզ սանդղուխտ յառաջ քան
զնա պսակեալ վկայութ̃ք, և այն 'ի ծաղկա
հասակ մանկութե :

Արդ է կատարիլ նորին սանդղխտոյ՝ ծագեաց
յերկնից երբև սիւն լուսոյ . և եղև շար-
ժումն, և ձայն ահեղ երկնաւոր զօրաց՝ որք
օրհնէին զա̃ծ . և եկաց սիւն լուսոյն 'ի վ̃ր
դր մարմնոյն գերիս աւուր և գերիս գիշերս .
և հաւատացին յաւուրսն յայնոսիկ ոգիք իբ-
րև երկու հազար՝ է այր և է կին . և ոչ
մեկնեցան 'ի տեղւոջէն՝ ուր անկեալ կայր
սրբուհին սանդղուխտ : Մինչև եկեալ դր ա-
ռաքեալն Թադէոս 'ի գիշերի՝ մկրտեաց զնո . և
առեալ զմարմին դորին սանդղխտոյ՝ ամփոփեաց
'ի նմին տեղւոջ , և արար աներեւոյթ զհան-
գստարան երանելի տիկնոջն . զի մի անպա-
տի՛ւ արասցեն զայն անօրէնք . այլ է ժամա-
նակին մր լինելոյն յայտնի արասցէ զայն հա-
ւատացելոց իւրոց :

Իսկ յետ երից աւուրց կատարման սանդղխ-
տոյ կուսին , յորժամ կայր յաղօթս դր առա-
քեալն մօտ յաւուստն , երևեալ նմա փրկ-
կիչն՝ ասէ . խաղաղութի է քեզ սիրելի իմ .
առ̃ք փութա՛ , զի այսօր հասանես 'ի հանդէս
մար-

մարտի. և համբերեաւ, զի բազում չարչարանս անձին 'ի վերայ քո. այլ ես ոչ թողից զքեզ. և օրհնեալ զնա՝ եղև աներևոյթ. Յայնժամ լի եղև թագաւոր ուրախութ̃ե, և աղօթելով ասէր. Գոհանամ զքէն Հայր տ̃ն մերոյ յ̃ի ք̃ի, որ ոչ թողեր զիս 'ի ձեռանէ 'ի բարբարոս երկրիս, այլ առաքել զթագաւոր յիս. արդ ընկալ զիս 'ի հոտ անուշից մ̃ծութեդ քո, և զօրացո զիս 'ի պատերազմիս. յիշեա տ̃ր զաղախինդ քո սանդուխտ՝ որ փութացան առ քեզ, և ընկալ և խառնեա և զիս 'ի գունդս. սբց քոց՝ որ վ̃ն անուան քո պատարագեցան, ընծայելով 'ի լոյս մ̃ծութեդ քո: Պահեա և զհաւատացեալս՝ որ 'ի քեզ ապաւինեցան. լուր պաղատանաց նոցա և հայցուածոց մարդասէր. և հեռացո զչար բանսարկուն 'ի նոցանէ, և արա յամօթ, զի մի իշխեսցէ մերձենալ 'ի գունդն հաւատացելոց քոց. և զիս զծառայս քո զօրացո 'ի սէր պատուիրանի քո համբերական ընթացիւք մինչև իսպառ:

Եւ իբրև կատարեաց զաղօթսն, օրհնեաց զհաւատացեալսն և ասէ. որդեակք որովհետև ետուք զանձինս ձեր այ̃, և դրեցայք 'ի գունդն ք̃ի, պինդ կացէք 'ի հաւատս, և զօրացուսցէ զձեզ ք̃ս ա̃ծ, և բազմացուսցէ զձեզ. և արասցէ յամօթ զբանսարկուն չարեաց՝ զմոլորեցուցիչն հեթանոսաց, և արկցէ զնա կոխան առաջի ոտից ձերոց մինչև յաւիտեան: Եւ ես ահա փոխիմ առ տ̃րն իմ ք̃ս. և աղաչեցից զնա, զի առաքեսցէ

զհրեշ-

զհրեշտակ զօրութն, և պահեսցէ զձեզ 'ի չար լծոյ ծառայութն հեթանոսականն մոլորութենն, ուստի էաք զձեզ, և պարգեւաց 'ի բովս լուսոյ ածութն իւրոյ՝ ժողովուրդ սեպհականն. արդ նա է ձեր հայր՝ տր և թագաւոր. նա պահեսցէ զձեզ, և ոչ թողցէ ։ Մինչև լռեան հաւատացեալքն, եթէ փութով փոխի առ քն, ամենեքեան հարան յաղտասուս. և անկեալ առաջի սբյն՝ համբուրէին զոտս նորա, և ասէին. տէր և կեցուցիչ հոգւոց մերոց՝ աղօթեա վս մեր, և խնդրեա 'ի քէն, զի ոչ թողցէ զմեզ 'ի ձեռանէ ։ Այլ սբն առաքեալն կարեկից լինելով արտասուաց նոցա՝ ասէ. տր յս քս մի թողուր 'ի ձեռանէ զսակաւ ժողովուրդս քո՝ որ փարին զինև. այլ պահեա զսոսա աջովդ քով սբվ ։ Նա հրաժարեալ յամենեցունց՝ արձակեաց յիւրաքանչիւր տեղիս երկնաւոր օրհնութբ ։ Այլ իբրև գնացին հաւատացեալքն, եկին հասին երկու իշխանք հրամանաւ թագաւորին, և ամբոխ բազմութն բնաւ. յուզէին զամ տեղիս՝ կարծելով թէ չկարեն դիւրագտանել զնա և 'ի ձեռս բերել՝ ոչ յերեկն և յեռանդն ։ Այլ իմացեալ սբն առաքելոյն՝ ինքնին եկաց առաջի, և ասէ. ահա ես եմ, զոր խնդրէք. և նոցա կալեալ զնա՝ ածին կացուցին առաջի թագաւորին սանատրկոյ ։ Տեսեալ զնա թագաւորն՝ ասէ. դու ես թադէոս. և ասէ. ես եմ ։ Այլ հայեցեալ արքայի 'ի նա՝ ետես զերեսս նորա լուսապայծառ և ահեղ. երկեաւ, և ոչ կարէր խօս-

տու

վ՟ն զի մոլորեցոյց զձեզ հայր սուտութեան՝ անխնամեալն սատանայ, և էարկ զձեզ 'ի կապանս և յորոգայթ մահու՝ մատնել յանվախճան տանջանս :

Զայնժամ սրտմտեալ Թագաւորն՝ ասէ . ոչ է պարտ առնել այսմիկ այլ ևս կենալ : Հրաման ետ արքայ, և առեալ տարան կապանօք զնորն Թադէոս, և արգելին 'ի գզեակ պա-րսպին՝ ուր էին մարդակեր գազանք . և 'ի հասանել արքային 'ի տեսարան ասպարիզին՝ արձակեցին 'ի վ̃ր սրբյն առիւծս երկու . և եկեալ գազանքն անկանէին առ ոտս առա-քելոյն, և լեզուլին զհողաթափս ոտից նր̃, և ոռնային քծնելով : Իսկ 'ի կալ սրբյն յա-ղօթս՝ լուծան կապանք իւր . և յանկարծակի ել-նր̃ յառիւծուն՝ գնացին նոքա յիւրաքանչիւր տեղիս :

Իսկ խորհեալ ևս անօրէն Թագաւորն զաքան-չելիսն՝ որ եղեն, առաւել ևս գրգռեալ 'ի չարէն՝ հրամայեաց լուցանել հնոց հրոյ . և բորբոքեցին յոյժ . և արկին զնոր առաքեալն կապանօք 'ի ներքս . և նա աղօթէր և ասէր . Տր̃ յն̃ ք̃ս հա՛ն ինձ յօգնականութի : Իսկ ել յանկարծակի հողմ ուժգին անձրևախառն . և առեալ զկրակն ողջոյն՝ էարկ 'ի վ̃ր անօ-րինացն, և խանձողեալ ծախեաց զբազումս . և շատք ևս կորեան յահէ երկնաւոր ձայնին՝ որ որոտայր 'ի բարձանց : Իսկ Թագաւորն ամենատրուկ փախստական անկաւ յապարանս իւր, և յերկիւղէն կայր 'ի տագնապ մահու . փորձանէր և ոչ գտանէր ելս տարակուսի :

Իսկ

Բայց սուրբ առաքեալն ևս եղեալ երկնաւոր ցօ-ղովն՝ զուարթ և պայծառ երևէր ամ զլոյս . և հաւատացին յաւուր յայնմիկ ոգիք չորեք-հարիւր երեսուն և երեք ( կամ քառասուն և երեք ), որք աղաղակէին և ասէին . մե՛ծ է Աստուածն քրիստոնէից , և անյաղթ՝ զօրութի՛ւն նորա . և առեալ մկրտեաց զնոսա Թադէոս 'ի նմին ժամու ։ Իբրև զայն լուաւ Թագաւորն, փու-թացաւ բառնալ զնա 'ի կենաց՝ հրաման ետ-եալ սպանանել սրով ։ Իսկ սուրբ առաքեալն կանխեալ հաստատէր զհաւատացեալսն 'ի հաւատս կենսաբեր աւետարանին . և յարու-ցեալ աղօթէր այսպէս . Տէր Յիսուս Քրիստոս Աստուած իմ, մի՛ թողուր զսուրբ ժողովուրդս քո . այլ զօրա-ցո՛ զսոսա 'ի սէր Աստուածութեան քո . և զիս ընկալ Տէր 'ի հօտ անուշից ։

Ապա օրհնեաց զհաւատացեալսն , և յանձն արար զնոսա Քրիստոսի . և ասէ ցնոսա . արի՛ք ելէ՛ք 'ի բարձր տեղին՝ որ 'ի վերոյ քան զմեզ է , և հայեցեալ տեսջիք զհանդէս մարտիրոսութեան իմոյ . և ես ետու ձեզ առաջնորդ զԶաքա-րիաս սիրելին Քրիստոսի , որ է իմ լծակից և պաշ-տօնեայ Տեառն . նա ուսուսցէ ձեզ զբանս սուրբ աւետարանին , զոր ետ 'ի բերան նորա սուրբ հո-գին . և հաստատեալ զձեզ 'ի հաւատս սրբոյ՝ փութով հասանէ առ իս մարտիրոսական հանդիսիւ՛ . և զայս ասացեալ՝ արձակեաց զնոսա օրհնութեամբ յիւրմէ ։

Եւ ահա եկեալ հասին բազում՝ զօրականք իշխանօքն հանդերձ . և կալեալ զԹադէոս՝ հանին 'ի փոքր ձորակէն սակաւ մի 'ի բարձ-

բաւանդակ տեղի մի 'ի վիմամէջս ։ Իսկ Տր առաքեալն սոտէպ աղօթէր և ասէր ․ Տր Ած հայր Տն մերոյ յի քի՝ ընկալ զիս այժմ, և արա զնշան ահեղ Ածուէդ ․ զի գիտասցեն և ծանիցեն՝ թէ դու միայն ես Ած ամ արարածոց ․ և արդ աղաչեմ զքեզ, մի թողուր 'ի ձեռանէ զվիճակս զայս ․ և մի համարիր սոցա զայս մեղս, զի ոչ գիտեն՝ զինչ գործեն ․ փոխեա զբարբարոս միտս սոցա, և արա սոցա ճանաչել զքո Ածութիդ՝ մարդասէր և քաղցր Տր ։ Յետ այսորիկ Տնագրեալ զինքն նշանաւ սբ խաչին՝ ասէ ցդահիճսն ․ զինչ կամիք՝ արարէք ։ Նու յարուցեալ դահիճն 'ի վր սբյն սրով եհար և սպան զզեմենասուս զեղբայր իւր, որ էր կարգեալ վերակացու 'ի վր ամ ճանապարհաց ․ և էր այլ հաւատարիմ 'ի դրան արքունի, և մարդասէր բարուք ։ Այլ իբրև ետես առաքեալն՝ եթէ մեռաւ այրն, տրտմեցաւ ․ զի էր դարմանիչ հաւատացելոց, և ամ օտարաց ընդունօղ ։ Յայնժամ եկեալ սբյն առ մեռեալն՝ հայեցաւ յերկինս, և ասէ ․ հայր Տն մերոյ յի քի հայեաց յերկնից 'ի Տր աթոռոյ քումմէ, և կենդանացո զմեռեալս զայս ․ զի գիտասցեն՝ եթէ դու միայն ես Ած ․ և բուռն եհար զձեռանէ մեռելոյն, և ասէ ․ քեզ ասեմ, արի կաց յանուն յի քի որդւոյն Այ ։ Նա նոյնժամայն կանգնեցաւ, և յարեաւ զեմենասուս ․ և անկեալ առաջի ոտից սբյն՝ ասէ ․ հաւատամ յԱծն քո, զի նա միայն է Ած, և չիք այլ ոք ։ Նա զի թողաւ նշան վի-

րաց 'ի վն զեմենտոսի՝ դարձեալ եդ. որ տուաւ
քեալն ձեռն 'ի վերայ վիրացն , և բժշկեաց
զնա ։

Այլ հաւատացին 'ի ժամուն յայնմիկ ողջք
եօթն հարիւր և քսան . և առաջնորդ նոր
հաւատացելոցն էր զեմենտոս . առ որ ասէ
նքն Թադէոս . ահա կենդանացոյց զքեզ քս
որդին այ , և փրկեաց զքեզ 'ի հայրենի մա-
հուանէն , և արար զքեզ արժանի երկնային
լուսոյն . արդ զօրացիր և պինդ կաց 'ի հա-
ւատանքն . և նա պահեսցէ զքեզ և զամ
հաւատացեալսն . և առեալ մկրտեաց անդէն
զնոսա , և համբուրեաց երկնային սիրովն .
օրհնեաց զնա , և յանձն արար տն հօգւոյն .
Ասէ . երթայք խաղաղութբ , տր ընդ ձեզ .
Իսկ ինքն ցանկ զնոյն աղօթէր և ասէր . տր
իմ յս պահեա զսոսա . և յամօթ արա զչարն .
և զիս ընկալ տր իմ ։

Ապա գնաց Թագաւորն զկրսն՝ որ եղեն ,
փութացոյց զդահիճսն սաստկութբ , զի փաղ-
փաղակի սպանցեն զԹադէոս . և այնպէս կա-
տարեցաւ սրով 'ի նմին ժամու տր առաքեալն ։
Այլ բուրեաց 'ի տեղւոջ անդ հոտ անուշանէ .
և եկն 'ի վերուստ ձայն ահեղ սաստկութե ,
և ծագեաց լոյս յերկնից 'ի վն նշխն . և ե-
ղև շարժումն մեծ . և պատառեալ վիմին՝
յինքն ընկալաւ զտր մարմին առաքելոյն զա-
րութբն այ . և անօրէնքն եղեն փախստա-
կանք ։ Իսկ հաւատացեալքն՝ որք կային 'ի
հեռաստանէ , զուարթացեալ զօրանային 'ի
լուսոյ ճառագայթիցն . և տեսանէին յայտ-
նա

Նոյնպէս զմարմին Թադէոսի 'ի մէջ լուսոյն արփիա-փայլ պայծառացեալ. աղաղակեցին զհետ-նորա միաբան, և ասեն. սա է առաքեալն Աստուծոյ՝ Հայր մեր, յիշեա՛ զմեզ, և մի մոռանար. զի կար-ծէին՝ եթէ մարմնովն իսկ համբարձաւ ։

Եւ ապա յարուցեալ իջին 'ի տեղի սպանմանն, և իմացան՝ եթէ որպէս որով կատարեցաւ. և լուան 'ի տեսողաց՝ եթէ զիա՛րդ վիմին պա-տառեալ՝ ընկալաւ զնորա մարմինն. և յարտա-սուս հարեալ լային. այլ մխիթարէին 'ի վերայ սքանչելեացն եղելոց ։ Այս եղեն հաւատա-ցեալքն ամենայն յաւուրսն յայնոսիկ 'ի ձեռն նշխարացն Թադէի և Սանդխտոյ կուսին ոգիք իբր երեք կամ չորս հազար. կամ ըստ ասելոյ Զաւընտորաց՝ երեք հազար և չորս հարիւր և երեսուն և երեք. որ է յայսմաւուրաց՝ երեք հազար և չորս հարիւր քառասուն, է այր և է կին. փառաւորելով զնորա երրորդութիւնն 'ի բար-ձունս ։

Կատարեցաւ սոյն սուրբ առաքեալն Թադէոս՝ ըստ նշանակելոյ հին վկայաբանութեան, 'ի քաղոց ամսոյ ժը՝ յիններորդ ժամու. և սորին սան-դուխտ վեց աւուրբք յառաջ քան զնա՝ յեօթն նորին ամսոյ. յամի Տեառն իբր 48, կամ 50. յա-ռում ժամանակի քաղաքն անկանէր 'ի մարտ-ամբս հռովմայեցւոց. այլ ըստ Հաշուէի յայսմա-ւուրաց՝ որ հայի յաւուրս սրբոց Թարգմանչաց, վերածի 'ի դեկտեմբեր ։

# ԳԻՒՏ ՆՇԽԱՐԱՑ

## Սրբոյն Թադէոսի առաքելոյն, և Սանդխտոյ կուսին:

Հ. Ճոյխ. 30. որ և Ճարէրէ. ԵՂ: Խորէն. Է. 31:

Յետ կատարմանն սրբ առաքելոյն մերոյ Թադէի եւ կուսին Սանդխտոյ՝ մնացին մարմինք նց 'ի թաքստի զամս բազումս. որպէս եւ հաւատք քրիստոնէութե ծածկեալ մնաց, եւ որ քան զօր նուաղեցաւ յերեսաց կռապաշտ թագաւորաց մերոց արշակունեաց. մինչեւ խոսրով հայրն տրդատայ հնարեցաւ ընդջինջ առնել զքրիստոնէութի յերկրէն հայոց՝ նահատակելով զբազումս: Այլ յետ լուսաւորելոյ առ տրդատաւ համօրէն հայաստանեայց 'ի ձեռն սրբոյն գրիգորի առաքելանման նահատակին, յաւուրս որդւոց եւ թոռանց նր 'ի չորրորդ դարու, եւ կմ յաւուրս սրբց թարգմանչաց 'ի հինգերորդ դարու՝ յայտնեցան նշխարք սրբոյն թադէոսի եւ սանդխտոյ. զոր ուրեմն յիշատակէ եւ քերթողահայրն մովսէս 'ի պատմութե իւրում. այլ ճոխագոյն գրեաց մի ոմն 'ի վրդպաց ժամանակին. յորմէ էանց եւ 'ի կարգ յայսմաւուրաց. եւ ունի բան պատմութենն այսպէս:

Միայնակեաց ոմն սրբ՝ կիրակոս անուն, աշակերտ սրբոյն դաւթի կրօնաւորի՝ վաղ ուրեմն

թենն հրաժարեալ յերկրաւոր զբաղմանց ,
բնակէր 'ի լերին միում սանատրուկ կոչեցել
մօտ 'ի տեղի կատարման Թադէոսի և Սան-
դխտոյ , այն է մօտ 'ի շաւարշան յարտազ
գաւառի , փայլեալ ամենահաճոյ վարուք և
մեծաւ ճգնութեամբ : Արդ յաւուր միում իբ-
րև 'ի քուն եմուտ յետ աղօթից երանելին
կիրակոս , յայտնեցաւ նմա տեսիլ հրաշալի .
զոր և յարուցեալ պատմեաց այլոց 'ի կրօնա-
ւորաց բանիւքս այսոքիւք :

Տեսանէի ասէ 'ի մէջ սանատրուկ դաշտի 'ի
վերայ փոքր բլրոյ միոյ ծագեալ լոյս սքանչելի .
և 'ի մէջ լուսոյն նստեալ էր 'ի վերայ ոսկի աթո-
ռոյ այր մի լուսաւոր' անպատմելի գեղով .
և կային շուրջ զաթոռովն այլ ևս ճ այր . և
ես կիրակոս հիացեալ և զարմացեալ էի : Իսկ
յանկարծակի երևեցաւ 'ի մէջ բլրին աղջիկ
մի թփ̃րագն . և էր պայծառ քան զարեգակն
'ի հանդերձս յասկեհուռն զարդարեալ , և
պսակ հրաշագեղ 'ի գլուխ նորա . և եկն եկաց
առ լուսաւոր այրն' որ յոսկեղէն յաթոռն
նստէր . և նա ասէր ցաղջիկն . ուրախ լեր
դու կոյս հարսն քրիստոսի : Իսկ տեսի այր մի սքան-
չելի երևօք , որ նման էր վարդապետին իմում դաւ-
թի . և նա ասաց ցիս . մի երկնչիր , այլ զօ-
րացի'ր 'ի քրիստոս . զի ես քեզ շնորհ , և եցոյց
քեզ զլոյս մխիթարութեան իւրոյ . արդ ունկն
դիր , և պատմեցից քեզ զսքանչելիսդ :

Աղջիկդ' որ երևեցաւ քեզ , շնորհք հոգւոյն
սրբոյ է , որ 'ի վերայ առաքելոց և սրբոց ծագեալ'
լուսաւորէ , և երևի արժանաւորացն , որպէս

և այժմ քեզ ։ Ա՛րդ՝ նա , որ նստեալ է յա-
թոռն ոսկեղէն , առաքեալն Թադէոս է . և
Է որքն լուսազգեացք՝ նք աշակերտք նորա
են , և վկայք սբք . և աղ ջրկն պայծառ՝ սբն
սանդղուխտ է ։ Այլ ես ահիւ մեծաւ և դո-
ղութբ ասացի . և ո՞ւր իցեն տ՛ր իմ . և նա
ասաց . ինքեանք իսկ ցուցանեն զինքեանս ։
Այլ ես 'ի զարմացմանէն զարթեայ , և որհ-
նելով փառաւոր առնէի զա՛ծ վն տեսլեանն
հրաշալի . և հայցէի աղօթիւք զստոյգն ։
Այլ յետ երկուց աւուրց երևեցաւ անդրէն
առաքեալն նոյն կերպիւ . և իմ տեսեալ՝
յերկիր կործանեցայ . և բուռն հարեալ
կանգնեաց զիս , և ասաց . մի՛ երկնչիր կի՛-
րակոս . մի՛տ դիր , և ցուցից զնշխարս մեր՝
որ հանգուցեալ են յայսմ վայրի ։ Այլ եցոյց
ինձ արձան մի անտաշ յարևմտից կուսէ . և
ասաց , ա՛ստ գտանիցես ։ Այլ ես յերկիւղէն
զարթեայ . և 'ի պահս աղօթութե կացի զա-
ւուրս Է . և ապա 'ի յետին աւուր երեւնոր-
եայ պահոցն արարի պատարագ , և հաղոր-
դեցայ սբ խորհրդոյն . և յարուցեալ անցի
յասացեալ տեղին՝ միայն , և գտի զարձանն .
և բրեցի առ նովաւ , և ոչինչ գտի . և 'ի տրտ-
մութե՛ն և յաշխատութե՛ն նիրհեցի ։
Այլ դարձեալ տեսի զսբ առաքեալն հան-
դերձ ընկերօքն՝ առաւել հրաշալի . և ասէ
ցիս . մի՛ երկնչիր կի՛րակոս , յաջակողմն փո-
րեա՛ , և գտցես ։ Այլ զարթուցեալ փորեցի ,
և գտի զնշխարս միոյ վկայի . և բուրեաց
հոտ անուշահոտութե . և ես կարծեցի՝ թէ
սբ

ոչ առաքելոյն է. և գոհացայ զԱյ։ Եւ յայնմ գիշերի երևեցաւ ինձ պատանի մի բարձրահասակ և գեղեցիկ տեսլեամբ և լուսափայլ դիմօք. և ասէ ցիս. կիւրակոս, զայդ՝ որ գտեր, իսրայելին է. և որ 'ի վերոյ դորա է, ես եմ զաքարիա. ոսկր և գտանես գիր առ իւրաքանչիւր ումեմն. և արձանդ՝ որ ընդդէմ կայ, անդ գտանիցես զսրբ առաքելոյն։ Եւ ինձ թուէր 'ի տեսլեանն, թէ պատառէր արձանն, և ծագէր լոյսն. և հիացեալ զարթեայ 'ի տեսլենէն։

Եւ 'ի գալ գիշերին տեսի զսրբն սանդուխտ ըստ առաջին տեսլեանն, և առաւել ևս պայծառ. և իմ զարհուրեալ անկայ յերկիր. և նա բուռն եհար և կանգնեցոյց զիս. և հրամայեաց ինձ 'ի տեսլեանն անդ՝ տապաստ տարածել, և զնշխարսն 'ի վերայ ժողովել։ Եւ ես արարի զհրամայեալսն ինձ. և յանկարծակի լուցան նշխարքն իբրև զջահս. և իմ զահի հարեալ հիացայ. և նա ասէ. մի վախիր։ Եւ ես ասեմ. ահա այրի տապաստս. և նա ասաց. ոչ այրէ, այլ սրբէ և լուսաւորէ, և հաւատացելոցն 'ի քո շնորհս բժշկութիւն ընծայէ։ Եւ մինչդեռ հայէի, և ահա կերպարանեցան իւրաքանչիւր անձինքն՝ որոց էին գտեալ նշխարքն. և եղեն ոսկր իւրաքանչիւր կերպարան մարդոյ՝ լուսաւոր և զարմանալի. և սրբն սանդուխտ կայր առաջի նոցա լուսաւոր տեսլեամբ։

Եւ ասէր մի ոմն 'ի նոցանէ ցսրբ կոյսն սանդուխտ. ուրախ լեր հարսն անարատ փե-

[redacted]



սայրին քնի, զի քեւ շնորհեցան ոսկերք մեր 'ի մխիթարութիւն Հայոց. և արդ՝ առցես և բաշխեսցես 'ի բժշկութիւն հիւանդաց. և յայտնի լիցի նահատակութիւն մեր, և սէրն՝ որ 'ի Հայր և յորդի և 'ի Հոգին սբ: Իսկ սբ կոյսն սանդուխտ փառաւորէր զԱծ, և ասէր ցիս. 'ի միւս առ՝ զոր տեսերդ և լուարդ. և դարձեալ ասէ ցիս. ես եմ 'ի բլրին՝ ուր զառաջինն երևեցաւ քեզ տեսիլն: Իսկ տարաւ զիս 'ի բլուրն. և ցուցանէր ինձ անդ եկեղեցի մի փոքրիկ՝ լի լուսով. իսկ վերին լոյսն՝ ասէ, անպատումէ. ուր բնակութիւն սրբցն է 'ի հանդերձեալ կեանսն. արդ՝ զօրացի՛ր, և կատարեա՛ զհրամայեալսն քեզ:

Իսկ ես զարթեայ, և փառաւորեցի զՔս. և պահեցի պնդութբ 'ի նաւասարդի ամսոյ մինչև 'ի սահմի ամիս: Իսկ եկեալ շահէն եպսն բազմութբ ուխտականօքն, և խնդիր արարեալ նր նշխարացն, և ոչ գտանէր: Իսկ դարձեալ երևեցաւ ինձ նոյն կերպարանօքն լուսաւոր նր առաքեալն թադէոս, և ասէ. այսօր գըտանէք զփափաքելին ձեր. և տարեալ զիս 'ի տեղին՝ ցուցանէր, և տայր զգուշութիւն տեղեացն: Իսկ յարուցեալ առի ընդ իս զսամուէլ քահանայն. և հասեալ 'ի նշանաւոր տեղիս նր հանգստարանին, աղօթիւք խնդրեցաք յԱյ՝ արժանի լինել գիւտի նր նշխարացն:

Իսկ յանկարծակի եղև ահեղ թնդիւն, և պատառեցաւ վէմն, և բուրեաց հոտ անոյշ, և ելից զվայրն ամ. և գտաք զնշխարսն յխ-

րա

ռաքանչիւր հանգստարանի՝ ահաւոր և սքանչելի տեսլեամբ: Առաջին՝ սր̃ առաքելոյն, որ կայր 'ի մէջ պատառեալ վիմին՝ յարևելից կողմանէն: Այլ մօտ յառաքելոյն գտաք նըշխարս (սամուէլի, և իէլի), որոց նշանն էր այս. միոյն Է ոտսն հարեալ էր երկաթի բևեռ, և դեռևս կայր 'ի նմա երկաթն. և միւսոյն լիսեռունք ատիցն էր ծակեալ. և մեր ահիւ մեծաւ ժողովեալ զնշխարսն՝ փառաւոր առնէաք զա̃ծ:

Այլ յերրորդ աւուրն գնացաք 'ի հանգստարան սր̃ կուսին սանդխտոյ, և աղօթեցաք. և եդև շամանդաղ Թանձրամած 'ի վերայ բլրին՝ մինչև յերեք ժամ աւուրն. և ոչ կարացաք տեսանել ինչ: Այլ յետ բազում արտասուաց և աղօթից ապա ուրեմն կարացաք տեսանել 'ի մէջ բլրին լոյս. և ահա 'ի մէջ լուսոյն երևեցան բազմութիւք լուսաւոր մարդկան, որք փայլէին ահաւոր տեսլեամբ: Այլ ապա բացաւ տապան ս̃յն, և բուրեաց հոտ անոյշ. և փարատեցաւ շամանդաղն, և եղև լոյս. և երևեցան նշխարք սանդխտոյ. զոր առեալ բերաք 'ի տեղին, ուր էր նշխարք սր̃ առաքելոյն, և եդաք առ նմա: Այլ եղև 'ի գիշերին յայնմիկ լոյս յերկնից պայծառ 'ի վերայ նշխարաց ս̃ցն. և ձայն օրհնութե լսելի լինէր՝ առ 'ի ս̃ցն, որք հրաշափառ եղանակաւ և քաղցր բարբառով օրհնէին զա̃ծ. և զմիմեանս ողջագուրէին. և նշխարք ոսկերաց նոցա Թռուցեալ առ միմեանս հանգչէին: Այլ մեք զարհուրեալ կայաք. և տե-

սաք

սաք զնշխարս սրբոյն սանդխտոյ, որ երևէր 'ի մէջ նշխարաց առաքելոյն. և մեր երկիւղիւ մեծաւ մատուցեալ` զատանէաք 'ի միմեանց. զի թէ ով մերձեսցի, գիտասցէ զառաքելոյն նշխարս և զսանդխտոյն, փառաւորելով զած ցնծութբ. : Այս կատարեցաք զամ սրբց համգստարանին պատուով` շնորհօքն նոյ :

Այս եւ համբաւ սրբցն և տարածեցաւ յազս հայոց. որք եկեալ յամ կողմանց` գտանէին զառողջութի ամ ախտաժետաց իւրեանց: Այս կին ոմն յըռշտուներաց 'ի ծնէ կոյր` եկեալ եգիտ զառողջութի և լուսաւորեցաւ. և պատմեաց զսքանչելի տեսիլն` որ ցուցաւ նմա, և ասէր. տեսանէի ես 'ի տան իմում 'ի տեսլեան գիշերոյ` աղջիկ մի գեղեցիկ տեսլեամբ, և ասէր ցիս. ես եմ սանդուխտ. արի և եկ 'ի գաւառն արտազ 'ի կայս համգստեան մերոյ, և ած լուսաւորեսցէ զքեզ 'ի ձեռն սրբ առաքելոյն թադէոսի և նորին աշակերտացն. քանզի նոքա` և ես ը նոսա` դիցուք զձեռս մեր 'ի վերայ աչաց քոց և առողջասցիս : Այս իմ եկեալ մեծաւ հաւատով. և ահա բացան աչք իմ շնորհօքն քի և սրբց նորա : Այս այլ եւս բազումք բժշկեցան. և փառաւոր առնէին զած : (4)

,, առաքելոյն 'ի Հայս, և հաւատալ սանատրկոյ, և Թա_
,, ղուլ զհաւատն յերկիւղէ նախարարացն հայոց. և կա_
,, տարումն առաքելոյն և որք ԻԲ նմա' 'ի գաւառին շա_
,, ւարշան, որ այժմ կոչի արտազ. և պատառումն քա_
,, րին, և յերար գալ, և ընդունել զմարմին առաքելոյն,
,, և առնուլ անտի աշակերտացն և Թաղել 'ի դաշտին.
,, և մարախորանալ Թագաւորի գանձերն սանդխտոյ'
,, հուպ 'ի Ճանապարհն. և ասա ուրեմն յայտնել նշխա_
,, րաց երկոցունց, և փոխել յառապարն: Այս ամ'
,, ոչ ասացաք, այլոց (կամ յայլոց) պատմեալ յառաջա_
,, գոյն քան զմեզ, ոչինչ կարևորագոյն համարեցաք անօսլ
,, երկրորդել ||:

Արդ' ահա սոյն այս պատմութիւն է, որ Ճոխագոյն գրի 'ի Ճառընտիրն մեր Բ. Ը որոյ կարգեցաք և զվկայաբանութիւս. կայ և այլ օրինակ 'ի Ճ. Ե. ուրեք ուրեք փոքր ինչ համառօտեալ. որպէս և Հ. է քաղուածն նոյն պատմութեան. այլ ուրոյն ևս ունի զպատմութիւն գիւտի նշխարացն Ը եզելոցս: Իսկ թէ որչափ հնագոյն իցէ քան զխորենացին' եթէ վկայաբանս, և եթէ գտիչն կամ գրիչն գիւտի նշխարաց, փափաքելի էր մեզ գիտել: Իցէ՞ թէ լինէր ինձ ոք և անվրէպ Թարգման մատցկարեալ յիշատակարանին, զոր ընթեռնումք 'ի կատարած վկայաբանութեանս. Ճ. Բ. էջէս. ճՀէ. օրինակ զայս. * Ես
,, եպիսկոպոս անարժան ծառայ քնի' Թարգմանեցի
,, զվկայութիւն սբ առաքելոյն Թադէոսի, և զսրբոյ կու_
,, սին սանդխտոյ. և ետու ամ հայաստան Տի. որք
,, ընթեռնուք և կատարէք զյիշատակ երկոցունց ընա_
,, րելոցն, արժանի համարեսջիք յիշել զանարժանս 'ի
սբ աղօթս ձեր ||:

Ուր եթէ զեպիսկոպոսն առանց յատուկ անուան' 'ի վէ սբ լուսաւորչին մերոյ առցէ ոք, Թերևս ոչ սխալէ. զի նմա առաւել 'ի դէպ գայ ասացուածդ, * ետու ամ հայաստան Տի ||. որ և է առաջին կարգադիր հին տօնից մերոց. բայց թէ' և զմի յորդւոց և 'ի Թոռանց նր, կամ յեպիսկոպոսաց եղելոց առ նոքօք իմասցես, առաւելին է պանծալի հնութիւն. ապա եթէ 'ի Ժմկս Թարգմանչաց գիցէ ոք' եթէ յառաջ քան զգիւտ գրոյն, և եթէ զկնի. Թէպէտև առաւելին լինի հնութիւն երևելի, բայց համաձայն մեկնութիւն տանի յայնժամ' առելն Թարգմանեցի. զի կամ յայլ գրոյ 'ի հայ գիր, և կամ յայլ բարբառոյ 'ի հայ բարբառ. և զայսոսիկ ոչ զիւրդ կամք իցեն իմանալ ընթերցանելեաց, Ճանաչելի է մեզ:

Ապա

Այլ եթէ անկեալ իցէ 'ի մատենէ յաւուրց անուն եղանին, ժամանակին յայտնեսցէ յայլ օրինակաց զայն անուն: Մարթ է ասել (այլ ոչ հաստատել), թէ եղան շահէն անուն՝ որ յետ 'ի պատմութեն գիւտի նշանագրաց, իցէ հետամուտ լեալ 'ի թարգմանել զվկայաբանութիս. յոր յաւելեալ իցէ և կերպակս միայնակեցաց անձամբ կամ 'ի ձեռն այլոց գրչի զպատմութիւն գիւտին: Եւ յայնժամ ձեռաց ասել ը գրեցելումն 'ի ծանօթ". պատմ. հայ. Ճ. 584. * Եթէ վերոյիշեալ շահէն եղան իցէ շահակ
,, կամ զաւէն, որք նստան կաթողիկոս յառաջ քան զմին սա-
,, հակ պարթև. և եթէ այս կերպակոս իցէ այն՝ որ եղա
,, եզև տայոց, և կոչեցաւ շահակ ը պատասխանելոյ բուզան-
,, դայ. Դ. 11. այս գիւտ նշանագրաց լինի քանի մի ամաց
,, յառաջ քան զնստիլ սբյն սահակայ ||: Յորոց յայտ է,
թէ յետին վերակարկատել գնի 'ի Հ. գիւտ նշանագրաց լինել յաւուրս վռամշապհ մամիկոնեան, և յովհաննու կաթողիկոսի օձնեցւոյ. 'ի թուին հայոց ՃԿ. ուր թէև գիտուք, թէ փոխանակ մանդակունեայ գրեալ իցէ օձնեցի, և ըստ նմին յարմարեալ թուականն, տակաւին ոչ է ըմբռնելի. զի և 'ի ծմին գրութեան խորենացւոյն՝ պարտ է 'ի վեր խաղալ յաւուրս սահակայ պարթևի կամ նախորդացն նր: Իսկ թէ նաև արտաքոյ վկայաբանութեանս անգիր աւանդութիւն ունէր ՏՆ հայոց եկեղեցւոյ զեկեղեցւոյ կատարման և զապաշանէ սբյն թադէոսի 'ի վաղուց հետէ, յայտ առնէ դարձեալ ասելն խորենացւոյն. Է. 71. * Արդ 'ի
,, բնակելն անակայ 'ի դաշտին արտազու, պատահէ ա-
,, րա տեղի օթարանին մօտ առ գերս սբյ առաքելոյն,
,, այլ թէ 'ի ներքսագոյն արսկաղանի խորանին. և անդ-
,, ամեն զյղութի մօր սբյ և մեծի մերոյ լուսաւորչին:
,, Վոյ և զնորին առաքելոյ շնորհս ընկալեալ, որ առ-
,, հանգստարանաւ նորին զլինելութին էառ, զնորին
,, ելից զհոգևոր մշակութեն պակասութի ||:
Ցայսպիսի աւանդութիս հայր արդեօք և գրեալն 'ի Հ. (առեալ 'ի թղթոյ դաշանց,) թէ սբն թադէոս եկն առ սանատրուկ՝ * ունելով ը ինքեան զգեղարդն անձա-
,, մուխ, որով առնէր նշանս մեծամեծս, և փարատէր
,, զամ ախտ չար հիւանդութեց ||:

(2) Վո լինելոյ սբյն թադէի մի յեօթանասնից, որիչ 'ի թադէոսէ զերեքտասնէ յուդայէ՝ որ մի է յերկոտասանից, տես լիագոյն 'ի պատմ. հայոց. Ճ. 583: Այլ որ գրի 'ի Հ. գեկա. 23. վո մերոյն թադէի, թէ * էր նա գլուխ
,, հեծ աշակերտացն քնի, որպէս և պետրոս ժղնանիցն.
,, այլ



# ԿԱՏԱՐՈՒՄՆ

Սրբոյն Շուշանայ՝ դստեր մեծին Վարդանայ։

Հյ. դեկտ. 25. և Մայիսի. 30։ Որ էէլ. դեկտ. 29։
Վկայաբ. Հայոց։ (1)

ՇՈՒՇԱՆ ՊԱՅԾԱՌԱ-փայլ՝ որ և Վարդուհի կարմրերփեան, խոստովանող մեծ վկայուհին էր երկնագոյն դուստր քաջ նահատակին՝ սրբոյն Վարդանայ մեծի Մամիկոնենի՝ Հայոց սպարապետի, որդւոյ Սահականուշայ դստեր սրբոյն Սահակայ պարթևի։ Վասնզի երկու դստերք եղեն սրբոյն Վարդանայ 'ի դխտրիկ կամ 'ի դստրիկ անուն ծնանէր ատիկնոջէն իւրմէ. կրտսերն Վարդանոյշ կոչեցեալ՝ եղև կին երևելի և բարեպաշտ նախարարին Հայոց Արշաւրի Արշարունեաց, [illegible] Կամսարականի. իսկ երէցն Վարդանուհի կամ Վարդուհի, որ ... գգուանաց և 'ի պայծառ գեղոյն՝ Շուշան կամ Շուշանիկ վերաձայնէր, տածեալ յամուսնութիւն մեծի բդեշխին Վրաց Վազգենայ, որ և արքայ Մծխիթայ. և արդարև ... խորհրդոյ կրկնակի կոչմամբն ծաղկեցաւ երանելիս իբրև զվարդ և զշուշան՝ վայելչագեղ և անուշահոտ վարուք արդ-

[redacted]



որբութե՟ն. զի էր զարդարեալ երկիւղածու-
թ՟բ և պարկեշտութ՟բ, և կատարեալ հաւա-
տով և սիրով ք՟ի. կիրթ յա՟ծպաշտութե՟ն,
և փոյթ յա՟մ գործս բարիս. այլ այր նորա
գտաւ փուշ խոցոտիչ, և արժանի անշէջ
հրոյ:

Քանզի յետ կատարման սրբոց վարդանանց
նահատակութ՟ն, երթեալ վազգէնայ 'ի դուռն
արքային պարսից յազկերտի' ուրացաւ զք՟ս.
և թողեալ անդ պատանդս' դարձաւ յերկիր
իւր, զի անկասկած տիրեսցէ վիճակի թա-
գաւորութե՟ն իւրոյ: Յայնժամ սկ՟ն շաշան
յանհնարին սուգ. և 'ի կոծ սրտի փարակեալ'
ոչ կարէր ի՞ւիք մխիթարել զանձն իւր. խորա-
տել սկսաւ զայր իւր, և համարձակ կշտամ-
բել վ՟ն ուրացութե՟ն. այլ գտեալ զնա իբրև
զսալ դարբնաց անսաստ, և ա՟մի անզեղջ 'ի
չարեաց, ոչ ևս կամէր հաղորդ լինել նմա'
ո՛չ կերակրովք, և ո՛չ բնակակցութ՟բ. զի
թէրևս սթափեսցի և 'ի զգաստութի եկեսցէ:
Իսկ այրն անօրէն առաւել փոյթ 'ի մտի դը-
նէր դարձուցանել և զկինն 'ի կրօնս անա՟ծ-
ութե՟ն, և նմանեցուցանել ինքեան. զի յան-
դիմանութի էր նմա ա՟ծպաշտութի շուշա-
նայ: Իսկ զի երանելի կինն քաջութ՟բ զգէմ
կալեալ չար կամաց վազգէնի, ընտրեաց զմահ
քան զհեշտանալն 'ի քնէ, վ՟ն և նա հանա-
պազօր ո՟ղ գահիճ կայր 'ի վ՟ր գլխոյ սրբուհ-
ւոյն. և բազում զանիւ և հարուածովք, և
անառնաղութ՟բ, ևս և բանտիւ և կապանօք
անգամ' տառապեցուցանէր զնա զամս վեց.

Մինչև որդնալից եղև մարմին երանելւոյն շուշանայ 'ի չարաչար կապանացն և յանխնայ հարուածոցն ։ Այլ նա գոհութի տարեւ ամի համբերէր արիաբար ․ զի և ոչ երբէք բան տրտնջման ել 'ի բերանոյ նր ․ այլ զօր ամ փառս մատուցանէր այ ․ զի վս նր և եթ սիրոյ զայնպիսի կիրս կրէր ։

Յանկ այրն անհաւատ և գազանամիտ 'ի տեսանել անդ զայնպիսի համբերութի շուշանայ՝ ևս քան զևս 'ի մոլեգնութիւն բերեալ լինէր ․ և ստէպ հայհոյէր զսբն վարդան ․ և կոչէր զվարդուհին շուշան նախատանօք դուստր աշխարհաւերի ։ Յանկ յաւուր միում այնչափ գազանացաւ բռնաւորն վազգէն , զի յարձակեալ 'ի վր՝ առ 'ի մահ հարկանէր լախտով զսբն շուշանիկ , մինչև մեռցի ընդ հարուածովք ։

Ցայնժամ մեծ տագրն շուշանայ՝ որ և եղբայրն վազգենի Ջոջիկ անուն , 'ի վերայ հասեալ՝ թափեաց զնա 'ի ձեռաց նորա , և տարեալ ընկէց զնա կիսամահ 'ի տեղի անքոյթ ։ Այս այնպէս յեօթներորդ ամի տառապանաց վտանգեալ երանելւոյն 'ի վերջին հարուածոց անտի՝ պատրաստեաց զանձն իւր արժանաւոր ընդունելութի սբ խորհրդոց յելս 'ի հովտէս տրտմութե ․ և զմիտսն առ ած ուղերձեալ՝ կարդաց յերկինս 'ի վեր , տր յս ընկալ զհոգի աղախնոյ քո ․ և այնպէս բարի խոստովանութի հանգեաւ 'ի քս սբն վարդուհի շուշան , ընկալեալ զբրաբիոն կատարեալ նահատակութեան զկնի երջանիկ հօր

իւրոյ վարդանայ ։ Սա որ ժողովեաց բազում քահանայից և եպսսաց՝ բարձին զնա և թաղեցին արժանաւոր պատուով անդէն յեղին վրաց՝ ուր սբ թագուհին իւրեանց , յամի տն 458 . 'ի հասակի իբր խէ ամաց ։

Այլ մինչդեռ կենդանին էր որբուհին շուշան , տեսեալ նր՟ թէ յերեսաց առն իւրոյ ուրացելոյ զօրանայ հեթանոսական անկարգութն 'ի վերս , և առ ուտն հարկանեն զեկեղեցիս և զսբ սպասս , գուն գործէր գտանել հնարս , և հանել 'ի մծխիթայ յարքունական քաղաքէ անտի զնշանագործ նշ խաչն նունեայ կուսի՝ վրաց լուսաւորչի , և յղել 'ի հայս 'ի բուն գաւառն իւր 'ի տարօն , ուր փայլէին բարեպաշտութբ ընտանի ազգականք իւր մամիկոնեանք ։

Եւ յաջողեաց տծ զկամս սրտի նր ․ քանզի եկն ը այն աւուրս 'ի մծխիթա քաղաքէ աբեղայ մի՝ անդրէաս անուն , յերկրէն տարօնոյ՝ 'ի գաւառու վանաց , այն է սբ առաքելոցն մշոյ ․ և էր անդրէասն այն յաշակերտաց մեծին սահակայ՝ հաւուն շուշանայ ։ Յայնժամ երանելին շուշան օգնականութբ տագերոն իւրոյ ջոջկայ ետ զսբ խաչն յանդրէաս աբեղայն հանդերձ այլ և սբ նշխարօք՝ տանել 'ի վանս իւր ։ Արդ իբրև յուղի անկեալ անդրէի՝ եհաս 'ի սպեր գաւառ , ոչ կարաց յառաջ խաղալ վն խռովութե ժամանակին և վրդովմանց ճանապարհին ․ այլ անդէն եկաց և դադարեաց ամս ինչ 'ի խորշ մի լերինն սպերոյ ․ մինչև լուծաւ զբարի կատարումն շուշանայ ։

նայ ։ Ապա ազդ արար անդրէաս առ գրիգոր մամիկոնեան, որ էր երևելի իշխան՝ Թոռն Համայեկայ եղբօր մեծին վարդանայ. և նա եկեալ քաջ արամբք՝ առեալ տարաւ զնա խաչն յամուրն կապուտայ. և յայնմ հետէ խաչն այն Նռնենեայ կոչեցաւ 'ի մէջ ազգին Հայոց՝ շուշանայ խաչ ։ Որ և 'ի կապուտայ փոխեցաւ զկնի 'ի վախճանն՝ 'ի վանս ուրեք. ուստի և անունն տեղւոյն՝ խաչի վանք ձայնէր ։ Այս դրձլ փոխադրեցաւ 'ի կարս. և հուսկ յետոյ 'ի Թոռնին Հայոց. Չխգ. յաւուրս Գրիգորի վկայասէրի և բարսղի կաթողիկոսի գործակցի նորա բերեալ եղաւ յանի. մինչև զկնի ժամանակաց յառնմանն անի քաղաքի խափածածկեալ աներևութացաւ. որպէս Մարձակ գրէն յայսմաւուրք 'ի մարտի. 30 ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ ։

(1) Որպէս 'ի ձեռագիր Ճառընտրի գնի տօն սրբոյն Շուշանայ կամ սրբուհւոյն Շուշանիկանն դստեր վարդանայ՝ 'ի քաղոց ամսոյ. ԺԷ. նոյնպէս գնի և 'ի Հ. այն է Ը անշարժ տօնամարին 'ի գեկտ. 25. և զի 'ի ժամանակս Թարգմանչաց այսպէս ախնէր ամիս Ը ամսոյ, նոյն օր անխախտ համարի լինել օր կատարման սրբուհւոյն. միայն թէ եղել չորեքաւուրբք զկնի կարգէ՝ 'ի քաղոցի. Ի. և 'ի գեկտ. 29 ։ Տնօրինացը՝ որք չէն սովոր զօրն նշանակել, յայս մեղաց կարգեալ են Ը սրբոյն սանդխտոյ մայրեպայէս զբէն շուշան դշխոյար մեծին վարդանայ ։ Այլ է և արտաքոյ տօնացուցի շուշան խոստովանող դուստր վահանայ կամսարականի. զորմէ տես 'ի պատմ. հյ. Բ. 382. Գտանեմ և այլ վկայուհիք առ մեզ և առ այլս յիշատակեալք՝ շուշան, կամ որ նոյն է՝ սուսաննա անուամբ. որպ 'ի Հ. փետր. 24. և Ց. Լ. սեպտ. 20. և դարձեալ Հ. յունիս. 7. ևն ։



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

**Սրբոյն Կիպրիանոսի եպիսկոպոսին, և Յուստիանեայ կուսին ։**

Հ. հոկտ. 3 ։ Յ. հոկտ. 2 ։ Լ. սեպտ. 26. և 14 ։ Ճառընտ. Ի. չէ̄. և ՁԿԵ̄. ևս և Կ. յԿԴ ։ Խուլլամուդեանց 'ի Ջ, և 'ի Է. հատ. սեպտ ։ Սբն Կիպրիանոս 'ի Գիրս իւր ։ Պոնտիոս սարկաւագ նորա 'ի Վարս նորա ։ Գր. ածաբ. Ճառ ԺԸ. Ներբողեան նորա ։ Օգոստինոս 'ի Ճառս նորա ։ Պրուդենտիոս 'ի պսակս իւր ։ Գոր. Տուրեն. Ճչ̄ ։ Ոնորատոս. առ աւուրբս. ԺԶ̄ ։



ԿԻՊՐԻԱՆՈՍ, ՈՐ ԵՒ Կիւպրիանոս՝ սբ̄ եպ̄կս և վկայ քս̄ի, հանդիսացեալ 'ի սկզբաննէ հետէ տօնախմբութբ̄ յամեկեղեցիս քրիստոնէից, որչափ քաջածանօթ է ամենեցուն գրովք իւրովք, և պանծալի վկայաբանութբ̄, նոյնչափ և անյայտ ըստ ծագմանն. արդեօք ափրիկեցի՞ իցէ՝ ծնեալ և սնեալ 'ի Կարքեդոն, որ և Կարթագինէ, եթէ անտիոքացի. մինչև երկբանութի եղև առ յետոյն քննիչս, արդեօք մի՞ միայն իցէ երևելին Կիպրիանոս, որ ըստ ամենեցուն էր յառաջին հեթանոս, և ապա պարծանք եղև քրիս

քրիստոնէից , եթէ երկու՝ ժամանակակից իւրերաց, և նմանօրինակ ընթացիւք. մին՝ հռովմէ կարքեդոնացւոց , և միւսն անտիոքացւոց : Սորա՝ թէպէտև այժմու արևմտեայք լաւ վարկանին յերկուս զատանել , այլ արևելեայք 'ի սկզբանէ հետէ մի և նոյն ճանաչեն . զորմէ ճոխագոյն տացուք պատճառս իմաստնոց 'ի կարգի ծանօթութեց , յայսմ վայրի հարկաւորեալք իբրև զմիոյ խօսել՝ ըստ վկայութե մեծին գրիգորի ածաբանի , և այլոց անհրաժեշտ վկայից , զհետ երթալով ճառընտրաց մերոց և յունաց , համդերձ դիւանական վկայաբանութե. ափրիկեցւոց և հռովմայեցւոց :

Սորա մեծն կիպրիանոս՝ մականունեալն թասկիոս կեկիլիոս , էր յերրորդ դարու , փիլիսոփայ հեթանոս , քաջ ճարտարախօս , մոգ ճարտար , և քուրմն կռոց , անդստին 'ի մանկութէ նուիրեալ 'ի սպաս դից 'ի ծնողաց իւրոց՝ բնակելոց 'ի կարքեդոն քաղաք ափրիկեցւոց . շրջեալ յաթէնս , յեգիպտոս , յանտիոք ասորւոց , և 'ի մէջ քաղդէացւոց : Սա այնպէս էր հռչակաւոր 'ի դենի իւրում , ոչ թէ զանցանել զմոգպետօք և զամ կախարդօք , ևս և զյանէսիւ և զյամբրէսիւ . թող զմեծութի և զճոխութի ընչից և փառաց . մինչև չիշխել ումեք ասել ինչ ընդդէմ նորա ; կմ չարախօս լինել զնմանէ . քանզի ամենեքին ակնածէին 'ի շքոյ նր , և 'ի պատիր գիտութէ դիւական մոլորութե . որպէս և համարձակ հրամանս տայր դիւին կոչ-


մամբ

մամբ կախարդանաց 'ի կատարել զամ կամս
իւր, և 'ի ձգել զբազումս յազգի ազգի պա-
տրանս և 'ի կորստական ցանկութիւնս։

Այս էր 'ի քաղաքի անդ՝ յորում կիպրիանոսն
բնակէր, աղջիկ մի կոյս՝ Յուստիանէ կին
յուստինա անուն ( որ Թարգմանի արդար
գինորդ ), 'ի բարեպաշտից և 'ի զգաստից,
դուստր ազատաց և մեծատանց, գեղեցկու-
թեամբ մարմնոյ հռչակեալ, և հոգւոյն առա-
քինութեամբ զերազանցեալ. որ և քնական հա-
ւատոյ հասեալ 'ի ձեռն պրուզոսի սարկա-
ւագի՝ դարձուցեալ էր և զծնօղս իւր 'ի սբ
հաւատս քնի. և էր անուն հօր նր Եդեսիա-
նոս կին եդեսիոս քրմապետ, և մօրն կղեգո-
նիա. որք յորժամ մկրտեցան յոպտատոսէ
եպսէ, բաշխեցին զինչս իւրեանց կարօտե-
լոց, և առաքինութեամբ քաղաքավարէին. այլ
առաւել յուստիանէ փայլէր մաքրական վա-
րուք և ջերմ սիրովն քսի՝ նահատակական կու-
սութեամբ համեղերձ։

Այս եղև 'ի կամխել յուստինեայ կուսին ընդ
մօր իւրում սահէպ յեկեղեցի, տեսեալ զնա
ոմն երիտասարդ ագղաւիդոս անուն՝ ցան-
կացաւ առնուլ զնա իւր 'ի կնութիւն. և շատ
ջանացեալ բազում պատգամաւորօք և խոստ-
մամբ պարգևաց՝ ոչ կարաց հաւանեցուցա-
նել զնա. քանզի ասէր յուստիանէ, թէ ես
քսի եմ հարսնացեալ, և մարդոյ երկրա-
ւորի ոչ ցանկամ. լաւ է հաստատել զիս
քսի, քան յետս կալ յուխտէ արդարութեան, և
առ ժամանակ մի փայլել 'ի մեղս. և եթէ
մօք

մարգոյ որք զինքն խոստանայ և հրաժարէ , ոչ մնայ անպատուհաս ; որչափ ևս առաւել որ զքի աւանդն ոչ պահէ , տայցէ վրէժս ։ Իսկ յաւուր միում մինչդեռ երթայր կոյսն ըստ սովորութեն յեկեղեցին , սպասեաց նմա ագղաւիդոս 'ի ճանապարհին , և բռնան ե- հար զնմանէ . բայց նա քաջութեամբ 'ի բաց վա- նեաց յիւրմէ զանամօթն , և ամօթալից յետս դարձոյց . և ինքն մտեալ յեկեղեցի՝ խըն- դրէր արտասուօք 'ի փրկչէն և յամենասուրբ կոյս ածածնէն՝ օգնական և վերակացու լի- նել նմա , և անպարտ պահել 'ի փորձութենէ ։ Յայնժամ զնոյն ագղաւիդոս առ կիպրիա- նոս մեծանուն կախարդն , և մատոյց նմա երկուս տաղանդս ոսկւոյ և արծաթոյ , զի հնարեսցի լինել զկամս ցանկութեան իւրոյ . և կիպրիանոս քանզի լսեալ էր զհամբաւ գե- ղոյն յուստինեայ , նախ կամեցաւ անձամբ տեսանել զնա . և իբրև ետես զնա ըն դու- ռակն լինելոյ երկրպագութին յեղան եկեղեց- ւոյ , առաւել խոցեցաւ նետիւ ցանկութեան կիպրիանոս քան զագղաւիդոս , և խորհե- ցաւ ինքեան առնել զնա 'ի կնութի . նմին իրի փաղփաղակի կախարդանօք հրաման ետ արբանեկաց իւրոց դիւաց , զի երթեալ խռո- վեսցեն զաղջիկն , և ջեռուսցեն զնա 'ի ցանկութի իւր ։

Զայն ինչ չարն սերմանել կամէր պղտորութիւ 'ի յուստինեայ կուսէն , զդաստն այն և անսա- րսաս հարսն քի զեղեցիկ զերկնաւորութի անցեալ ը ծածկն ալեկոծ խորհրդոց՝ խռովա

խնալ լինէր 'ի նաւահանգիստն քո · ապաւէն յուսոյ և պարիսպ ամրութեն առնէր անձին զխաչն փրկչական, և ապաստան լինէր 'ի գիրկս երկնից Թագաւորին մօր և կուսի · և յաղօթս և 'ի տքնութին տուեալ զանձն՝ հալէր պահօք զփափուկ մարմինն, որպէս թէ մեռուցանել յառաջ քան զմահն · և թառամեցուցանէր զգեղն անձին գետնատարած անկողնովք · և զինեալ հոգւովն ոյժ՝ շիջուցանէր զնետս չարին ։ Տեսեալ դիւին, թէ չկարէ գամագիւտ լինել 'ի նմա գաղտնի հնարիւք, յերեւս իսկ երևեցաւ նմա՝ յորժամ կոյսն կայր յաղօթս յերրորդ ժամու գիշերոյն ․ իսկ յուստիանէ արար զնշան սրբոյ խաչին ընդդէմ ցնորից չարին, և փչեաց ընդդէմ նորա · յայնժամ ահիւ տագնապեալ փախեաւ դևն · և երթեալ պատմեաց կիպրիանոսի զամ ։

Յաւել կիպրիանոս առաքել և այլ ևս դևս հետզհետէ՝ մի քան զմի չարագոյնս · այլ սրբ կոյսն նոյնպէս և զնոս հալածեաց զօրութ սրբոյ խաչին և անուանմբն քրի · մինչև թազուամն աշխատ եղեալ դիւաց, և ոչինչ կարացեալ ստնանել նմա՝ գնային ամաչեցեալք, և իբրև խուիլ յերեսաց հրոյ փախուցեալք ։ Զարմացաւ կիպրիանոս ընդ իրսն · և խոշտանգեալ զդևս՝ հարցանէր սաստկութ · զի՞ այդչափ յամեցիք, և ունայն յետս դարձայք՝ առանց կատարելոյ զիմ կամս ։ Նա նոքա ասացին յայտնապէս, թէ անհնար է հաւանեցուցանել զաղջիկն զայն · զի նշան խա-

խաչելոյն՝ զոր ունի որպէս զէն անվանելի, ոչ միայն զմեզ հալածէ, այլ թէ և իշխանն մեր ինքնին գնայցէ առ նա աներևոյթ բանակաւն իւրով, ամօթով փախստական լիցի 'ի նմանէ դժոխային գնդաւն հանդերձ ։

Զայն իբրև լուաւ Կիպրիանոս, անէծ ըզդևսն, և ընտրեաց այլ չարագոյն դև մի հարիւրապետ դիւաց. զնա առաքեաց առ յուստիանէ՝ պատուէր տուեալ զամ հնարս հայթհայթել առ որսալոյ զմիտս կուսին ։ Նա նորա եկեալ առ կոյսն՝ սպառնայր նմին անէծով. մի կարծեր զիս ոչ զայլ տկար դևսն, զի ես հարիւրապետ եմ դիւաց ։ Իսկ սրբուհին սաստեաց նմա անուամբն քի, և անյայտ արար. մինչև չիշխեաց չարն դառնալ առ Կիպրիանոս, այլ անդնդասոյզ կորեաւ

'ի միջոյ ։

Յայնժամ 'ի միտս եկեալ Կիպրիանոսի իմաստնոյ, և լուսաւորեալ առ յոյ՝ 'ի բաց մերժեաց յիւրմէ զամ զդևսն, ասելով ցնս. զի զմեզ ցայս վայր պատրէիք՝ պարծելով զօրագոյն լինել քան զքս. զի եթէ լոկ անուն նորա և նշան խաչի նորին յաղթէ ձեզ, ապա յայտ է՝ թէ տկարն 'ի հզօրէն յաղթահարի, որպէս և ճրագ յարեգակնէ, ևս առաւել խաւարն 'ի լուսոյ. և արդ առանց յերկուանալոյ նա զօրաւորագոյն է և ամենազօր որպէս զամ, ոչ և անկ իսկ է ընդու-

թենն ոյ ։

Զայս ասացեալ և 'ի բաց ընկեցեալ զարուեստս չարութէն՝ որ 'ի ձեռին, այնուհետև

ապա

տայր առ փրկիչն ապաւինեցաւ. և զի Ճա-
նաչէր զընտիրս 'ի քահանայից քրիստոնէից,
ամիրք ոմանք էին Կեկիլլիոս, և Եւսեբիոս կմ
Տիմոթէոս, յարեցաւ 'ի նա. և լուեալ 'ի
նմանէ զխորհուրդս նոր հաւատոյ՝ որ քան զօր
եռայր հոգի նորա 'ի նմին դաւանել 'ի Քս. Ու
ո՞ կարէ պատմել, թէ յորմէ՛ վիճակէ խաւա-
րային գնացից տեսանէր զանձն 'ի լոյս ըն-
թանալ. սորին վկայ և նորին Պոնտիոս՝ որ եղև
յետոյ սարկաւագ Կիպրիանոսի, և գրեաց
զվարս նորա ներբողական հանդիսիւ, ասէ.
Զգրեալ արժանի պատմելոյ զգործս Կիպ-
րիանոսի նախ քան զդառնալն նորա առ Տր.
այլ 'ի սկզբանն դարձին 'ի բաց եղեալ զար-
տաքնոցն գիրս՝ ետ զանձն բոլորովին ըն-
թերցման ածային տառից. բաշխեաց զինչս
իւր կարօտելոց. եթող զփառս և զմեծութիւն
իւր, և կրթէր զանձն 'ի գործս խոնարհու-
թեն. և այնպիսի եռանդեան եցոյց 'ի դարձի
իւրում, մինչ զի եթէ կատարեալ լինել յամ
բարեպաշտութեան՝ մինչչև ուսեալ էր զբարե-
պաշտութիւն: Ասեմ միայն զայս՝ որ յայտնի
կացոյց, թէ քանի՛ զօրագոյն են կատարեալ
հաւատք և փոյթ՝ քան զերկարութիւն ժամա-
նակի, առ 'ի լինել կատարեալ: Վնանէր զքա-
ղաքավարութեան նոցին առաջնոց, թէ ի՞նչ իւրք
հաճոյ գտանէ Այ, և փութայր զհետ երթալ
նոցա յամ օրինակ. և զնոյն քարոզէր և այլոց
առաւելապէս յօրինակ առնել զՅոբ երան-
ելին զկատարեալ ածապաշտն. և ըստ Հերոնի-
մոսի՝ բազում շահ եղև նմա 'ի գրոց յաճախա-
նու

նոա մարգարէի վն դարձի յապաշխարութի .
ապա թէ ոչ՝ ամ լինքն կործանման գրէ , 'ի
սկզբանն աւերկածէր 'ի յուսահատութէ :
Արդ՝ յետ այրելոյ զամ գիրս մոլորութեան
և կախարդութե՝ տուեալ զանձն 'ի կարգ
երախայութե՝ յերկար ապաշխարութեամբ
և բազմապատիկ մրցանօք ճգնէմ չարին , ըն
կալաւ զնոր մկրտութի յեպիսկ տեղւոյն , և
նորոգեցաւ 'ի նոր մարդ ըստ այ : Եւ տեսեալ
եպսին զառաքինասէր փոյթ նր՝ կարգեաց
զկիպրիանոս ընդ դռնապանս եկեղեցւոյ . և
ամ լռեալ յումեմնէ՝ առէ ընթերցմն գրիգոր ,
այր այնպիսի՝ աւելածու տաճարին լինէր ,
և 'ի գործս նուաստութե զանձն կրթէր՝ յա
ճախագոյն աղօթիւք , զի իմաստասիրեսցէ
զխոնարհութին առ 'ի մաքրութի առաջնոյ ամ
բարտասանութին: Եւ յետ սակաւ ժամանակի
անցելոյ՝ 'ի կարգ դպրաց և պաշտօնէից եկե
ղեցւոյ ելանէր , և 'ի հոգևոր կարգացմունս
զինքն առաւել վարժէր . մինչև ընտրեալ 'ի
կարգ սարկաւագութե՝ ուսուցանել սկսաւ
զբազմաւթի ամ մեծամայն քարոզ քնի : Եւ
այն՝ որ յառաջին զլեզու իւր արարեալ էր գոր
ծի չարին 'ի հաւատուրականն սնոտի պերճութիս
և 'ի պատրանս մոլորութե , այժմ փող ամծա
յին յօրինէր զնոյն , և սուսեր հոգւոյն հա
տու , որ թափանցեալ 'ի սիրտ լսողաց՝ ձգէր
զհաստատեցեալս 'ի նորոգութն վարուց , և զան
հաւատս 'ի փարախն քնի . մինչ զի 'ի վախ
ճանել եպսին՝ միաբան հաւանութբ ամենե
ցուն կոչէին յառաջնորդութի եկեղեցւոյ զնա

լինքն

ինքն զԿիպրիանոս :

Սմին իւր գրէ Պոնտիոս , թէ յերկար լինի մի առ մի նշանակել զԱծ գովելի քաղաքավարութն Կիպրիանոսի . շատ լիցի ասել 'ի յայտարարութեն Ամին , զի այն ինչ նորոգ էր ընծայեալ քրի , և մատաղատունկ 'ի հաւատս , Ածային ընտրութք և հաճութեամբ Ամ ժողովրդեան ընտրեցաւ 'ի քահանայութիւն և յեպսութի . թէպէտև նա հնարեցաւ խոյս տալ՝ անարժան զանձն խոստովանելով , այլ խոնարհութի նր արժանի արար զնա այնմ աստիճանի . քանզի Ամ իրօք բռնացաւ ժողովուրդն , և կացոյց զնա եպս :

Ոչ գոյր չափ բարեպաշտութե նր և ողորմածութե . համարձակ էր 'ի յանդիմանել զանուղղայս , հեզ 'ի խրատել , քաղցր և հագեբուղխ 'ի վճռպութե , պատկառելի կերպարանօք , և գովելի բարուք : Յաւելուն վկայագիրք , թէ յորժամ նստաւ մեծն Կիպրիանոս յաթոռ հայրապետական , ձեռնադրեաց զՊք կոյսն Յուստիանէ 'ի սարկաւագուհի՝ կացուցանելով զնա մայր վանաց պարկեշտածողով կուսից : Այլ եղև 'ի ժամանակին յայնմիկ յարեաւ հալածումն յերկրաց Դեկոսի կայսեր ընդդէմ քրիստոնէութե ընդ Ամ տեղիս . և հեթանոսք՝ որք խեռայլին ընդ դարձն Կիպրիանոսի , խորհեցան ըմբռնել զնա և առաջի արկանել առիւծուց . յայնժամ երանելի հայրապետն 'ի ստիպելոյ եղբարց՝ և վն օգտի նց՝ զգուշացաւ անձին , և զօղեցաւ առ ժամանակ մի . որոյ վն ուխտ

եկե-

եկեղեցւոյն՝ որ 'ի հռովմ, սկսաւ գանգա-
տել զնմանէ՝ ոչ թէ անձ̃րունչ թողեալ իցէ
նորա զհօտ իւր յայնպիսում ժամանակի.
բայց կիպրիանոս ոչ դադարէր 'ի ձեռնտու
լինելոյ հաւատացելոց բանիւ և գրով։
Ընկաւ յաւուրսն յայնոսիկ յափրիկէ և ախտ
սրածութ̃ե (այն է ժանտախտ կամ մահտա-
րաժամ). վ̃ոյ եկեալ և ժողովեալ կիպրիա-
նոսի զառողջս 'ի հաւատացելոց՝ ազդու բա-
նիւք յորդորամիտս արար զն̃ս ձեռն տալ և
դարման տանել վտանգելոցն, և զա̃մ պէտս
հոգալ հիւանդաց և հոգեվարաց և վախճա-
նելոց։
Եւ ահա ը̃ դադարել սրածութ̃են ձեռն ար-
կին կռապաշտք, և տարան զհայրապետն
յատեան դատաւորին՝ որ եկեալ էր 'ի կար-
քեդոն հրամանաւ դեկոսի, վասն քննելոյ
զքրիստոնեայս. և սկսաւ դատաւորն փոր-
ձել զնա ազգի ազգի հրապուրանօք և խոստ-
մամբք դառնալ յառաջին դենն իւր և 'ի
պատիւ։ Պ̃խի ետ կիպրիանոս. եթէ այլ
ոք էր՝ որ փորձէրն զիս, և ես անգէտ լինէի
խաբէութ̃ե և մոլորութ̃ե ն̃ց, թերևս յու-
սալի էր քեզ որսալ զիս. այլ վ̃ն զի նա է
փորձիչն բանսարկու՝ որ չարեացապարտն է
ա̃մ մոլորութ̃եց, որոց ես յինքնին կանխաւ
քաջ գիտակ էի, և խորտակեցի զլուծ ն̃ց,
աւելորդ է այսու հետև փորձելդ ձեր զիս.
զի և չեն իսկ իրաւունք՝ զելեալն 'ի մոլորու-
թ̃է 'ի նոյն խորխորատ ընկենուլ. և անհր-
նարին է այժմ լինել. և քեզ չէր պարտ խորհել
զան-

զանհնարինս ։

Դատաւորն ասէ․ չարեաց պարտաւոր և արարիչ զմեզ ես ։ Կիպրիանոս ասէ․ չարեաց պարտաւոր սատանայ է, զոր դուքն պաշտէք․ որ նախանձեցաւ ընդ մարդոյն․ վասն զի յամ արարածս՝ միայն մարդն 'ի պատկեր Այ եղև․ և 'ի պատերազմիլ բանսարկուին ընդ մեզ՝ զնս ասպարէզ մեծ տարածեաց արարիչն․ զի Քս նմա պատերազմեալ՝ յաղթողք չարին երևեցին ; և բարիքն պսակեցին․ իսկ զօրագլուխ հաւատոց և գործոցն հանդիսի՝ նա ինքն Քս է փրկիչն մեր և Տր ։ Դատաւորն ասէ․ և զի՞արդ զմարդն Քս իբրև զԱծ պաշտէք․ Կիպրիանոս ասէ․ վասն զի բանն Այ էր մարդացեալ վասն մեր, որ և ընկալաւ չարչարանս վասն մեր․ զի հաղորդս արասցէ զմեզ Ածեղէն փառաց իւրոց՝ 'ի լինել անդ կցորդ չարչարանաց նորա և մահու ։

Սաստեաց դատաւորն և ասէ․ ո՛չ առնումք յանձն լսող լինել սնոտի բանից և կարկաչանացդ․ այլ առանց յապաղելոյ պա՛րտ է քեզ զոհել Ածոցն․ Կիպրիանոս ասէ․ մի ասեր զկուռսն Ածս՝ մոլորեալ կռապաշտութե՛ դիւացն ։ Զայրացեալ հրամայեաց դատաւորն զնա հարկանել զերեսն, և արկանել 'ի բանտ ։ Ապա ետ ունել և զՅուստինէ կոյսն, զի 'ի պատճառս նր եղև դարձն Կիպրիանոսի․ ուստի և ամ ամբոխն գիտէր․ և նոյնօրինակ փորձեալ և զնա՝ ետ պահել յառանձին բանտի ։ Իսկ յետ աւուրց հրամայեալ ածել զերկոսեանն զառաջեաւ՝ ատեանայր նոցա,

կամ

րեցաւ Տր. աստուածածնաս հռովմայ հայրապ
քեհյիւք և սարկաւագօք և ժողովրդ
ամ և ընդ այն քանտոստս՝ ընդ սարկաւա
խրատ սրբոյն լաւրենտիոսի :

Ընդ՝ յաւուրսն յայնսոսիկ բազում տառ
պանս կրեաց և սրբն կիպրիանոս հանդ
ափիւքն և ժողովրդեամբն ողջեալ՝ ի գ
նափոր դարադրոսս և՝ ի դամբարանս. և
՝ի չորրորդ հիւպատոսին վաղերիանոսի կ
մբ՝ յերրորդ աւուր կաղանդից սեպտեմ
բի, այն է յօգոստոսի. 30. յամի տն. 2
(այն ամ է ծննդեան սրբյն գրիգորի լու
սաւորչին մերոյ), պատերնաս ամս անթիհ
պատոս՝ դր փոխանակ բզեշխի յափրիկ
նստեալ յատեան խորհրդարանին կալ
դոնայ՝ ետ ածել առաջի իւր զկիպրիա
եպս. խօսել սկսաւ, և ասէ ցնա. Դու
ինքնակալքն վաղերիանոս և գաղիենոս
ժանի համարեցան գրել առ իս հրովարտ
յորում հրամայեն, թէ որոց ոչն պաշ
զհռովմայեցւոց զկրօնս, պարտ է զգա
նալ և դառնալ. արդ յոյզ և խնդիր ար
զանուանէ քումմէ. տեսից՝ զի՞նչ դու
պինի: Պատասխանի ետ սրբն կիպրիան
և ասէ. Քրիստոնեայ եմ, և եպիսկոպ
ոչ զայլ ած ճանաչեմ ամենևին, բայ
այն զմի և զճշմարիտն ած, որ արար զեր
և զերկիր, զծով, և զամ որ է՝ ի նս: Պ
ծյ ծառայեմք մեք քրիստոնեայքս. առ
աղօթեմք զցայգ և զցերեկ վս մեր և զ
ամ մրդկան, և վս կենացն նոցին ինքնակա

Ն Պ

Պատերնոս անթիհիպատն ասէ. արդ կա՞մ մնա՞ս յայդ կամս: Կիպրիանոս ասէ. անհըն-նարէ փոխիլ բարի կամաց՝ որ ճանաչէ զա̃ծ: Իշխանն ասէ. և արդ կարօ՞ղ ես թ̃գ հրամանի վաղերիանոսի և գաղիենոսի վտարանդի երթալ 'ի քաղաքն կուրուբացւոց: Կիպրիանոս ասէ. երթամ: Յայնժամ ասէ ցնա պատերնոս. ոչ միայն վ̃ն եպ̃սաց, այլև վ̃ն երիցանց արժան համարեցան գրել առ իս. արդ կամիմ գիտել 'ի քէն, թէ ո՞յք իցեն երիցունք՝ որք կան 'ի քաղաքի աստ:

Պատասխանի ետ կիպրիանոս. յօրէնս ձեր քաջ և օգտակար խորհրդով սահմանեցիք՝ չլինել՝ ուրեք մատնիչ. վ̃ն որոյ չկարեմ ես յայտնել և մատնել զնոսա. 'ի քա՛ղաքս իւրեանց գտանիցին ն̃ք: Իշխանն ասէ. ես այսօր յայսմ տեղւոջ պահանջեմ զն̃ս: Կիպրիանոս ասէ. իսկ որովհետև կարգ նոմոսաց ոչ թողացուցանէ՝ զի անձամբ զանձն մատնիցէ ոք, և քումդ իսկ կարծեաց դժպատեհ երևի բանդ, ոչ կարեն նոքա ինքնին անձնամատն լինել. այլ առ 'ի քէն յուզեսջիք գտցին: Պատերնոս անթիհիպատն ասէ. այո՛ յինէն գըտցին: Օ այս ասացեալ՝ 'ի վ̃ր եած. պատուիրեցին ևևս ինքնակալք, զի մի 'ի տեղիս ուրեք ժողովք լինիցին, և մի 'ի դամբարանս մտանիցեն. արդ եթէ ոք զայդ կենցաղօգուտ հրաման ոչ պահէ, գլխապա՛րտ եղիցի: Իսկ Կ̃ն ետ պ̃նի. արա՛ որ ինչ քեզ հրամայեալ է. յայնժամ եւ հրաման յիշխանէն տանել զնա 'ի տեղի աքսորանաց:

Բայց երանելին հայրապետն և յարտասահ-
մանութեան իւրում օգնական լինէր հաւատա-
ցելոց թղթովք, և սպառազինէր զամենե-
սին 'ի հանդէս խոստովանութեան և վկայական
մահուան. մինչև բազմաց աներկիւղ առա-
ջանձինս 'ի մարտիրոսութիւն. Բայց յայսպի-
սի աւուրս հրդեհի հալածանաց յարուցեալ
էր բանսարկուին և զայլ պատերազմ 'ի մէջ
եկեղեցւոյ. յորմէ և կիպրիանոս ոչ սակաւ
ծփանս կրեաց նախ քան զաքսորանս և յաք-
սորանս անդ. զի որովհետև բազումք 'ի հա-
լածանս կամայ և ակամայ զոհեալ էին կռոց,
խնդիր մեծ յարեաւ 'ի հռովմ և 'ի սահմանս
նր, թէ զինչ պարտ է առնել ընդ նս. քան-
զի ոմանք՝ ընդ նովատեանս կամ նաւատիա-
նոսս, հերձուածս յարուցեալ ասէին, թէ
չէ արժան ընդունել զնս յեկեղեցի ոչ՝ իբրև
անկեալս յանթողլի յանցանս. իսկ այլք՝
որպէս փելիկեանք, պնդէին՝ թէ անխտիր
պա՛րտ է ընդունել զամենեսին։

Բայց սբն կիպրիանոս (ընդ ըազօտ նշանակէ
պոնտիոս, և մեկն յիշատակեն ճառընտիրք
մեր,) և զայն ևս պատերազմ լուծանէր ընդ
հովուովն, ուսուցանելով զմիջինն գնալ ճա-
նապարհ. ոչ անխտրհրդաբար ընդունել զան-
կեալսն, և ոչ անգթութբ մերժել իսպառ.
և առ այս զպետրոս զմեծն հաւատոյ յառաջ
մատուցանէր՝ հիմն և կանոն եկեղեցւոյ, որ
և զփականս երկնից 'ի քսէ ընկալաւ, եթէ
զիա՛րդ յետ երիցս ուրացութեն՝ 'ի ձեռն ե-
րեցս խոստովանութեն սիրել զքս՝ անդրէն յա-
ռաւ.

ուղղին պատուիրանն եղանէր , հրաման առեալ
արձակել զոչխարս քոյի : Ո՛չ այն է , որք միան
գամ չարին պատրանօք պատրեալ` իբրև
յակամայս և առ՛ ահի տանջանաց անկան 'ի
Թակարդ դիւին , զնա պարտ է կշիռ ապաշ-
խարութեն արժանի առնել . իսկ որք ինքնա-
կամ մոլորութբ անդարձ իցեն 'ի չարիս` Թո-
ղուլ 'ի բաց իբրև անարժանս շնորհացն այ :
Նոյն և այլ ազգի ազգի խնդիրք 'ի ժամա-
նակին յայնմիկ . և յամի բարուք ընթանայր
երանելին Կիպրիանոս` միաձայն ընդ այլ եպիս-
կոպոսունս և ընդ հայրապետս մեծին հռով-
մայ . բայց միոյն գթէր , և օտարանայր 'ի
նոցանէ բանիւ և գրով , կրկին մկրտութ
կարօտ առնելով զմկրտեալսն 'ի հերձուա-
ծողաց , թէպէտև ընդ կարգի ուղղափառաց
եղեալ իցէ մկրտութիւն առ 'ի նոցանէ . ըստ
նմին և յայլ ինչ ինչ սովորութիս հռովմայեց-
ւոց ստզիւտ արկանէր` ձայնակցութբ փիր-
միլիանոսի եպիսկոպոսին կեսարու կապա-
դովկացւոց , ընդ որում ունէր թղթակցութի
ընտանի . նմին իրի և հռովմայեցիք պատ-
ճառս խնդրէին յընդվայր հարկանել զափրի-
կեցիս . այլ ոչ յերկարեցան այսպիսի գժտու-
թիւք և երկպառակութիւք . և Կիպրիանոս
զիւր սխալանսն արեամբ նահատակութեն
սրբէր` ընդ օգոստինոսի . զի յետ տարւոյ միոյ
աքսորանաց դարձաւ յաթոռ իւր , և կատա-
րեցաւ ընդ օրինակիս ընդ այսմիկ :

Ըստ գրելոյ պոնտիոսի սարկաւագի սբյն
Կիպրիանոսի` արտաքսահմանեցաւ 'ի քաղաքէ

բարերարն քաղաքի • այլ տեղւոյն աքսորանաց կուրութեամ՝ էր զուարճալի վայր ( անդ յափրեկէ ) • և Թէպէտև անպիտան լինէր տեղին , ( քանզի և յանարև դարափոս կմ՝ ի վիրապ իսկ արգելեալ ասի , ) պատուհական անուն ունի ստանալ , զի անդ եկաց կիպրիանոս • ուր և այց առնէին նմա բազումք , և ընթակիցք տեղւոյն բերէին նմ զամ պէտս : Ընդ նմա էի ասէ և ես • քանզի և զիս 'ի մէջ ընտանի բարձակցաց արժանի համարեցաւ սէր նր ընտրել իբրև աքսորեալ կամաւոր • երանի՛ Թէ և նահատակութեն առնէր ընտրելակից : Յառաջնում աւուր՝ յորում եղեաք 'ի տեղւոջն աքսորանաց , պատմեաց մեզ տեսիլ՝ ցուցեալ նմ յայ , եթէ հանդերձեալ է նահատակիլ • և ինքն 'ի տեսլեան անդ իբրև դիրէ 'ի տնէ՝ օր մի յապաղել զկատարումն : Արդ՝ որն նշանակ եղև տարւոյ • զի 'ի կատարիլ տարւոյն պսակեցաւ՝ յորում աւուր զտեսիլն ետես առնւ միով յառաջագոյն :

Իսկ եղև 'ի գալ ամին՝ 'ի փոխիլ իշխանութե ասպասիոսի պատերնոսի , եկն 'ի տեղի նր փոխանակ բդեշխի 'ի կարքեդոն գաղերիոս մաքսիմոս անթիհիւպատոս • և յայնժամ հրաման եղև կիպրիանոսի եկսի դառնալ 'ի տեղի իւր • ուր լուեալ նորա զկատարումն քսեստոսի նբյ քահանայապետին 'ի հռովմ , փափաքեալ ցանկայր և ինքն արժանի լինել այնմ երանելի վիճակի • և նստեալ 'ի պարտիզի իւրում՝ ուր ժողովեալ էին զնովաւ քահանայք և ժողովուրդք , խօսէր նց զբանն

նայ ,

նոյ , և յայտ առնէր զծարաւ սրտին առ նահատակութիւն : Յայնժամ սկսան յորդորել զնա բարեկամքն՝ ըստ առաջին օրինակի թաքուցանել զանձն , մինչև անցցէ մրրիկ հալածանաց , և ցուցանէին նմա տեղի թաքըստեան : Իսկ նա ոչ առնոյր յանձն , և քաջալերէր զնա ևս ՚ի համբերս մկայութեան . և ասէր . ըղձալի էր ինձ , զի այժմ յայսմ ժամու ՚ի խօսել իմում զայսոսիկ՝ եկեալ հատցեն զգլուխ իմ :

Իսկ ահա ՚ի միում յաւուրց յանկարծակի եկին ՚ի տուն եպսին զօրականք հանդերձ զօրավարաւ , և միւս ևս իշխանաւ . և կիպրիանոս ընառաջ ել նց զուարթութբ . և առեալ տարաւ զնա զօրավարն կառօք այն օր ՚ի տուն իւր արտաքոյ քաղաքին յաւանն սատուռնի , կամ կուռնասի : Իսկ եղև ը ժմ կարքեդոն , եթէ ըմբռնեցաւ անդրէն կիպրիանոս թակիւոս , և ընթացան զկնի նր բազմութիք քրիստոնէից և հեթանոսաց ՚ի տեսանել զկատարածն : Իսկ զօրավարն պատուով պահեաց զնա , զի երկնչէր ՚ի ժողովրդենէն . և թոյլ ետ իւրոցն՝ յորոց մի էր և սարկաւագն պոնտիոս , խօսակից լինել նմա և սեղանակից յայնմ գիշերի . իսկ ամբոխն կայր արտաքոյ և հսկէր , զի մի առանց գիտելոյ իւրեանց սպանցեն զհայրապետն : Տեսեալ նոյն զհամախմբուն բազմութն եղբարց՝ արանց և կանանց , պատուիրեաց նց պահել զաղջկունս . քանզի ամենեքեան յաւանի անդ առ դուռն օթևանի զօրավարին կային :

Ի վաղիւ՝ անդր առեալ տարան զսուրբն 'ի պրետ-
տորն, այս է յապարանս անթիհիւպատոսին՝
որ 'ի կալուածն սեքստեան. և մինչդեռ նորա
տէր իշխանն 'ի սրահն սաւկիոլայ, կացուցին
յատենի նորա զսուրբ եպիսկոպոսն : Եւ ցնա գաղերիոս
մաքսիմոս փոխանակ բդեշխին. դո՞ւ իցես
Թասկիոս կիպրիանոս : Սուրբն ասէ. ես եմ :
Դարձեալ եհարց իշխանն. դո՞ւ զքեզ իբրև
պապ ընծայեցուցեր սեղանակապուտ մարդ-
կանց : Սուրբն եւ ասէ. այո՛ ես : Իշխանն
ասէ. հրամայեցին քեզ սրբազան ինքնա-
կալքն՝ զոհել : Կիպրիանոս ասէ. ո՛չ առնեմ :
Արկանեաց անդրէն իշխանն. քա՛ջ խորհեսջիր
վասն անձին քո : Կիպրիանոս եպիսկոպոսն ետ պատասխանի.
արա՛ զոր քեզդ հրամայեցաւ. քանզի յայդ-
պիսի արդար բանի չի՛ք տեղի խորհելոյ :
Յայնժամ փոխանակ բդեշխին խօսեցեալ ընդ
ատենակալս իւր՝ բարբառեցաւ անդէն առ
նորին զդատակնիք մահու այսպիսի բանիւք.
Ի բազում ժամանակաց սեղանակապուտ մը-
տօք կեցեր, և զբազումս մարդկան միախոհ
եղելոց 'ի չարութիւն՝ առ քեզ կուտեցեր, և
թշնամի զքեզ աստուծոցն հռովմայեցւոց և մա-
քուր օրինաց կացուցեր. և ո՛չ իսկ զքեզ բա-
րեպաշտ և դիւցազնափայլ ինքնակալքն վա-
ղերիանոս և գաղիենոս սեբաստոսք, և վա-
ղերիանոս պատուական կեսար՝ 'ի պաշտօն
դիցն կարացին դարձուցանել : Այլ արդ. քանզի
զի զօտար առաջնորդ և դրօշակիր մեծեղեռն
վնասուց, լինի՛ր դու ինքն 'ի խրատ այնոցիկ՝
զորս ապիրատութեամբ քով առ քեզ գումարե-
ցեր.

ցեր . արեամբ քով հաստատեսցի կարգ օրի-
նացն ։ Զայս ասէր նա մտ դենի հռովմայ-
եցւոց . այլ արդեամբք ճշմարտէր 'ի վերայ
ճշմարիտ օրինացն ։ Նաև զայս ասացեալ իշ-
խանին՝ ընթերցաւ զվճիռն 'ի տախտակէ .
Զթաւկիոս կիպրիանոս սրով սպանանել
հաճոյ թուեցաւ ։ Եւ տրն 'ի մե եած . փառք
այ ։

Որպէս լուաւ ժողով հաւատացելոցն զդա-
տակնիքն , աղաղակէր ամ բազմութիւնն , և
մեք ը նմա գլխատեսցուք . այլ սպասաւորքն
վարեցին զնա 'ի բաց . և առեալ տանէին զկիպ-
րիանոս . և ամբոխ բազում գնաց զհետ նո-
րա՝ խառն ը բազմութե զօրականաց և հա-
րիւրապետաց և ազգապետաց . մինչև հասին
'ի տեղի կատարման յագարակն սեքստեայ ,
որ էր տեղի ծառախիտ և վայելուչ . և այն-
չափ էր յաճախութի ամբոխին , մինչև առ
չքաւել տեղւոյն՝ բազումք 'ի վերայ ծառոց
ելանէին 'ի տեսանել զնահատակութի առն
մեծի ։

Յայնժամ ինքնին 'ի բաց եդեալ սքյ եպսին
յանձնէ զհանդերձս իւր՝ եդ ծունր յերկիր ,
և տարածեաց զանձն յաղօթս առաջի տն .
մերկացաւ ապա և զբաճկոնն , և ետ ցսար-
կաւագունս . և մնաց ինքն սոսկ կտաւովն . և
սպասէր դահճին ։ Եւ իբրև եկն դահիճն ,
հրամայեաց իւրոցն՝ տալ նմա քսան և հինգ
ոսկի 'ի պարգևս . և 'ի դանդաղել նորա 'ի
գործն՝ ինքնին կիպրիանոս խնդրեաց վարշա-
մակս և ձեռնոցս յեղբարց , և իւրովի կա-

 պեաց

պեաց զաչս իւր. և զի ոչ կարէր ինքնին կա-
պել և զձեռս իւր, հրամանս ետ և եկին կա-
պեցին յաւելմանս երեց և յաւելմանս կիսա-
տարկաւագն. յայնժամ մատեաւ զահիմն;
և եհատ զգլուխ սրբոյն։

Այնպէս նահատակեցաւ Տր. հայրապետն կիպրիանոս յամի տն 257. 'ի ԺԸ. կաղան-գիցն հոկտեմբերի. տն 'ի 14. աւուր սեպ-տեմբերի, յաւուրս վաղերիանոսի կայսեր.
* Այնպէս կատարեալ նահատակութ͞բ կա-
„ տարեցաւ (ասէ պոնտիոս ակնատես վը-
„ կայ), զի կիպրիանոս՝ այն, որ ամ բարեաց
„ օրինակ լեալ էր, նախ զքահանայական
„ պսակս յափրիկէ ինքն զառաջինն արիւնե-
„ բանեց յօրինեացէ, քանզի և այնպիսի եղև
„ ինքն նախ զկնի առաքելոց. զի յորմէ հե-
„ տէ 'ի Թիւ արկանի կարգ եպսութեն կար-
„ քեդոնայ, ոչ երբէք այլ ոք՝ Թէպէտև 'ի
„ գովելի քահանայից՝ յիշատակի եկեալ 'ի
„ մարտիրոսութն ||։

Իսկ մարմինն Տրյ վկայիցն՝ էր աւանդեալ չէին վկայաբանին, առ ժամն եղաւ 'ի մօտաւոր վայրի՝ 'ի պատրել զաչս անօրինին հեթանո-սաց. այլ յետոյ բարձեալ անտի գիշերայն 'ի հաւատացելոց մոմեղինօք և լապտերօք՝ մեծաւ ուխտիւ և յաղթանակաւ տարաւ 'ի կալուածն մակրոպիոսի կանդիտիանոսի դա-տակալին, որ է 'ի մատպաւեան ճանապար-հի՝ մօտ յաւազանս։ Այլ ոմք գրեն՝ Թէ 'ի միասին կատարեցաւ յայնժամ և Տր. կոյան յուստիանէ, էլ որս և Թէոկզիստոս ամն վկայ,
ասեն՝

„ բարեհամբաւութեն կատարելագոյնք . . . Եւ զի որ
„ 'ի մեծլուցիս է՝ հասեալ 'ի բաց (գր. զանց առնեմ յիշել
„ զոր 'ի գարձին), զընչիցն զարհամարհանս, զամբար-
„ տաւանութեն զկործանումն, զմարմնոյն զզաստիա-
„ րակութիւն . . . զգեանախշտութիւս, զազնուէս. յորս
„ Թեպէտև այնքան անապաննուասումն էր, յոյժ սաստ-
„ կութե քան զնախատամաննեալն զբրանայր. 'ի բանսն
„ զաստուածն, որով զբարսն զնմ խրատէր, և յանհան-
„ ճար աղանդոցն մաքրէր, և զորանցն վարս զարդա-
„ րէր . . . . զի զայսոսիկ համառօտեցից յաղագս ան-
„ չափուէ, յոքնեկնոցն վախճանի տւարտեցից զբանս։
„ Մոլէր հակառակ մեզ գեկիօս (այն է գեկոս կայսր),
„ և զնմ զօրինակ տանջանացն խմանայր (գր. զմտաւ ա-
„ ծէր) . . . . կամ զքրիստոնեայս զամենեսեան, և կամ
„ զկռապրիանոս միայն ըմբռնել և մերձ կացուցանել. զի
„ որքան բարեպաշտուն և փառօք վայելչացեալ զայրն
„ ճանաչէր, զնոյնքան և զյաղթութիւն՝ ինքեան երևե-
„ լագոյն անսանէր և պայծառագոյն, եթէ նմա յաղ-
„ թիցէ. և նովաւ միայնով քրիստոնէից ամենեցուն
„ յաղթող գտանիլ. և այնպէս նմին ինքեան խմաստա-
„ սիրութեն և բանիցն զեզզուն հասանել յառաջագոյն.
„ աղա անձայնս 'ի բաց տանել և անբանս զ'ի նմանէ
„ հաստատեալսն՝ քաջ զօրավարութեն կարծէր լինել
„ գործ . . . Եւ իբրև զնմ զմարմն և զփորձութին այ-
„ րոյս և առաքինութեն արտաքս մերժեաց՝ իբր վէմ
„ ինչ 'ի ծովեզերս զալեացն զ'ի վերայ ընթացսն, վախճան՝.
„ (գր. 'ի վախճանի) արտաքս քան զասհմանս հանել զնա
„ գաստապարանաց (գր. աքսորեաց) . . . . Եւ յաղագս
„ այնորիկ՝ մարմնովն հեռի էր ('ի հօտէն), բայց հոգ-
„ ւովն մերձ. և ընդ նահատակեալսն նահատակէր. և
„ լեզուաւն օգնել ոչ ունէր, օգնէր գրովն . . . . և
„ այնպէս զինէր բանիւք առ հանդէսն. բազում նա-
„ հատակս գործէր. զմր վարձ առնուցու իբրև զառաս
„ և զպատուասէր (գր. պատուասիրօղ այլոց)։ Վասյ,
„ 'ի վերայ ամենեցունց՝ զօրս կանխաւն առաքեաց, լինի.
„ որով զլուխն հասանել, և յոլովից տանջանացն զայն
„ 'ի վերայ դնէ աւարտ։ Այնպէս քնի ընծայի, այնպէս
„ առ քն ամբարի. որ յոլով էր յամպարշտութեն, և
„ յոլովագոյն ևս 'ի բարեպաշտութեն, կիպրիանոս մեծ
„ և հալածիչ և պսակաւոր . . . . Մարմնն անյայտ
„ էր, և գանձն առ ումեմն առաքինեաց . . . և յորժամ
„ ա՛չ ներէր զամենեցուն բարեն առանձինն առնել ու-

քրիստոնէից ։ Իսկ 'ի չծ՟. ստորագրէ զսաստկին և զմեր_
ջին մկրտանն նր' այսպէս. * Կատարումն (ասէ) տօնախմբ_
„ թութն մկայից' պարտի լինել նախանձաւորութ ստա_
„ քինութեանն. գիւրին է զպատիւ մկայիցն հաւաքել.
„ գործ է հաւատոց և համբերութե մկային լինել նմա_
„ նօղ ։ Այնպէս արասցուք զմին, զի միաւուան փափա_
„ քեսցուք. այնպէս կատարեսցուք զմին, զի զմիւսն
„ յաւէտ ստրեսցուք . . . Ցորդեալ են յՅիսւ յայտնի
„ մոլորութիւք և արհաւիրք. (լա. Էտասճէս, Էտ տէտած_
„ րէս.) երանելի մկայս խմաստութ՟' մոլորութեց յաղթեաց,
„ համբերութ՟' արհաւրաց ։ Մեծ էր' զոր արարին.
„ զասւին զհետ երթալով ստիւծու յաղթեաց . . . . . .
„ Ջանկլիս զայս' այսչափ սբ, ուր անկեալ գնի մարմին
„ այնպիսի սբյ մկայի, զայսպիսի ՌՊ աեղի աստ մ գրաւել
„ անէր, ոտ յերկն' որք բազմամեկեայ են ս՟ուրբք,
„ ժամասախտ և չար ախտ կռքաւուչաց ։ Այլ յորժամ
„ կամեցաւ եծ' 'ի ձեռն ՌՊ եղբօրս մերոյ եպիսկ. ձե_
„ րոյ, յորմէհետէ սկսան կատարել աստ ՌՊ հոկմունս,
„ ժամասախտն այն սա. ժամ մի ՌՊ դխմութեն կրեալ' սե_
„ զի եա ապա արթնութեն, և պատկառեաց յերեսաց
„ խմաստութեն . . . .
„ Ցանկութիւն' ոչինչ բարի կարէ ծնանել, սէրն' և ոչ
„ մի ինչ չար ։ Այլ սոփ, և զօմի (լաւն), և ոչ ռք փո_
„ խի ('ի լաւ անգր), Քաւ լիցի. ոչ է Ճշմարիտ' զոր
„ ասացիք ։ Փոխեցան ձկնորսք. փոխեցան յերամս և բա_
„ զումք 'ի ոինկղխոտիկոս արանց. փոխեցաւ կիպրիանոս,
„ զորոյ այսօր զյիշատակն համախմբեալ տօնեմք ։ Ինքն
„ գրէ, ինքն մկայէ, թէ որպիսի կեանս ունէր երբեմն,
„ որչափ ապիրատ, որչափ անպարկեշտ, որչափ անար_
„ ժան և գարշ ։ Լոճաւ զնոճագոզն, (թէ փոքս հարաք
„ ձեզ), և ընծայեաց զանձն ոչ մարմնով, այլ' մտօք,
„ 'ի կռքաւել. յարմարեաց զանձն' բարի նոճագի,
„ յարմարեաց նոր երգոյն. յարմարեաց, սերեաց, հա_
„ նապազորդեաց, պատերազմեցաւ, յաղթեաց ։ Այլ
„ ասէք. ժամանակս չար է . . . բարւոք կացէք, և բա_
„ րի կենօք փոխէք զժամանակն. փոխեցէք զժամանակն,
„ և ոչ միայ ձեզ սեղի քրիստոնէից . . . ոչ ունէք մխա_
„ սեաց ժամանակն. որք մխաւսին' մարդիկ են, և յո_
„ րոց մխաւսին' մարդիկ են ։

Այսպէս և 'ի չորրորդ ճառն, որ է շձէ. ասէ վմ՟ սենյն
կիպրիանոսի. * 'ի մր պարծեսցի անձն նորա . . . զի
„ տեսանցն ՌՊ երբեմն եբեւ մեռեալ, խաւարին, ոգէս,
„ և

մրցման անարժան և դարշ ||. որ է ոմն թէ պարզաբա-
նութիւն այնր գրուածոյ՝ որ յանուն Կիպրիանոսի երբեմն
կախարդի ։

Երկրորդ՝ երկրորդական վարք Կիպրիանոսի հիմնեալ՝ի
վր նորին անստոյգ գրոց խոստովանութեն նր, և տարա-
ծեալ՝ի մէջ յունաց և հայոց՝ զկնի աւուրց ամաբանին
դրիգորի. այն է գործ Եւդոկիայ Թագուհւոյն (քեան
Թէոդոսի կայսեր փոքու). զոր Ճոխագոյն քաղէ՝ աւանդ
Է բանս ինչ ածելոյ. փոտ 'ի մատենագր. ճձդ. ջղի սաէ,
կան երեք գիրք Եւդոկիայ ոտանաւոր 'ի գովեստ սրբոյն
Կիպրիանոսի եպսի և վկայի. ուր 'ի Ա. գիրս ճառէ ըզ-
յուստիանեայ կուսէ, թէ որպէս պատճառ եղև դար-
ձի Կիպրիանոսի կախարդի. արդ այս մասն պատմուե
արդարանայ՝ ը որում զգրեալսն յածաբանէ երկրորդէ
Եւդոկիա, թէպէտև Է լայնելով քերթողաբար ։

* Իսկ երկրորդ գիրքն (ասէ փոտ) սկիզբն առնէ ան-
,, դաւոին 'ի մատաղ հասակէ Կիպրիանոսի, թէ որպէս
,, ինքնին պատմէ զփոյթ իւր 'ի պաշտօն դից և դիւաց,
,, և զցանկութի և զջանս յուսուցմ արուեստի մոգութ.
,, և թէ զինչ ինչ ուսեալ իցէ վճ արմատոց այլևայլ
,, բուսոց, և բարուց անասնոց, և տեսօղ լեալ պէսպէս
,, երևութից դիւաց .... Եւ յերեսներորդ ամ հասա-
,, կի իւրոյ հասեալ՝ գնաց առ քաղդէացիս ... և թէ՝
,, յորժամ յետս եկաց 'ի պաշտամանէ դիւաց, ապա-
,, նայր նմ՝ չարն, և իբր անյոյս 'ի կենաց առնէր զնա ...
,, վճյ արտասուօք զծնօտս թացեալ՝ յիշատակաւ ապի-
,, րատ գործոցն յուսահատ լինէր արդեօք 'ի փրկուէ,
,, եթէ ոչ եւսեբիոս ոմն (որ թարգմանի բարեպաշտ)
,, բարեպաշտուե և ապաշխարութե առաջնորդ ընտիր՝
,, բանիւք Սբ գրոց և հոգևորական պատմութբք փա-
,, րատեալ զմառախուղ անյուսութե՝ լուսաւորեալ էր
,, զնա պայծառ շառաւիղօք յուսոյ ||. ԱՆ ։ Արդ այս
մասն՝ է քաղուած անստոյգ գրոց, որ կոչի խոստովա-
նութե Կիպրիանոսի. բայց քանզի ունի հիմն և 'ի բուն
բանից մեծին Կիպրիանոսի, ոմն և 'ի վկայուեց ամաբա-
նին և պրուդենտիոսի եւ, ը այնմ մասին է Էունելի՝
ը որում միաձայնի Է նմ, և ոչ յայնս՝ յորս երեւի խա-
տորիլ ։

* Իսկ յերրորդ գիրսն (ասէ դարձեալ փոտ) բովանդա-
,, կի մարտիրոսուեի երանելւոյն Կիպրիանոսի և հրա-
,, շագեղ կուսին յուստինեայ, որք վկայեցին յաւուրս
,, իշխանուե հալածչացն՝ դիոկղետիանոսի և մաք-

 ,, սի-

„ սրմիանոսի ( փխկ գրելոյ՝ գեկոսի և վաղերիանոսի )
„ երկոքին 'ի միասին հասեալ 'ի նահատակութիւն. կիպ–
„ րիանոս յանտիոքայ գոլով ( փխկ կոչելոյ՝ կիպրիա–
„ նոս Թասկիոս)՝. զորոյ և յետ անԹիմոսի զքահանայա–
„ պետական աԹոռն հովուէեաց. իսկ յուստինանէ 'ի դա–
„ մասկոսէ ( որ չփոԹեալ է ընդ այլ քաղաքի ). քանզի
„ անդր եկեալ յանտիոքայ՝ յայտնապէս քարոզեաց զքն։
„ Եւ իբրև ըմբռնեցան, և ինչ ոչ շարժեցան 'ի բանից
„ սոն ամպարշտի, կիպրիանոս կապեալ 'ի բարձր կա–
„ խաղան՝ քերանս Ճռւնի 'ի կողսն, և յուստինանէ առ–
„ ջառաջեալ հարկանի. և տեսեալ բռնաւորին զանդրդ–
„ ուէլի միտս նց՝ 'ի բանտ արկանէ զնս ուրոյն ուրոյն։
„ Այսպ կոչեալ զնս, և բանիւք ոչինչ օգտեալ, էարկ
„ զվկայսն ոճն 'ի տապակ պղնձի, որ ձիւԹով. ճարպով և
„ մոմով խառնեալ էր, և սաստիկ հրով բորբոքեալ։ Եւ
„ յորժամ նահատակքն քաջութբ համբերեցին այնմ տան–
„ ջանաց, մանաւանդ Թէ իբրև 'ի մէջ ցօղոյ ուրախութբ
„ օրհնէին զած՝ վն գէր 'ի վերայ լինելոյ տանջանացն,
„ աԹանասիոս ոմն Թշուառականն՝ քուրմն դիւաց, և
„ երբեմն ընտանի ծծայնոյն կիպրիանոսի և համախոհ
„ նորին, տեսեալ Թէ նա սրբ. արութբ տանի տանջա–
„ նաց դառնաւորին, կայր մօտ յանդգնեցաւ՝ զգիս իւր
„ յօգնութն կարգալով՝ մտանել 'ի հուր անդր. և այն
„ ինչ փոքրկացուցանել խորհէր զսքանչելիսն՝ ոչ Թէ և
„ ինքն ունի ժուժել անվնաս, առաւել մեծացոյց զայն.
„ քանզի նոյնժամայն ծախեալ 'ի հրոյ՝ յածիւն դար–
„ ձաւ։ Այսպ 'ի վարանս անկեալ դառնաւորին՝ եդ. 'ի
„ մտի առաքել զվկայսն առ դիոկղետիանոս, գրեալ և
„ զոր ինչ կրեցինն. և Թէ զիարդ յաղԹեցին նմ տան–
„ ջանաց։ Եւ նորա 'ի վՐ հասեալ իրացն 'ի նիկոմիդիա՝
„ հրամանեա գլխատել զվկայսն մօտ 'ի մերձակայ գետն՝
„ գաղղոս կոչեցեալ. Ը սրս 'ի նմին պահու և Թէոկ–
„ տիստոս մարտիրոս երևեցաւ, նշանակ բարեպաշտու–
„ Թեն ցուցեալ զողջունելն զվկայսն ած։ Իսկ զնշխարս
„ սբցն նաւավարք ոմանք 'ի ժամուն եկեալք 'ի հռով–
„ մայ, որոց ծանօթ էր և Թէոկտիստոս վկայն, բար–
„ ձին գաղտ 'ի պահապանաց, և առեալ տարան 'ի հռովմ։
„ ուր և տաճար գեղեցկաշէն կանգնեցաւ նց՝ մերձ 'ի
„ հրապարակն կղոդիոսի, 'ի ձեռն հռուփինայ բարե–
„ պաշտօնահոն տիկնոջ, որոյ զարմն արենակից էր կղո–
„ դեայ ( կայսեր ). և այս են՝ որ ինչ յերբորդ գիրսն
„ դասանին ||։

Եւ

Եւ ահա այս գիրք Եւդոկիայ՝ յորում սակաւ է համա-
ձայնութն ը̄ ածաբանի, և ը̄ հարազատ վկայաբանութ-
մեծին Կիպրիանոսի, և բազում տարաձայնութիւն, 'ի
խառն և յանստոյգ աւանդից զօդեալ. եղև քար գայ-
թակղութ յետնոց. զի թէպէտև Մետափրաստէս և Ճառ-
ընտիրք մեր ջանացան միաբանել զայսոսիկ ը̄ ածաբա-
նի և ը̄ բուն վկայաբանութն, և ուղղագրեցին բազ-
մօք՝ զանուն կայսեր և քաղաքի ևն. բայց մնաց չփոթ
առոյգն ը̄ անստուգութն. իսկ յետինք լատինացւոց՝
առոյգ համարել և զանառոյգն կմ զսուտն, երկու Կիպ-
րիանոսս որոշեցին. վսյ և զնախնի մատենագիրս բստու-
դարանս՝ իշխեցին դատել իբրև խառնակիչս երկուց Կի-
պրիանոսաց 'ի մի. այլ մեք անդրէն միացուցանել հարկ
համարեցաք, թէ կարի զատուցեալ բանս 'ի մի բովան-
դակելով 'ի վկայաբանութեն միոյ և մեծի վկային՝ Կի-
պրիանոսի եպսի. որ հալածեցաւ առ Դեկոսիւ, և գըլ-
խատեցաւ առ Վաղերիանոսիւ. որպ և Հերոնիմոս յիշէ 'ի
վարս Պօղոսի անապատականի, ևս և 'ի Ֆ. Գէ. յուլիանու :





# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոց Քառասուն եւ հինգ վկայիցն, որ 'ի Նիկոպօլիս փոքուն Հայոց:

Հ. յուլիսի 9. եւ 10. եւ 12: Յ. եւ Լ. յուլ. 10: Բոլլանդեանն դնին 'ի Ֆ. հատ. յուլ. եր. 35 = 47: եւ այլն: (1)

ՆԱՀԱՏԱԿՔ ԱՌԱ-քինիք՝ Քառասուն եւ երեք զօրականք յորս յաւելան 'ի ժամ կատարման եւ երկու պահապանք, եւ եղեն համախումբ քառասուն եւ հինգ վկայք, էին զինուորեալք 'ի կայսերական գունդն՝ որ կոչիւր Լեգէոն Հայոց, 'ի Նիկոպօլիս քաղաք՝ որ 'ի փոքրն Հայս, 'ի ժամանակս կայսերութեն Լիկինիանոսի ամպարշտին. այն՝ որ օտարացեալ էր 'ի բարեկամութէ Տրդատայ մեծի Հայոց արքայի. եւ 'ի հանել իւրում զհալածանս ընդէմ հաւատացելոց՝ որք կային ընդ իշխանութ. իւրով յարեւելս, առանձին թշնամութի ցուցանէր եւ ընդ Հայս վս քրիստոնէութե նոցա: Արդ՝ անօրէնն Լիւսիաս կամ Լուսիաս դուքս արեւելից, այն՝ որ էր նահատակել զքառասուն մանկունս 'ի ձեռն Ագրիկողայոսի դատաւորի 'ի սե-

սեբաստիա, և զայլ վկայս յամասիա և յայլ
ևս քաղաքս, եկեալ և 'ի քաղաքն նիկոպօ-
լիս՝ յայտ արար արքունի հրովարտակաւ, զի
որ միանգամ քրիստոնեայ գտանիցին, կամ
դարձցին 'ի պաշտօն կռոց, և կամ տանջա-
նօք և մահուամբ 'ի միջոյ բարձցին:
Ապա խնդիր արարեալ 'ի մէջ լեգէոնին հայ-
ոց՝ եգիտ արս թուով քառասուն և երեք,
որք աներկիւղ զանձինս քրիստոնեայս խոս-
տովանէին. և գլխաւորք 'ի նմ՝ զղևոնդիոս,
սիսիանոս (կամ սիսինիոս), մաւրիկիոս
(կմ մօրիկ), դանիէլ, անտոնիոս, և անիկ-
տոս, որք պատուականք յերևելի տանէ, և
տեղեակք գրոց: Իբրև յանդիման եղեն սք̃
առհասարակ յատեան դքսին, հայեցեալ լու-
սիայ ի̃ը վայելչուչ գեղ հասակի և կերպարա-
նաց նոցա, եհարց զնս, և ասէ. ուստի՞ էք
դուք, և ո՞ ուսոյց ձեզ չպաշտել զդիսն մե-
րինս, և չզոհել նոցա:
Յառաջ մատեաւ քաջն ղևոնդիոս. ետ պ̃խնի
'ի դիմաց բոլորիցն, և ասէ. մեք ամենեքին՝
քրիստոնեայք եմք. և ցուցեալ մատամբ զա-
մանս 'ի գլխաւորացն՝ ասէ. ոմանք 'ի մէնջ
բնիկ 'ի քաղաքէ աստի եմք, և այլք 'ի մեր-
ձակայ սահմանաց քաղաքիս. այլ մեր ամե-
նեցուն հայրենիք երկնայինն՝ մի է. և հայր
մեր երկնաւոր՝ քն̃. և նա ինքն ուսոյց մեզ
չպաշտել զկուռսն համերս և կոյրս, և ո՛չ
երկիրպագանել ձեռագործաց մարդկան:
Լուսիաս ասէ. և ո՞ւր է քո՞ն. ո՞չ նա խաչեցաւ
և մեռաւ: Ղևոնդիոս ասէ. մի՞ զմեռանիլն
միայն

միայն լսեր, այլ 'ի միտ առ, զի և յարեաւ, և կենդանի է յերկինս. քանզի եկն և մեռաւ վս մեր, և անդրէն յարեաւ ած որդի այ կենդանւոյ: Հեգնել սկսաւ դուքսն, և ասէ. մինչ ցայս վայր ապրի՞, և կա՞յ կենդանի: Ասէ եւ սրբն Ղեւոնդիոս. ո՛վ Լիւսիաս՝ ձեր ածքն մեռեալք՝ ոչ ևս կեան. իսկ տրն մեր և ած՝ որ աջով իւրով արար և պահէ զերկինս և զերկիր, զծով, և զամ մարդիկ, յանձն էառ մեռանիլ վս մեր, զի զմեզ ազատեսցուսցէ 'ի կռոցն պաշտելութենէ. որ և ուսոյցն մեզ մեռանիլ վն նորա. զի և մեք մեռանելով ըն նմա՝ ընդ նմին և կենդանասցուք:

Դարձեալ ասէ Լիւսիաս. ո՞չ ապաքէն երկատասան ածք են երկնաւորք. և դու զո՞ այլ ասես ած՝ երկնի և երկրի և ծովու արարիչ: Ասէ Ղեւոնդիոս. իսկ արդ՝ ո՞յք այն ածք իցեն ձեր: Դատաւորն ասէ. Արամազդ, և Ապողոն, և Ասկղեպիոս, այլովքն հանդերձ՝ զորս տիեզերք ամ պաշտեն: Ծիծաղեցաւ Ղեւոնդիոս, և ասէ. և մինչ ած իցէ Արամազդ, որոյ յայտնի են գործք իւր անարժանք: Ծայրացաւ դատաւորն, և ասէ. ո՞հ, մոլեհայհոյիչ դու. ո՞չ գիտես զի նա է՝ որ կրէ զերկինս, և հայր է մարդկան և ածոց: Ետ պխնի Ղեւոնդիոս. եթէ ած իցէ Արամազդ, ապաքէն և ամի կարող է, և ձեռամբ իւր վրէժխնդրութեան կարօտի ո՞չ՝ ըդէմ չպաշտողաց իւրոց. եթէ ած էր նա, պարտ էր նմա ամիւ արդար լինել և չարատեաց,

ա-

ատեցող և ոչ սիրող չնութեան, պոռնկութեան
և մծղնէութեան. պատերազմատեաց, և խա-
ղաղասէր. քանզի հարկ է ոչ ամիրէ կատա-
րեալ լինել, ապենիազ, և անմեղանչական.
զի թէ մեղուցեալ է անձն ձեր, որպ լսեմք,
ապա մեղաւոր է. և այլում պէտս ունի ոչ
անմեղի՝ առ 'ի սրբելոյ զնա 'ի մեղաց։
Յայնժամ սաստեաց դուքսն լի բարկութեամբ,
և ասէ. դու գտար դատախազ անձոցն իրա-
ւանց՝ այ չարագլուխ. երդուեալ 'ի կենաց
անձոց և իմ, զի չարաչար կորուսից զձեզ։
Ասէ իմաստունն Ղևոնդիոս. մի զայրացնիր
ընդ ճշմարտութեան լուր. օրէնք եդան 'ի վերայ ամ
մարդոյ բանական և բնաւորական՝ չմերձե-
նալ 'ի կին օտար, 'ի բաց կալ յագզգապղծու-
թէն, մի սիրել զկաշառ, և չառնել ումեք չար.
եթէ պահապանս Ծի կարգաս զդիս, պարտ
էր նոցա առաւել խաղաղասէր լինել և խաղա-
ղարար, և բարերար առ պաշտօնասէրս. ա-
պա եթէ գլուխ անձոցն ձերոց զընդդէմն գոր-
ծեաց օրինաց, ապա զմարդիկ յօրինազան-
ցութիւն կրթէ. և կամ թէ անձն ձեր օրինակ
չարութեան աս 'ի մարդկանէ առեալ՝ նմանն
նոյին գործէ. և եթէ օրինազանցքն 'ի մարդ-
կանէ՝ պատժապարտ և մահապարտ իցեն,
որչափ պատժոյ և մահու չիցեն պարտական
անձքն ձեր օրինազանցք. թող զի յոլովք 'ի
մարդկանէ պահեն զանձինս յայդպիսեաց
աստի պղծութեանց, և արդարք կոչին. յայտ
է ապա, եթէ պարկեշտ մարդիկն լաւ եւս
են քան զխառնագնաց դիս ձեր. և եթէ
սուտ

տուաւ ինչ խոստեցայ , ասէր վկայութիւն . ապա
թէ ոչ՝ գիտեա՛, զի դիք ձեր չե՛ն ածք , այլ՝
դեք չարագործք ։

Յայնժամ սրբն Դանիէլ գովեաց զսրբն Ղեւոն-
դիոս , և ասէ . բարւո՛ք ասացեր հա՛յր , և
պատասխանդեալ զօրացուցեր զմեզ առհասա-
րակ ։ Իսկ դատաւորն սրտմտեալ՝ ասէ ցղեւոն-
դիոս . ո՛վ չարագլուխ և անմիտ , ո՞չ ահա ածն
ձեր 'ի խաչ ել իբրև չարագործ . և ո՞ յածոց
մերոց 'ի խաչ ելեալ իցէ ։ Պանի ետ սրբն
ղեւոնդիոս . արդա՛րև խաչեցաւ ածն մեր ,
որոյ փա՟ և պարծիմք իսկ 'ի խաչն նր , որում
ոչ կարեն դիմակաց լինել ի՞նչք դիքն ձեր .
քանզի կամեցեալ քնի ազատել զմարդիկ
յանածա մոլորութենէ անտի զօրացելոյ՝ ինքն
իշխանութբ ետ զանձն 'ի ձեռս հրէից , որք
և նախանձայնեալ էր 'ի ձեռն ծառայից իւ-
րոց մարգարէից , զի խաչիւն իւրով լուծցէ
զնախամարդոյն պատուիրանազանցութի ,
և իջանելով 'ի ստորինս՝ ազատեսցէ զհոգիս ,
և յարութի մեզ պարգևեսցէ յարութբ իւրով ։
Իսկ դիքն ձեր զի՞նչ . աւադիկ արամազդ
դիմովքն առ անառակութեանն կարապ ասն
լինել և ցուլ և սողուն . արդ՝ ո՞ր առաւել
գովելի իցէ . մարդասիրելն այս 'ի ձեռակերտ
իւր , և զանկեալն 'ի մեղս յարուցանել՝ կա-
մաւոր խոնարհութբ մեռանելով փնր և յառ-
նելով անդրէն , եթէ յանառակութիւս և 'ի
ցանկութիւս շաղիլ 'ի նմանութի անբանից և
սողնոց և թռչնոց . թո՛ղ և զապողոն ածն
ձեր , շանթահար մեռեալ՝ ի ձերոց փիլիսո-
սո-

ստուածութեց . ո՛չ և Ասկղեպիոս և Հերակլէս նոյնօրինակ երկնաւորք հրով ծախեցան . զի
չէին Ածք , այլ խաբեբայք :

Յայնժամ չհանդուրժեալ դատաւորին՝ ասէ ցերկուսն . հարէք քարամբք զդոցա բերանս , ուստի ել հայհոյութիւն ընդդէմ Ածոցն : Եւ իբրև հարկանէին զնոսա , ասէին ումանք ՚ի նահատակաց ցբռնաւորն . հարկանելո՞ց է դէմք Ած՝ պաշտօնեայց սատանայի . քանզի լուեալ զճշմարտութիւն՝ գտաք ապրեալ ամբարշտութե : Իսկ սրբն Ղևոնդիոս ասէ ցընկերս իւր . Եղբարք մի՛ անիծանէք զինքեանն անիծեալս , այլ առաւել օրհնեցէք . քանզի այսպէս գրեալ է . օրհնեցէք զհալածիչս ձեր , օրհնեցէք , և մի՛ անիծանէք : Զայս լուեալ դատաւորին՝ սկսաւ ողոքանօք խօսել , և ասէ . Ղևոնդիէ , երդուեալ իմ ՚ի գլխս , զի թէ անսայք ինձ և զոհէք , զոր ինչ և կամիք՝ տաց ձեզ . քանզի ցայս վայր երկայնամիտ եղէ առ ձեզ , ակնունելով՝ եթէ ՚ի զգաստութի փոխիջիք . ապա եթէ անսաստ զըտանիք ինքնակոլաց , և չառնուք յանձն զոհել գիտ յօշ յօշ կոտորեցից զձեզ , և արկից ՚ի կերակուր ագռաւուց և շանց . և ինչ ոչ օգտեսցէ ձեզ յամառութիդ՝ մանաւանդ թէ յիմարութիդ ձեր : Իսկ պինտ սրբն Անատոնիոս , և ասէ . որո՞ց Ածոց հրամայես մեզ զոհել : Ուսխաս ասէ . զոհեցէք Արամազդայ և Ապողոնի : Իսկ սրբքն միաբան ծաղր արարին զդիսն . և սրբն Ղևոնդիոս ՚ի վերայ եհաս . բարւոք կոչէք զԱծն ձեր Ապողոն , այն է կորստական . որ

և

և ոչ զանձն գիտաց պահել. ո՞չ և դուք իսկ լինիք խոստովան:

Յայնժամ շառաւադունեալ դատաւորին՝ հրաման ետ ցասմամբ մեծաւ՝ կապել վաղվաղակի երկաթեօք զձեռս և զոտս նց̅, և ծանր ծանր շղթայիւք բանտարգել առնել զնոսա 'ի հարաւակողմեան աշտարակի քաղաքին, ընդ որ ելանէր աղբիւր՝ հոսեալ արտաքոյ քան զդուռն քաղաքին:

Պատուէր ետ դատաւորն և երկուց 'ի գլխաւորաց զօրականին, որոց անուա՛նք էին Մենիաս և Բելիադէս (կամ Մենէաս և Բելեբադէս), կալ 'ի վերակացութիւն պահպանութեան կապելոցն. տեսջի՛ք ասէ՝ թէ որպէս պահիցէք զդոսա. երդնում յասկղեպիոս, զի թէ իրագէկ եղէց՝ եթէ հաց կամ ջուր տայ ոք նց̅, զնոցուն զպատիժս 'ի վերայ ձեր ածեմ, և հրով կորուսանեմ զձեզ նոքօք հանդերձ:

Իսկ և արգելան սուրբքն կապանօք 'ի դղեկի անդ, սկսան ասել միաբան. օրհնեմք զքեզ տր̅՝ փառաց թագաւոր, որ յանձն առեր կալ առաջի պիղատոսի պոնտացւոյ առ 'ի դատիլ վն̅ մեր մեղաց. դու ես Ճշմարիտ կեանք՝ վասն մեր մեղաւորացս պատարագեալ հօր քում, Ճշմարտին այ̅ որդի Ճշմարիտ և քահանայապետ. մի՛ մեկներ զմեզ յողորմութէ̅ քումմէ, և մի՛ յեղբայրութէ̅ սրտի մերմէ. դու՝ որ միաւորեցեր զմեզ զամենեսին խոստովանութբ̅ քով, և համաշունչս զմեզ արարեր, միացո՛ և զկատարումն մեր. և մի՛ թո-

ղուցուս բաժանիլ մեզ ի՛լիք յիւրեանց . որպէս
զի տեսեալ պաշտօնէիցն ամպարշտութեան զմեր
զգեղեցիկ յօժարութիւն զուարթութեան ՚ի նա-
խանձ բերիցեն զգործ մեր զովելի ։ Քանզի
զի առհա յարգելանս կամք խաւարի , ՚ի քաղց
եւ ՚ի ծարաւ , եւ անձինք մեր հաշին ՚ի կա-
պանս . այլ դու Տէր շնորհեա՛ մեզ համբերու-
թիւն , եւ կատարեա՛ զընթացս մեր . զի մի՛ զոք
օգտեսցէ ՚ի մէնջ բանսարկուն ։

Եւ իբրեւ կատարեցին զաղօթսն ծնրադրու-
թեամբ , ոչ կարէին յոտին կալ կանգուն՝ կքեալ
՚ի շղթայից . այլ նստեալ սաղմոսէին ընդ մի
բերան . համբերելով համբերի Տէր , եւ նայե-
ցաւ առ իս , եւ լուաւ աղօթից իմոց . եհան
զիս ՚ի գբոյ տառապանաց , ՚ի կաւոյ եւ ՚ի
տղմոյ ։ Եւ կատարեալ զսաղմոսն՝ անկան
՚ի վերայ երեսաց իւրեանց երկրպագութեամբ . եւ
դարձեալ յարուցեալ սաղմոսէին . եւ յեր-
րորդումն նուագի աղօթից համբուրէին ըզ-
շղթայս իւրեանց , եւ գիրկս արկեալ միմեանց՝
ուրախութեամբ գոհանային զԱստուծոյ ։

Յայնմ վայրի խօսել սկսաւ երանելին Ղեւոն-
դիոս բանս մխիթարութեան առ քաջ նիզակա-
կիցս իւր , եւ ասէ . Եղբարք իմ պատուա-
կանք , եւ ազնիւ ծառայք Քրիստոսի , արութեամբ քա-
ջութեան տարցուք Տեառն . գիտակ իսկ էք յամենայնին
տառից՝ չափու համբերութեան յոբայ , եւ չէ՛
ինչ ծածկեալ ՚ի ձէնջ կատարումն Տեառն . յուշ
լիցի ձեզ առաքինիք , զի մկրտիչն յովհան-
նէս գլխատեցաւ . ստեփաննոս քարկոծե-
ցաւ . առաքեալն պետրոս խաչեցաւ , եւ պօ-

զոր գլխատեցաւ. և Թովմաս նետահարե-
ցաւ. քանզի 'ի սոցա առ մաքսիմիանոսիւ և
դեկոսիւ և ադրիանոսիւ և այլ ևս ամպա-
րշտ թագաւորօք՝ վկայեցին զպանծալի վը-
կայութիւն, և ընկալան զպսակս. որոց երա-
նի՛ տամք առ հասարակ. ո՛չ և քաջ գիտեմք,
և լուեալ է ձեր մի ըստ միոջէ. Այլ զի՞ ասեմ
զպարանց քաջաց նահատակելոց. ուր և կա-
նայք ամծապաշտօք՝ առնացի սրտիւ զգեցեալք,
և զբնութեան տկարութիւն մոռացեալք, ամ-
րացուցին զանձինս 'ի յոյսն՝ որ 'ի Քս, վն փա-
ռացն պատրաստելոց յերկինս. քանզի լուեալ
ասացելոյն 'ի տնէ յաւետարանի. որ խոս-
տովանեսցի զիս առաջի մարդկան, խոստո-
վանեցայց և ես զնմանէ առաջի հօր իմոյ՝ որ
յերկինսն է. և որ ուրասցի զիս առաջի մարդ-
կան, ուրացեալ լիցի և նա առաջի հրեշտա-
կաց այ. Այլ արդ՝ եթէ կանայք բնութեամբ
տկարք առնապէս մարտեան, ո՞րչափ ևս ա-
ռաւել մեզ պարտ է այսպիսեացս և այսքա-
նեացս վկայս լինել քի. Լուեալ է ձեր վն
սրբուհւոյն եւփիմեայ, և Կապիտոլինեայ,
և յուղիտայ, և այլոց ևս սրբ կանանց, որոց
անուանք գրեալ են 'ի գիրս կենաց, եթէ
ո՞րպէս առաքինաբար հանդիսացան 'ի մար-
տի, և յաղթեցին սատանայի.

Այլ յաւել պատմել նշխարն ղևոնդիոս զսքան-
չելի նահատակութիւն սրբուհւոյն պոտամի-
նայ. զոր լուեալ ասէ 'ի վկայէն մերմէ եկե-
ղոյ յեգիպտոսէ. որ և նա լուեալ էր 'ի նորին
անտոնէ ճգնաւորէ. իբր զի սա ինքն պոտա-

մի-

մինա աղախին գոլով առն հեթանոսի յաղեք-
սանդրիա քաղաքի յաւուրս մաքսիմիանոսի
կայսեր, իբրև յորդորեցաւ 'ի տ՟ն իւրմէ 'ի
պղծութի՟, զայս արար պ՟տնի. աղախին եմ
ք՟սի, ոչ կարեմ աղտեղել զանձն իմ։ Իսկ
տ՟րն նորա յետ բազում ստիպելոյ՝ ոչ կարա-
ցեալ հաւանեցուցանել զնա, մատնեաց 'ի
ձեռս դատաւորի. զի կամ յանձն առցէ կա-
տարել զկամս իւր, և կամ քրիստոնեայ ան-
ուամբ պատուհասեսցի։ Իսկ 'ի խորատել զնա
դատաւորին՝ անսալ տ՟ն իւրում, եւ պ՟տնի
պատասխանէր. մի լիցի երբէք դատաւոր այդ-
պիսի, որ հրամանս տայցէ աղախնոյ՝ հպա-
տակել ցանկութե՟ տ՟ն իւրոյ։ Սպառնացաւ
նմա դատաւորն՝ արկանել զնա 'ի կաթսայ
եռացեալ ձիւթով, վ՟ս քրիստոնեայ գոլոյն.
Իսկ առաքինի աղախինն ք՟սի ասէ ցդատա-
ւորն. վ՟ս կենաց ինքնակալին՝ որ կարի պա-
տուական է յաչս քո, աղաչեմ, մի տացես
հրաման միանգամ և միանգամայն արկանել
զիս 'ի կաթսայ, այլ առ սակաւ սակաւ 'ի
ներքս զիս մուծանել 'ի դառն կտտամբս ցա-
ւոց. առ՟ զի ծանիցես, թէ որչափ համբերու-
թիւն պարգևէ ինձ ք՟ս. և այսպիսի վկայու-
թե՟ կատարեցաւ 'ի կաթսայի անդ աղախինն
փրկչին։

Այս արդ տեսանէ՞ք քա՛ջ նահատակակիցք իմ,
զի կին միայնակ և աղախին և անազատ՝ այս-
պիսեաւ յամօթ արար համբերութե՟ զբռնա-
ւորն։ Իսկ մեզ զի՞նչ մնայ առնել. կա՞մ զիա՞րդ
իցէ մեզ գանձազգելի առ 'ի չմեռանելոյ պա-

քեալ ոգւով վ՟մ տ՟ն մերոյ յ՟ն ք՟ի . քանզի և յետ կատարման մերոյ շուրջ պատեսցին հոգիք մեր 'ի հրեշտակական պարուց , և պսակք և պատիւք մեզ պարգևեսցին յերկնից թագաւորութե՟ . և նշխարք գլխովին ոսկերացս մերոց տարածեսցին ը՟ն տիեզերս ա՟մ յուրախութի հաւատացելոց և 'ի փառաւորութե՟ անուանն ա՟յ ։

Օ այսպիսի իբրև ասէր երանելին ղևոնդէոս, զուարթանային քաջքն առհասարակ , և ասէին . տ՟ն կամք եղիցին . և խնդամիտ յօժարութ՟բ տանէին անհնարին նեղութե՟ բանտին ։ Ա՟ զի անբերելի էր տապ ժամանակին յամսեանն յուլիսի , և անձինք նոցա 'ի ծարաւոյ պապակէին . այլ ո՟ր այց արար ն՟ց . զի որովհետև արգելաւ չտալ ն՟ց ամենևին հաց կ՟մ ջուր , կին ոմն բարեպաշտօն՝ բասխանէ անուն՝ արկեալ զիւրև կրկնոց լայն , և ամանս ջրով 'ի ծոց իւր թաքուցեալ՝ մտանէր 'ի բանտ 'ի տեսութե՟ սակս , և գաղտ արբուցանէր ն՟ց ։ Իսկ զժամս գիշերոյն անցուցանէին երանելիքն ուրախութ՟բ իբրև 'ի տունջեան . և երգս 'ի բերան առեալ 'ի սաղմոսաց՝ օրհնէին զա՟ծ . քանզի բազմաց 'ի նոցանէ անդստին 'ի մանկութե՟ ուսեալ էր զսաղմոսս . և կատարե՟լ զաղօթս գիշերին՝ նստէին մնալով առ յա՟յ օգնականութե՟ ։

Իսկ դատաւորն լիւսիաս վարանեալ 'ի խորհուրդս , թէ որով տանջանօք պատուհասեսցէ զկապեալսն՝ որոց ակն ոչ ունէր յաղթել , անքուն անցուցանէր զգիշերն զայն . և իբրև

'ի

'ի նիրհ անկանէր ԺԲ այգն, եկն եկաց առա-
ջի նր̃ սատանայ 'ի կերպարանս ասկղէպիոսի
չո̃յն, և ասէ. քաջ լեր լիւսիաս, զի ես եմ
ասկղեպիոս՝ յոր երդուա̂ր յերեկէ. արդ յա-
ւացեալ փութամ կորուսանել զարդ զայդա-
ռիկ. զի յետ միանգամ հայհոյելոյ և թշնա-
մանելոյ զմեզ՝ չեն արժանի ողորմութեանս մե-
րում. և արդ սատակեա զն̃ս. քանզի գիտեմ
զխստապարանոցութի̃ նց̃, զի ոչ զոհեն մեզ
և ոչ երկիր պագանեն. և շատ ևս հայհոյու-
թի̃ս բարբառին զինէն 'ի բանտի անդ. հա-
պա ջախեա զոսկերս նց̃, և հրով այրեսջիր,
և տուր ամալ 'ի գայլ գետ, և ցրուել և ան-
հետ առնել. զի զուցէ անկցին 'ի ձեռս քրիս-
տոնէից, և պատուեսցին 'ի նոցանէ:

Ապա յարուցեալ դատաւորին ԺԲ առաւօտն՝
փութով մեծաւ և ծփեալ խորհրդովք յերե-
ւաց դիւական անրջոցն, արտաքոյ քան զքա-
ղաքն ելանէր բազմութբ̃ զօրականին. և նըս-
տեալ 'ի բարձր տեղւոջ՝ հրաման տայր ածել
զկապեալսն առաջի իւր: Որք եկին յանդի-
ման եղեն մր̃քն կապանօք, խօսել սկսաւ լիւ-
սիաս, և ասէ. գիտէք՝ զի խնայեցի 'ի ձեզ
երէկ, զի մի կորնչիցիք տանջանօք. և մինչև
ցօրս ցայս ետու ձեզ կեալ, ո̃պ զի այսօր զո-
հեսջիք դիցն, և լինիջիք բարեկամ ինքնա-
կալաց և մեր. և արդ 'ի զոհել անդ ձերում՝
տաց առն իւրաքանչիւր երկերիւր ոսկի, և
համագերձս և պարգևս թգ̃րական. և գիտեմ
իսկ, զի բազումք 'ի ձէնջ պատրաստ են 'ի
զոհել: Արդ եթէ լսէք ինձ, և զոհէք զցուլս՝

զորս հրամանն ետու առաքելոյն բերել այսր ,
պատրաստեալ է ձեզ սեղան բարելից • ուր
'ի խնճոյս անոր ընկալջիք իւրաքանչիւր ըղ-
պարգևս և զփառս պանծալիս • ապա եթէ
չառնուք յանձն հնազանդ լինել , հարկ է
զնորօրինակ տանջանաց բուռն հարկանել •
բայց արդ ես ինքնին աղաչեմ զձեզ չարկիլ 'ի
քաղցր լուսոյ , և չորոշիլ 'ի կանանց և յորդ-
ւոց և 'ի բարեկամաց • հապա մատերուք յա-
ռաջ , զոհել և խունկ մատուցանել ում և
հաճոյ թուի՞ցի՝ յա̃ծոց մերոց ։

Յայնժամ ս̃րբքն առհասարակ իբրև 'ի միոջէ
բերանոյ ասեն • Նզովեալ լիջիր դու և պար-
գև քո ով բռնաւոր , որպէս կատաղեալ
ե̃ս անուան քո , ( քանզի լիւսոս՝ կատաղուն
է առ հելլենացիս •) որ հրամայես ապստամ
բիլ մեզ յա̃յ կենդանւոյ , և զոհել պիղծ և
գարշելի դիւաց • այլ մեր հանդերձ փառա-
ւորութե , և կերակուր և ըմպելի և զանձ ,
և հայր և բարեկամ և եղբայր՝ տ̃րն մեր յ̃ս
ք̃ս է , այն՝ որ կոչեաց զմեզ յերկնային կո-
չումն անմահական կենաց ։ Իսկ անօրէնն
լիւսիաս դառնացեալ հոգւով՝ դարձեալ 'ի
վերին երեսս քաղցրութի ցուցանէր • ասէ •
տակաւին ես խնայեմ 'ի ձեզ ով քաջք և յետ
թշնամանացդ • վ̃ն զի արժան է համբերել
պակասութեց բարեկամաց ։

Ապա թողէք զայլսն՝ ասէ ցլեւոնդիոս • տե-
սանեմ զքեզ , զի քան զայլս տեղեկագոյն
դատանիս զենից աստուածոց՝ ով կիրթ 'ի մանկու-
թէ • իսկ արդ՝ եթէ արամանգդ և ապողոն և

առ

ռայքս ք՟ո վ՟ն ք՟սի չարչարեալք և մեռեալք՝ երթալով երթամք և աճեմք ։ (քանզի բարձեալ էին ՚ի ժամանակին ա՟մ կռապաշտ թագաւորք հռովմայեցւոց յերեսաց մեծին կոստանդիանոսի, և մնացեալ էր լիկիանոս եւեթ բռնաւորն հալածիչ)։ այդ իսկ շատ էր քեզ ով բռնաւոր՝ հաւատարմացուցանել քեզ, եթէ սիրելի ծառայք ա՟յ եմք մեք ։

Յայնժամ մռնչեաց լուսիաս իբրև զառիւծ. ասէ ։ զոհեցէք դից, ապա թէ ոչ՝ երդնում յասկլեպիոս և յարեգակն, ոչ տամ ձեզ տեսանել զվաղուն արև ։ Իսկ քաջ նահատակքն ք՟սի քառասուն եւերեքին միաբան գոչեցին ։ մեք տ՟ն յ՟սի մատուցանեմք զբանաւոր պաշտօն և զպտուղ շրթանց մերոց ։ այնմ՝ որ զմեզ ողջ անարատ պահէ ՚ի հանդերձել դատաստանաց, և զքեզ ով լուսիաս հանդերձ ա՟ծովք քովք ՚ի հուր գեհեննին մատնէ անշիջական ։

Իսկ դատաւորն լցեալ սրտմտութ՟բ՝ հրամայ՟ն ետ վաղվաղակի մերկացուցանել զքաջ նահատակսն առ հասարակ, և կախել զմի մի յերկոյն փայտ (կամ ՚ի ծառ), և քերել զմարմինս ն՟ց երկաթի եղնգամբք և ճանկօք և սայրասուր խեցեօք ։ և քարոզն աղաղակէր, և ասէր ։ որք միանգամ ոչն զոհեն ա՟ծոց, այլ և իշխեն եւս անարգել զն՟ս, այսպէս չարչարեսցին ։ Իսկ ն՟ք վկայքն մինչդեռ ՚ի քերանս կային, ասեն ցդատաւորն ։ ով բռնաւոր՝ եթէ ունիս զայլ եւս դժնդակ տանջանս, յառաջ մատո ։ զի արհամարհ թուին

յաչս

յաչս մեր այս տանջանք քերանաց : Եւ էր ժամ վեցերորդ, յորում արեգակն 'ի բարձանց ճառագայթէր ի ժմ երեսս երկրի, և ծրքն զարեան վտակս հեղուին և ներկանէին զերկիր : Տեսեալ դատաւորին՝ թէ ոչինչ օգտի, յանհնարս եմուտ. հրաման ետ իջուցանել զնա 'ի կախաղանաց, և տանել արկանել անդրէն 'ի բանտ, պատուէր տուեալ կրկին, զի մի՛ ոք գայցէ 'ի տեսանել զնա, կմ ջուր տալ նմ :

Իշխան մի էր 'ի Նիկոպոլիս իբրև քաղաքապետ՝ հերովդէս անուն՝ քրիստոնեայ, այլ կեղծաւորեալ զհեթանոսութի. առ որում վանս կալեալ էր լիւսիաս դուքսն : Եւ էր հերովդի դպիր ոմն փիլինոս (կմ փիլոն) կոչեցեալ՝ նոյնպէս 'ի ծածուկ քրիստոնեայ, որոյ էր ընտանութիւն ը ղևոնդիոսի գլխաւորի ծրցն. զնա կոչեաց երանելին ղևոնդ առանձինն, և ասէ ցնա. ով փիլինէ՝ եթէ սիրես զիս իբրև քրիստոնեայ և իբրև եղբայր, երթ և ասա ցտէր քո հերովդէս, զի թէ ունի համարձակութի առաջի դքսին, տացէ նմա 'ի գլուխ հանել զպաշտօնակալս իւր ով վն կարճելոյ զմեզ 'ի կենաց 'ի վաղուէեան աւուր : Զայս ասէր ղևոնդիոս, քանզի երկնչէր՝ զի մի՛ արդեօք 'ի ծրցն ոք առ երկիւղի երկար չարչարանաց պակասեսցի 'ի հաւատոց. և փիլինոս երթեալ պատմեաց զբն յականջս իշխանին :

Եւ էր դքսին կոչեալ զհերովդէս իշխանն 'ի միւսում աւուր 'ի ճաշ, և նմայր գալստեան նր.

[redacted]



նր․ և նա պատճառէր ոչ երթալ․ և 'ի հար-
ցանել զպատճառսն՝ ասէ հերովդէս, քանզի
տեսի երէկ զքերանս կողից պատժաւորացն,
և զորովայնս նոցա բացեալս 'ի քերանաց,
տաղտկացայ, և ոչ տանի բնութիս զկերակուր
թնչ։ Եհարց զնա լիւսիաս, և ասէ․ արդ
զի՞նչ կամիս՝ զի արարից ը նմա։ Եւ նա ասէ․
ո՛չ ապաքէն որք հակառակն կան հրամա-
նաց Թագաւորաց՝ արժանի են մահու․ և ըն-
դէ՞ր ոչ մեռանիցին արագավախճան։ Յայն-
ժամ դատաւորն խոստացաւ՝ 'ի վաղիւ՞ անդր
հրով կարճել զնա 'ի կենաց ը արքունի հրա-
մանին։

Զայս իբրև լուաւ փիլինոս, ընթացեալ
պատմեաց սբցն 'ի բանտի․ և նք ուրախա-
ցեալ յոյժ՝ զուարթագին փութով սպասէին
ելից իրացն․ և ամենեքեան փոխարէն բա-
րիս մաղթէին փիլինոսի և տն նր։ Յայնմ
վայրի եհաս ը սովորութե բարեպաշտուհին
բասիանէ՝ բերեալ ը իւր ջուր 'ի ծածուկ․
և քանզի արգելլին զնա պահապանք դրանն,
հարցանէին զնա սբքն՝ եթէ ունիցի՞ ջուր․
և նա վն մերձակայիցն չիշխեաց ասել, թէ
ունիմ։ Յայնժամ սբն զևոնդիոս խօսեցաւ
առ բասիանէ հայերէն լեզուաւ առ չիմանա-
լոյ բանտապանացն, (քանզի և կինն յազգէ
հայոց էր, ոմ և վկայքն, թէպէտև յունա-
րէն քաջ գիտէին,) և ասէ․ գիտե՞ս՝ զի տա-
պացեալ կամք, և քաղին ոգիք մեր․ և եթէ
չիցէ քո բերեալ ջուր յայսմ անձկութե, գի-
տեմ զի զոր բարերարեցերդ մեզ մինչև ցարդ,
իբրև

[redacted]



իբրև յուշինչ համարեսցի, ո՞չ թէ չիցէ ինչ արարեալ քո։ Օ՜ այս ասէր առ ՚ի յորդորել զնա, զի բերցէ զջուրն ՚ի մխիթարութիւն և ՚ի քաջալերութիւն նահատակակցաց իւրոց։ Յայնժամ Բասխանէ ելեալ ընդ դուռն՝ եգիտ զփոքրիկ և զնեղ պատուհան բանտին, և ընդ այն ետ նոցա զջուրն՝ զոր բերեալ էր։ Իսկ իբրև արբին և զովացան փոքր մի վկայքն, օրհնեցին միաբան զկինն, և աղօթեցին՝ զի որդիք նորա և որդիք որդւոց նոցա արժանի լինիցին սրբոյ կարգի քահանայութեան, ՚ի հատուցումն այնպիսի ծառայութեան նոցա։ Իսկ արդարև ընկալաւ երանելին կինն բազում առաւելութիւն զառ ՚ի Քրիստոսէ խոստացեալ վարձս՝ որոց արբուցանէին բաժակ մի ջուր ցուրտ յանուն աշակերտի նոցա. ուր սա արբոյց յանուն Քրիստոսի՝ կենդանի վկայից նորա։

Իբրև երեկոյ լինէր, սկսան սաղմոսել սուրբքն. Տէր լո՛ւր աղօթից իմոց, և աղաղակ իմ առ քեզ եկեսցէ. և որ ՚ի կարգին։ Իսկ ՚ի կատարել զսաղմոսերգութիւն՝ հայէին ՚ի վերայ կապանաց իւրեանց, որ վասն անուան Տեառն, և քաջալերեալ զօրանային ՚ի Տէր. և դարձեալ յաղօթս կացեալ՝ ասէին միաբան. Տէր Յիսուս՝ որ բառնաս զցաւս ամենայն ստեղծուածոյ. և ոչինչ ծածկի առ ՚ի քէն, որ քննես զսիրտս և փորձես զերիկամունս. յայտնի է առաջի քո յօժարութիւն սրտի մերոյ առ քեզ. բժշկեա՛ զհոգիս մեր, զի զմարմինս մեր մատնեցաք վասն քո. քաւեա՛ զմեր զանօրէնութիւնս յապականացու կենցաղումս։ Սակաւ է և թեթև

Թեւաբեռն՝ այն ա̃մ, զոր կրեմքս, առ բա-
զում սիրոյն՝ որ առ քեզ տ̃ր. քեզ տենչա-
ցեալ եմք, և 'ի քէն միայնոյ երկնչիմք: Նայ-
եա՛ց յերկնից, և զօրացո՛ զմեզ. զի դու ես՝
որ մխիթարես զմեզ յա̃մ նեղութիս մեր առ
'ի կարօղ լինելոյ համբերել սիրով: Մ՛ի գտա-
ցէ տեղի սատանայ 'ի մեզ. մի՛ որոշեր զմեզ
յեղբայրակցութենէ սորա. զի մայր մեր ա-
մենեցուն է հաւատքն՝ որ առ քեզ, և դու
տ̃ր՝ հայր մեր. փառաւորեա՛ զանուն քո յան-
դամս քո. և ընդունելի լիցուք ո՛չ զողջակէզս
խոյոց և զուարակաց, և ո՛չ բիւրաւորս գա-
ռանց պարարտից. այնպէ՛ս եղիցի պատա-
րագ մեր առաջի քո տ̃ր, և կատարեալ գտցի
յաչս քո. որ օրհնեալդ ես և փառաւորեալ
յա̃մ յաւիտեանս: Եւ ասացեալ ամենեցուն
զամէնն՝ հսկէին զգիշերն ողջոյն անքուն յու-
րախութենէ. քանզի լուա̂ն, եթէ վաղիւն կա-
տարելոց են. վ̃յ և զհասարակ գիշերաւ
պաշտեցին զմեծ սաղմոսն, զԵրանեալ են
ամբիծքն 'ի Ձնմ̃րհի, իբրև ցայգապաշտօն՝
'ի խորհուրդ Թաղմանն անձանց իւրեանց, որ-
պէս 'ի վ̃ր կենդանւոյն մեռելոց վասն տ̃ն:
Եւ իբրև կատարեցին զսաղմոսն, մինչդեռ
յաղօթս կային լռելեայն, ահա հրեշտակ
տ̃ն եկն եկաց 'ի վերայ, և ելից լուսով ըզ-
տունն բանտին. և ասէ ց̃նս. ուրա՛խ լերուք,
զի մերձ է կատարումն ձեր, և հասեալ է
զրաւ մարտի ձերոյ. և անուանք ձեր գրե-
ցան 'ի գիրն կենդանեաց. քաջալերեցա-
րո՛ւք, տ̃ր ը̃ ձեզ է: Եւ զայս իբրև ասաց

հրեշ-

հրեշտակն, մեկնեցաւ 'ի նոցանէ. իսկ սրբքն երկիր պագանէին նմա անպատմելի խնդութ̃. և փառս վերառաքէին անյագ փափաքմամբ ։ Իսկ զօրականքն՝ որք պահէին զդուրս բանտին, մենեաս և բէլերադէս, տեսին զլուսոյն պայծառութիւն, և լսել լուան զձայն հրեշտակին, բայց զերեսս նորա ոչ տեսին ։ Ասէ մենեաս ցբէլերադէս 'ի լեզու եգիպտացի (զի և ինքեանք եգիպտացիք էին յազգէ). տեսանե՞ս և լսե՞ս բէլերադէ եղբայր, թէ ո՞րպիսում արքայի զինուորք են դոքա. ասեմ քեզ, զի ես անդստին բարեկամ գտայ քրիստոնէից. զի ոչ խորհին անիրաւել զոք, այլ անձանց զգուշացեալ՝ պահեն և աղօթեն առ ա̃ծն իւրեանց, առաւելապ̃ ը̃ այգն առաւօտու. և յա̃մ ժամ երկիր պագանեն նմա. չառնեն ինչ անարդար կամ ապիրատ. հիւրասէրք են. մանաւանդ թէ զամենեսին սիրեն ։ Այլ ո՞վ դու լաւ ես քան զիս գիտես, քանի՞ սքանչելագործ են բնակեալքն յանապատ եգիպտոսի ։ Այլ զի՞ է մեզ դանդաղիլ, կամ յանհոգս կալ. այժմ է ժամանակ հանդիսի մարտին, և ցուցանելոյ զքաջութիւն զինուորութեան մերոյ. ինձ բարւոք թուի մտանել ը̃ նո̃ 'ի բանտն, և աղաչել զնոսա ը̃ունել զիս 'ի թիւ համարոյ իւրեանց. իսկ քեզ զի՞արդ թուի եղբայր ։

Ասէ բէլերադէս. եթէ դոքա չզանգիտեն 'ի մահուանէ, այլ վ̃ն ա̃յ իւրեանց մեռանին ուրախութ̃, և այնպիսի լոյս տեսանեն՝ որպիսում և զմեզ արժանի արար՝ որ երևեցաւն նմ̃,

նոյ, առ 'ի մե՞զ ոչ լինիցիմք և մեք հաղորդակից
արքայութեան նոյ։ Մինչ՞ թէ բռնադատաւէր ոք
զդատաւորն մեռանելոյ վն այն իւրոյ անկըղ-
ծութեան կամս ապաշխարանի, և տագնապէր զնա
կապանօք. այլ նա կայեալ է անձամբ զանձն
'ի մէջ կենաց ճի, և զմեր թողակն եհաս,
և բազում չարաս գործեաց, և զարս արդարս
ապաշխարանէ. զի՞ կայ մեր և նո. ա՞յդ է նրթիցուք
առ ծառայսն նոյ։

Օրայս ասացեալ՝ ընթացան երկոքեանն 'ի
ներքս 'ի բանտն, և անկեալ առաջի ոտիցն՝ ա-
սեն. տեա՛րք մեր և ծառա՛յք քո, ընկալա-
րուք աղաչեմք՝ և զմեզ 'ի թի՛ւս ձեր. քանզի
հաւատացաք մեք յամենն Ճշմարիտ 'ի Տէր մեր
յս քս, որ սիրեացն զմեզ, և եցոյց մեզ զհան-
դէս սիրոյ իւրոյ. աղօթս արարէք վն մեր,
զի մի՛ իբրև անպտան ժամանեալք՝ լիցուք
'ի բաց արտաքսեալք։ Յայնժամ սբ վկայքն
գիրկս արկեալ համբուրեցին զնո ցնծութբ,
և ասեն. եղբարք մեր էք, և ծառայակիցք
'ի քս. քանզի Տէրն մեր մարդասէր է, և ա-
ռատ, որ և զմետասան ժամու մշակս ընկա-
լաւ յայգի իւր. մի՛ երկնչիք, զի Տէրն՝ յոր
հաւատացիք, այն՝ որ մեզս երևեցաւ և խօ-
սեցաւ ը մեզ, նա իսկքն արժանի համարե-
ցաւ կոչել և զձեզ։

Արդ այգ եղև, և եհաս բանն առ դատա-
ւորն լիւսիաս՝ եթէ պահապանքն անտաս-
տեցին, և եղեն ը կապեալս, բորբոքեցաւ
բարկութբ, և նզովեաց զչաստուածս իւր. քզի մի
առ մի կորեան առէ, որք ոչ կարացին օգնել
նմ

անձանց , այլ 'ի մարդկանէ հարստահարին ։
Ապա ելեալ դառնութ՟ արտաքոյ քան ըղ-
քաղաքն՝ նստաւ 'ի տեղի ատենին , և հրա-
մանն ետ փութապէս ածել զկապեալսն զա-
ռաջեաւ ։ Եւ յորժամ ետես դատաւորն 'ի
մէջ քառասուն և երից նահատակաց և զեր-
կոտին պահապանս զմենեաս և զբեւլերադէս
ինքնակամ կալանաւորութ՟ կապեալս , ժըպ-
տեցաւ և ասէ ցիշխանսն ապպխանոս · տեսա-
նե՞ս ապպխանէ , զի և ցածուն որանցդ հեշ-
տալի եղև կրել զմահ · զի ահա զօրականք
սիրեցին զմահ քան զկեանս ։ Ապպխանոս
ասէ · տէր , նորահնար տանջանօք պատու-
հասեա՛ զնո ։ Դատաւորն ասէ · ո՛չ , երդ-
ուեալ 'ի դիս , ո՛չ տանջեմ զնո յերկար · զի
մի՛ 'ի տանջանս անդ զղջանայցեն և խոստո-
վան լիցին զԱծ և կեցցեն · այլ՝ տամ վճիռ
հրամանի և վ՟ նջ , զի Ը այլսն այրեսցին ,
և որում ցանկացանն՝ հասանիցեն ։

Ապա արար լուսիաս դատակնիք մահու Ը-
դէմ վկայիցն առ հասարակ օրինակ զայս ·
Սոքա՝ որք կանս առաջի դատաղական բե-
միս՝ արք թուով քառասուն և հինգ ,քրիս-
տոնէիցն ամոտի պաշտամանց պաշտօնեայք ,
քանզի դիմակաց գտան օգոստափառ ինքնա-
կալաց , և ոչ զոհեցին ա՟ծոց , նախ ծայրա-
տեսցին 'ի ձեռաց և յոտից սակրօք , և ապա
հրոյ ձարակ լիցին , և վարեսցին 'ի յորձանս
գայլ գետոյ 'ի կորուստ ։

Ընդ էր տեսանել զհանդէս բանաւոր ոչ-
խարացն քոյ՝ մատնելոց 'ի սպանդ և յող-

ջու

ջակէզ վ͞ն անուան նորա • քանզի յարձա-
կեալ անողորմ դահճաց գայլաբար 'ի վերայ
քաջ նահատակաց՝ արագ արագ զմի մի 'ի նո-
ցանէ յերկիր գառացուցանէին երբեմն զզա-
ւրինս անմեղս, և քանցէին զձեռս և զոտս
նոցա անխնայ՝ չարաչար խորտակմամբ ոսկե-
րացն • որով և յարիւն ապաժոյժ թաւալեալ
երանեացն խմբից՝ կէսք 'ի նոցանէ անդէն
և անդ արձակէին զոգիս, և ոմանք յոգիս
ապաստան՝ դեռ 'ի շունչն կային :

Յորս և ս͞րն անիկտոս՝ հայեցեալ 'ի գարշա-
պարս ոտից իւրոց, զի կրունկն խորտակեալ
սակրաւ՝ չէր 'ի բաց կտրեալ, այլ խեղաթիւր
ոլորեալ, ծիծաղեցաւ ը͞ն այնպիսի անցս ան-
դամոց իւրոց, և ձայնեալ ցմ͞նացեալ ընկերս
իւր՝ ասէր • եկա՛յք տեսէ՛ք եղբարք զման-
գաղն հասկաբեր • և նոքա ձայնակից լինէին
նմա ուրախութ͞բ : Իսկ ս͞րն սիսիանոս 'ի ծայ-
րատիլ անդ մարմ͞նոյն՝ տապացեալ 'ի սրտի՝
պապակէր 'ի ծարաւոյ անհնարին պապք-
մամբ, և գլորեալ 'ի մի կողմն 'ի վ͞ր քարին,
յորոյ վ͞ր անկեալ դնէր՝ ոչինչ բացագոյն
յայլոց ս͞րց, եբաց զբերան իւր, և գոչեաց
առ ա͞ծ աղօթիւք՝ ասելով • Տէր մեծապար-
գև, որ զբազմութ͞ի ժողովրդեանն ծարա-
ւելոյ արբուցեր 'ի վիմէ • որ զծովն կարմիր
բաժանեցեր, զի ժողովուրդ քո ապրեսցի 'ի
ձեռաց թշնամեաց • որ զսահանս երկնից
բացեր, և կոչեցեր զջուրս ծովու, և յորդե-
ցեր 'ի վերայ ա͞մ երեսաց երկրի • որ ըղ-
ջուրսն յորդանանու օրհնեցեր ս͞բ մկրտու-

Թ͞գդ քով · որ ասացերդ՝ ես եմ ջուր կենդանի · պատառեա՛ տէր զվէմս զայս , և աղբերացո՛ 'ի սմանէ զջուր , և արբո՛ ինձ սակաւի · և սովին գիտացից՝ եթէ սիրես զմեզ , և եթէ արժանի եմք կոչման քո տէր · վ͞ս զի տեսանես , զի շինուա՛ծ մարմնոյ մերոյ քայքայեցաւ , և եղաք չորացեալ ո͞պ խեցի ։

Մինչ դեռ նա զայս աղօթս մատուցանէր 'ի վ͞ր քարին , հնչեաց ահագին դղրդիւն 'ի քարէ անտի՝ իբրև զկարկաջանս հոսանաց ջուրց · պատառեցաւ վէմն , և բղխեաց ջուր ականակիտ և քաղցր · որ և տեսանի ասէ հին վկայարանին մինչև ցայսօր 'ի տեղւոջն յայնմիկ ։ Յայնժամ եհարբ սր͞բն սուքիանոս 'ի ջրոյ անտի , զովացաւ և օրհնեաց զա͞ծ , և ասէ · օրհնե՛մ զքեզ տ͞ր զլիացուցիչդ ունայնացեալ անձին իմոյ · գովեմ զքեզ թագաւո՛ր իմ , և փառաւորեմ զնախայաւիտեան բանդ՝ զծնեալդ 'ի մարիամայ ա͞ծածնէն · զի յագեցուցեր զիս 'ի բարութեանց քոց ո͞պ զմանուկ մայրենի կաթամբ ։ Եւ արդ արժանի՛ արա զիս տ͞ր և զժողով եղբարց իմոց ս͞րց կատարիլ շնորհօք քո և յուսով · և ո͞պ միացեալ դասք հոգւով ը͞ն իրերաց՝ միասցուք և ոսկերօք ։ Եւ կարօտելոցն օգնականութիւն քում և աղաչողացն զքեզ մեօք՝ լո՛ւր տէր վաղվաղակի յա͞մ պէտս և 'ի կարիս · եթէ՛ յաղքատութե՛ն ոք իցէ , և եթէ յայրութե՛ն , և յորբութե՛ն · եթէ՛ 'ի պանդխտութե՛ն , և եթէ 'ի հիւանդութե՛ն հոգւոյ և մարմնոյ · եթէ՛ 'ի գերութե՛ն և 'ի թշուառութե՛ն , և եթէ 'ի դառն

ծառայութեան. եթէ 'ի մարդկան և եթէ յա-
նասնոց ցաւս ապականարարս. եթէ 'ի ծո-
վու ոք նաւաբեկեալ իցէ, և եթէ յինչ և իցէ
արկածս ըմբռնեալ, դու տ՟ր թագաւոր՝ մե-
րով պաղատանօք լուիցես նմա. զի ծանի-
ցեն ա՟մ բնակիչք երկրի, եթէ յոյժ սիրե-
ցեր զմեզ, և լսես մեզ: Նա և ջուրս այս եղի-
ցին 'ի փարատումն ա՟մ ցաւոց. քանզի զոյգ ը՟ն
հրամանի քում 'ի վեր յորդեաց, և հինն
աքանչելիք վերստին ցուցաւ 'ի փառս հօր և
որդւոյ և հոգւոյդ ս՟բյ, և 'ի յիշատակ վը-
կայիցդ քոց քառասուն և հնգից:

'Ի նմին պահու զբաղեալ էին դահիճք 'ի բոլ-
բոքել զհուրն ը՟ս նմանութեան հնոցին բաբե-
լոնի, և 'ի բառնալ տանել զվկայսն՝ արկա-
նել 'ի հուր անդր. այլ իբրև հաշիւ առնէին
համարոյ ն՟ց, միով պակաս գտանէին զթիւ
նոցա. զի զխոխանոս մոռացան, որ փոքր մի
'ի բացեայ էր անկեալ: Նակ ս՟ըն սխոխանոս
ձայնեաց մեծաբարբառ, և ասէ. ձեզ ասեմ,
ձեզ ասեմ, ա՛ստ եմ ես, ա՛ստ եմ: Յայնժամ
ընթացեալ բարձին և զնա, և տարան 'ի խարոյկ
անդր այլովքն հանդերձ: Նակ ս՟ըքն յորժամ
մտանէին 'ի հուրն, որք միանգամ կենդանի
մնացեալ էին, ասացին համաշունչ. 'Ի ձեռս
քո տ՟ր աւանդեմք զհոգիս մեր. և օրհնեալ
տ՟ր, որ ոչ ետ զմեզ յորս ատամանց նոցա.
և այնպէս սաղմոսելով արկան 'ի մէջ հրոյն,
և օրհնելով զա՟ծ՝ կատարեցան 'ի ք՟ն քաջ և
յաղթող նահատակքն ք՟ի՝ 'ի քաղաքն յաղ-
թութեան 'ի նիկոպոլիս փոքուն հայոց, յամի

ա՟ն

Ամն Տրը · 319 · 'ի յուլիսի · Ժ։

Ապա 'ի նմին իսկ աւուր կատարման նց հրաման ետ լիւսիոս դուքսն ժողովել զոսկերս նց, և արկանել 'ի գետն դայլ կոչեցեալ (որ և յունական ձայնիւ լիգոս ասի), վեց մղոնաւ հեռի 'ի քաղաքէն, և ոչ կարի հեռի 'ի սեբաստիոյ։ Իբրև ածին կուտեցին զպատուական ոսկերս սրց յափն գետոյն լցեալ 'ի պարկս, խնդրէին տեղի յարմար առ իսպառ հետախաղաղ ծածկելոյ զսրբ նշխարս. և քանզի խոր յորձանուտ էր առ կամրջաւ, անդ դատարկեցին զպարկս։

Այլ 'ի խնամոցն այ անկորուստ պահեաց գետն զպատուական զայն նշխարս՝ 'ի մի վայր կուտակեալ զամն. և 'ի մեկնիլ դահճացն 'ի տեղւոջէն, եկին արք երկիւղածք և ծառայք այ նմանօղք առաքինութե սրցն, բերեալ զՔ իւրեանս և արս հմուտս լուղորդութե. և այնպէս 'ի վեր հանին ամբողջ զամ ոսկերս. մինչև լնուլ դրոյն, թէ պահէ տէր զամ ոսկերս նց։ Ապա բերեալ զնս 'ի քաղաքն՝ պահեցին 'ի թաքստի. և յետ ոչ բազմաց եղին զնս պատուով 'ի վկայարանի, զոր շինեցին յանուն սրց. խե. վկայից. քանզի եղև խոր խաղաղութի 'ի մարդասիրութէն քսի՝ 'ի զօրանալ անդ միահեծան ինքնակալութե բարեպաշտ արքային կոստանդիանոսի։ Ուր եղեն երանելի վկայքս աշտարակք հաւատոյ անկործանելի, և աստեղք բանաւորք լուսաճառագօղք հաւատացելոց, ծաղիկք եկեղեցեաց, և վերակացուք քաղաքի իւ-

րեանց և համօրէն Ձի, բարերարք առ ամե-
նեսին՝ որ կարդան զանուն նց 'ի քս յս 'ի
տէր մեր:

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ:

(1) Միաբան գովութեամբ յիշատակեն զփառաւորեալ վկայքս՝ հանդերձ համառօտ պատմութեամբ նոցին՝ յայսմաւուրք և ժամագիրք յն. և լա. 'ի յուլիսի. 10. արեւս և հին օրինակք ինչ Հ. Է տր ինչլի 'ի նմին աւուր գնեն. և այլ օրինակք 'ի յուլ. 9. իսկ նոր օրինակք Է աւ. 'ի 12. յուլ: Սոր Ը ձեռագրաց առ 'ի վերնագրի. * խն. մարտիրոսաց, որ 'ի նիկիոյպօլիս կատարեցան ||. կմ Ը այլոց. * 'ի նիկոպօլիս հայոց ||: Եւ զի նիկոպօլիսն թարգմանի յաղթաքաղաք կմ քաղաք յաղթութեան, որով անուանեալ գտանին և այլ քաղաքք յայլ Ձս, առ այս ասէ պլինիոս բոլլանդեան տառանոր. * Նիկոպօլիս հայոց (կմ
,, հայաստանեայց) յայլոց բազմաց համանուն քաղաքաց
,, որոշեալ յաւելուածով անուան Ձին, այն՝ որ շինեցաւ
,, 'ի մեծէն պոմպէոսէ ըստ անդանոր յաղթելոյն միհրդա-
,, տայ, ըստ պատմելոյ գիոնի կասսիոսի 'ի լէ գիրս
,, պատմ. հա. եղև ասպարէզ շահատակութե քաջանուն
,, խն վկայից, անմահնելի ամրութե նց վկայ. և տեսա-
,, րան, և հանդիսարան փառաց. քաղաք արդարև նշա-
,, նաւոր այսպիսի երևելի յաղթանակաւ. ոնց և մեծահռ-
,, չակ քարոզութե արժանի, զի 'ի ժամանակս վաղեմի
,, կայսեր անդրդուելի մնաց յերկուսց մրրկածին ծփա-
,, նացն արիանոսաց. ոնց լիով նշանակէ սբն բարսեղ 'ի
,, յաւելուածս թղթոց, ըստ նշանակելոյ բարոնիոսի 'ի
,, ծանօթութիս առաջիկայ տեղւոյս ||:

Շնորհ ունիմք պլինիոսի՝ ոչ միայն ըստ այսպէս դրոշմաւորելոյ զքաղաք հայոց, և զվկայքս՝ զորս և ինքն ծանօթէ հայազգիս լինել և 'ի գնդէ հայոց, այլ առաւել ևս ըստ տպագրելոյ զյունարէն հին օրինակ վկայաբանութե նց զգտեալն 'ի գրատան վատիկանու. յաջէնս. 866. երես. 340. զոր և ինքն թարգմանէ 'ի լատին, հանդերձ քանի մի առղիւք ծանօթութեց: Այլ ոչ գիտեմք, եթէ նորին նբ վկայքն զոՆ իցեն զանազանակ աշխատութէ նորին

այլ



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Սրբոյն Եւփիմեայ կուսին, և որոց ընդ նմա . խմբ, կամ ծնն վկայից ։

Հ. սեպտ. 15 ։ Տէր Եէլ. սեպտ. 16 ։ Յ. ժամա_ մակր. սեպտ. 16. և բասէլ. յուլ. 11 ։ Լ. սեպտ. 16 ։ Դ'ուսընս. Ա. նշղ=նէե ։ Մետափր. առ_ առըննան. հատ. Է. եր. 280=285 ։ (1)

ԲԱՐԵՀԱՄԲԱՒՆ ԵՒ մեծահռչակն ըստ անուան իւ_ րոյ՝ երջանիկն 'ի վկայուհիս Քրիստոսի կոյսն Եւփիմիա (որ և Եւփեմէ, կամ Եփիմիա,) էր 'ի քաղկեդոնն քաղաքէ՝ որ հանդէպ Բիւզանդիոյ յառաջակողման (Ասիա_ կողէն՝ Գատը քէօյ կոչեցեալ), յաւուրս հա_ լածմանց Դիոկղետիանոսի կռապաշտ արքա_ յին, դուստր քրիստոնեայ ծնողաց. հայր նորա կոչէր Փիլոփրոն՝ մի 'ի պատուաւորաց սինկղիտոսացն, և մայր նր Թէոդոսիանէ (թե_ այլոց՝ Թէոդորոսիա, կամ Թէոդորա,) կին բարեպաշտ, որ բազում ողորմութիւ առնէր 'ի ժողովրդեանն՝ ակն ունելով վարձուց երկ_ նաւոր հատուցմանցն ։

Սա եղև՝ զի հրամանաւ Դիոկղետիանոսի եկն 'ի քաղաքն քաղկեդոնացւոց՝ պրիսկոս անուն

ոմն

ամն անթիւպատոս, այս է փոխանակ բդեշ-
խի՝ ասիացւոց. զի զորս միանգամ գտցէ անդ
՚ի քրիստոնէից, չարաչար տանջանօք բարձցէ
՚ի միջոյ. քանզի և բազմունս յոյժ հաւատա-
ցելոց էր ՚ի քաղաքին յայնմիկ՝ բնակ, և եկ
ժողովեալ յայլոց տեղեաց յերեսաց հալա-
ծանաց, առաւել ՚ի Նիկոմիդեայ՝ ուր էր հրա-
դեհն հալածանաց : Սա եգիտ իշխանն պրո-
կոս զոմն իւր բարեկամ ՚ի հեթանոսաց բնա-
կելոց ՚ի քաղկեդոն, որում անուն էր ապեղ-
ղիանոս՝ այր ժանտաբարոյ և ապարասան
յոյժ, արուեստիւ սոփեստէս՝ որ է իմաստակ
ճարտարաբան, և գլխաւոր ՚ի պաշտօնեայս
կռոց իւր քուրմ արեսի չաստուծոյն :

Սա անձամբ զանձն յառաջ մատուցեալ՝ ըղ-
դրգռել սկսաւ զիշխանն պրոկոս հակառակ
քրիստոնէից. ասէ. յուշ լիցի քոյդ բարե-
յաջորդ իշխանութեանդ ով անթիհիւպատէ,
զի մերձեալ են աւուրք տարեւոր ուրախութե
և զոհից մեծին արեսի ՚ի հոյակապ մեհենի
նորա՝ որ ՚ի քաղաքիս. վասն և ամենեցուն մեզ
պարտ է ըստ հրամանաց ինքնակալացն աւան-
դութեանց զոհ մատուցանել աստուածոցն, մանա-
ւանդ մեծի աստուծոյն արեսի :

Հաճոյ թուեցաւ բանս այս անթիւպատո-
սին՝ առ ՚ի կործանել սովորին առթիւ գէթ
զթուլամիտս ՚ի բարձրութենէ հաւատոցն. նմին
իրի և տախտակ գրեալ՝ հրամայեր դնել ՚ի
նշանաւոր տեղւոջ ՚ի քաղաքամիջի անդ. և
էր պատճէն բանիցն այսպիսի օրինակաւ.
Մ՛եք տէրեալք՝ բնակիչք քաղաքիդ քաղկեդո-

Նացուոյն, գիտուն լիցի ձեզ ամենեցուն, զի ոչ զհրաման խնքնակալ Թագաւորաց մերոց բողոքեմք ձեզ ամենեցուն զայս ինչ. որպէս զի մաքրելով զանձինս ձեր աւուրս ութ՝ պատրաստ լինիջիք զոհս մատուցանել մեծի լծոյն արեսի. ապա եթէ գտցի ոք անհաւան մերոց օրինաց և առ այլ ինչ կրօնս փոխիցի, չարաչար պատուհասեն զայնպիսիսն՝ կորուսցուք։ Այս է նշանակ հրաւիրակի կոչմանն այսպիսի օրինակաւ. զի յորում ժամու փողն հնչէ, ամենեքեան միանգամայն համագումար 'ի տաճար լծոյն արեսի ժողովեսջիք յաժարութեամբ զոհս մատուցանել, և հաշտեցուցանել զանմահ դիսն։

'Ի լինել այսր հրամանի՝ անօրէնն ապեղխանոս հանապազ հոգ 'ի մտի եդեալ հետամուտ լինէր քննել և գիտել յիւրաքանչիւր աւուր և 'ի ժամու, զի մարթասցի գտանել զոմանս անհաւանեալ աւանդութեան Թագաւորացն, և ոչ շուն ղօղանջելով յարձակէր 'ի վ[illegible]նս։ Որդ 'ի հասանել կիտին եդելոյ գոչէր փողն ձայն ողբերգական 'ի լուր հաւատացելոց, և ձայն խնդութեան կարծեցեալ մոլորելոցն զհետ մնոտի յուսոյ, հրաւիրելով զամբոխակիչս քաղաքին 'ի զոհ արեսի։ Յայնմ վայրի ղօղեալ էին հաւատացեալքն 'ի Թաքուն վայրս, ոչ և ոմանք ելեալ էին զանխուլ արտաքոյ քան զքաղաքն և ցրուեալ։ Եւ խումբ մի 'ի նոցանէ կային 'ի փոքրիկ տնիկ փակեալ և Թաքուցեալ, հանապազորդելով յաղօթս և 'ի ժուժկալութիւն. Ե նոսա էր և որ կոյան եւփի

փրկիչն 'ի մշտամռունչ պաղատանս եւ 'ի հե-
ծութիւս առ նմ ։

Իբրեւ իմացաւ զայն ապեղիանոս գործօնեայ չարին , ասէ ցիշխանսն պրխակոս . անթիւպատէ՝ են արք ոմանք 'ի տան ուրեմն թագուցեալք , որք ոչ հրամանաց թագաւորացն , եւ ոչ հրամանի քում կամին անսալ . եւ եթէ ներես դու իրացդ , բազումք 'ի բաց կան անուհետեւ 'ի զոհելոյ դ͞ծոցն , եւ յարին 'ի նա . եւ ընծայք եւ պաշտամունք մեր արհամարհանօք անարգին ։ Զայս լուեալ անթիւպատոսին 'ի բանսարկուէ անտի՝ հրամայեաց երթալ ածել զօրականօք առաջի իւր զ͞նմ քրիստոնեայս , որ 'ի տան անդ , զարս եւ ըզկանայս ։ Եւ իբրեւ բերին զն͞մ յատեան իշխանին՝ ոգիս իբրեւ յիսուն , էր 'ի մէջ երանելեացն կոյսն Եւփիմիա առաւել քան զամենեսին ուրախալից դիմօք եւ պարկեշտ վայելչութ͞բ զարդարեալ ։

Յայնժամ խօսել սկսաւ անթիւպատոսն , եւ ասէ ցն͞մ . յոյժ զարմացեալ եմ ընդ իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ՝ տեսանելով զպայծառութիւն ընթացից ձերոց յայս հանդէս , եւ զգեղեցկութիւն հասակի մարմնոց ձերոց . վ͞ն իրաւ տամ հպատակ լինել հրամանաց ինքնակալին , եւ վայելել 'ի զոհս դ͞ծոցն . եւ ես ծանուցից զայս թագաւորին , եւ տացէ ձեզ պարգեւս եւ պատիւս մեծամեծս . մինչեւ հասանել ամանց եւ երեւելի իշխանութեան , եւ այլոց գրիլ 'ի կարգս արքունի ազատաց ։

Զայսպիսի լուեալ բազմութեան վկայիցն՝ միա-
բան

բան ծիծաղեցան ընդ տղայական բանսն. և
եթէ գոյր 'ի նոսա ոք տխուր դիմօք, առ-
հասարակ փոփոխեալ 'ի զուարթութիւն՝ լի
եղեն ամենայն ուրախութեամբ. և զնոյն նուիր-
մէ 'ի միջի ունելով իբրև զպարս հրեշտա-
կաց՝ համարձակութեամբ եռուն պատասխանի, և ա-
սեն. Մ՚եք ով Անթիպատէ զինուորեալ
եմք մերում թագաւորին Քրիստոսի, և զուն զօր-
ծեմք՝ մինչև ցվախճան հաստատուն կալ 'ի
հաւատս, զոր աւանդեաց մեզ. զի հանդի-
պեսցուք անսուտ խոստմանցն նորին, որ ասէ.
Ծառայ բարի և հաւատարիմ, որ 'ի սակա-
ւուդ հաւատարիմ եղեր, 'ի վերայ բազմաց կա-
ցուցից զքեզ: Եւ դու ով Անթիպատէ մի՛ ես
անտեղեակ, եթէ իւրաքանչիւր ոք յայնցա-
նէ՝ յորոց 'ի ձեռս հաւատան զիշխանութիւն
ինչ, փոյթ տանին հաւատարիմ լինել առ
պարգևատուն, զի և՛ս մեծագունի հանդի-
պեսցին պատուոյ. արդ՝ եթէ առ ապակա-
նացուս և յառաժմեայս այս պահի, որչափ
ևս առաւել մեզ արժան է փութալ ժառան-
գել զխոստացեալ զանապականն և զմշտնջե-
նաւոր փառսն: Արդ՝ զոր ինչ առնելոց ես՝
արա՛ վաղվաղակի. զի մեք պատրաստ եմք առ
ամենայն տեսակ տանջանաց քոց մինչև ցմահ:
Ընդ այս դժուարեալ դատաւորին, զի չու-
նէր ակն լսել զայնպիսի պատասխանի համարձակ
'ի նոցանէ, 'ի միւս կողմանէ դարձոյց զերեսս իւր
'ի նոցանէ. և հրամայեաց դահճաց տանջել
զնոսա չարաչար տանջանօք, որպէս և գիտէն.
և ապա տանել արկանել 'ի բանտ: Իսկ նոքա
'ի

'ի տանջանսն գոհանային զԱյ, և քաջալերէին զմիմեանս` առաւել զկրտսերագոյնս, հաստատելով 'ի համբերութիւն նահատակութե. և առաւել ևս յորդորէին զերանելին կոյսն Եւփիմիա 'ի խոստացեալ բրաբիոնն Քի, հայելով 'ի ծաղկահասակ տիս նորա, զի մի՛ արդեօք լքանիցի ինչ տկար բնութե ։ Մինա ևս քան զևս ուրախ լինէր և ցնծայր հոգւով քան զամենեսին` իբրև յաղթէր ընթերիս հրաւիրեալ. և իմաստութեամբ լցեալ յայտ առնէր նահատակակցաց իւրոց, եթէ յօժար է ինքն իսկ լինել նախագրաւ 'ի հանդէսն` մտանել յառաջագոյն լուսոյ անմահ փեսայլին ։ Նա եդև յետ տանջելոյ զմկայսն աղեղի աղեղի հարուածովք գանից և խոշտանգանաց` եդին զնա 'ի բանտ. ուր կացին մնային 'ի մեծ նեղութեան զաւուրս իննեւտասն` առաւել անսոնաղութեամբ, կերակրեալք 'ի շնորհաց հոգւոյն սբյ, սփոփելով ընկեր զընկեր միխիթարութեամբն Այ` աղօթիւք հանդերձ ։

Սպա յաւուրն քսաներորդի խորհուրդ արարեալ պրիսկոսի անթիպատի Ը չարախոհին ապեղիտանոսի` հրամայեաց անդրէն 'ի հարցն և 'ի փորձ դատաստանի զնոսին կացուցանել. և եւ նստաւ իշխանն պրիսկոս 'ի վր բարձր բեմբի. և երանելի վկայքն Այ ածեալ լինէին առաջի նր` ձեռս յետս կապեալք. և պարանոցք նց պարաւանդեալ շղթայիւք. Ը որս և սբն Եւփիմիա կոյս իբրև 'ի զարդ հոգևոր հարսանեաց պձնեալ կապանօք և

շղ-

շղթայիւք, որ փայլէր 'ի մէջ սրտիցն ոպ̃ ջահ
լուսաւոր, և իբրև լուսին պայծառ 'ի մէջ
աստեղաց :

Հարցանէր զնա անթիպատոսն, առաւել
զկրտսերագոյնս 'ի նոցանէ, և ասէր . ասա-
ցէք ինձ ով պատանիք, որք զփորձ առիք ըզ-
տանջանաց, թէ արդեօք դարձա՞յք 'ի յամա-
ռուէ ձերմէ՝ առ 'ի զոհս մատուցանել մե-
ծի ա̃յն արեսի, եթէ տակաւին 'ի նոյն միտս
պնդեալ կայք : Որքա ետուն պխնի միաբար-
բառ Ը մի բերան՝ հանդերձ նահատակա-
ցեաց եւփիմեաւ, և ասեն . ով անթիպա-
տէ մինչև ցե՞րբ յամառեալ կաս 'ի մոլորու-
թեդ, և ոչ ճանաչես զզօրութի̃ ա̃յն մերոյ՝
որ արար զերկինս և զերկիր . մի ձգտիր յան-
հնարինս, և մի կարծեր փոխել զմեզ 'ի հաւ-
տատութէ̃ միոյ մերոյ՝ որ 'ի ք̃ս յ̃ս :

Յայնժամ պրիսկոս ասէ ցսպասաւորսն . հա-
րէք զդոսա միւսանգամ չարաչար կոփանօք,
և կարծր արջառաջլօք բախեցէք զերեսս
նց̃ . և ասացէք հաւանել հրամանաց ինքնա-
կալին, և զոհել ա̃ծոցն : Իսկ պաշտօնեայք
բռնաւորին վաղվաղակի առնէին ըստ բանի
նր̃ . այլ 'ի կոփելն նց̃ և 'ի հարկանելն զե-
րեսս սր̃ցն՝ պայծառանային յոյժ դէմք ե-
րանելեացն . և արբանեակք չարին թուլա-
ցեալք և տկարացեալք 'ի տանջելն՝ նուա-
ղէին, և իբրև մեռեալք յերկիր անկանէ-
ին : Իսկ ապեղիանոսն՝ որ զապառաժինութի̃
չարին զգեցեալ էր, կամելով ահ արկանել
սր̃ցն՝ ասէ ցանթիպատոսն . պատուհաս ե-

դել

դեալ 'ի վ̅ր̅ սոցա՝ առաքեսցուք առ Թագաւորն 'ի Նիկոմիդիա . և առ օրին սատակեսցէ զդոսա սրով և հրով . և հաճոյ Թուեցաւ բանս այս անԹիպատոսին և որոց ընդ նմա . այլ իշխանն եդեալ 'ի մտի յինքն կորզել զչքնաղն եւփիմիա՝ հրաման ետ 'ի վերին երեսս արկանել զամենեսին 'ի բանտ 'ի դղեակ բերդին , մինչև առաքեսցէ զն̅ո̅ առ Թագաւորն . որք էին Թուով քառասուն և իննն , և հանդերձ ս̅ր̅ կուսի՜ն յիսուն :

Եւ իբրև տանէին զն̅ո̅ յատենէն անտի , ընդ հետ ընԹացաւ ինքնին անԹիպատոսն , և բուռն հարեալ զաղախնոյն ք̅ի իբրև աւազակ կ̅ի̅մ ա̅ն̅ գայլ յափշտակօղ՝ կամէր որոշել զնա 'ի գնդէ վկայիցն ք̅ի , կարծեցեալ որսալ զնա տղոքանօք , և առնել որպէս զինքն գործարան չարին . և 'ի մերժել զնա կուսին՝ ետ դահճաց բռնուԹ̅ե̅ դարձուցանել զնա , և բերել յապարանս : Իսկ ք̅ս̅ասէրն այն ս̅ր̅ վկայուհին զաչս յերկինս համբարձեալ՝ ասէր . օգնեա՛ ինձ ք̅ս̅ որդի ա̅յ̅՝ մշտնջենաւորի հօր էակից , որ արարեր զերկինս և զերկիր և որ 'ի ն̅ո̅ արարածք են . զի յոյս դու ես տ̅ր̅ իմ . մի՛ շիջցի ջահ կուսուԹ̅ե̅ իմոյ , և մի՛ կորիցեն հաւատք յուսոյ իմոյ՝ որ առ 'ի քեզ . զոր անարատ պահեցի 'ի մանկուԹ̅ե̅ իմմէ :

Եւ իշխանին լուեալ զայսոսիկ , և ոչ իշխեալ հրապուրել զնա 'ի պղծուԹ̅ի̅ն կարծեցուցանէր յանդիմանս այլոց , ո̅զ̅ Թէ հնարի որսալ զնա 'ի դենս իւր . վ̅ս̅ որոյ ասէ ցկոյսն . պատ-

պատուեալ զանձն քո , և մի խնդրեր որպէս զայլսն զմահ անձինդ . և զոր պատշաճ է քեզ ա՟ծ ազգի զպատիւն՝ մի կորուսաներ . քանզի լուայ՝ եթէ 'ի պատուականաց անտի ես 'ի ծնողաց . զի թէպէտև անգիտացար մինչև ցարդ , և խաբեցար իբրև զկին , յայսմհետէ զղջացեալ զգուշեա՛ ա՟ծոցն :

Իսկ աղախինն քո ասէ ցնա . մեք ոչ տկարութ՟բ բնութե մարմնոյ պատուէիլ փութամք , այլ արիական ճգնութ՟բ 'ի նահատակութեն ջանամք ընտիր և քաջ երևիլ . վ՟ն ոչ անգիտութ՟բ ինչ պատրիմ , այլ իբրև զիմաստուն և զքաջ ախոյեան պատրաստ կամ առաջի քո 'ի համգէս հոգևորական մարտի՝ զօրութ՟բ ա՟ն իմոյ . զի նովաւ յաղթեցից քեզ և հօր քում սատանայի . և համբերեցայց անսասան խոստմանցն նո՟յ՝ որ առ հարս մեր :

Յայնժամ տեսեալ բռնաւորին , եթէ 'ի կնոջէ և յաղջկանէ յաղթահարեալ եղև , փոխեաց զսէրն յատելութ՟ի , և բորբոքեալ 'ի ցասումն սրտմտութ՟ե՝ հրամայեաց դահճացն նորահնար գործարանս տանջանարանաց կազմել անուաձև և սրալից , և զսբ՟ վկայն 'ի մէջ երկուց անուոցն արկանել . զի 'ի հոլովելն՝ վաղվաղակի փշեսցէ ասէ զդագլխն : Իսկ երանելին եւփիմիա յորժամ հեղուսեալ լինէր 'ի վ՟ն անուոցն , արար յինքեան զկնիքն ք՟ի . և աղաղելով զբռնաւորն՝ ասէր . ո՛վ ո՟րպէս նստեալ է պղծոյ թշնամին ճշմարտութե և մշակն անօրէնութե՝ հնարաւորել զհրապոյրս չարին , չարժել

ժեղ՝ ի բանաւորկուԹենէն ընդդէմ բարեպաշտացն՝ կարծելով կորուսանել զնա ։ Այլ մինչդեռ ՚ի տանջանան էր՝ ասէ ցբռնաւորն ․ ով Թըշնամի քո ի ճշմարտին այ, հաւատամ ինձ, զի ոչ մերձենայ յանդամս մարմնոյ իմոյ գործարանք չարարուեստուԹեդ քո ․ և ոչ զգացի ամենևին տանջանացս ․ զի օգնական ունիմ զքս, որ յոլով փաստակօք զնահատակուԹեան իմոյ զհամբերուԹի հաստատուն պահէ ։

Այլ յասել նր զայս՝ պաշտօնեայք բռնաւորին շրջէին զանիւն, և ած անդամք սրբոյ վկային քանցեալ մերկանային յոսկերացն ՚ի սաստիկ և ՚ի չարաչար տանջանացն ։ Նա և արբուհին զուարԹուԹբ աղօԹս մատուցանէր՝ այսպէս ասելով ․ տր յս քս՝ որ ապաւէնդ ես ամենեցուն, որ կարդան առ քեզ, լոյսդ ճշմարտուԹե և տրդ ողորմուԹե ․ դու գիԹա յիս, որ ոչ արհամարհես զայնոսիկ՝ որք ՚ի նեղուԹե իւրեանց աղաղակեն առ քեզ, և ոչ մերձենան տանջանք ՚ի յարկս նց՝ որք ապաւէն ունին զբարձրեալդ, հայեաց յաղախինս քո, և ՚ի բաց յափշտակեա զիս ՚ի բարխատեաց բանաւորկուԹին կորստենէ, և ՚ի սպառնալեաց անմաքուր և քսամարտ պրխկոսի ։

Այլ ընդ ասել նր զայսոսիկ, փաղփաղակի ինչեղ յերկնից հրեշտակ՝ եբեկ զգործարան անօրինացն, առաջնորդացոյց զեւփիմէ, և զգահիճան եղայծ ՚ի զօրուէ ․ մինչզի յահէ երկնաւոր զուարԹնոյն եղեն նոքա պարտասեալք

ունէք և գունատեալք դիմօք : Իսկ երանելի
վկայն եւ անարատ 'ի մեքենայիցն՝ երևե-
լով առաջի բազմութեն զուարթ և պայծառա-
քան զառաջինն :

Զայն իբրև ետես անթիպատոսն , ասէ
զայրագին . երդուեալ իմ 'ի փրկութի ածոցն
և 'ի բախտ ինքնակալին , եթէ ոչ զոհեսցես
մեծի դյն արեսի , հրով վատնեցից զքեզ .
զի ծանիցես , թէ ոչ օգնեսցէ քեզ ածն քո՝
զոր պաշտեսն : Արբուհին ասէ . հրով սպառ-
նաս ինձ , այն՝ որ առ սակաւ ինչ վառեալ
բորբոքի , և վաղվաղակի շիջանի . այլ ոչ եմ
ես անարիադոյն այդպէս , զի երկեայց 'ի
սպառնալեաց քոց . այլ առ ոտն կոխեցից
զզօրութի անածից . երդուեալ իմ 'ի
ջանս նահատակութե ընկերաց իմոց բարե-
պաշտ վկայիցն քմի , որ մինչև 'ի վախճան
հաստատուն պահեցից զընթացս հաւատոց
իմոց . զի Է քաջ նահատակակիցս իմ արժա-
նաւոր գտայց անվախճան ուրախութեցն ,
և Է նոսին վայելեցից յանպատում կեանսն
'ի քն յս :

Զահի հարաւ անթիպատոսն Է սքանչելի
համարձակութեն կուսին . այլ յաղթեալ 'ի
գազանութէ բարկութե , փութապէս հրա-
մայեաց վառել հնոց հրոյ սաստկագին , և
արկանել 'ի նա զնա : Իսկ սպասաւորք բռ-
նաւորին կատարէին զհրամայեալսն , մինչև
յոյժ բարձրացեալ ցոլանայր բոցն : Իսկ
երանելի կուսին կացեալ մերձ 'ի հնոցն
զուարթ երեսօք և ժիր մարմնով ասէ . օրհ-


նեալ

նեա՛լ ես տ՟ր ա՟ծ, որ 'ի բարձունս բնակեալդ ես, և զխոնարհս տեսանես. զոր փառաւորեն հրեշտակք, և ա՟մ զօրութիւնք երկնից. առ քեզ կարդամ, օգնեա՛ ինձ քով բարերարութ՟բդ, և կնքեա՛ զանձն իմ զօրութ՟բ ս՟բ հոգւոյդ. և ցո՛յց չարախորհրդին և քմասեցին պղիսկոսի, եթէ դու ես ա՟ծ՝ որ առաքեցեր զհրեշտակն առ երիս մանկունսն 'ի բաբելոնի, և շիջուցեր զբոց հնոցին. և այժմ հայեա՛ց յիս 'ի տառապեալս, և առաքեա՛ զօգնութիւն քո, և փրկեա՛ զիս 'ի բերանոյ մարդախանձ առիւծուն, և 'ի ձեռաց ոգեկորոյս որսողին, և 'ի սպառնալեաց անթիպատոսին. զի անուն քո ահաւոր և փառաւորեալ է յաւիտեան ։

Յայնժամ հրամայեաց բռնաւորն պաշտօնէից իւրոց գոտի ածել եւփիմեայ ժ՟բ մէջն. և ասէ. առէ՛ք արկէ՛ք զնա 'ի հնոց հրոյն ։

Յայնմ վայրի երկուք ոմանք 'ի սպասաւորաց անտի տեսիլ տեսեալ ահաւոր շուրջ զկուսիւն՝ 'ի բաց կացին 'ի նմանէ սարսափմամբ. և ընթացան առ իշխանն՝ ցուցանել նմա, թէ չէ՛ մարթ կատարել զհրամանն. քանզի մին 'ի նոցանէ՝ որում անուն էր սոսթենէս, և ունէր սուսեր ժ՟բ մէջ, եկն եկաց առաջի իշխանին, և ասէ ցնա. հրամայեա՛ ինձ ո՛վ անթիպատէ սրովս այսուի՛կ հարկանել զանձն իմ. քանզի անհնարին է ինձ մերձել զձեռս իմ 'ի ս՟բ վկայուհիդ յայդ. զի տեսանեմ դէմ յանդիման առաջի աչաց իմոց զարս պայծառազգեստս, որք սպառ ու-

Նորին կուսին ։

Սոյնպէս և միւս այլ սպասաւոր՝ ընկերորիանոս կին ընկերոր անուն ( որ ըստ այլոց՝ վիգդոռ ) , որ անդստին ծանօթ էր գիտութեն ճշմարտութեն , լուծեալ զգօտին զինուորութեն՝ առէ ցիշխանն . աղաչեմ զքեզ ով անթիպատէ , ազատեա՛ զիս յանձկութէ յայսմանէ . զի ոչ կարեմ մօտիլ երբէք ՚ի սրբ վկայս յայս . քանզի տեսի աչօք իմովք մերձ առ նմա նորատեսիլ արս ոմանս , որք ահագին զիմօք խոժոռ հայէին ՚ի մեզ , և ՚ի մեր վը կամէին ցնցղկել զհուր հնոցին , ոչ թողացուցեալ մերձիլ յերանելի կոյսն ։

Նա այս սրտմտեալ անթիպատոսի , ոչ թէ նոքա անդստին ապստամբ իցեն յօրինաց դիցն , հրաման ետ դնել զնա ՚ի դիպահոջ իբրև ՚ի բանտի . և հրամայեաց երկուց այլ ՚ի զինուորաց , յորոց մին կոչիւր կեսար կին կայսր , և միւսն փարիոս , զի առեալ արկցեն զեւփիմիա ՚ի հուրն ։ Նոքա իբրև ընկեցին զերանելի կոյսն ՚ի հնոց անդր , պահեցին զնա ածութեն պաշտօնեայք՝ լուսազգած հրեշտակքն խաղաղութեն , ցրելով զհուր հնոցին . յորմէ՝ սաստկեցան սպասաւորքն կեսար և փարիոս՝ միմեանց զկնի ։

Իսկ երանելի կոյսն կայր ՚ի մէջ հնոցին իբրև յարքունական ապարանս . և որպէս թէ յանդիմանն լինելով փրկչին իւրոյ , և պարկեշտն գեղեցկութբ տեսանելով զթագաւորն երկնաւոր՝ տարածեաց զձեռս իւր , և առէ . օրհնեալ ես տր ած հարցն մերոց , ոչ

ան-

անկշռաչափ մ̃ծութե̃դ քո ոչ անտես արարեր զաղախին քո․ որ զլոյս Ճշմարտութե տարածեցեր ը̃ ա̃մ տիեզերս, և զհաւատս յարութեն ընծայեցեր յուսացելոց 'ի քեզ․ դու կոչեցեր զիս և պահեցեր մինչև ցարդ 'ի հանդէս նահատակութես, դու ինքնին ուղղեալ և կատարեալ զընթացս իմ ըստ կամաց քոց բարեսիրաց, որ մարդասէրդ ես և բարերար յա̃մի․ զքեզ օրհնեմ, և զքեն գոհանամ յա̃մ ժամ 'ի վ̃ր ա̃մ սքանչելեաց քոց․ որ միայնդ ես սքանչելի և հզօր՝ տ̃ր տ̃րանց և թ̃գր թ̃գրաց։

Տեսեալ բռնաւորին զկորուստ ծառայից իւրոց և զողջանդամ մնալ կուսին 'ի մէջ հնոցին, յիմարեալ կայր ը̃ միտս իւր վ̃ն իրացն եղելոց։ Սակայն իբրև շրջաւ հուրն ինքնին, և ել աղախինն ք̃նի անվնաս, մինչև և ոչ մազ մի 'ի նմանէ ծախեցաւ, հրաման ետ անթիպատոսն տանել արկանել զնա անդրէն կապանօք 'ի բանտ։ Նոյն զուարթագին խնդութե պատմէր Եւփիմէ սրբոյ կապելոցն, զոր ինչ արար ը̃ նա ա̃ծ, և քաջալերս տայր ն̃ց, և խնդրէր 'ի նոցանէ աղօթս առնել վ̃ն իւր․ և նոցա լցեալ ուրախութե՝ փառս տային ա̃յ, և խնդրէին 'ի ա̃նէ՝ տալ ինքեանց և կուսին զերջանիկ կատարում հանդիսի 'ի փառս անուան իւրոյ ս̃րբ։ Իսկ ինքն Եւփիմիա ստէպ զայս աղօթս մատուցանէր․ Տ̃ր յ̃ս ք̃ս արա արժանի զաղախին քո և զնահատակակիցս իմ՝ պատարագ ընդունելի լինել քեզ ը̃ հարցն մերոց, որք

փափաքանօք խոստովանեցին զանձունդ քո ։
Ապա 'ի վաղիւն անդր նստեալ իշխանին պղծա֊
կոսի յատեանն՝ հրամայեաց նախ ածել զա֊
ռաջեաւ զնոր վկայսն զոսթենէս և զաեկ֊
տոր ․ և հարցանէր ցնա , զի՞ գործեցիք՝ զի
չկամեցայք անսալ հրամանաց իմոց ․ մի՛ ար֊
դեօք և դուք երկոհացայք 'ի դենէս , և կամ
թէ մոլորեցայք գլխովին զհետ տխմարացն
այնոցիկ՝ որ 'ի կապանս են ․ և արդ զոհե֊
ցէք աստուծոցն , զի գիտասցիք զսերտ հաւատար֊
մութիւն ձեր 'ի պաշտօն դիցն և 'ի ծառայութիւն
մեր ։ Նոքա ետուն պատասխանի , և ասեն ․ մեք
ով անթիպատէ արդարև մոլորեալ էաք պա֊
տրանօք խաւարասէր թշնամւոյն՝ զոր դուդ
պաշտես , և կորուսեալ էաք 'ի վիհս անօրէ֊
նութեան դժոխային գործոց , կապեալք 'ի
սնոտի կենցաղս ըստ ձերում ծառայութեան , և
սնոտի յուսով հեռացեալք 'ի յուսոյն յաւի֊
տենից ․ այլ այժմ հաւատացեալ եմք յԱստուած
Ճշմարիտ , և հրաժարեալ 'ի լոյս աստուածգիտութեան
'ի ձեռն նահատակազգեաց սրբոյ կուսին եւ֊
փիմեայ ․ վասն որոյ քաւ մեզ այսուհետև զոհել
դիցդ գարշելեաց , կամ անսալ աստուածադէմ հրա֊
մանաց քոց ։

Յայնժամ ցասուցեալ բռնաւորին՝ ետ հա֊
նել զնա 'ի գազանամարտ , զի գիշատեսցին
'ի գազանաց ․ և նոքա ուրախութեամբ յանձն
առին զայն դժնդակ պատուհաս , զի փու֊
թով հասցեն երանելի կենաց գեղեցիկ նա֊
հատակութեամբ ։ Արդ յորժամ արձակեցին գա֊
զանս սովեալս 'ի վերայ վկայիցն , նոքա սկսան

կար

կարդացեալ առ Տն, եւ ասել. գոհանամք զքէն Տր, զի արժանի արարեր զմեզ մատնիլ վս անուան քոյ սրբոյ 'ի ժանիս երեւելի գազանաց, զի զերծեալ լիցուք 'ի ժանեաց անօրինաց եւ աներեւոյթ որսողին. եւ արդ աղաչեմք զքեզ Տր, տուր մեզ կատարել զընթացս մեր յայսմ ասպարիզի, եւ փրկեա զանձինս մեր 'ի հաղբից մարդասպանին. եւ տուր մեզ խաղաղութիւն գալ առ քեզ: Եւ առժամայն ձայն եղեւ յերկնից. լուեալ զաղաչանս ձեր, եւ արարից զամ խնդրուածս ձեր:

Նոյնժամայն վայրի եկեալ գազանաց՝ մեղմով խածանէին զնահատակսն, եւ ծծեալ զարիւնս նոցա՝ 'ի բաց գնային 'ի նոցանէ, թողեալ անվնաս զմարմինս նց. մինչեւ զարմանալ ամենեցուն՝ որոց կային 'ի տեսարանի, ը̅ նոք գործն. իսկ սրբցն յանձն արարեալ Տն զանձինս՝ աւանդեցին զհոգիս իւրեանց: Եւ տեսեալ անթիպատոսին զվախճանել սրբցն՝ յարեաւ եւ գնաց յապարանս իւր. իսկ զմարմինս սրբց բարձին արք երկիւղածք լուելեայն, եւ պատեալ սբ պատատառակալօք եւ օծեալ իւղովք անուշիւք՝ ամփոփեցին 'ի գերեզմանի:

Դարձեալ 'ի վաղիւն ը̅ այգանալ առաւօտուն եկն նստաւ անթիպատոսն յատեան, եւ հրամայեաց բերել զառաջեաւ զեւփիմիոս՝ տեսանել, թէ յո՞ր խորհուրդս կայցէ: Եւ իբրեւ գայր սբ կոյսն, քաղցր բարբառով նուաճէր, եւ ասէր. երդնում քեզ Տր օրհնութի 'ի ճանապարհիս յայսմիկ. փառա-

ուրեմ զքեզ տ͞մ զօրութ͞բ իմով . զքեզ տէր միշտ օրհնեմ, և 'ի ձայն սաղմոսաց՝ բարձր առնեմ՝ գովելով և փառաւորելով զանուն ս͞բ քո :

Արդ և ես զնա անթիպատանս , ասէ . մինչև ցե՞րբ ոչ խնայես 'ի քեզ, և կորուսանես զանձն քո . Ե՛կ ունայն բանից իմոց, և հաւանեցո՛ զմիտս քո զոհել Ա͞ծոյն , զի հաշտեսցիս ընդ քեզ , և բարի արասցես քեզ . ա՛րդ լո՛ւր ինձ , և խորհրդակից եղէց քեզ . դարձի՛ր 'ի միտս զգաստս , զի կենդանի մնայցես , և տիկնաց տիկին կոչեսցիս : Յայնժամ ծիծաղեցաւ որբուհին , և 'ի կշտամբանս հրապուրանաց նորա ասէ . հաստատեալ եմ 'ի զգաստ միտս՝ զոր ունիմ 'ի քէն . ապա թէ ոչ զի՞նչ խանմոութիւն այլ , որպէս թողուլ զԱ͞ծ կենդանի , և քարանց և փայտից զոհել . մի՛ թէ համարիցիս, եթէ անմիտ և կորստական խորատուքս լսելով խլից և համրոց պղծաձոյլ պատկերաց զոհեցից , ո՛վ մոլորեալ դու և 'ի բաց անկեալդ 'ի Ճշմարտութենէն Ք͞ի , և բևեռեալդ ընդ որոգայթադիր օձին . Բնակիչդ տարտարոսին և ժառանգորդդ անշէջ հրոյն . որ փութաս զքաղաքավարեալս Ճշմարտութե՛ամբ՝ առ ձեզ ձգել . տակայն ես ոչ հաւանեցայց սնոտի հրապուրանաց քոց , և ոչ իբրև զտղայ խաբեցայց պատիր բանիւք քովք . այլ առ ոչինչ դրեցից զսպառնալիս քո և զշողոքանս . զի ունիմ զգեցեալ զսպառազինութիւն հաւատոցն Ք͞ի , որ անխափան զօրացուցանէ զիս :

Յայն-

Յայնժամ հրամայեաց անթիպատոսն 'ի ծա-
ծուկ գործակալաց իւրոց՝ մեքենաւոր գործա-
րան տանջանաց կազմել սոյն , և հոլովելով
քերել 'ի թէատրոնն . և յեղակարծուց արկա-
նել զեւփիմիա 'ի թակարդ մեքենայիցն . զի
այնպէս ըմբռնեալ ընդ նմանութեան վայրենի
վարազաց՝ մեռանիցի անգիտանալով ։ Այլ
իբրև կազմեցին զորոգայթ տանջանացն ,
եդին 'ի տեղին սրբոյ մկայուհին պայծառ դի-
մօք , և համարձակ շրջէր անվնասելի ։ Իսկ
յորժամ դահիճքն կամէին քարշել զկոյսն ,
և ձգել 'ի տեղին՝ ուր լարեալ էր որոգայթ
տանջանարանաց , յափշտակեալ եղև նա 'ի
ձեռն հրեշտակաց , և էանց խաղաղութեամբ ընդ
մեքենայսն . յորս անկեալ դահճացն՝ սա-
տակեցան ։ (2)

Յայնժամ վայրի բացեալ զբերան իւր երանե-
լին եւփիմիա՝ սկսաւ աղօթել , և ասել . Տէր
Աստուած՝ որ առաքեցեր զմիածին որդիդ քո յերկ-
նից . որ եկն և մարմնացաւ 'ի սրբոյ կուսէն մա-
րիամայ . և չարչարանօք խաչի իւրոյ եղոյծ
զերկուսեան մահու , և ընթաղեալ կոխեաց
զզօրութիւն բանսարկուին , և քակեաց ըստ-
խաչափայտին , և եբաց զդրունս երկնից .
Տէր՝ որ մերձ կացեր երկոցունց երանելի զկնա-
ւորացն այնոցիկ , որ վասն անուան քո հեղին
զարիւնս իւրեանց , և հերքեցին զընդդիմա-
մարտ դազանս . որ հաստատեցեր 'ի ձեռն
սրբոց նահատակաց զհիմունս հաւատոյ . որ
մերձաւ օգնական եղեր ինձ յամ մրցմունս տան-
ջանաց . փրկեա՛ և այժմ զանձն իմ աղօթիւք

սրտից այնոցիկ՝ որ 'ի բանտին են մտօք անսուտ խոստմանցն, զոր աչքն ոչ ետես և ունկն ոչ լուաւ. և պահեաս զաղախինն քո. զի դու միայն ես, որ փրկես և ապրեցուցանես զյուսա-ցեալսն 'ի քեզ:

Այլ տեսեալ անթիպատոսին՝ թէ ոչինչ վնա-սեցաւ կոյսն 'ի մեքենայիցն, սկսաւ լլկել անօրէն, և ողոքանօք խօսել ընդ նմա. ասէ. Ամ իրօք իմաստուն գոլով քո, և ազգաւ ազ-նուական և առաջին, զարմացեալ եմ յոյժ, եթէ մտեր 'ի բանս եղեալ մոլորեցուցչաց՝ պատրեցար, և կորուսեր զամենայն ինչ քո. և տա-կաւին կաս 'ի նմին յամառութեան՝ ոչ առնե-լով զհաճոյս ինքնակալին. սակայն և այժմ իբր զիմաստուն և զպարկեշտազգեղ կին լուր ինձ, և իբր հօր քում հաւանեաց և ներեաց զառ 'ի յինէն եղեալսն առ քեզ անարգանս տանջանաց. և զոհեաց անմահ դից, զի մի լլիցիս 'ի նախատինս ազգին քո:

Իսկ սրբ. վկայն քրիստոսէր մտօք զինեալ՝ յան-դիմանեաց զանթիպատոսն, և ասէ. ո՛վ նենգաւոր թշնամի արդարութեան, որ ազնուիսա-բարոյ հնարիւք կամիս որսալ զիս. ո՛վ դժնէ-համ բանիցդ՝ որ քան զլեղի դառնագոյն, և քան զմոլախինդ սատակիչ. ոչ այնչափ անըզ-գայ եմ, եթէ թողեալ զգանձն անապական կենդանութեան՝ և երկիր պագանիցեմ բանսար-կուին խաբէութեան: Արդ մի խաբիր անթի-պատէ, եթէ հաւանեցուսցես զիս բանիւք՝ զոհել անմաքուր դիւացն, և կամ Աստուածս ուրա-նալ զնա. և զխորհուրդ անսամօթեալ՝ միշտ կեն-

դան

պանուոյն նման առնես զոչ երբեք կենդա-
նացեալսն, և նոցա զոհս կատարել թելա-
դրես ։ Արդ՝ քաւ լիցի ինձ հաւանել անհամ
և կորստական բանից քոց ․ վայ փութամ և
տրամ վաղվաղակի՝ զոր ինչ և կամիս ․ քանզի
ես փութամ ձեպիմ չարչարանօքդ որ ՚ի քէն՝
մտանել ՚ի յաւիտենական երկնային ժա-
ռանգութիւն, ուր է հայրն ամենեցուն և
հանդիսադիրն ա͞ծ, որ պսակէ զա͞մ ս͞բս իւր,
և որդին միածին, և հոգին ս͞բ պարգևա-
բաշխն ա͞մ բարութե͞ ։
Այնուհետև իսպառ սրտմտեալ իշխանն՝
հրամայեաց չարաչար ձաղկել զնա արջա-
ռաջլօք ․ իսկ որբուհին եւփիմէ ՚ի հարկանել
իւրում ասէր ցբռնաւորն ․ ո՛չ հպին յիս տան-
ջանքդ քո ․ լուծեալ ես և օտարացեալ ՚ի
բնութենէդ ․ յաղթեալ և հերքեալ է զօրու-
թիւնդ քո ։ Յայնժամ ապեղիանոս հանդերձ
անթիպատոսիւն մոլեալ ՚ի ցասումն՝ ետ բե-
րել աղոցս սայրասուրս, զի յերկուս բաժա-
նեսցեն զանձն կուսին ՚ի մամուլս հիւսանց ․
և առնելին տապակս երկաթիս պատրաստել,
զի կիզցեն զնա ՚ի ջեռուցեալ տապակս, և
յանձին դարձուսցեն ։ Այլ իբրև պատրաս-
տեցին դահիճքն զա͞մ ; ածին զվկայուհին, և
արկին զնա ՚ի մէջ մամլոց գործարանացն ․
և ահա բեկեցան սղոցքն, և ոչ ներգործէին
՚ի նա ․ նոյնպէս և եռանդն տապակաց շիջաւ ․
քանզի հրեշտակք ա͞յ եկեալ մերձ կային
կուսին, և անգործ առնէին զա͞մ հնարս ա-
նօրինաց ։

Տեսեալ զապեզիրանոսի և անթիպատոսի, եթէ
զկնազգեաց է վկայն քնի աներևոյթ զօրու-
թբ, մօգութեն անուանելին զհամբերութեն
նր. ապա համանուքբ խորհրդարանին հրա-
մայեցին, զի բազմութիւք գազանաց՝ արջք
և առիւծք 'ի միասին արձակեսցին 'ի վերայ
նր։ Իսկ և մուծին զաղախինն քնի 'ի թէատ-
րոնն, տարածեալ նր զձեռս իւր՝ յաղօթս
եկաց, և ասէ. Յայտնի՛ ես տծ՝ որոց կար-
դամն առ քեզ. ընկա՛լ զհոգի իմ 'ի հոտ ա-
նուշից. որպ ընկալար զհօր մերոյ աբրահա-
մու զընդունելի պատարագն, այնպէս և զիմ
տառապելոյս ընկա՛լ զպատարագս հոգւոյ և
մարմնոյ, զկամաւոր և զբանաւոր զոհս՝ զոր
քեզ մատուցանեմ։ Յայնժամ արձակեցին
զգազանսն 'ի վր. և կոյսն նբ կնքեաց զինքն
նշանաւն քնի, և կարդաց զանունն տն։
Իսկ գազանացն փախս առեալ՝ գային մերձ
'ի վկայն քնի. ուր արջքն հանդարտութբ
լիզուլին զգարշապարս նորա. նոյնպէս և ա-
ռիւծքն իբ օրինակի նշ հեզութե ցուցանէին։
Որ տեսեալ զկնաճորայ՝ զայրագնէին. և
հրամանաւ իշխանին խոցոտէին սրովք զանձն
նբ վկային. (զի թերևս զարիւն տեսեալ
գազանաց՝ գիշատեսցեն զնա փութով։) Իսկ
զի տակաւին կենդանի էր երանելին եւփի-
միա, և փափաքէր ընդունել զկատարումն,
ինքնին ողոքէր զգազանսն առանց զանգի-
տելոյ մերձենալ 'ի նա փոխանակ զկնաճո-
րայց. զի վաղվաղակի բարձցեն զնա յՅէ առ-
տի չարէ, և մնացէ առ տծ՝ առ որ անձկա-
ցեալն

և պսակ պարծանաց ամենեցուն նց՝ յիսնե-
րորդ երկրորդ, սրբուհւոյն եւփիմիա. զորոյ
և զարիւնն խնդրեաց տծ 'ի ձեռաց չարախօ-
հին պրոկոսի անթիպատոսի, որ ընդ չարա-
չար ախտիւք անկեալ՝ մեծապէս տանջանօք
սատակեցաւ 'ի կենացս:

Իսկ օր կատարման երանելոյ կուսին եւփի-
մեայ էր սեպտեմբերի ժզ. 'ի հիւպատոսին
դիոկղետիանոսի քնամարտ կայսեր, և ա-
թոռակցի նորա մաքսիմիանոսի հերքուղեայ
կմհերակլեայ, յամի տն իբր 303: Նշխարք
երևելի սքանչելեաց ինչ եղելոց 'ի քաղկեդոն
'ի ձեռն ամենահամբաւ վկայուհւոյն եւփի-
մեայ 'ի յուլիսի. ժա. ուրոյն յիշատակ նորա
կարգեցաւ առ յոյնս յայսմաւուր. և ըստ նմին
նաև 'ի մեզ տօն նորա վերածեալ եղև յայս
միջոց յուլիսի՝ Ը նախընթաց խմբ վկայից, և
ծա վկայակցաց նր, և Ը քրիստոնեայ կուսի:
Ըստ յիշատակելոյ յայսմաւուրացն քն յոհան
ոսկիաբան, այն է ոսկեբերանն, պատուեաց
զսրբուհի կոյսն եւփիմիա ներբողական ճա-
ռիւք. այլ իցէ թէ 'ի ձեռս բերէաք ուստեք
զօրինակ այնր ճառի, որ չերևի այժմ 'ի
միջի:

Իսկ վասն հոյակապ տաճարին եւփիմիայ, և
սքանչելեաց՝ որ անդ, այսպէս գրէ եւագրիոս
երևելի պատմաբան. Գիրք. Բ. Գլ. 3. * Տա-
ճար եւփիմեայ վկայուհւոյն (ասէ), որ 'ի
քաղկեդոն բիւթանացւոց, կառուցեալ է 'ի
տեղի զօճարձակի և դարահայեաց... ուստի
իբրև 'ի դիտանոցէ աչս յածեն՝ տեսանեն ըզ-
դաշտս

դաշտս և զհովիտս կանաչազգեաց և տնկա-
զարդ ... և ծովս պէսպէս և ծովափունս ...
Նաև ինքն տաճարն հանդէպ կայ կոստանդինու-
կան քաղաքին, և տեսութիւն նորին առաւել վա-
յելչանայ. և է երեքկարգեան մեծամեծ շին-
ուածովք. մին՝ անյարկ, արձակագաւիթ և
սիւնազարդ յամ կողմանց. երկրորդն յետ
նորա՝ երկայնութբ, լայնութբ, և սեամբք
գոգցես համանման, այլ յարկածածկոյթ
գմբեթաւ. յորոյ 'ի հիւսիսոյ արևելից է
տաճարն բոլորշի կամարաձև քաջարուեստ,
զոր պատեն սիւնք հաւասարք ըստ նիւթոյն և
ըստ մեծութեան. յորոց մին է վերնատուն բարձր
ընդ նովին գմբեթաւ. ուստի լինի յաղօթս
կալ առ վկայուհին, և առաջիկայ լինել
պաշտամանց :

Նաև 'ի մէջ կամարին ըստ արևելս է շիրիմ քա-
ջավկայելուհւոյ. ուր եդեալ կան ամենասուրբ
նշխարք վկային 'ի տապանակ երկայնաձիր,
զոր ոմանք մանգրա կոչեն (այսինքն երկայն), ար-
ծաթաշէն գեղեցիկ: Նաև ո՛րչափ ինչ 'ի սուր-
բուհւոյ անտի ընդ ժամանակս ժամանակս
հրաշագործեալ լինին, ըստ քրիստոնէից քա-
ջայայտ է. քանզի բազում անգամ կամ որոց
ըստ ժամանակին դիտապետ եղելոց քաղաքին,
և կամ այլոց ոմանց առաջնեայց եղելոց յուխտ-
նիր, տեսլեամբ 'ի վկայէն կացեալ՝ հրաման տալ
հնձան հարկանել (կամ այգեկութս առնել)
'ի տաճարի իւրում: (զոր բազումք բազմօրի-
նակ թարգմանեցին): Որ իբրև յայտնի եղև
և՛ թագաւորաց և՛ քահանայապետին և քա-

ղա

զաքէին, ընթանան ՚ի տաճարն. զի և զաւա-
զանքն և՝ երիցունք և իշխանք և այլ ամբոխն
ամենայն կամէին հաղորդս լինել խորհր-
դոյն: Երգ. մինչդեռ հայէին սոքա առ հասա-
րակ, հայրապետն կոստանդնուպօլսոյ հան-
դերձ քահանայիւք իւրովք ՚ի ներքս ՚ի տեղի
սրբութեան մտանէ, ուր աստացեալն ՚ի մէնջ
Դր. մարմինն եդեալ կայ. և է վանդակ (կէմ
ծակ փոքրիկ) առ տապանաւն ընդ աճեկէ.
ուստի զերկաթի գաւազան հանդերձ սպն-
գաւ կարկառեն մինչև ՚ի սբ. նշխարսն. և յետ
շօշափելոյ սոսա անդ սպնգաւն՝ յորժամ ՚ի
վեր ձգեն զգաւազանն, գտանեն զսպունգն
լի արեամբ թանձրամած. զոր յորժամ տե-
սանէ ժողովուրդն, իսկ և իսկ երկիր պագա-
նէ մծյ գոհութբ: Այս այնչափ է յորդութի
արեանս, զի եթէ բարեպաշտ թագաւորքն,
և եթէ ամ ժողովեալ երիցունք և համօրէն
բազմութի ժողովրդեան, առատապէս առ-
նուն անօթի. միանգամայն և առաքեն զշիթս
նորա ընդ ամ աշխ. առ հաւատացեալս՝ որք խնդ-
րենն. և հանապազ անարատ պահի արիւնն
այն՝ ոչ իւիք այլագունեալ: Այս այսոքիկ
ամծավայելչապէս կատարին՝ ոչ ըստ սահմա-
նեալ ինչ ժամանակի, այլ՝ ըստ առաջնորդին
լաւութե և ընտիր քաղաքավարութե. քան-
զի ասեն, թէ երբ առաջնորդն իցէ այր պար-
կեշտ և նշանաւոր առաքինութբ, այդ նշանն
լինի առաւել յաճախութբ. իսկ յորժամ չիք-
ցէ այնպիսի, դուն ուրեք կատարին ամծայն
սքանչելիքս Ա:

Յա

Ըստ աւելու Նիկեփորոս կալլիստոս , թէ յետ ժամանակաց մօրիկ կայսր 'ի կարծիս երկ֊բայութեան անկեալ վասն իրացս , մի արդեօք խարդախանք ինչ իցեն , եբարձ առ ժամա֊նակ մի զարծաթի տապանակն և զվանդակ տապանին , և զքուն արկղ կուսին փակեալ կնքեաց արքունի մատանեաւ իւրով ․ և յետ աւուրց բազմաց ինքնին բացեալ զկնիքն՝ ան֊ձամբ փորձէ զնոյն նշան ․ և ահա որպէս յա֊ռաջն՝ դարձեալ բղխեաց յորդագոյն ևս արիւն 'ի մարմնոյ սրբոյ կուսին ․ զոր ժողովեցին սպուն֊գաւ ըստ սովորութեան ։

Դարձեալ գրէ եւագրիոս այսպէս ․ * Մ․ՁԼ
,, տառացից ինչ մի , զոր ոչ ժամանակ և ոչ
,, առիթ ինչ հատանէ ․ և ոչ խորէ զհաւա֊
,, տացեալս և զանհաւատս , այլ՝ ամենեցուն
,, զուգապէս հանդիպի ․ յորժամ մերձենայ
,, որք 'ի տապան անդր՝ ուր են սրբ նշխարքն ,
,, հոտ անուշից հարկանի նմա՝ գեր 'ի վեր
,, քան զսովորական բուրումն , որ առ մար֊
,, դիկ ․ զի ոչ նման գտանի հոտոյ բուրելոց
,, 'ի դաշտաց , և ոչ յայլ անուշահոտ իրաց ,
,, և ոչ որոյս կազմէ արհեստ միւռոնագործ
,, խնկեփեցաց , այլ՝ օտար իմն և գերա֊
,, հրաշ , ինքնին յանդիման կացուցանելով
,, զզօրութիւն նշխարացն ։

Թողից և զայլ ազգի ազգի սքանչելիս , որք 'ի զանազան մատենագրաց պատմին ․ յորոց սակի է և այն , զի 'ի դիմել երբեմն պարսից զօրացն 'ի վերայ քաղաքին քաղկեդոնի՝ կամեցան բարբարոսքն այրել և զնշխարս սրբուհւոյն

եւ.

Եւփիմեայ․ վ՟յ դիզեալ յարդ բազում ՚ի
՚ի վ՟ր և շուրջանակի, հուր մատուցին․ այլ
յետ ծախելոյ յարդից՝ անարատ գտան նշ-
խարք կուսին ։ (3)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Ճառընտիրն մեր Ա․ յորմէ առաւել առաք զառա-
ջինկայս ճառ. պատմութեն, ունի ՚ի խորագրի այսպէս․
* Վկայաբանութի սրբոյ կուսին եփիմեայ, և որք Ը նմ կա-
,, տարեցան ՚ի քաղկեդոնիւն՝ քառասուն և իններուց վկայիցն
,, քնի ||․ ուր հայելով ՚ի կարգ նոյն վկայաբանութե՝
պարտ է յաւելուլ և զերկու զօրականս, որովք լինին
յիսուն և մի վկայք․ Թող զի խմ վկայքն թէպէտև էին
՚ի քաղկեդոնիւ, այլ ոչ կատարեցան ՚ի քաղաքի անդ․
զի առաքեցան առ Թագաւորն, որ էր յայնժամ ՚ի Նիկո-
միդիա ։ Զնոյն վկայաբանութի գտանեմք յարևմտան առ
մետափրաստեսի․ մինչ զի ուր ուրեք հնութե ճառընտ-
րին մերոյ էր անվերծանելի կմ փոքր մի պակասաւոր
առ փտութեն, դիւրին եղև մեզ կարկատել զայն միջոցս
՚ի մետափրաստեսէ․ Թող զնորա զոճն յայտնի, զոր ոչ
պահեցաք․ զի է ճոխաբան հաստարակօրէն, թէպէտև
վայելչապէս․ և ջանայ ՚ի պէտս վերծանողաց յաւելուլ
զնախագրական կամ զվերադրական պատճառս և հե-
տևանս, զորս ունէր ինքնին առնել ընթերցողն ։ Թողլից
և զտարբերութի ձեռագրաց բուն վկայաբանութեն․ զի
գուցէ ուրեք այլազգ ընթեռնույր Թարգմանիչն մեր, և
այլազգ մետափրաստէս ։ Իսկ այլ եւս վկայագիրք և
յայսմաւուրք են քաղուածք մի և նոյն վկայաբանութեն ։
Անուն կուսին ՚ի զանազան գիրս մեր անխտիր գրի եւ-
փիմէ, եւփիմեա, եւփիմիա, կմ եփիմիա, եփիմէ․ ևն․
որ ՚ի յոյնս է Եւֆիմիա, և առ լատինս Եւֆեմիա․ զի
և անխտիր առի ՚ի մեզ եւփրատ կմ եփրատ, եւփրոսի-
նէ կմ եփրոսինէ․ ևն ։

(2) Տանջանքն այն՝ որ առեալ եւփիմեայ, միօրինակ
պատմին ՚ի ճառընտրի և առ մետափր" և առ այլս․ որք
և ողատուն կուսին ՚ի մեքենայէ անոճոց ։ Այլ յայսմ
վայրի՝ ուր անորոշ բանիւ նշանակէ ճառընտիրն զնո-



րա-

բազմաց մեքենայ տանջանարանաց, կոչելով մեքենաւոր գործարան, մետափրաստես վերածէ յերիս տեսակս տանջանաց. յորոց առաջինն էր ասէ մեքենայ ինչ կազմեալ 'ի քարանց եւ յերկաթոյ. քանզի կախեալ էին քարինք մեծամեծք զանկեանց գործարանին. զորս իբրեւ քարշէին մեքենայիւք, ծանր երկաթ ինչ վեր 'ի վայր խաղայր ուժգնութեամբ հետ զհետէ՝ 'ի տորոտել զմարմին կուսին. այլ Տէր պահեաց զնա, եւ գործարանն քայքայեցաւ: Երկրորդն էր աւազան մեծ 'ի տեղի ասպարիզին, յորում էին ծովային խեցի գազանք. յոր արկին զեւփիմիա, եւ եւս անվնաս: Երրորդն էր այն՝ ( զոր թուի իմացուցանել Ճառընտիրն մեր ), զի արկին 'ի փոս մի սայրասուր քարինս, շամփուրս, սղոցս, եւ ծածկեցին գոյզն հողով. եւ յորժամ կամէին անցուցանել զկոյսն է այն, զի խրեալ ի փոս անդր՝ ջարդեսցի յանդէտս, նա եանց անվնաս է այն, եւ գահիճքն անկան 'ի գուբն՝ զոր ինքեանք փորեցին, եւ կորեան չարաչար: Արդ թէպէտեւ կարեւոր միաբանել զասսելն է գրելոցն 'ի Ճառընտրի, այլ պահելով զընթացս բանից նորա՝ շատ համարեցաք աստանօր նշանակել:

(3) Զարմանալի եւս է բասիլեան յայսմաւուրս Ց. որ այլով մասամբ միշտ գովելի գտանի ք̃ զյունական ժամագիրս. եւ սակայն ոչ գիտեմ որպիսի անզգուշութեամբ գրչաց՝ 'ի բաց անկեալ է յիշատակ եւ վարք եւփիմեայ կուսի 'ի սեպհական տեղւոջէն. զի ուր ամենեքին գնեն զտօն նորա կամ զկատարումն 'ի սեպտ. 16. ուր է տեսանել 'ի ժամանակագր. յն. եւ 'ի Լ. եւս եւ 'ի Ճ. (թէպէտեւ գրեալ էր սոսա 'ի սեպտ. Ղ. փոխանակ գրելոյ՝ ԺԶ.) ուր եւ 'ի Հ. ԺԶ. կամ ԺԵ. սեպտ. անդ՝ ք 'ի ՅՆ. բս. եդեալ կայ միայն 'ի յուլիսի. 11. առընթեր յիշատակի մարկիանոսի մարտիրոսի իկոնիացւոյ, * յիշատակ պաշտելեաց ամենահամբաւ վկայուհւոյն եւփիմեայ ||. եւ այն՝ զանցառնելով զերեւելի պաշտելիս արեան սրբուհւոյն եւ զայլ եւս հրաշս, ամփոփի առ առանձնական պատմութի ինչ առոյգ կամ անառոյգ՝ եդեալ յաւուրս չորրորդ ժողովոյն: Գտանին եւ քանի մի համանուն կուսանք եւ Նբ կանայք՝ խոստովանողք կամ վկայք եւփիմիա կոչեցեալք, 'ի զանազան ժամանակս. զորոց խօսին յոյն եւ լատին յայսմաւուրք եւ մատենագիրք. այլ առ մեզ մի միայն հռչակեալ որ Նբ կոչին եւ վկայուհին եւփիմիա քաղկեդոնացի առնախմբի, զոր եւ տպագաւ հռովմայեցի լինել ցուցանէ մետափրաստես:



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Քրիստինեայ կուսին ։

Տ. յուլիսի. 24. ըստ յոյն. եւ 23. ըստ լատ ։
Յ. եւ Ժ. յուլ. 24։ Ըստ Հայ. Ա. ՉԼԵ=ՉԻԱ.
եւ Գ. . ՌՅԿ=ՌՂԸ ։ Բոլլանդեանն դնեն զնա ՚ի Է.
հար. յուլ. եր. 495=534. եւ այլ ։ (1)



ՔՐԻՍՏԻՆԷ ԿՈՅՍ, ՈՐ Թարգմանի օրիորդ քրիստոնեայ, մեծ վկայուհին եւ ճըշմարիտ աղախին եւ հարսն Քնի, էր 'ի տիւրոս քաղաքէ (2), դուստր ուրբանոսի կռապաշտ զօրապետին՝ 'ի ժամանակս տրայիանոսի. եւ ինքն ուրբանոս էր մեծատուն յոյժ, եւ իշխան բազում գաւառաց, եւ դատաւոր 'ի քաղաքի իւրում. եւ կին նորա նոկի անուն կին յանիկէ 'ի Թգրական ազգէ. եւ ունէին մօտ 'ի ծերութեն զսա միայն՝ որ քրիստոնեէն կոչեցաւ (3), զաւակ միամօր, վայելուչ եւ գեղեցիկ յոյժ. եւ յորժամ էր նա այն ինչ անցեալ զտասնամենիւք, կամ ամաց երկոտասանից եւ ինն ամաց, բազումք ցանկային տեսանել զնա, եւ յոլովք մեծատանց որդիք փութային խօսել զնա 'ի հարսնութեն։ Զայն տեսեալ հօր նորա ուր-

բա

քանսաւր, որ մոլեալ էր 'ի պաշտօն սուտ ածոց, և խորհէր կարգել զմիամօր դուստր իւր 'ի յաւերժական պաշտօն դից իբրև քրմուհի, արար աշտարակ մի բարձր, և եհան անդր զդուստր իւր, և երկոտասան աղջկունս էր նմա՝ լինել նմա 'ի նաժիշտս. և արար պատկերս ոսկեղէն և արծաթեղէն, և եդ զնոս յաշտարակն, զի երկիր պագցէ նց դուստրն իւր, և մի իջեալ տեսցէ 'ի մարդկանէ: Այս 'ի թախանձել բազմաց զուրբանոս՝ 'ի հարսնացուցանել զդուստր իւր, նա ոչ էր ումեք հաստատէր դաշինս, այլ ասէր, բարւոք է նմա այնպէս կեալ, զի առաւել սիրեսցեն զնա ածքն. և լիցի պաշտօնատար նց, և զոհս մատուսցէ նց:

Իսկ կոյսն քանզի իմաստուն էր միտօք, և տեսեալ իսկ էր յառաջագոյն զգուշելի վարս քրիստոնէից, և լուեալ եւս զքաջ նահատակութիւնս նց 'ի վր քնական հաւատոց, ստէպ մտայոյզ լինէր. վն ճշմարիտ և սուտ կրօնից ազգաց, և փափաքէր ուսանել զճշմարտութիւն. Այս իբրև զարգացաւ և եւս յաշտարակի անդ, փոխեցան միտք նր ըստ օրինակիս ըստ այսմիկ: Յաւուր միում իբրև յարեաւ, և ետես զբուրվառն 'ի ձեռս՝ կամէր խունկ արկանել կռոցն, եղև 'ի խղճմտութն. քանզի շարժեաց ած զմիտս կուսին՝ երկնչանալ է կռոցն անմռունչս. վսյ տարաւ եդ զկուռսն 'ի պատուհանսն. և ինքն ելեալ նստէր և հայէր յերկինս էր արեւելս. և տեսանէր զզարդս երկնից, և խորհէր՝ թէ ո՞

իցէ արարիչ արեգական և լուսնի և աստե-
ղաց ։ Մկսաւ յոգւոց հանել, և ասել. ո՛չ
մնացուցից խունկս կռոցն զեօթն օր. և զաւր-
ձեռն զմտաւ ածէր զպարկեշտ կարգս քրիս-
տոնէից, և զչարչարանս սրբոցն և զհամբերու-
թիւս նց. և լուսաւորեալ 'ի վերուստ՝ ասէր.
ա̃ծ քրիստոնէից դու ես ա̃ծ իմ, որ արարիչդ
ես երկնի և երկրի. յայտնեա՛ ինձ զանուն
քո, զի մի՛ պաշտեցից զկուռս հօր իմոյ՝ զան-
շունչ պատկերս. զայս ասէր, և բազում ար-
տասուս հեղոյր ։

Այս եղև 'ի գիշերի միում երևեցաւ նմա փրր-
կիչն՝ կարդաց զնա սովին անուամբ, Քրիս-
տիանէ, այս է քրիստոնեայ, քաջալերեա՛ց,
զի ես ը̃ քեզ եմ, և ոչ թողից զքեզ. և դու
համբերութ̃բ սպասեսջիր զօրն քո. յայտ ա-
րարեալ՝ թէ կոչէ զնա քրիստոսական անուամբ 'ի
քրիստոնէութիւն և 'ի հանդէս նահատակու-
թեն ։ Այս լցեալ կուսին խնդութ̃՝ ոչ դադա-
րէր 'ի գոհանալոյ զնմանէ, որ երևեցաւ
նմա ։

Նորև այդ եղև, նստաւ 'ի նոյն պարտուհա-
նի, և խորհէր կործանել զկուռս հօր իւ-
րոյ. քանզի ը̃ ակամբ հայէր 'ի նս ։ Ասեն
ցնա աղախնայքն իւր. տիկին մեր՝ քանի՞ ա-
ւուրք են, զի ոչ ընկալան ա̃ծքն խունկս և
զոհս. գուցէ բարկանայցեն 'ի վ̃ր մեր, և
կորնչիցեմք ։ Ասէ ցնս. զի՞նչ խօսիք դուք մո-
լորք վ̃ս կռոց անշնչից, որք ո՛չ չար ինչ կա-
րեն առնել և ո՛չ բարի. յայսմհետէ չէ՛ ինչ
ինձ փոյթ վասն նց, այլ մնացուցից զոհս և

պաշ

պատարագս տ՟ն իմոյ ք՟ի, որ արար զերկինս
և զերկիր, և որ 'ի նո՟ա արարածք իցեն ։ Իսկ
նո՟ց անկեալ յոտս նո՟ր՝ ասեն ․ մ՟ր տիկին մեր,
մ՟ր ․ զիա՞րդ մոլորեցար, և զօտար ա՟ծ պաշ-
տես ․ եթէ լուէ հայր քո, ունի կորուսանել
զքեզ և զմեզ ։

Այլ մինչդեռ խօսէին նո՟ք, եկն եմուտ հայր
նո՟ր ․ և տեսեալ զդուստրն իւր՝ ուրախ եղև ․
և մատուցեալ երկիր եպագ ա՟ծոցն իւրոց,
և զոհեաց նո՟ց ․ և ելեալ նստաւ ։ Յայնժամ
մատեան աղախնայքն և ասեն ․ տէր մեր,
ահաւասիկ ոչ սակաւ աւուրք են, զի դուս-
տրն քո ո՛չ զոհեաց, և ո՛չ խունկս մատոյց
ա՟ծոցն ։ Դարձաւ և ասէ Ուրբանոս ցկոյսն ․
տիկի՟ն իմ և դուստր՝ զի՞նչ ասեն զքէն ։
Ասէ երանելին ․ մ՟ր կոչեր զիս դուստր քեզ,
այլ՝ ասա՛ զիս դուստր երկնաւորին ա՟յ ․
Զայսքան ո՛չ իմացաւ հայր նո՟ր ․ այլ համա-
րեցաւ, թէ վ՟ն ա՟ծոցն իւրոց ասէ ․ վ՟յ և
ուրախացեալ՝ չոգաւ 'ի տուն իւր ։ Իսկ կոյսն
գտեալ ժամ պարապոյ, և մտեալ 'ի տեղին՝
ուր էին կուռքն, կարդաց զանուանն ա՟յ ․ և
մանրեալ զկուռսն՝ եւտ աղքատաց, թերևս
արկանելով ը՟ պատուհանն 'ի վայր, կիսայ-
րով դաղտնի ճանապարհաւ ։

Յետ աւուրց եկն անդրէն հայր նո՟ր ․ և իբ-
րև ոչ եգիտ զչ՟ածս իւր 'ի կայի իւրում, 'ի
վ՟ր համարեալ՝ թէ դուստրն իւր կորոյս զնո՟ա,
խառովեցաւ զայրացաւ, և հրամայեաց սպա-
սաւորաց հարկանել զերեսս նո՟ր սաստկագոյնս ․
և ոչ այնու շատացեալ՝ մերկացոյց զնա, և

[redacted]



քո ։ զիա՞րդ մոլորեցար , և զայլ ա̃ծ պաշտես՝ զոր մեք ոչ գիտեմք , և վշտացուցանես զիս և զհայր քո , և զբարերար ա̃ծն անարգես ։ մի՛ որդեակ՝ մի՛ , աղաչեմ զքեզ , մի՛ անլուր լինիր ինձ ։

Յայնժամ ասէ աղախինն քնի՝ քրիստոնեայն կոչեցեալ 'ի ա̃նէ , ցմայր իւր ։ զիա՞րդ ասես զիս դուստր քեզ ։ զի ոչ ոք է յազգէ քումմէ կոչեցեալ քրիստոնեայ , այն իսկ է քրիստոնեայ կամ քնեան (3) ։ ո՞չ գիտես , զի զորդ զանուանն կրեմ , նա է իմ հայր և մայր , և նմա նուիրեցի զիս ։ և նա վարժեաց զիս 'ի զէն արդարութե և յաղթութե , զի յաղթեցից այնմ՞ որ զօրանայ 'ի ձեզ 'ի կամարարդիւք ։ և նովաւ խորտակեցի զկուռսդ ձեր՝ զոր պաշտէք յանմտութե ձերում ։ և դուք եթէ կամիք կեալ , դարձարո՛ւք 'ի կռոց անտի , և ծանիցո՛ւք զայն՝ որ եկն 'ի խնդիր մոլորեալ մարդկութես ։ զաքաւորիչն ասեմ ամենեցուն , որ է օրհնեալ յաւիտեանս ։

Իսկ լուեալ զայս ամ մօրն՝ յարուցեալ գնաց 'ի տուն իւր լի տրտմութե ։ և պատմեաց առն իւրում զամ բանս դստերն ։ Ասէ ուրբանոս ։ լաւ է ինձ սպանանել զնա տանջանօք , քան եթէ 'ի պատճառս նորա նախատ լինիմ 'ի մարդկանէ ։ Իսկ հնչեաց 'ի քաղաքի բանս այս , եթէ դուստր մեծի իշխանին ուրբանոսի քրիստոնեայ եղև , և ոչ կարեն փոխել զմիտս նր ծնողք նր ։ և ամենեքին միայն աներանել զկատարածն ։ Ապա ՟Է այգն եաածել ուրբանոս զքրիստոնէն յատեան կա-

կեանց . ապա թէ ոչ՝ ածեմ ՚ի վ՛ր քո այլ առա-
ւելագոյն տանջանս , զոր ոչ գիտես . և ոչ կա-
րէ փրկել զքեզ ա՛ծն՝ յոր յուսացար ։ Անմի-
տես դ՛ու կոյսն . ո՛վ քջ զա՛մ մարդ հեգ և ողորմե-
լի , ո՞չ գիտես՝ զի որդին ա՛յ լոյս եկն յա՛շս ՚ի լու-
սաւորել զխաւարեալքս , և ազատել զազգս
մարդկան յա՛մ չարէ . և այժմ կարօղ է այն՝
որ լուսաւոր արար զիս , կեցուցանել հոգ-
ւով և մարմնով զք՛ո մեծի անուան իւրոյ . զի
յաղթեցից սատանայի՝ որ քև մարտնչի ը՛ն իս ։
Յայնժամ առաւել զազանացեալ ուրբանո-
սի՝ հրամայեաց բերել անի՛ւս մեքենաւորս ,
կամ անի՛ւ մի ժանեաւոր , և ետ կապել զնա
ը՛ն անուոյն , և արկանել ՚ի ներքոյ հուր . և
ձէթ և ծծումբ սրսկէին ՚ի վ՛ր հրոյն , ո՛պ զի
արագ խանձողեսցի , միանգամայն և ՚ի շրջել
անուոյն՝ առհասարակ ջախջախէին ոսկերք
նորա ։ Յայնժամ երանելին համբարձ զաչս
յերկինս , և ասէ . աղաչեմ զքեզ տ՛ր իմ յ՛ս
ք՛ս , մի՛ անտես առներ զիս . ձգեա՛ զհզօր
ձեռն քո , և շիջո՛ զհուրս զայս՝ ՚ի պարծանս
հաւատացելոց և ՚ի յամօթ անհաւատից ։ Եւ
զայս իբրև ասաց , ցոլանայր հուրն , և զբա-
զումս յանհաւատիցն այրեալ սատակէր . իսկ
ս՛ր վկայուհին ՚ի վերայ անուոյն երևէր իբ-
րև ՚ի գահոյս հանգուցեալ զուարթութ՛բ .
իբրև տեսին հաւատացեալքն , տային օրհ-
նութի՛ ա՛յ ։

Ապա հրամայեաց դատաւորն իջուցանել զնա
յանուոյն , և ասէ ցնա . ասա՛ ինձ , ո՛վ ու-
սոյց քեզ զկախարդութիւն զայդ . ապա թէ
ոչ՝

ոչ՝ մի՛ կարծեր ապրիլ ՚ի ձեռաց իմոց․ զի այլ եւս դառն նեղութ̃ք կտտամահ տառապեցից զքեզ, եւ առից զվրէժս անարգանաց ա̃ծոցն առ ՚ի քէն՝ օտարացելոյդ ՚ի սիրոյ նց։ Ասէ երանելին․ ասացի քեզ, թէ հայր իմ քս է, որ ուսոյց ինձ զամ̃ արդարութի․ նա է ճանապարհ մոլորելոց, եւ անդորրիչ նեղելոց․ որ տայ համբերութիւն տանջեցելոց վս անուանն իւրոյ․ եւ նա ուսոյց ինձ արհամարհել զկուռս․ այլ դու մեռցիս ՚ի մեռելոտի կուռս քո, եւ ոչ զերծցիս ՚ի հանդերձեալ դատաստանէն, որ ոչ ծանեար զճշմարտութիւն՝ աստեղի՞դ այ։

Յայնժամ եւս տանել զնա վերստին ՚ի բանտ, եւ թողուլ անսնուած․ իսկ սքն յարուցեալ կայր յաղօթս, եւ ասէր․ գոհանամ զքէն տր յս քս որ արժանի արարեր զիս չարչարիլ վս անուանդ քո ահաւորի։ Ապա ՚ի գիշերին յայնմիկ երեւեալ հրեշտակն տն՝ ողջացոյց զամ̃ վէրս մարմնոյ նորա, եւ կերակրեաց զնա․ եւ նա գոհանայր զայնէ։ Իսկ ահա հասին առ նա ՚ի մէջ գիշերի արք հինգ առաքեալք ՚ի հօրէ նորա․ եւ հանեալ եղին զնա ՚ի նաւ մի․ եւ տարեալ ՚ի մէջ ծովուն, կապեցին քար զպարանոցէ նորա, եւ ընկեցին ՚ի ծով։ Իսկ վաղվաղակի ընկալաւ զնա հրեշտակն տն, եւ եհան զնա ՚ի ցամաքն․ եւ ասէ երանելին կոյսն․ օրհնեալ ես ամենազօր այծ, որ ոչ երբէք հեռանաս յերկիւղածաց քոց։

Յաւելուն առաւօտ բազումք ՚ի վկայագրրաց, թէ յաւել քրիստոնէ աւել առ փրկիչն․

արդ

եր յարքանեկութ՟ն զիւրն . և լուեալ վասն
Դեյն քրիստոնեայ , ( զի գրեալ իսկ էին զա՟մ
անցս նր՟ , ) հրամայեաց բերել զառաջեաւ .
խօսել ակամաւ ը՟ նմա , և ասէ . աղ ջէ՛կ դու՝
ազատ ես , և տուն քո թագաւորական , և
բազում չարչարանս կրեալ ես , ո՞չ ուսայ 'ի
տղայասաւորացս . արդ՝ դարձ առ ա՟ծսն , որ
տիրեն ա՟մ երկրի , և կեցցես . ապա եթէ ոչ
լսես ինձ , երդուեալ յա՟ծսն , ծանր և դառն
պատրաստեմ քեզ տանջանս . և ոչ փրկէ զքեզ
ա՟ծն քո 'ի ձեռաց իմոց ։ Մնուրի ետ ն՟րն հա-
մարձակ , և ասէ . սնոտի և ծիծաղական բա-
նիւք քո զքեզ մխիթարես . իսկ զաղախին
քո՞ ոչ կարես զարհուրեցուցանել ոչ դու և
ոչ թագաւորն քո . ես ոչ թողից զտ՟ր ա՟ծ իմ,
որ յա՟մ ժամ մերձ է առ ծառայս իւր , և պա-
հէ զն՟ս . և զհակառակորդսն յամօթ առնէ ։
Հրամանն ետ դատաւորն հարկանել զնա բր-
րօք ։ Նա ասէ ն՟րն . ո՞չ ամօթ իցէ քեզ այդ ո՜
դատաւոր . ո՞ւր են սպառնալիք քո . մեծա-
մեծս խոստացար , և փոքր տանջանս արկա-
նես զինև . եթէ ունիս այլ մեծագոյնս , ած-
ցես 'ի վ՟յ իմ . զի որքան առաւելուն չարչա-
րանքն , այնքան առաւելուն պսակքն . քան-
զի հաւատամ 'ի ք՟ս փրկիչն իմ , զի և զքեզ
յամօթ առնէ ոչ զգործակիցն քո զուրբա-
նոս ։ Դատաւորն ասէ . ներեմ քեզ , և յանձն
առնում զաստացեալդ , և իբրև զդստեր իմոյ
ընդունիմ զանարգանս քո՝ ողորմելով տղայ-
ութեն քում . միայն դարձ առ ա՟ծսն , որ տի-
րեն ա՟մ երկրի ։

Այս պահնի կոյսն հակառակ ողոքանաց չա-
րին, և ասէ. յիրաւի՛ կոչիս՝ ոչ լսեմ, դիոս,
զի զկռոց կուրից՝ խլից անշնչից ստացեալ զա-
նուն', մոլեալ ես զկնի նց ։ Արտմտեալ զա-
տաւորին՝ ետ բերել սալս երկաթիս, որպէս
կասկարայ, և ջեռուցանել սաստիկ, և դնել
՚ի ներքոյ ոտից նր. և արարին այնպէս սպա-
սաւորքն ։ Իսկ սրբն քրիստոնէ հայեցաւ յեր-
կինս, և ասէ. օրհնեմ զքեզ տր, և փառա-
ւորեմ զանուն քո տծ իմ, որ արժանի արա-
րեր զիս դարձեալ չարչարիլ վս անուան քո ։
Բայց քանզի հուրն ոչ մերձենայր ՚ի նա զօ-
րութն քնի, ասէ դատաւորն հայհոյիչ. տե-
սանես, զի հուրն ոչ մերձենայ ՚ի քեզ. վս
զի տծքն ոչ կամին զմահ քո ։ Սաստեաց նմա
որբուհին, և ասէ. անօրէն և ամպարիշտ
որդի սատանայի, որ զզօրութին քնի պիղծ
կռոցդ համարիս. բայց տացես փութով ըզ-
վրէժ, և երթիցես՝ ուր գործակիցն քո ուր-
բանոս ։

Այս բռնաւորն բարկացեալ ասէ. կակղագոյն
բանքս զքեզ համարձակագոյն արարին. յայն-
ժամ հրամայեաց հարկանել զնա սաստիկ.
և ապա ետ գերծուլ զգլուխ նր, և շրջեցու-
ցանել ընդ քաղաքն մերկ ։ Իսկ սրբն ասէր յըն-
թանալ իւրում. գոհանամ զքէն տր իմ յս,
զի արժանի արարեր զիս աւուրս այսմիկ՝ ճա-
նաչիլ յամենեցուն, փոխանակ այնր՝ որով
փակեալ կայի յաշտարակի անտես ՚ի մարդ-
կանէ. ոչ զի ամենեքեան գիտասցեն՝ թէ
քո եմ ես. քանզի տեսիլ եղէ բոլորեցուն վս
ահա

նեաց լինձ, զի և այժմ 'ի սողնոց այսոց փրր-
կեսցէ ։ Իսկ յորժամ արկլին զսողունան, նջ
զեռայլին առ սոսս կուսին ։ Բարկացաւ դա-
տաւորն, և ասէ ցԹովիրչն ։ Թողեալ զգա-
ղանոդ, զի ապանցեն զկախարդդ զայդ ։ և նա
Թողեր՝ որպէս և գիտէր ։ և յանկարծակի
յարձակեցան օձքն 'ի վ՞ը Թովչին, և սպա-
նին զնա ։

Իսկ երանելի կոյսն ասէր ։ գոհանամ զքէն
Տէր Տէր իմ յս քս, զի արժանի արարեր զիս
և 'ի սողնոցս յայսցանէ ճանաչիլ, եթէ քո
աղախին եմ ։ Նաս ասէ ։ ձեզ ասեմ սողունք
յանուն յսի քսի, երթայք 'ի տեղիս ձեր ։ և
դք ուրեք մեղանչէք ։ Իսկ ինքն մատուցեալ
առ մեռեալն՝ յաղօթս եկաց այսպէս ։ Տէր
Տր մերոյ յի քի, որ առաքեցեր զմիածին որ-
դիդ քո 'ի փրկութի ազգի մարդկան ։ որ ե-
կեալ մարմնացաւ 'ի ս՞րբ կուսէն, և բժշկեաց
զմեզ ախտ հոգւոց և մարմնոց ։ և այժմ Տէր
Տծ լուր աղախնոյ քո, և յարո զմեռեալս
զայս ։ ոչ զի փառաւորեսցի անուն քո Տր ա-
ռաջի ժողովրդեանս այսմիկ ։ Իսկ բուռն հա-
րեալ զԹովչէն՝ ասէ ։ յանուն յի քի արի կանգ-
նեաց այր դու ։ և անդէն վաղվաղակի յա-
րեաւ մեռեալն ։ և անկեալ յոտս քրիստո-
նեայ՝ հաւատայր և օրհնէր զԱծ ։

Բայց դատաւորն կուրացեալ միտք ասէր
ցքրիստոնեն ։ յայտ արարեր Ը տամ երկիր զկա-
խարդութի քո անձնամբ ։ չատ է առդ, դար-
ձիր առ Ած, որ այգչափ ներեցին քեզ ։
Ասէ Տէրն ։ ով անմիտ, սիրտ ծառեալ, և միտք

խոստովանեալ, ոչ իմանալ զմեծամեծս այ, որ բաւական են զքարինս կակղել . իսկ դու ոչ 'ի միտ առնուս զզօրութի այ, այլ դիւրեաց համարիս ։

Այսնժամ հրամայեաց բռնաւորն` հատանել զստինս նորա . և իբրև հատան երկաքին ստինք երանելի կուսին, ընդ արեան կաթն բղխեաց ։ Նա էր սրբուհին . գոհանամ զքէն երկնաւոր Թագաւոր, որ արժանի արարեր զիս` այսպիսի չարչարանս չարչարիլ վն անուան քում սբյ փառաւորելոյ ։ Յուրեալ դատաւորին զբանս նր` ասէ . յայսմհետէ ոչինչ օգտիս 'ի քոյոց աղօթից, եթէ ոչ զոհես սծոցն . զայս ասացեալ` հրաման ետ տանել զնա 'ի բանտ ։ Իսկ երթային զհետ նորա կանայք տեսանել զերանելին . կէսք սքանչանային ընդ համբերութի նորա, և կէսք կաթեկից լինէին նմա . իսկ նա շնորհալից բանիւք յայտ առնէր նց զուրախութի սրտի իւրոյ 'ի չարչարանս` որ վասն քրի . մինչև բազումք 'ի տեսողաց և 'ի լսողաց հաւատացին 'ի քր, արք և կանայք . յորոց եօթն տիկնայք ասին լինել 'ի պատուականաց ։

Տեսեալ բռնաւորին` եթէ բազումք պակասին 'ի դենէն մր քրիստոնեայ, փութացաւ կործանել զնա 'ի կենաց . ետ ածել զնա առաջի իւր 'ի վաղիւն անդր, և ասէ . չարիմաց և չարամահ, և ամն անարգանաց արժանի . այժմ մերձեալ է ժամ հատանել զքեզ 'ի կենաց . դարձ առ սծսն, զի մի կորիցես, այլ ընկալցիս և բազում պարգևս ։

Քրիստոնէ ասէ․ պարգեւք քո Տր քեզ լիցին
'ի կորուստ որդւոյ կորստեան, զի ոչ գոյ քեզ
փրկութիւն յերեսաց բարկութեան արդար դա-
տաւորին ։ Ասէ դատաւորն ցպահիճս․ հա-
նէք փաղփաղակի զլեզու դորա, և հատին
նաժամայն․ այլ կոյսն սրբն սկսաւ առաջի ա-
մենեցուն պայծառ ձայնիւ օրհնել զԱծ, և
ասել․ Տէր իմ Ած, Յս Քս՝ երկնաւոր թագա-
ւոր, որ ոչ հեռանաս 'ի սիրելեաց քոց․ որ
պահեցեր ցարդ զաղախինս քո քոյով մարդա-
սէր բարերարութեմբդ․ և արդ աղաչեմ զքեզ
Տր, մի անտես առներ զիս, այլ ընկալ զհո-
գի իմ Տր կամարարս անուանդ քում՝ 'ի յարկսդ
յաւիտենից ։ Զայն եղև յերկնից, և ասէ․
Քրիստոնեա եկ և հանգիր յանդորրութեան ու-
րախութեան, զոր կազմեցեր քոյին աշխա-
տութեամբդ, և վաստակոց ցաւոցդ՝ զոր համ-
բերեցեր․ զի մոռացիր զտանջանս մար-
մնոյդ՝ 'ի լոյսն անստուերն ընդ նահատակա-
կիցս քո ։

Յայնժամ վայրի հրաման ետ բռնաւորն խոցել
զնա և սպանանել․ և մատուցեալ տիգա-
ւորք երկու՝ անդէն խոցեցին զկողս նր (4)․ և
այնպէս աւանդեաց զհոգին բարի խոստո-
վանութբ 'ի Քս՝ բազմահանդէս նահատակն
և կոյս վկայուհին սրբն Քրիստոնէ, որ և
Քրիստոնեայ, յամսեանն յուլիսի՝ որ օր ժա
էր ամսոյն, յամի տն իբր 110․ կմ ը ոմանց՝
և ևս զկնի ։

Իսկ վս պատուհական մարմնոյն՝ են որ ա-
սեն, թէ թաղեցաւ յաշտարակն իւր․ դու-
ցէ

ցէ մայր նոր հրաման տուեալ իցէ այնպէս առնել, կմ ոչ ասէ 'ի Ճառընտիրս ինչ, այլ յայտնէ նորա հաւատացեալ 'ի ձեռն սր̃բյն քրիստոնէից եղ. զնա անդ. և են որ ասեն՝ թէ այլուր ամփոփեցաւ 'ի հաւատացելոց : Նայց յետ դարուց անցելոց՝ գողացեալ զնա երկու ուխտաւորաց, ոչ կարծեմ, բերին յարեւելից յարեւմուտս. ուր և ցարդ գտանին նշխարք նորա յայլեւայլ տեղիս. Թող զի զամբողջ մարմինն առ. իւրեանս ունել համարին բնակիչք քաղաքի քաղաքի. ոչ վենետակեցիք, փլանդրացիք, և այլք. յայտ է թէ նոյնացուցանելով զզանազան սր̃ս համանուանս (5) : Այլ յա̃մ տեղիս առնէ սր̃ն քրիստոնէ կոյս այցելութի̃ իւրոց ջերմեռանդից՝ զօրաւոր բարեխօսութե̃ իւրով առաջի քն̃ի. նմա փառք յաւիտեանս. ամէն :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Գործեցցի Ճառընտիրն մեր Ա. որ զառաջինկեայ վկայաբանութի̃ քրիստոնէից հրաշալի՝ վայելչապէս բովանդակէ ը̃ գրելոցս. ուր թէպէտև ոմ ինչ 'ի վեր քան զբնութի̃, այլ ոչ արտաքոյ օրինաց ամենակալելու պէտք էքլեայ : Գիտեմք, զի զնոյնս աւանդեն և այլք առ հասարակ, բայց հանդերձ պատուհասաւք աւելորդ. բանից և հանգամանաց 'ի զանազան օրինակագրաց. որք ամէնը են յայսմանէս Յարձակել զգիրս, և ոչ գիտեմ թէ փոխանակ զարդարելոյ զբնաղն ապեզզացուցանեն, և սուտերախս 'ի վր̃ սեռն աշաց տկարաց. և իմաստնոց անգամ առաւել թուի ոմն՝ չիշխել զանստոյգս ը̃ ստոյգս. և զստոյգս եւս ը̃ անստոյգս զատել:

ծնեալ՝ իմացական մտօք և անձնիշխան կա-
մօք ըստ պատկերի և ըստ նմանութեան արարչին.
և այս՝ 'ի վեցերորդ աւուր լինելութեան աշխի,
այն է յառաջնում ուրբաթ աւուր :

Այլ ո՞ կարէ ճառել զանզուգական ձիրս և
զփառս հոգւոյ և մարմնոյ, որովք ճոխացաւ և
բանելիս ադամ առաջնաստեղծ. որոյ նմանն
ոչ եղև և ոչ լինիցի երբէք յորդիս նր, բայց
'ի նորին ադամայ նորոգողէ հնոյն : Իմաստա-
նադոյն էր քան զսողոմոն, և գեղեցիկ քան
զաբեսաղոմ. կատարեալ մտօք, և կարգաւո-
րեալ կամօք և ամ մասամբք հոգւոյն, և կա-
րողութբ ներքին և արտաքին զգայութեց.
և ըստ մարմնոյ հասակի 'ի չափ կատարելութե,
այր երիտասարդ՝ առողջ կազմութբ, և նա-
զելի վայելչութբ, ժիր և զօրեղ, և քաջա-
տեսիլ ամ անդամօք, պարծանք բնութեա
համօրէն : Իսկ հարստութբ և իշխանութբ՝
մի միայն, որ կարգեալ ամ արարածոց եղե-
լոց 'ի վայր քան զնա բնութբ, թագաւոր տիե-
զերական, և ինքնակալ վեհափառ, որ ոչ ցու-
ցաւ 'ի դարս. հայր աշխի, և իշխան աշխի :

Այլ աթոռ թագաւորութեն նորա յարևելս՝
'ի հայաստան երկրի, յԱծակերտ 'ի դրախ-
տին եդեմական, որ և պարտէզ փափկութե,
գործել զնա և պահել՝ անվաստակ զբօսա-
նօք, և յարդել զտաղանդ պատուիրանին,
առ արժանի լինել՝ երբ և հաճոյ իցէ կա-
մացն Այ վերափոխել զնա կենդանւոյն 'ի
դրախտն երկնաւոր՝ յանճառ երկնից ար-
քայութե. զի 'ի փոքուն հաւատարիմ գտեալ՝
և

զամ խոկալով նմանն իւր , մերձեալ զնա ընդ անձին . զի նման զնմանն սիրէ բնաւորաբար ։ եւ եդ նմա եւս անուն իբրեւ նմանակցի իւրումն ; բայց կարգաւ եւ իրաւամբք ստորնագունի , 'ի նշանակել՝ եթէ յառնէ իւրմէ առաւ . մարդ է իբրեւ զմեզ , այլ չէ այր . նմին իրի ոչ անուն լինել հայր՝ սկզբնապատճառ զաւակի , այլ՝ մայր պատճառակից . միանգամայն լսելեաց մարդասիրութեան ակնարկելով զխորհուրդ պսակի , եւ զմիաւորութիւն հարսին եկեղեցւոյ ընդ հոգեւոր փեսայիւն իւրումն քսի , որոյ օրինակ էր ադամ ։

Նաեւ էին ադամ եւ կինն իւր շնորհազարդեալ պարգեւօք սբ. հոգւոյն՝ իբրեւ հրեշտակք 'ի մարմնի , ածամերձք եւ ածախօսք . եւ կային զուարճացեալ անտրտմական խնդութեամբ յերջանկացեալ դրախտի անդ փափկութեան 'ի մերձաւորի անմեղութեան , անախտ եւ անցաւ կենօք , եւ ազատ յամ հոգոց եւ 'ի տառապանաց հոգւոյ եւ մարմնոյ ։

Բայց աւաղ անբերելի աղէտիցս , զոր ոչ հանդուրժեն տանել լսելիք . զի որ այսչափ եւ այսպիսի բարեմասնութեան վիճակեալ էին նախաստեղծք , շնորհօք 'ի փառս անմահութեան կարգեալք ըստ հոգւոյ եւ ըստ մարմնոյ , անդէն եւ անդ՝ եւ թերեւս առ օրին 'ի նմին աւուր ուրախութեան ( առ աւանդելն՝ յետ միոյ եօթնեակի , ) անձամբ զանձինս յերաշխաւորէ 'ի յետին թշուառութիւն ձգեցին՝ պատրանօք չարաւն բանսարկուին , որ ոխակալ եւ մախացող ընդ մարդն , զի մի եղիցէ 'ի բարձրութեան երկնից 'ի

հաստ պատուհասն 'ի վ̃ի ամ̃ նախաստեղծից .
նախ՝ է̃ յառաջագոյն պայմանի զմահու մե-
ռանիլն և զհողադարձիլն հողոյն , և երկ-
րորդ՝ առն զանէծս ժառանգել , և քրտամբք
երեսաց՝ տրտմութ̃ հանդերձ զհացն ուտել ,
և կնոջն՝ հեծութ̃ և տրտմութ̃ ծնանել
որդիս՝ ը̃ ծ̃րութ̃ առնն , քան ընկերութ̃ ,
բայց և հայրաբար գթասիրեալ 'ի վ̃ի հե-
գութ̃ն նց̃ , որով պատրեցան քան թէ պար-
տեցան՝ տգիտութ̃ , և պարտեցան քան թէ
պատրեցան՝ տկարութ̃ բնութ̃ս 'ի խորա-
մանկ և յծակուլ օձէն 'ի սատանայէ , եւ նց̃
քոյս թողութ̃ և ազատութ̃ , զգեցուցա-
նելով նոցա պատմուճան մաշկեղէն սգատե-
սակ՝ 'ի նշանակ ապաշխարութ̃ , և քաջալերս
տալով նախամօրն՝ զի զօրասցի 'ի ձեռն զա-
ւակի իւրոյ կոխել զգլուխ օձին , անձնասէրն
պահելով զգարշապարս իւր . զոր և տիրամ̃ր
կատարեաց դուստր իմաստուն մօրն եւայի՝
կոյսն անշաղախ՝ անարատն մարիամ ա̃ծա-
ծին , որ ծնաւ Ծ̃ի զփրկիչն Ծ̃ի և զջախիչ
գլխոյ մահաբերոյն օձին . և եբարձ զանէծս
նախամօրն , և եղև մայր փրկութ̃ և կեն-
դանութ̃ մահացելոցն մեղօք . յորոյ օրինակ
յաւել ադամ կոչել եւայի անուն երկրորդ
կենաց . այս է կին , ծնող ամ̃ բանական կեն-
դանեաց :

Արդ ք̃զի անարժան գտան նախաստեղծքն
բնակութ̃ անմահական վիճակի , և մահա-
ւիթ պտղով զրկեցան 'ի ծառոյն կենաց ,
եհան արտաքսեաց զնս̃ ա̃ր ա̃ծ 'ի դրախտէն
փափ

փափկութեան ; և ընծանեցոյց արտաքոյ 'ի բա-
ցեայ՝ յանդիման դրախտին, արգելեալ ըզ-
մտաւոր նոր իւր հրեղէն ցանկով 'ի ձեռն բո-
ցեղէն սրոյ զօրաց հրեղինաց, զի անմերձե-
նալի լինիցի ճանապարհ ծառոյն կենաց. և
մի՞ մնացէ այնուհետև ադամայ և եւայի
յոյս գտանելոյ զդեղ անմահութե յերկրա-
ւոր տնկոյ, այլ՝ յամէ ապաւինեալ ապաշխա-
րութե՝ խնդրեսցեն զդեղ անմահացուցիչ
հոգւոյ. զի ծառն կենաց օրինակէր զտիրա-
մայրն զմայրն կենաց, միանգամայն և ըզ-
փայտն կենաց զՔս խաչն կենարարին:

Այլ ահա այսպիսի ակնկալութ յուսոյ փըր-
կութե և փրկչի, զոր տնկեաց ած 'ի սիրտ
տնկելոյ մարդոյն, կարօղացան կեալ ադամ
և եւայ զամս ուսուրս երկարատև կենաց իւ-
րեանց. ապա թէ ոչ՝ յանհնարին տրտմութէ
իսկոյն մեռանէին, կա՞մ առ անյուսութե զիւ-
րովի երթային, և կամ 'ի սպանութի իրե-
րաց մտաբերէին. ուր 'ի միտ ածին՝ թէ յոր
բարձրութէ յոր խորս գահավէժ արարին
զանձինս. այլ ըստ այն տրտմութեին ապաշխա-
րութե մխիթարէր զնա 'ի յետին թախծութե
անդ. և դառն արտօսր ձնշեալ վնս յանցա-
նաց՝ քաղցրանայր նց յուսով թողութե 'ի
մարդասիրութե բարձրելոյն, որ միշտ առ-
դահատէր զնա: Վիտէին, զի անձամբ չէին
բաւական դարման տանել անբուժելի վի-
րաց իւրեանց. բայց ոչ անգիտանային, ե-
թէ ամենաբաւականն կարօղ է և կամեցօղ՝
ողորմութը դեղ ամենահնար 'ի վէր ածել

ցաւոց իւրեանց . վ՟յ յ՟մ սրտէ առ Նա դի-մէին մշտամռաունչ հեծութ՟ք , և 'ի խնամս տեսչութ՟ն Ն՟ր ապաստան եղեալ՝ որդիական քան ծառայական երկիւղիւ՟ պաշտէին զնա զ՟մ աւուրս , հաստատուն հաւատովք հան-դերձ և աներկբայ յուսով և ջերմ՟ն սիրով , և ա՟մ առաքինափայլ վարուք յօրինակ ա՟մ ծննդոց իւրեանց ։ Մ՝ինչև 'ի դէպ է ասել , եթէ այն առաջինն էր՝ զոր ծանունս մե-ղան , և նոյն այն յետին . զի առեալ զդառն ճաշակ մահաբեր մեղաց՝ ոչ ևս այնուհետև մեղան մեղս մահուչափ . զի յ՟մի իբրև 'ի չարաթոյն օձէն՝ յորմէ միանգամ խաբե-ցան , 'ի բաց փախչէին յ՟մ երևութէ մե-ղաց . 'ի պատերազմ էր փոխեալ յայնմհե-տէ կեանք մարդոյ , և փորձութի՟ վարք Ն՟ր 'ի վերայ երկրի . և արդարև նախամարտիկ յաղթօղք՝ յետ առաջնոյ պարտութե՟ն , ճա-նաչէին ադամ և եւայ նախաստեղծք՝ արդա-րացեալք յետ մեղաց շնորհօք հանդերձելոյ նորոյն ադամայ , որ եկն առաւել վ՟ն փըր-կութե՟ն ադամայ ։ (2)

Եւ եղև յետ ելանելոյ նախահօր և նա-խամօր 'ի դրախտէն , յերկրորդ ամի անդ՝ ո՟ր կարծեաց ոմանց , կա՟մ ո՟ր այլոց՝ յերեսներորդ ամի ն՟ի , 'յղացաւ եւայ յադամայ , և ծնաւ զանդրանիկ իւր որդի , որում անուն եդ կայեն կա՟մ կայէն , ո՟ր ստացուած . զի ասէ՝ ստա-ցայ մարդ ա՟յ . զի թերևս կարծէր , եթէ նա լինիցի զաւակ գովելի 'ի կոխել զգլուխ օձին ; կամ պատճառ դարձի 'ի դրախտն .

քաղաքավարութիւն , միանգամայն և աշխատիլ 'ի գործս պիտանիս վասն կենաց պիտոյից . զի կորուսաք առէ որդեակք ես և մայր ձեր զանվաստակ և զանդորր կեանս երջանիկ դրախտին , և յայս անկաք երկիր անիծից փշաբեր :

Այս եղև անդրանիկն կայէն երկրագործ . իսկ Հաբէլ կրտսերն՝ հովիւ խաշանց . և ըստ որում տեսանել էր նոցա 'ի ծնողն իւրեանց՝ պատուէլ զՏէր Աստուած պատարագօք , մատուցանելով կէս զոհելով ինչ ինչ 'ի բերոյ երկրի և 'ի կենդանեաց՝ 'ի նշանակ խոստովանելոյ զնա Տէր ամենայնի , և նուիրելոյ զանձինս 'ի ծառայութիւն նորա մինչև 'ի մահ , արարին և նոքա այնպէս . այլ կարի աննման միմեանց : Քանզի կայէն եբեր 'ի պտղոյ երկրի պատարագ Տեառն՝ իբրև հարկս հարկանելով , և պարտս առ հարկի հատուցանելով , վասնորոյ և ոչ ընտրութիւն արար զլաւագոյնսն բերել , և սրտի մտօք նուիրել , այլ անխորհրդաբար անպէտս ինչ և անպիտանս մատոյց . վասնորոյ և սրտագէտն Աստուած ոչ նայեցաւ 'ի կայէն և 'ի զոհս նորա՝ երևելի ինչ նշանաւ :

Իսկ Աբէլ արդարն էառ ընտրանօք յանդրանկաց խաշանց իւրոց և 'ի պարարտաց նոցա , և մատոյց Տեառն բոլորով սրտիւ , զոյգ ընդ զոհիցն և զսիրտ իւր բոլորապտուղ նուէր ընծայելով Տեառն , և զուարթամիտ յօժարութեամբ պատարագելով զինչս և զանձն իւր 'ի պատիւ փառաց նորա : Սմին իրի և Աստուած հայեցաւ և հաճեցաւ ընդ Հաբէլ և ընդ պատա-

րագս նորա . և ետ 'ի վերուստ յայտնի նշանակ ընդունելի լինելոյ ինքեան, եթէ երկնաւորք հրով ծախելով զողջակէզսն, և եթէ այլազգ ինչ յայտնանշան ցուցակութե, իբր հաստատելով 'ի հոտ անուշից, և օրհնելով զնա և զպատարագ նորա :

Զայն իբրև ետես կայէն չար, զչարեցաւ դառն նախանձու և լցաւ դժոխային տրտմութք . խոնարհեցան անկան երեսք իւր, և սկսաւ այնուհետև ը ակամբ հայիլ յաբէլ, մի՛ արդեօք սիրելի գտեալ յաչս այ և պատուական քան զինքն՝ իշխան լիցի 'ի վր իւր, և ինքն անարգեալ կարգեսցի 'ի ծառայութն կրտսեր եղբօրն : Բայց ած յանդիմանեաց զանմտութն նր, և խրատեաց զնա՝ հանդերձ քաղցրալեր բանիւք . յայտ արար նմ, թէ չէ՛ բաւական ուղիղ ինչ բաժին հանել այ 'ի պատարագ, այլ պարտ է և ուղիղ մտօք մատուցանել . և ընտրութն առնել բարւոյ 'ի չարէ, և լաւագունին 'ի լաւէ . արդ ասէ՝ թէպէտև մեղար դու և՛ անարժան զոհիւքդ և՛ անիրաւ մախանօքդ, այլ ես՝ որ մարդասէր տրս եմ, ներեմ քեզ զայս նուագ . լո՛ւռ լեր, և մի՛ կասկածիր լինել ծառայ եղբօր քոյ . զի տակաւին կրտսեր եղբայր քո է նա, և հլու քեզ ոմ երիցու :

Ոչինչ շահեցաւ չարն 'ի կենսատուիթ խրատուէ անտի տն այ իւրոյ, այլ խրատեալ 'ի բանսարկու սատանայէ՝ որոյ նախանձու եմուտ մահ յաշխ, եդ 'ի միտ բառնալ զկեանս եղբօր իւրոյ գաղտ 'ի ծնողացն . վա որոյ ասէ

ցնա

կնա յուսոյ միում. Ե՛կ երթիցո՛ւք ՚ի դաշտ ,
ոչ̃ թէ զբօսանաց աղագաւ , կամ ՚ի պէտս
ինչ գործակցութե՛ ՚ի վաստակս ։ Այլ ար-
դարն աբէլ լուեալ նմա հեզութբ̃ . զի չէր
գիտակ չարութե սրտի նր̃ , այլ յա̃մի պատ-
րաստ էր անսալ հրամանաց նր̃ ոչ̃ եղբօր
երիցագունի՝ ը̃ ա̃ծադիր կանոնի և հայրե-
նի խրատու , զի փոքրն հպատակ լիցի մեծի ,
և կրսերն՝ աւագի յա̃մ կարգի ։ Այլ իբրև
չոքան ՚ի դաշտ անդր , յարեաւ կային ՚ի վր̃
հաբէլի եղբօր իւրոյ , և սպան զնա , հեղլով
զարիւն նր̃ իւ՞իք գործեաւ , եթէ գայլախա
զիւ՞ , եթէ բրով , և եթէ երկաթով . զի էր
երկրագործ , և սկսեալ էին յայնժամ վա-
րիլ բահիւ՞ և փայտատով ։

Այլ ո՞ բաւական իցէ պատմել զհեծութիւնս
սրտի և զհառաչանս անմեղին և արդարոյն
հաբէլի ՚ի պահու անդ աւանդման հոգւոյն
առ բարձրեալն . Նայեա՛ց ա̃ր ( ասէ ), ա՛կն
ամենահայեաց՝ յանպարտականս իմ մահ .
ընկա՛լ զբանաւոր պատարագս քեզ ՚ի հա-
ճոյս . զի վ̃ն փառաց անուա՞ն քո ՚ի սպանդ
վարիմ ոչ̃ զոչխար , և վ̃ն սիրոյ քոյ մեռա-
նիմ վաղամեռիկ և բռնամահ չարչարանօք՝
՚ի հանդէս վկայութե քո , որով վկայեցեր ՚ի
վր̃ պատարագացս քեզ հաճոյացելոց . և ը̃
այս ուրախ եմ , զի և անձն իմ գլխովին քեզ
պատարագի՛ ՚ի ժամուս . գոհանամ զքէն
ա̃ր և օրհնեմ զքեզ , և ՚ի ձեռս քո յա՛նձն
առնեմ զհոգի իմ ո՛վ երկնաւորդ հայր՝ ա̃ծ
մարդասէր , ա̃ր կենաց և մահու . որ կարող

Եւ միանգամ նորոգել զիս 'ի կեանս ։

Այսպէս նահատակեցաւ առաքինի վկայն ճշմարիտ առաքինութե̅ և ճգնաշատութե̅ արդարն աբէլ, պարագլուխն արդարոց, և նախաշաւիղ մարտիրոսաց, կուսակրօն առաջին՝ շուշանափայլ և վարդագոյնակ, նախավախճան 'ի մեռեալս, և նախկին յերախանս հոգւոց արդարոց կատարելոց ։ օրինակն ճշմարտութե̅ նախանկար 'ի ստուերին՝ անպարտական մահու գառինն ա̅յ պատարագելոյ 'ի վ̅ր խաչի հեղմամբ ս̅բ արեան ։ որ և գովութ̅բ յիշատակեալ 'ի նորուն ա̅ծեղէն բերանոյ՝ արդար անուանակոչութ̅բ ։

Իսկ անագորոյն գազանն մարդախանձ՝ եղբայրասպանն կայէն, նախատիպ յուդայի մատնչի՝ որդւոյն կորստեան, խաբէ հարցաւ 'ի ա̅յ, ո՞ւր է հաբէլ եղբայր քո, զի թերևս զղջասցի 'ի չարեացն՝ զոր գործեաց, լռեալ դիմօք յանդգնեցաւ տալ պ̅խնի ։ չգիտեմ, միթէ պահապա՞ն իցեմ եղբօրն իմոյ ։ զնոյն և առ ծնօղսն ասէր չուառականն ։ կամակար չարութ̅բ անգիտացեալ, եթէ եղբայր եղբօր ձեռնտու և պահապան ունի լինել յամի, և ո՛չ եթէ գազանաբար գիշատիչ ։ Թո՛ղ զի և գազանք խորշին 'ի սպանանելոյ զհամատեսակս, և՛ս առաւել զհամածին հարազատս ։ և ո՛չ զայն գէթ 'ի միտ էառ հեգն, եթէ արդարոյն պահի հատուցումն բազում յանանց կենդանութե̅, և իւրեան մնայ անմեռելի պատուհաս աստ և 'ի հանդերձելումն ։

Իսկ այս էր՝ զոր ասէր ցնա ա̅ծ ։ զի՞նչ գործեցեր

ցեր զայդ. դոչումն արեան եղբօր քոյ բողո-
քէ առ իս յերկրէ ։ Նա գտեալ զնա անապա-
շաւ 'ի չարիս, 'ի վր եած արդարադատ տրն.
անիծեալ լինիր դու 'ի վր երկրի, որ եբաց
զբերան իւր ընդունել զարիւն եղբօր քոյ 'ի
ձեռաց քոց. զի գործեսցես զերկիր, և ոչ
յաւելցէ տալ քեզ զզօրութիւն իւր. երերեալ
և տատանեալ եղիցիս 'ի վր երկրի ։ Նա քան
զի անզեղջն կայէն յանյուսութին ըմբռնեալ՝
ոչ ակնկալաւ թողութեն, այլ՝ ցանկացաւ մա-
հու քան զողջոջուն կենաց, եւ որ ած նշան
'ի կայէն, զի մի ոք հարցէ զնա. ապաթէ
ոչ՝ եօթնպատիկ պատժովք տուժեսցի ։ Նա
այնպէս յերկարեաց նա 'ի ցաւոտ կեանս՝
զառ հաւատչեայ անոտի տանջանաց յանձին
բերելով զամ աւուրս իւր. մինչև՝ ոմն երեւի,
սպանաւ յանդէտս 'ի ղամեքայ, որ վեցերորդ
էր 'ի ծննդոց նր ։

Նայլ փաղագոյն սուգ անհնարին հասանէր
'ի վր նախահօր և նախամօր մր փաղահաս
և բռնի մահուան արդարոյն աբելի. զի այն-
պէս բարձաւ նա զաւակն իւրեանց 'ի միջոյ,
յառաջեալ քան զամ մարդ 'ի ճաշակել ըզ-
դառնութիւն մահու բաժակին, զոր նոքեանք
ունէին ըմպել. և որ չարին էր, զի մնաց չար
զաւակն կայէն՝ ընդ սերնդովք իւրովք
զերկիր. ուր աբելի կուսութն նահատակե-
լոյ՝ և ոչ մի մնացորդ եղև 'ի վր երկրի ։ Բայց
ած միխիթարեաց զնախաստեղծս՝ տալով նց
որդի այլ արդար, յաւէ կենաց աղամայ եր-
կերիւր և երեսուն, կամ հարիւր և երեսուն.

զոր և անուանեաց ծնօղն՝ Սէթ․ ասէ, զի յարոյց ինձ ա̄ծ զաւակ այլ փոխանակ Հաբելի՝ զոր սպանն կային։

Նա եղև սէթ ը̄ պատկերի և ը̄ կերպարանաց համանգունատիպ ադամայ հօր իւրոյ, և ը̄ արդարութե̄ և ը̄ անարատ քաղաքավարութե̄ համանման եղբօր իւրում աբէլի․ ը̄ նմին և զաւակք սէթայ՝ զոր սիրեաց ա̄ծ, եղեն ընտիրք և ա̄ծապաշտք․ նմին իրի և որդիք ա̄յ կոչեցան․ իսկ ծնունդք կայենի մարմնապաշտք և խառնակեցիկք՝ կոչեցան որդիք մարդկան․ յորոց ՚ի չար գնացից զգուշացուցանէր սէթ զզաւակս իւր։

Որդ՝ անդրանիկն սեթայ անուանեալ Ենովս յառաջադէմ եղև ՚ի լաւութեան քան զայլ եղբարս իւր․ զորոյ զգովութիւն յայն բան բովանդակեն ա̄ծային տառք․ նա յուսացաւ կոչել զանուն տ̄ն ա̄յ։ Իսկ կոչելզ կրկնակի իմանի՝ ը̄ քերթողահօրն մովսեսի․ կամ անուանել ո̄ք զմտաւացեալ, կամ յօգնականութե̄ կարդալ․ յորոց զերկրորդն առաւել ընտրէ․ զի քաջայոյս եղեալ ասէ ուղղութե̄ հանդերձ՝ ՚ի մէջ որդւոց մարդկան ընկղմելոց ՚ի տարակուսանս և յանյուսութե̄, և ս առաւել յինքնահաճոյ գործս, յա̄ծ ապաւինի ենովս, միանգամայն և կոչէ զնա աղօթիւք և պատարագօք տ̄ր իւր և ա̄ծ, և զնա միայն պաշտել ուսուցանէ իւրոցն բանիւ և օրինակաւ, և ոչ ծառայել Ձի և մարմնոյ։ Աողից զոր ընթեռնուն եբրայեցիք, սա վստահացաւ կոչել զանձն ա̄ծ․ որ է խո֊

տոր֊

աստուածային վերծանութե. եթէ ոչ իմացուք աճով մեր րաբունեաց, այս է՝ Աստուածման որք ե-րեւեցան՝ Աստուածահաճոյ քաղաքավարութբ իւրով: Ի սոյն սերնդոց եւ մեծ նահապետն Ենովք՝ հինգերորդ յԵնովսայ, և եօթներորդ յԱդա-մայ, գերազանցեալ զամենեքումբք՝ որ յա-ռաջ քան զնա և որ առ նովաւ եղեն արդարք. և հաճոյ եղև յոյժ այ. մինչ զի կենդանւոյն փոխեաց զնա այ կամ առ ժամն ՚ի դրախտն Եդենայ, և կամ ՚ի նոյնպիսի վիճակ երջա-նիկ, աներեւս յաչաց մարդկան. և ոչ ուրեք գտանիւր: Սա ինքն սքանչելին Ենովք ճա-նաչի և առաջին մարգարէ՝ գրաւոր կամ ան-գիր պատգամաւորութբ գուշակելով զհան-դերձեալս, թանիւն՝ զոր ՚ի բերանոյ նր գրե-րանելի առաքեալն Յուդա ՚ի թուղթն կա-թուղիկեայց, իբրև քաջածանօթ ամենե-ցուն. * Ահաւասիկ եկն տր բիւրովք սրբովք
„ հրեշտակօք՝ առնել դատաստան ընդ ամի,
„ և յանդիմանել զամ ամբարիշտս վս գոր-
„ ծոց իւրեանց՝ զոր ամբարշտեցին, և վս
„ ամ խիստ բանից՝ զոր խօսեցան զնմանէ
„ մեղաւորք և ամբարիշտք ||: Արդ՝ ոչ զայս ստուգութբ գիտեմք աւանդեալ որդւոց յոր-դիս՝ եթէ գրով և եթէ անգիր մինչև ՚ի Նոյ, և ՚ի Նոյէ մինչև ՚ի քս ՚ի մէջ եբրայական ազ-գին, սոյնպէս կային և այլ աւանդք պէս-պէս յԱդամայ հետէ՝ ՚ի կարգի աստուածպաշտու-թե և կենցաղօգուտ գիտութե և արուես-տից. յորմէ եւ և աւանդութիւն այն՝ եթէ ստոյգ և եթէ անստոյգ, այ գիտէ, թէ Ե-

նովք

Նովք դրոշմեալ լիցէ զբանս իւր յերկուս մասունս .
և այսմ երաշխաւոր յովսեպոս եբրայեցի 'ի
գիրս հնախօսութեանց . ա . 2 . կմ 3 . ուր ունի յա-
ղագս սեթայ և սեթեանցն այսպէս . * Սա
,, ծնեալ ( Է ծեռամբ հօր իւրոյ ադամայ ) ,
,, և հասեալ 'ի չափ հասակի ընտրութեան բար-
,, ւոյ , զօրացաւ 'ի կրթութիւն առաքինութ .
,, և եղեալ քաջալաւ՝ նմանիս եթող և զզա-
,, ւակս իւր : Սոքա ամենեքեան բարի հան-
,, դիսացեալ , և 'ի նոյն երկիր բնակեալ՝ գե-
,, ղեցիկ քաղաքավարեցան , ոչ ումեք 'ի նո-
,, ցանէ 'ի դժպատեհս ինչ բերեալ . և զի-
,, մաստութիւն զերկնայնովք և զզարդուք
,, երկնից հանճարեցին : Եւ զի մի զիւրք
,, իւրեանց 'ի մոռացօնս լինիցին առ մար-
,, դիկ , և մինչև 'ի ծանօթութիւն եկեալ՝ կորն-
,, չիցին , դիտելով լինել զառ 'ի յադամայ
,, կանխաձայնեալ կորուստ տիեզերաց , մի՝
,, զօրութեամբ հրոյ , և միւս ևս՝ բռնութեամբ և
,, բազմութեամբ ջրոյ , սիւնս երկուս արարեն ,
,, զմին յաղիւսոյ , և զմիւսն 'ի քարանց , յեր-
,, կոսին ևս դրոշմեցին դրոշմ զգիւտս իւ-
,, րեանց . զի թէ աղիւսեայ սեանն դէպ լի-
,, նիցի ապականիլ 'ի ջրոյն յորդութէ , քա-
,, րեղէնն մնացեալ՝ տացէ մարդկանց ուսա-
,, նել զգրեալսն , յայտ առնելով՝ եթէ և ա-
,, ղիւսեայն աւանդեցաւ 'ի նոցանէ . և կայ
,, մնայ մինչև ցարդ ( քարեղէնն ) յերկրին
,, սուրայ ( կմ սիրիադայ , և կմ ասորւոց ) " .
յոր կարծեն ակնարկել ոմանք գրեալսն 'ի
գիրս դատ . Գ . 26 . * և աւուրց զերծաւ 'ի սե-
,, րով-

Այլ որ ստեղծն զադամ՝ 'ի պատկեր իւր, եղև
է՟ պատկերի նորա, կերպարանօք իսկ առա-
ւել նման նմին քան զա՟մ մարդ՝ գեղեցիկն
տեսանելով ըստ սաղմոսի քան զա՟մ որդիս
մարդկան․ նմանեցաւ և ը՟ լրման հասակին
երեսուն և երեք ամաց, ը՟ որում յայնպիսի
հասակի հաստեցաւ ադամ։ Ա՟պ և դրախտն
ադամայ օրինակ էր եկեղեցւոյ ք՟ի ըստ բա-
զում խորհրդոց, սկսեալ յականէ չորից գե-
տոց ը՟ չորից աւետարանչաց, և 'ի ծառոյն
կենաց՝ յօրինակէ կուսին և խաչին․ և զ՟ք
յուրբաթու ստեղծաւ և ել ադամ՝ 'ի դրախ-
տէն ը՟ երեկս, նոյնպէս և տ՟րն յուրբաթու
ել 'ի խաչ, և ը՟ երեկս եմոյծ ը՟ իւր զաւա-
զակն 'ի նոր դրախտ ա՟ծատեսուէ։ Այլ ք՟զի
Ճաշակմամբ պտղոյ անկաւ ադամ, տ՟րն Ճա-
շակեաց զլեղի փոխանակ նորա, ա՟պ և քա-
ռասնօրեայ պահօք քաւեաց զնա․ և դար-
ձեալ ք՟զի կողին՝ որ եղև կողակից, վիրա-
ւորեցաւ նախահայրն, նմին իրի և տ՟րն 'ի
կողն կենարար ընկալաւ զխոցումն գեղար-
դեան․ և զ՟ք ել հուր մեղաց 'ի կողէն ադա-
մայ 'ի տոչորել զբնութիւս, ջուր ել 'ի կողէն
ք՟ի 'ի շիջուցանել զնոյնս, և 'ի սրբել և 'ի
նորոգել զմեղ․ սոյնպէս և զայլ խորհուրդս
իմասցիս 'ի բանից վ՟դպաց իմաստնոց։
Յաւել ինձ և զայն, զի յորմէ հետէ որդին
ա՟յ եղև որդի ադամայ, ուստի և որդի մար-
դոյ զանձն անուանէր, ա՟պ ետ իշխանութի՟
որդիս ա՟յ լինել՝ որոց հաւատացեն յանուն
նորա, նոյնպէս և աւետարանն զադամ յոր-
դի-

դիւութին՛ այ ՚ի վեր հանէ . ըստ այնմ , որ սե-
թայն , որ ադամայն , որ այն ։ Նոյն այն է
ողբալի , զի յետ մահուն ադամայ և սեթայ՝
որդիք նյ յորդիս այ համարեալք՝ հետզհե-
տէ խառնակեցան ընդ որդիս մարդկան . և
ապականեաց ամ մարմին զճանապարհ իւր .
որով պէտք եղեն այ նորոգել զն հեղեղաւ
ջուրց առ Նոյիւ . զորմէ ժամ է ասել ։

# ՅԻՇԱՏԱԿ

## ՝Նոյի ։

Հ . Յունիս . 17 . կամ 18 . և այլք ։

ԵՐԿՐՈՐԴ ՀԱՅՐ ԱՇԽԱՐ-
հի զկնի ադամայ, տասներորդն
՚ի նմանէ, մեծ նահապետն Նոյ՝
եղև այր կատարեալ և արդար
յազգի անդ իւրում . զորոյ զլաւութիւն կան-
խաւ գուշակելով և հայր նր ղամէք մխիթու-
սաղեան՝ անդստին ՚ի ծննդենէ խորհրդով
անուան եդ նմա ՝Նոյ . ասէ , սա հանգուսցէ
զմեզ ՚ի գործոց մերոց , և ՚ի տրտմութեանց
ձեռաց մերոց , և յերկրէ՝ զոր անէծ տր ած .
յայտ արարեալ՝ թէ նոյիւ նորոգեսցի ա , որ
հնացեալն էր չարութբ և մերձ յապականու-
թի ։ ՝Քանզի որդիք մարդկան՝ ազգք կայե-
նի չարի , յորոց բազումք եղեն արք հսկայք
և

նեղ· տապանն մեծ , այն է նաւ մեծաշէն և ըն-
դարձակ , որ բաւական լինէր տանն նր̃ , և եր-
կուց երկուց յամ̃ ազգէ երևելի անասնոց և
գազանաց և թռչնոց , հանդերձ պաշարօք :
Այս պատրաստութն այսչափ յերկար՝ էր 'ի
ներողութէն ած̃ առ մարդիկ , զի թերևս ա-
պաշխարեսցեն . քանզի և արդարն նոյ ով̃
մարուք և բանիւք խրատէր զարդարութիւն
քարոզէր , նախնեաց և շինութեամբ տապա-
նին հռչակ հարկանէր ընդ ամ̃ տ̃՝ դառնալ 'ի
մեղաց առ ած̃ . զի մի մեղաց ասէ ապականե-
լոց է ած̃ զ̃ամ ջրհեղեղաւ :
Այլ որդիք մարդկան խառնակիրք ծըր-
գեալք յամբարշտութիս , էր որս և գործա-
ւորքն իսկ՝ որք կազմէին զտապանն , յոչինչ
դրէին զբանս արդարոյն . կէսք ծաղր առ-
նէին , և կէսք յանհոգս կային . ուտէին ըմ-
պէին , տնկէին շինէին , գնէին վաճառէին ,
կանայս առնէին և արանց լինէին . մինչև ե-
հաս օրն և ժամն , յորում ասաց ած̃ ցնոյ .
մուտ զու և ամ̃ տունն քո 'ի տապանդ . զի
զքեզ տեսի արդար առաջի իմ յազգիդ յայդ-
միկ : Այլ արար նոյ զամ̃՝ զոր միանգամ պատու-
ւիրեաց նմա տր̃ ած̃ . և եմուտ նոյ , և երեք
որդիք նր̃՝ սեմ , քամ , յաբեթ , և կին նոյի ,
և երեք կանայք որդւոց նր̃ է̃ նմա 'ի տապան
անդր , ամ̃ կենդանեաք հանդերձ՝ որք յա-
ռաջնմէ մուծեալ էին զոյգ զոյգ , արու և
էգ . և փակեաց զնր̃ ած̃ արտաքոյ զտապանն :
Այլ եղև յետ եօթն աւուրց մտանելոյ նոյի
և խառնցն 'ի տապան անդր , 'ի վեցհարիւրե-

րորդ

ըորդ ամի կենացն Նոյի, եղև ջրհեղեղ զքառասուն տիւ և զքառասուն գիշեր 'ի վերայ երկրի, սահանաբաց անձրևօք յերկնից, և աղբերահոս պատառումածովք 'ի յերկրէ. մինչև սաստկացաւ ջուրն յոյժ յոյժ, և ծածկեաց զամ լերինս բարձունս որ 'ի ներքոյ երկնից. և տապանն վերացեալ յերկրէ՝ շրջէր 'ի վր ծովացեալ ջրոց: Տեսիլ ահարկու և սքանչելի. համաշխարհական էր կորուստն, և ութից միայն ոգւոց 'ի տապանի եղելոց ազատութի. կորուստ քստմնելի, և փրկութիւն հրաշալի: Որանի՞ զեղջ եղև ասիցես արդեօք 'ի պահու անդ ջրահեղձոյց և անդնդասույզ արկածից, որոց յանհուպս եղեն զառաջինն. և քանի՞ ապաշաւ անմխիթար, եթէ ո՞րպէս և կամ զիա՞րդ անլուր գտաք մեծաքարոզ ձայնի ապաշխարութե. և արդ այս ամ եկն 'ի վր մեր: Ընթանայր ընթանայքն 'ի վր տանեաց, և 'ի վերայ աշտարակաց բարձանց, և բարձրաբերձ լերանց. այլ ջուրն՝ որ էր յաճման բարձրութե մինչև ցաւուրս հարիւր և յիսուն, ծածկեաց զամ բարձունս. և մեռաւ ամ մարմին շարժուն 'ի վերայ երկրի՝ 'ի մարդոյ մինչև յանասուն, և 'ի սողնոց մինչև 'ի թռչունս երկնից. և ջնջեցան յերկրէ: Այլ մնաց միայն Նոյ և որ ը նմա էին 'ի տապանի անդ Նոյի, յօրինակ քնի և եկեղեցւոյ նր, և կենարար փայտի խաչին, որով լինի մեզ փրկութի:

Յայնժամ Նոյ և որ ը նմա անձինք եօթն, տեսանելով զայ առ· ինքեանս քաղցր մար-

դատաւորութիւն, և զՏէրդեմ յանցաւորաց զվրէժ-
խնդրութիւն աՏագին, ահիւ և խնդութբ փա-
ռաւոր առնէին զտէր Ած, և ոչ դադարէին և
ոչ յագէին 'ի գոհանալոյ զտիւ և զգիշեր մի-
այցելութե չնորհացն Այ, որ եղև առ նոսա
միայն. և մնացին 'ի տապանի անդ զտարի մի
ամբողջ՝ յօրէ մտիցն մինչև ցօր ելիցն :

Եւ յիշեաց Ած զնոյ զսիրելին իւր, և զորս
ը ընդ նմա զարարածս իւր, և եած հողմ 'ի վր
երկրի, և դադարեաց յորդութի ջուրց. և
սկսաւ նուազել ջուրն յետ հարիւր և յիսուն
աւուր. և տակաւ զիջանէր և թողանայր յեր-
կրէ գրեթէ զնոյնչափ աւուրս : Եւ եկն և
նստաւ տապանն 'ի լերինս արարադայ, այն
է այրարատ կմ մասիս լեառն անուանի՝ յաշխի
հայոց մեծաց : Եւ յորժամ երևեցան գլուխք
այլ և ս լերանց, սպասեաց Նոյ աւուրս քա-
ռասուն, և ապա եբաց զպատուհան տապա-
նին, և արձակեաց զագռաւն, տեսանել եթէ
ցամաքեցեալ իցէ ջուրն յերկրէ. և ել ագռաւն
և անդրէն ոչ դարձաւ. յայտ է՝ զի շատացաւ
կալ 'ի վր ճախճախուտ լերանց, գտեալ իւր
կերակուր 'ի դիականց մարդոյ և անասնոյ՝
անսբ թռչունն գիշակեր. այն է օրինակ ան-
սբ քրիստոնէի, որ ախորժէ թաթաւիլ 'ի մե-
ռելոտի գործս կենցաղոյս, քան սրբութբ
քաղաքավարիլ 'ի տանն Այ :

Արձակեաց Նոյ և զաղաւնին զսբ թռչունն
զհետ նորա. այլ աղաւնին մաքուր չգտեալ
հանգիստ ոտից իւրոց 'ի տղմաշաղախ գոլոյ
երկրի՝ դարձաւ անդրէն 'ի տապան անդր .

և ձգեաց նոյ զձեռն իւր, և ընկալաւ զնա անդրէն 'ի ներքս. այսպէս և առաքինասէր անձինք անձնապահ լինին յերևեաց աղտեղի գնացից և 'ի մրրկածուփ զբօսանաց կենցա-ղոյս, և հնարին պատսպարել զանձինս 'ի նաւահանգիստն կենաց 'ի ձեռն քսի փրկչին իւրեանց:

Դադարել Նոյի աւուրս եօթն՝ միւսանգամ առաքեաց զաղաւնին. և դարձաւ աղաւնին Է երեկս. և ունէր տերև ձիթենւոյ շիւղ 'ի բերանի իւրում. և գիտաց նոյ՝ թէ ցածու-ցեալ են ջուրքն յերկրէ: Խորհուրդ գեղե-ցիկ՝ 'ի նշանակ հաշտութեն այ Է մարդկան աղաւնակերպ երևմամբ ոգ̃ Հոգւոյն, հան-գերձ միջնորդաւոր տերևովն այս է անապա-կան շնորհօք 'ի կրկին արարչութեն Յի փրկա-գործութեն քսի. որպ և յառաջինում արարչա-գործութեն հոգի այ շրջէր 'ի վերայ ջուրց 'ի կեն-դանածնել զարարածս: Նոյնանի է և բացուցանէ զպատուհանի նոյեան տապանի՝ 'ի խորհուրդ բացման կողից կենարարին, հանդերձ բազ-մնապատիկ նշանակօք խորհրդաւոր թուոց քառասուն աւուրց, և եօթն եօթն աւուրց, որպ և թուովք ոգ̃ և անս̃ կենդանեաց. զո-րոց չէ տեղւոյս ասել:

Ապա իբրև միւսանգամ արձակեաց նոյ զա-ղաւնին զկնի աւուրց եօթանց, ոչ ևս յաւել դառնալ. զի ցածուցեալ էր ջուրքն. և յայն-ժամ եբաց նոյ զձեղուն տապանի. և ետես՝ զի նուազեալ էր ջուրքն յերեսաց երկրի. և յետ քանի մի աւուրց խոպան ցամաքեցաւ:

Եւ

Այս ապա հրամանաւ նորին ել և նոյ և որք ընդ նմա էին՝ 'ի տապանէն անտի . և էր կոխել իւրեանց 'ի հող հայաստան երկրի՝ երկիր պագին Այ ամբաւ գոհութբ . և շինեաց նոյ սեղան Այ , և մատոյց ողջակէզ յամ անասնոց որց և 'ի թռչնոց սրբց , յորոց եօթն եօթն առեալ էր 'ի տապանն ըստ հրամանին Այ . և հաշտ արար զարդարն Ած տամբ իւրով զերկրածին , մի ևս նոյնօրինակ արդարութբ դատել զորդիս մրդկան՝ որ 'ի զաւակէ իւրմէ , այլ ողորմութբ խրատել և խնայել :

Այս հաճեցաւ Ած ընդ կամս արդարոյն , և հաստատեցաւ յողջակէզս նր 'ի հոտ անուշից . և օրհնեաց զնոա և զորդիս նր , և հրամանս ետ աճել և բազմանալ՝ ընդ օրհնութեն զոր ետ երբեմն ադամայ , նոր հայր Ծի կացուցանելով զնահապետն ընտրեալ . և խոստացաւ ոչ ևս ածնել զջրհեղեղ , և 'ի նշան հաշտութեան սահմանեաց զերևումն սքանչելի ծիածանին յերկինս , զոր աղեղն իւր անուանեաց , զի է աղեղնաձև . այլ զի է առանց նետի կայծականց՝ նշանակ է զգթութեն Այ , ազդ անել մեզ 'ի գումարել ամպոց՝ ընդ ցասմանն և զխնայութեն , և զգեղեցիկ հովանաւորութեն հայրական խնամոց իւրոց :

Բայց արդ երանելի սամ արդարայն նոյի և ընտանեաց նորա սիրելի եղելոց Այ և Ածասիրաց . զի ոչ միայն ապրեցան 'ի տիեզերական արկածից , այլև կարգեցան ծնօղք նորոյ Ծի . զի յայնմ օրէ և առ յապայ մինչև ցայսօր ամենայն մարդիկ եղեն և եղիցին , սե-

քունդք են նոյի և որդւոց նր։ Նա՛ և առա-
ւել երանեմ զերանելին զնոյ, զի նախահայր
արժանացաւ լինել և որդւայն նյ եղելոյ որ-
դի մարդոյ 'ի զաւակէ նր օրհնելոյ, 'ի սե-
մայ 'ասեմ. յոր հայեր առեալն նոյի մարգա-
րէութի. օրհնեալ տր ած, ած սեմայ. զի
նա եղև սկզբնահայր եբրայեցւոց, յորոց և
քս ըս մարմնոյ, որ է ած 'ի վր ամի՝ օրհնեալ
յաւիտեանս։ Որում մասնակից գուշակեաց
լինել և զյաբեթական առհմ յաւել անդ.
ընդարձակեսցէ ած յաբեթի, և բնակեսցէ
'ի տան սեմայ, ըստ յեկեղեցի նյ. իսկ քամ,
յորմէ քանան՝ կարգեցաւ ծառայ նոցա. զի
ոչ գիտաց պատուել զծնօղն, այլ՝ անար-
գեաց յերևան ածելով զհօրն պակասութի,
զոր ծածկեցին սեմ և յաբէթ. և կարի իսկ
քաջ, զի որք պատուեն զծնօղս, օրհնութե
նց և նյ լինին արժանի. նմ և անարգողքն՝
անարգեսցին։

'Ի վախճանի երանեմ և զհայաստան Ծ, որ
եղև նաւահանգիստ մեծի նահապետին, և
ապաւինական տմ տան նորա, կայարան Ծա-
կեցոյց տապանին, և նախկին իջևան ելե-
լոցն 'ի տապանէ. յորմէ և մերձակայ բնա-
կարանն առաջին շինեալ 'ի նոյէ և յորդւոց
նորա կոչեցաւ Նախիջևան. որպէս և տեղի
առաջին այգւոյն տնկելոյ 'ի նոյէ անուանի
ակոռի, այս է արկուռի։ Ուր զօրաւոր գտաւ
գինին՝ խորհրդաբար, և արբեցուցիչ նահա-
պետին թախծելոյ ըն աւերած Ծի, 'ի նշա-
նակ փրկչին՝ որ նմ արբեալ սիրով փրկութե
Ծի

Ծի տարածեցաւ 'ի վ՟ր խաչին ; և արբոյց տի-եզերաց զանմահութիւն 'ի կողահոս աղբերէ արեան և ջրոյ ։

Այս եկաց Նոյ յետ ջրհեղեղին ամս երեք-հարիւր և յիսուն . և եղեն ամ՟ ամք կենաց նորա ինն հարիւր և յիսուն . և ետես նա զոր-դիս որդւոց իւրոց 'ի բազում ազգս . և ետես զհայրապետն և զայլ ևս ծնունդս լցեալ բազմութ՟ . և բաժանեալ զերկիրս 'ի վերայ երից որդւոց իւրոց , ըի աւուրբք փոխեցաւ 'ի կենաց . և թաղեցաւ յերկրին հայոց ոչինչ հեռի յայրա-րատայ 'ի տապանատեղւոյն . անդ թաղեցաւ և կին նորա , զոր ոմանք նոյեմզարա անուա-նեն . և յանուն նորա անեն կոչեն մարանդ գաւեղին , ուր թէ անդ է մայրն հասարակաց զկնի եւայի նախամօր ։ (3)

## ՅԻՇԱՏԱԿ

Մելքիսեդեկի ։

Հ . ծորք . 25 . և այլք ։

**Ք**ԱՀԱՆԱՅ [illegible] յիշատակեալ նախ զառաջինն յա՟ծաշունչ գիրս , և այն՝ քա-հանայ ա՟յ բարձրելոյ , մի մի-այն է սա նոցին երանելի հայրապետս մել-քիսեդեկ , բազմօք յառաջ քան զահարոն

զղեւտացի՝ յորմէ սկիզբն առնու քահանայութի ազգին եբրայեցւոց, և ժամանակակից աբրահամու նահապետին եկեղեցւոյ եբրայեցւոց ։ Որ թէպէտև առաւել նախահայր և այլ նահապետք և տանուտեարք մինչև ցնոյ և ցաբրահամ, և անդր ևս, մատուցանէին զոհս և պատարագս Այ, այլ ոչ ոք 'ի նցէ քահանայ կոչեցաւ՝ բաց 'ի մելքիսեդեկէ, որ եղև օրինակ Ճշմարիտ քահանայապետին մերոյ քի, և 'ի ստուերագիծ պատկերի եղև նմանեալ որդւոյ Այ խորհրդաբար ։

Արդ ըստ պատմական մասին՝ այսչափ միայն գիտութի ընծայեն մեզ գիրք, թէ մելքիսեդեկ քահանայ Այ բարձրելոյ՝ էր արքայ Շաղիմայ, կամ Սաղիմայ. այն իսկ է՝ որպէս ասի, երուսաղէմ կոչեցեալ զկնի. և եղև՝ յորժամ դարձաւ աբրահամ 'ի կոտորածէ քոդողագոմորայ, ել ը առաջ նորա արքայ սոդոմայեցւոց. և մելքիսեդեկ արքայ Շաղեմայ եհան հաց և գինի. քանզի քահանայ էր Այ բարձրելոյ. և օրհնեաց զաբրամ, և ասէ. օրհնեալ է աբրամ յԱյ բարձրելոյ, որ արար զերկինս և զերկիր. օրհնեալ Ած բարձրեալ, որ մատնեաց 'ի ձեռս քո զթշնամիս քո. և աբրամ ետ նմա տասանորդս յամ աւարէն՝ զոր առեալն էր ։ Ուր իրաւամբք Զի վկ ածէ առաքեալն իբրև 'ի զարմացմանէ. տեսէք, ո՛րպիսի ոք էր սա, որում և աբրահամ տասանորդս ետ յաւարէ անտի նահապետն. և ոչ միայն տասանորդեաց ասէ մելքիսեդեկ, այլ և զնա՝ որ զաւետիսն ընկալեալ

լեալ էր, օրհնեաց, իբրեւ երկրպագոյն քան զնա պատուովլ. զի առանց նմ՛ հակառակութեն նուաճմն 'ի լաւէ անուն օրհնեցի ։ Նչու որ մեծն է, զի և ծնաւհայրն դաւիթ՝ զմրշտնջենաւոր քահանայութիւն քնի երդմամբն այ 'ի մելքիսեդեկին կարգ վերաբերէ, յաւել ածող. Երդուաւ տր, և ոչ եւս զղջասցի, թէ դու ես քահանայ յաւիտեան ըստ կարգին մելքիսեդեկի, և տր ընդ աջմէ քումմէ ։ Արդ՝ յայսմ նմէ ունիմք իմաստասիրել ըստ խորհրդաբանելոյ առաքելոյն, եթէ բաղմօք օրինակ եղև քնի մելքիսեդեկ ։

Նախ՝ ըստ անուանն իւրոյ. զի մելքիսեդեկ թարգմանի թագաւոր արդարութեն. (քանզի մելքք է թագաւոր, և սադոքն՝ արդար). և յայտ է թէ անդրադէս թագաւոր արդարութեն է միայն յս քս տրն մեր՝ թագաւոր փառաց, որ եղև մեզ յայյ արդարութիւն և սրբութիւն և փրկութիւն. այն՝ որ արդարութեն իւրով արդարացոյց զազգ մարդկան, և ըզթշնամին կենաց մերոց արդար իրաւամբք դատապարտ արար ։

Երկրորդ՝ ըստ անուանն քաղաքին, որ կոչիւր սաղիմ կամ սելիմ, որ խաղաղութիւն. վասն և սանէին արքայ շաղեմայ՝ է ասել թագաւոր խաղաղութեան. որ է սեպհական կոչումն փրկչին մերոյ՝ իշխան խաղաղութեն վերաձայնելոյ յամենիմաստնէն. զի արար խաղաղութիւն յերկինս և յերկրի արեամբ խաչին իւրոյ ։

Երրորդ՝ ըստ նշանակաց պատուոյն. զի էր

[redacted]



Մելքիսեդեկի միանգամայն թագաւոր և քահանայ. և քան զծայրագոյնն ունէր զթագաւորութիւն և զքահանայութիւն միանգամայն, ժառանգ գտեալ թ՟գրութե դաւթի հօր իւրոյ ը՟ս մարմնոյ՝ անվախճան թ՟գրութ՟բ ՚ի վ՟ր ամենեցուն, և կատարիչ խորհրդոյ քահանայութեան ստուերագրելոյ ՚ի մելքիսեդեկ: Չորրորդ ը՟ս նմանութե նիւթոյ նուիրաց քահանայութեան կամ պաշտաման պատարագի. զի ոչ յէզինս զոհէք և ողջակեզք անբանից ՚ի քահանայութեան մելքիսեդեկի (թէպէտև առնէր ոչ զայլ նահապետս), այլ հանելն նմ՟ զհաց և զգինի խորհրդաբար. զորս մատոյց արդեօք նախ ա՟յ իբրև անարիւն պատարագ, զի քահանայ էր ա՟յ բարձրելոյ. և ապա զնոյն նուիրական հացն և զգինին բաշխեաց աբրահամու և արանց նորա, զի հաղորդլիցին ամենեքին և զօրասցին. զի և քս ըզպատուական մարմին իւր և զարիւն նուիրել վ՟ր մեր ՚ի պատարագ հօրն երկնաւորի՝ զնոյն կարգեաց ընդ տեսակաւ հացի և գինւոյ ՚ի խորհուրդ ս՟բ և անարիւն պատարագի, և ՚ի հաղորդութիւն անմահարար սեղանոյ: Հինգերորդ՝ ը՟ս աստիճանի երիցութեան կամ կարգի քահանայութե՝ իբրև լաւագունի քան զղևտականն. քանզի մելքիսեդեկ իբրև երիցագոյն և սրբազնագոյն քահանայապետ՝ օրհնեաց զարմատն ահարոնեան քահանայութեան զաբրամ, և ՚ի նմա զղևի և զղևտացիս, իբրև վերագոյն զստորինս, և լաւ՝ զնուաղն. և ՚ի նշանակ այսմ՝ տասանոր-

դեաց

դեաց զաբրահամ, որում և զղևտացին՝ ք͞ն ա-
ռաքելոյ, ոպ աւագ քահանայն զորս են ը͞ն
նովաւ։ Սմին իրի և Ք͞ս քահանայապետն
ճշմարիտ՝ ոչ կոչեցաւ քահանայ ը͞ս կարգին
Ահարոնի, այլ՝ Մելքիսեդեկի. զի յայտնի
լիցի գերագոյն լինել քան զղևտականն քա-
հանայութիւն։

Վեցերորդ՝ ը͞ս միութե և ը͞ս մշտնջենաւորութե
քահանայութեն. իբր զի՝ ոպ Մելքիսեդեկ
միակ յիշի պարզապէս քահանայ ա͞յ բարձրե-
լոյ՝ առանց նախորդի և յաջորդի 'ի քահա-
նայապետութե իւրում. նոյնպէս և Ք͞ս է
միակ և մշտնջենաւոր քահանայապետ ճշ-
մարիտ. որ ոչ այլում քահանայի յաջոր-
դեաց, և ոչ նմին այլ քահանայ մարթի յա-
ջորդել. վ͞ս զի ը͞ս երդմանն ա͞յ է քահանայ
յաւիտեան, և կայ մնայ ինքն միայն կենդա-
նի և մշտնջենաւոր քահանայապետ յաւի-
տենից. միայն փոխանորդս ունելով յերկրի
զքահանայապետս և զքահանայս եկեղեց-
ւոյ իւրոյ. որք ոչ զայլ պատարագ մատու-
ցանեն, բայց զոր Ք͞ս մատոյց, և մատուցա-
նէ 'ի ձեռն ն͞ց, զանձն իւր ասեմ. զի ինքն
ո͞րն է միշտ կատարողապետ, այս է գլխա-
ւոր կատարիչն քահանայագործութե 'ի նոր
պատարագի, իսկ քահանայք ք͞ի՝ պատարա-
գիչք 'ի դիմաց նր. վ͞ս և ոչ ասէ բան խոր-
հրդոյն 'ի դէմս իւրեանց, այլ՝ ք͞ի. այս է
մարմին իմ, այս է արիւն իմ։

Եօթներորդ՝ ը͞ս գաղտնեաց ծագման, կա
ը͞ս անպատում գոլոյ ծննդեանն. զի որպ ոչ

պատ-

Ի ժամանակին յայնմիկ թէպէտև գտանէին ՚ի վերայ երկրի անձինք աստուածածանօթք և աստուածապաշտք, բայց թուով. զի ը մեծ մասն նորա, մանաւանդ ՚ի քաղդէաստան յերկիր մոգաց՝ տարածեալ էր անօրէն կռապաշտութիւն և հեթանոսական բազմաստուածութիւն առ թագաւորութեամբ Նինոսի երևելւոյ արքային ասորեստանեայց. որպէս և Թարայ քաղդէացի ՚ի նոյն կռամոլ օրէնս էր սնեալ, և պաշտէր զձեռագործս և զդիս օտարս:

Իսկ որդի նորա աբրամ ընտրեալն յորովայնէ՝ իբրև եհաս յամս ընտրութեան բարւոյ և չարի, ծանեաւ զճշմարիտն աստուած բարձրեալ՝ արարիչ երկնի և երկրի, և զնա միայն պաշտելի, ՚ի ներքուստ լուսաւորեալ ՚ի հոգւոյն աստուծոյ, և արտաքուստ ՚ի գործոցն աստուծոյ, ստէպ հայելով յերկինս՝ որք պատմեն զփառս աստուծոյ իբրև գործք մատանց ամենարուեստ ճարտարապետի. քանզի էր մանուկ միտավարժ և կիրթ յաստեղաբաշխական գիտութիւնս քաղդէացւոց: Նա այնպէս յարարածոց զարարիչն իմաստասիրեալ՝ ծանեաւ զաստուած, և փոյթ կալաւ փառաւորել զնա որպէս զաստուած. յարեցաւ յամենայն սրտէ ՚ի սիրել և ՚ի պաշտել զտէր աստուած իւր սրբութեամբ և արդարութեամբ, և ոչ դարձոյց երբէք զսիրտ իւր ՚ի նմանէ զամենայն աւուրս կենաց իւրոց: Նա գուցէ ինքն էր՝ որ շահեցաւ զսիրտ հօր իւրոյ և այլոց եղբարց իւրոց և ազգատոհմին, թողուլ զպաշտօն սուտ կռոց, և որոշել ՚ի միջոյ դիցամոլ քաղդէացւոց, և գնալ խնդրել այլուր տեղի՝ ուր կայցէ ճշմարիտ

ըստ ա̃ծգիտութ̃ի :

Արդ եթէ սովին խորհրդով, և եթէ վասն այլ ինչ պատճառաց, այլ ա̃յ տեսչութե̃ և առաջնորդութե̃ բարձրելոյն՝ եառ Թարայ զաբրամ զորդի իւր, և զնաքովր զորդի իւր, և զղովտ զորդի առանայ որդւոյ իւրոյ վախճանելոյ, և զսարա զնու իւր զկին աբրամու, և եհան զնո̃ յՈւրէն քաղդէացւոց՝ երթալ յերկիրն քանանացւոց. և եկին մինչև ցխառան՝ որ 'ի միջագետս ասորւոց մօտ յեդեսիա. և բնակեցան անդ զամս բազումս. մինչև մեռաւ Թարայ 'ի խառան 'ի հասակի երկերիւր և հինգ ամաց. յորում ժամանակի աբրամ էր ամաց եօթանասուն և հնգից : Յայնժամ կոչեաց ա̃ծ զաբրամ երևելի տեսլեամբ հրեշտակի կամ երկնաւոր ձայնիւ, գալ զկնի իւր յերկիր՝ զոր ցուցցէ նմա. Ե՛լ դու ասէ յերկրէ քումմէ, ոչ միայն յերկրէն քաղդէացւոց՝ զոր լքեր, այլև 'ի խառանէ՝ յոր սկսար առնել բնակութի̃. Ե՛լ և յազգէ քումմէ և 'ի տանէ հօր քո, զի մի̃ մնասցէ 'ի զաւակս քո հետք հեթանոսութե̃. Ե՛լ ասէ յերկիր՝ զոր ցուցից քեզ, և արարից զքեզ յազգ մեծ՝ բազմութ̃բ զաւակաց, և ուղղութ̃բ ա̃ծպաշտ կարգաց, ընտրելով ըզքեզ և զքոյսդ ինձ ժողովուրդ սեպհական. քանզի օրհնեցից զքեզ հոգևոր և մարմնաւոր օրհնութ̃բ, և մեծացուցից զանուն քո, և եղիցիս օրհնեալ. և ոչ այսչափ միայն, այլև օրհնեցից զօրհնիչս քո, և զանիծիչս քո անիծից. և օրհնեսցին 'ի քեզ ա̃մ ազգք երկրի :

Մեծ

Մեծ էին արդարև խոստմունքն մարդասէր Այն, և կարի մեծ հրաւէր կոչմանն՝ առ սիրելին իւր Աբրամ. այլ մեծ ևս շնորհն ներքին, որով առնէր զնա իւր ծառայ բարի և հաւատարիմ, որ 'ի բարեկամութիւն անդր Այ 'ի վեր առնէր զմարդ։ Ոչ զի այնչափ էր այնուհետև սէր և հնազանդութիւն Աբրամու առ Ած՝ միամիտ հաւատով և աներկբայ յուսով հանդերձ, մինչև պատրաստ լինել զոքի և զշունչ նուիրել նմա 'ի ծառայութիւն. վասն ոչ այնչափ 'ի խոստմանցն յորդորեալ լեալ, որչափ 'ի յօժարութենէ կամակատար լինելոյ Այն իւրոյ վաւերալ, փութացաւ ել 'ի խառանէ՝ երթալ ուր կամք իցեն Այն. ել՝ զի հրամայեցաւ, այլ ոչ գիտէր՝ եթէ յո՛ երթիցէ։ Ընդ նմա էր և Սարա կին նորա՝ ամուլ ըստ մարմնոյ, այլ բիւրաբեղուն բերրի սբ հոգւոյ, զարդարեալ երկիւղածութեամբ և բարեպաշտութեամբ. գնաց և Ղովտ որդի Առանայ եղբօր Աբրամու ընդ նմա, որ և նա էր երկիւղած 'ի Անէ և ճշմարիտ Ածապաշտ։ Միայն Նաքովր եղբայր Աբրամու եկաց մնաց 'ի խառանն տամբ իւրով. մինչև այնուհետև կոչիլ խառանու քաղաք Նաքովրայ. և բազմացաւ անդ և սերեցաւ. և յորդւոց նորա ելին ասորիք։

Իսկ և եհաս Աբրամ յերկիրն քանանու, և շրջէր այսր անդր վրանօք, մինչև տեսցէ՝ զի՞նչ հրամայեսցէ Տր, երևեցաւ նմա Ած անդ, և ասէ ցնա. զաւակի քում տաց զերկիրս զայս։ Ընդ շինեաց Աբրամ սեղան Այն՝

որ

որ երեւեցաւն նմա . և գոհացաւ զնմանէ միա-
մտութբ սրտի . ուր անորդի էր , և ոչ գիտէր՝
մի զաւակ լիցի , որ ժառանգելոց լիցի զեր-
կիրն խոստացեալ յնյ . այլ մնայր երկայն-
մտութբ , զի յամի կամքն նյ կատարեսցին
նմ անսուտ խոստմանցն : Եկն 'ի բեթէլ . և
եհար զխորանն իւր 'ի լերինն . և շինեաց սե-
ղան , և կոչեաց յանուն տն : Ապա չուեաց ,
և բնակեաց վրանօք յանապատի . և յերեւաց
սովու տեղւոյն՝ էջ յեգիպտոս բնակել անդ
պանդխտութբ . ուր և յայտնի եղև եգիպ-
տացւոց երկիւղածութիւն աբրահամու , և բարե-
պաշտութիւն սառայի . և յայտնեցաւ խնամքն
նյ 'ի վերայ նց՝ 'ի պատժել զփարաւոն արքայ
և զտունն նր . մինչև արձակել եգիպտացւոց
զնս առհիւ և պատուով մեծաւ :

Դարձաւ անդրէն աբրահամ իւրովքն հանդերձ
յանապատ . և դրձլ եկն 'ի բեթէլ 'ի տեղի
սեղանոյն առաջնոյ , և կարդաց զանուն տն
նյ : Եւ ձգլի էր աբրահամ մեծատուն յոյժ անաս-
նովք , արծաթով և ոսկւով , և ղովտայ եղբօր-
որդւոյ նր նոյնպէս ստացուածք բազում ,
'ի լինել կռուոյ 'ի մէջ հովուաց խաշանց նց ,
առաքինի իմաստութբ առաջի եդ աբրահամ
ղովտայ , զի թէ կամի մնալ նա 'ի տեղւոջն ,
ինքն երթիցէ այլուր . ապա եթէ կամի մեկ-
նել , ինքն մեկնեսցի . և նա ընտրեաց մեկ-
նել և բնակել 'ի քաղաքն սոդոմ . իսկ աբրահամ
պանդուխտ գիտելով զանձն յերկրի՝ ոչ արար
ուրեք հաստատուն բնակարան , այլ պան-
դխտութբ շրջէր յերկրին քանանացւոց :

Յետ

Զհետ մեկնելոյն զօրավարայ դարձեալ առաց ած-
ցաբրամ․ հայեաց աչօք քովք ը ամ կողմն ․
զի զամ երկիրդ՝ զոր տեսանես , քեզ տաց և
զաւակի քում յաւիտեան ․ և արարից զզա-
ւակ քո իբրև զաւազ երկրի բազմութբ ․ և
արդ արի՛ շրջեաց ը երկիրդ յերկայնութն և
՚ի լայնութի ․ զի քեզ տաց զդա ։ Իսկ ուրախ
եղև աբրամ ոչ այնչափ ը պարգևն այ , որ-
չափ ը սէր պարգևողին ․ զի որ հայր զորդի
գգուէր զնա այր ․ և աբրամ որդիական սի-
րով և հպատակութբ չու արար և եկն ՚ի քեբ-
րոն , և շինեաց սեղան տն այ առ կաղնւոյն
մամբրէի ամորհացւոյ ։

Յայնմ ժամանակի լուեալ աբրամու՝ եթէ
հինգ թագաւորք առին և գերեցին զսոդոմ ,
և գերի վարեցաւ ղովտ , ժողովեաց զընդո-
ծինս իւր՝ որ գտան թուով արք երեքհարիւր
ութեւտասն ( խորհրդով ը թուոյ սբց հայ-
րապետաց ժողովոյն նիկիոյ՝ ասեն վդպք ) ,
և պնդեցաւ զհետ զկնի գերեվարաց ․ և
աջով հզօրին այ զօրացեալ՝ եհար վանեաց
զնս , և դարձոյց զամ աւար և զգերի սոդո-
մացւոց հանդերձ ղովտաւ ․ և էառ ևս աւար
բազում ։ Յայնժամ ել ը առաջ աբրամու
մելքիսեդեկ արքայ շաղեմայ քհյ այ բարձ-
րելոյ , և օրհնեաց զաբրամ , և եհան հաց և
գինի աբրամու և ծառայից նորա ․ և աբրամ
ետ նմ տասանորդս իբրև քահանայի այ յամ
աւարէ թշնամեաց ․ իսկ զինչս սոդոմացւոց
և զգերիս նց դարձոյց ՚ի նս ։ Իսկ յասել ար-
քային սոդոմացւոց , շա՛տ է մեզ՝ զի գերե-

գործ արարեր․ տուր ցիս զմարդիկդ, և զա-
ւարդ քեզ առ․ Եւ պնդէր աբրամ մեծատունն
հաւատով և անկարօտն մեծութեան Տի․
Ձգեամ զձեռն իմ առ ած բարձրեալ՝ որ արար
զերկինս և զերկիր, և յանուն նր երդուեալ՝
չառնուլ յանձն առնուլ ինչ յամէ որ ինչ քո
իցէ, ոչ շաղամաթ մի՝ որ է թել ասղանոյ,
և ոչ խրաց մի կօշկաց․ զի մի ասիցես, թէ
Ես մեծացուցի զաբրամ․ յայտ արարեալ՝ թէ
ոչ ինք, այլ՝ ած էր, որ մեծացուցանէր զնա
ի խոստմանն․ այսպէս էր յամի հաւատք և
առաքինութի մեծի նահապետին ։
Այս վերոտին երևեցաւ ած աբրամու՝ ի տես-
լեան գիշերոյ, և ասէ ցնա․ մի երկնչիր աբ-
րամ, ես վերակացու եղէց քեզ, և վարձք
քո բազում եղիցին յոյժ․ այս է՝ ես ինքնին
եղէց վարձք քո, զի դու ես ազնիւ ծառայ
իմ հաւատարիմ։ Տեսեալ աբրամու՝ եթէ
այնչափ խանդաղատի զնովաւ ած, համար-
ձակեցաւ և ինքն ասել․ տր տր զի՞նչ արաս-
ցես ինձ, զի ես կորնչիմ անորդի․ գիտեմ,
զի ճշմարիտ են խոստմունք քո, այլ որովհե-
տև ոչ ետուր ինձ զաւակ, ժառանգ ուրեմն
լինելով լինիցի իմ եղիազար դամասկացին
որդի մասեկայ ընդոծնի իմոյ ։ Եւ վաղվա-
ղակի ձայն տյ եղև առ նա, և ասէ․ ոչ ժա-
ռանգեսցէ զքեզ դա, այլ՝ որ ելանէն՝ ի քէն,
նա ժառանգեսցէ զքեզ․ և եհան զնա ած
արտաքս, և ասէ․ հայեաց ընդ երկինս, և
թուեա զաստեղս՝ եթէ կարօղ ինչ իցես թը-
ւել զնս․ և ահա այնպէս եղիցի զաւակ քո՝

անթուելի 'ի բազմութենէ ։ Այլ հաւատոց արքայ ա̄յ , առէ զիրն , և համարեցաւ նմա յարդարութին ․ որ է ըստ առաքելոյն՝ զլուխ զօրութեց աբրամու , որ թէպէտև հայեր 'ի ծերութին իւր և յամլութիւն սառայի , այլ յայսոր ամի վ̄ր՝ անյոյսն յուսով և աներկբայ մտօք հաւատաց խոստմանն ա̄յ ։

Յաւել աւել ցնա ա̄ծ ․ ես եմ ա̄ր ա̄ծ քո , որ հանի զքեզ յՈւրն քաղդէացւոց՝ տալ քեզ զերկիրդ զայդ 'ի ժառանգութի որդւոց յորդիս ։ Այլ 'ի խնդրել աբրամու 'ի ա̄նէ յայտնել նմա , թէ որով օրինակաւ և ցորչափ ունի ինքն և որդիք իւր ժառանգել զերկիրն քանանացւոց , եցոյց նմա ա̄ծ 'ի ձեռն օքանդ չեղեաց՝ որ եղեն 'ի յօշոտածս կենդանեաց մատուցելոց 'ի նմէ՝ իջմամբ թռչնոց 'ի վ̄ր , և փայլմամբ ճառագայթից հրոյ ընդ մէջ անդամոցն յօշելոց , թէ զի՞նչ իմնչ անցք անցանելոց էին նախ ը̄ զաւակն ն̄ր յերկիր օտար , ջ̄ յեգիպտական ծառայութեան ․ և ապա վրէժխնդիր եղէց ազգ չարչարողաց զզաւակս քո , և հանից զնա 'ի ձեռաց նց ․ և ածից յերկիրս յայս ամորհացւոց և քանանացւոց ։ Այլ եդ ա̄ր ուխտ յաւուր յայնմիկ ը̄ աբրամու , և ասէ ․ զաւակի քում տաց զերկիրդ զայդ յետ փախճանելոյ քո , 'ի գետոյն եգիպտացւոց՝ 'ի նեղոսէ մինչև 'ի գետն մեծ եփրատ ։

Այլ եղև յետ դեգերելոյ աբրահամու պանդխտութե զամս տասն յերկրին քանանացւոց՝ խորհուրդ ետ սարայ աբրահամու առնուլ իւր 'ի կնութի զագար եգիպտացի զնաժիշտ իւր ․

զի

զի արարեց ինձ ասէ որդի 'ի դմանէ ։ Նա ունկնդիր եղև աբրահամ ձայնի սառայի, զի թերևս նովին լցցի խոստումն այ. և ծնաւ աբրահամ զիսմայէլ յագարայ՝ յութսուն և վեց ամի հասակի իւրոյ ։ Իսկ յորժամ եղև աբրահամ ամաց իննսուն և իննուց, երևեցաւ նմա ած, և եդ նմա ուխտ՝ առնել զնա հայր բազմութեան ազգաց. ոյր վս փոխեաց և զանունն նր. ասէ. ոչ կոչեսցիս այսուհետև աբրամ, այլ՝ աբրահամ (որ է հայր երամոյ, կմ բազմութեան), զի հայր ազգաց բազմաց եդի ըզքեզ, և աճեցուցից զքեզ յոյժ, և թագաւորք 'ի քէն ելցեն. և հաստատեցից զուխտ իմ ը̃ քեզ և ը̃ զաւակս քո յուխտ յաւիտենական՝ լինել ինձ ած քեզ և զաւակի քում յետ քո. որով բանիւ կացուցաւ աբրահամ հայր հաւատոց ամ հաւատացելոց. և նշանակ ետ առ յայնժամ զուխտ թլփատութե. զի հանդերձեալն զաւակն՝ լինիցի զաւակ ուխտի և հաւատոց ։

Փոխեաց ած և զանուն սառայի 'ի սառրա, յաւելու՛ածով տառի նշանակեալ զնա լինել մայր այնպիսւոյ զաւակի, յորում օրհնեսցին ազգք և ազինք. քանզի ասէ օրհնեցից և ըզսառրա զկին քո, և տաց քեզ 'ի նմանէ որդի. և օրհնեցից զզաւակն զայն, և թագաւորք ազգաց ծնցին 'ի նմանէ ։ Յայնժամ անկաւ աբրահամ 'ի վ̃ր երեսաց իւրոց, և ծիծաղեցաւ ը̃ միտս. ոչ թէ առելով 'ի սրտի. զուցէ կամի ած մխիթարել զիս և զսառրա՝ վասն ոչ ունելոյ իմ զաւակ 'ի նմանէ. ապ եղև ինձ

յագարայ որդի, որ՝ ունի ժառանգել զիս ։ Եւ տէր ասաց նմա. և զիսմայէլ օրհնեցից և աճեցուցից ըստ խնդրոյ քում, այլ ես յետ տարւոյ միոյ տաց քեզ որդի և 'ի սառրայէ՝ իսահակ անուն (որ թարգմանի ծիծաղ կմ խնդութի). և նա եղիցի զաւակ ուխտի իմոյ և աւետեաց. զոր և հաստատեաց տեսիլ երից հրեշտակաց, զորս յանգէտս ընկալաւ աբրահամ. և յայնժամ առաւել յայտնութի տուան նմա և սառրայի աւետիք վասն ծննդեանն իսահակայ. և գիտաց աբրահամ, եթէ ինքնին տէր ցուցաւ նմա 'ի դէմս միոյ 'ի հրեշտակաց. որ էր նշանակ բանին այ՝ որ հանդերձեալ էր երևիլ 'ի մարմնի 'ի զաւակէն աբրահամու ։

Յայնմ վայրի յայտնեաց նմ տէր և զցասումն իւր 'ի կործանել զսոդոմ և զգոմոր. և աբրահամ միջնորդէր թախանձանօք, զի մի կորիցեն և արդարք ի մեղաւորս, և մանաւանդ տունն ղովտայ. զի կարծէր թէ գոնէ յիսուն կամ քառասուն, գէթ երեսուն կմ քսան, և առ յոյժ նուաղագոյնն տասն արդարք գտանիցին 'ի քաղաքին. և իբրև իմացաւ՝ եթէ ոչ գտանի և այնչափ, լռեաց ։ Բայց երկոքին հրեշտակքն՝ որք գնացին 'ի կործանել զսոդոմ, ազատեցին զղովտ և ընտանի նր՝ առաւել 'ի շնորհս աբրահամու ։

Եւ եղև յետ պանդխտելոյ աբրահամու 'ի գերարա, ուր և վն սառրայի կնոջ նր պատուհասեաց ած զաբիմելէք արքայ գերարացւոց, և աղօթիւք աբրահամու բժշկեաց

զտուն

զասուն նր, 'ի կատարման սահմանին եղելոյ յնմ ''ի հարիւրերորդ ամի աբրահամու՝ ծնաւ 'ի սարրայէ խոստացեալ զաւակն աւետեաց խահակ, որ և սահակ. զաւակ օրհնեալ, և արմատ օրհնութեան ուխտերաց. զի էր կենդանագիր ածորդւոյն եղելոյ 'ի զաւակէ նր որդի մարդոյ, ոնպ և աբրահամ հայրն հաւատոց եղև արժանի լինել պատկեր կամ օրինակ հօրն երկնաւորի :

Նաւ որ բան բաւական իցէ պատմել զխնդութիւն աբրահամու 'ի ծննդեան իսահակայ, յորում տեսանէր ոչ միայն զլրումն ժամանակեան խոստմանց, այլև զկատարումն խորհրդոցն նոյ մի խոստացեալ փրկչին Յի 'ի զաւակէ իւրմէ : Մինչ զի Յս վկայելոյ նորուն իսկ ածն՝ ցանկայր աբրահամ տեսանել զօրն քո. ոնպ և ետես յօրինակին, և ուրախ եղև իսահակաւ, որ է ուրախութի և Յն անուանն : Նա տես և յետ աճելոյ զաւակինն նաև զխորհուրդ պատարագելոյ զաւակինն նոյ 'ի զոհարան խաչի, յորժամ հրամայեցաւ նմա 'ի այնէ զոհել զմիածինն և զսիրելի զորդի իւր զիսահակ. և նա առանց Յի բանս ինչ ածելոյ՝ փութացաւ զենուլ զորդին, յորոյ վերայ էին ամ խոստմունք նոյ. և 'ի հանդէս կատարեալ հնազանդութեան՝ վկայեցաւ յնմ գոլ ճշմարիտ երկիւղած և ածասէր. և կրկին կրկին ընկալաւ յնմ զօրհնութի խնքն և զաւակ իւր օրհնեալ. որոյ փոխան հրամայեցաւ զոհել զխոյն կախեալ զծառոյն սաբեկայ. և 'ի վերայ եհառ նահապետն, թէ

Ճշմարիտն իսահակ քն 'ի զաւակէ նորա ու-նի պատարագիլ 'ի վերայ ծառոյ խաչին 'ի փրկութիւն տիեզերաց, 'ի լեառն գողգոթայ՝ որ այն իսկ է սոյն լեառն յեբուսացւոց մի 'ի լերանցն ամորհացւոց, ուր եւ աբրահամ 'ի զոհել զիսահակ :

Որդ. որչափ մեծ էր աբրահամուն երկիւղա-ծութիւն և առ ած հնազանդութի յայնժամ հան-դիպի, նոյնչափ էր մեծ և իսահակայն. զի յետ տեսանելոյ՝ թէ հայր իւր կապէ զինքն և կամի զենուլ 'ի պատարագ այ, իմացեալ զկամս այ՝ կամակից եղև նմ հլութբ. զի չէր իսկ մանուկ փոքր, այլ պատանի չափա-հաս աւելի քան հնգետասան ամաց, և իբր քսանամեայ. և ոչ միայն կարօղ էր պրծա-նիլ 'ի ձեռաց ծերունի հօրն, այլ և եթէ կա-մէր՝ բազում պատճառս ունէր ընդդէմ կալոյ. ոնց թէ չիցէ բանն այն յայ, զի ոչ ոք պար-տական է հնազանդիլ ծնողին 'ի կամիլն սպանանել զինքն. և եթէ յայ իցէ, թերևս վն իմայէլի իցէ՝ ունէր ասել իսահակ. զի նա խոստացեալ է 'ի նմնէ ածել և բազմա-նալ 'ի զաւակս իմ: Այլ բայց և ոչ զմի յայսցա-նէ ասաց հեզն և հնազանդն իսահակ. զի էր համանման հօրն՝ երկիւղած և հնազանդ և լի հաւատովք. վն այ և նմ 'ի ձեռն հրեշ-տակին երկրորդելով զօրհնութիւն՝ զաբրա-համ գովեաց իսահակաւ, և զիսահակ օրհ-նեաց աբրահամաւ :

Այլ եղև յետ մեռանելոյ սառրայի, և թա-ղելոյ յերկրին քանանացւոց, եւ ածել ա-

բա

բրահամ կին որդւոյ իւրում իսահակայ` 'ի ձեռն եղիազարու հաւատարիմ հազարապետի տան իւրոյ` 'ի միջագետաց ասորւոց 'ի խառանէ զռեբեկա կոյս գեղեցիկ, որ էր դուստր բաթուելի որդւոյ նաքովրայ եղբօրն աբրահամու . և էր իսահակ ամաց քառասունից, յորժամ էառ զռեբեկա դուստր հօրեղբօրորդւոյ իւրոյ, և զթոռն հօրեղբօր իւրոյ :

Առնէր և աբրահամու զայլ կին քետտուրա անուն . յորմէ և ծնան նմա որդիք վեց, եմրան, յեկտան, մադան, մադիան, յեսբոկ, և սովիէ . թող զիսմայէլ` որ յագարայ : Այլ զի յայտնի լիցի` թէ իսահակ միայն է բնիկ ժառանգ իւր, ետ աբրահամ պարգևս որդւոց քետուրայ, և արձակեաց զնս յարևելս . յորոց ելին մադիանացիք, և պարթևք, և այլ ևս ազգք բազումք` ձոխացեալք թ̃գրու̃թ̃ . ոմ̃ և յիսմայէլէ իսմայէլացիք, և բնակիչք կեդարու, և այլք : Իսկ ինքն աբրահամ` հայր ազգաց, բարեկամ ա̃յ, և պատկառելի ա̃մ մարդկան, լցեալ զամս կենաց իւրոց հարիւր և եօթանասուն և հինգ` մեռաւ 'ի բարւոք ծերութե̃ . և թաղեցին զնա իսահակ և իսմայէլ որդիք նորա առ ընթեր սառրայի :

Այլ օրհնեաց ա̃ծ զիսահակ . և կոչեաց զինքն ա̃ծ աբրահամու և իսահակայ . և ետ նմա ձոխութի̃ ըս̃ մեծութեան, ևս առաւել ք̃ հոգւոյ . զի էր ա̃ծահաճոյ և ա̃ծասէր ա̃ձին, և պատուական յաչս ա̃մ մարդոյ : Այլ զի ամուլ էր

ռեբեկա, աղաչեաց Իսահակ զՏէր վն նորա. և յղացաւ ռեբեկա մանկունս երկուորեակս, և խաղացին մանկունքն յորովայնի նր, որպ թէ ելևելս զմիմեամբք առնելով կամէին 'ի ծնունդ և անդրանկանալ՝ վն լինելոյ ժառանգ մեծամեծ աւետեացն խոստացելոց հօրն իւրեանց իսահակայ ։ Այլ 'ի հարցանել ռեբեկայ զՏծ՝ ասէ ցնա Տր. երկու ազգք են յարգանդի քում, և երկու ժողովուրդք յորովայնէ քումմէ զատցին, և ժողովուրդ զժողովրդեամբ ելևել առնիցէ, և երէցն կրտսերոյն ծառայեսցէ ։

Այլ եղև 'ի ժամանակի ծննդեանն՝ ել նախ անդրանիկին շառագոյն և թաւամորթ, զոր անուանեաց եսաւ, ոփ չափահաս. և ապա ել եղբայր նր՝ որ բուռն հարեալ էր զգարշապարաց եսաւայ, որպս թէ ունի զբռամբ ածել և նուաճել զնա ընդ իւրև. վն որոյ կոչեաց զանուն նր Յակոբ, որ թարգմանի խաբօղ. զի գիտէր՝ թէ նա թէպէտև կրտսեր, ունի հնարիւք երիցանալ. որպ և եղև իսկ ։

Օր 'ի զարգանալ երկոցունց՝ յակոբ պատճառանօք հնարեցաւ գնել յեսաւայ զանդրանկութիւն, իրագէտ գոլով և 'ի մօրէն՝ որ առաւել սիրէր զյակոբ, թէ մեծամեծ խոստմունք կան յայն անդրանկին. և եսաւ անմտութբ իւրով դիւրագին վաճառեաց ընդ միոյ չիկաթանի զանդրանկութիւն արհամարհանօք. որով կորոյս զառիթ մեծ, 'ի նշանակ այնոցիկ՝ որք արհամարհեն զշնորհս այ. և այնպէս յակոբ այր ընդաստուն և խոնարհ

եր-

երթալով երթայր և յառաջէր իբրև սիրելի այ և մարդկան, քան զեսաւ՝ որ եղև այր զօրաւոր և վայրագ և հմուտ որսոյ, բայց ինքն իսկ որսացեալ եղև գլխովին. և ոչ եգիտ շնորհս առաջի այ և մարդկան:

Եւ մինչդեռ էր Իսահակ ամ տամբ իւրով առ ջրհորով երդման յերկրին քանանացւոց, եղև սով. վյ խորհեցաւ իջանել յեգիպտոս. այլ սպասէր ակնարկութեանն այ: Եւ երևեցաւ նմա տր, և ասէ. մի իջաներ յեգիպտոս, այլ պանդխտեաց յերկրիս յայսմիկ, և ես եղէց ընդ քեզ, և օրհնեցից զքեզ, զի քեզ և զաւակի քում տաց զամ երկիրս զայս, և հաստատեցից զերդումն՝ զոր երդուայ աբրահամու հօր քում. և բազմացուցից զզաւակ քո իբրև զաստեղս երկնից. և օրհնեսցին 'ի զաւակի քում ամ ազգք երկրի: Եւ գնաց Իսահակ առ աբիմելէք արքայ փղշտացւոց առ բարեկամն հօր իւրոյ 'ի գերարա. և սերմանեաց սերմն յերկրին յայնմիկ, և եգիտ 'ի տարւոջն յայնմիկ հարիւրաւոր զգարին. զի օրհնեաց զնա տր. և բարձրացաւ այրն, և երթայր յառաջադէմ և մեծանայր, մինչև եղև մեծ յոյժ. վյ 'ի նախանձիլ ընդ նա փղշտացւոց՝ ասէ ցնա աբիմելէք. երթ գնա 'ի մէնջ, զի կարի զօրագոյն քան զմեզ եղեր:

Եւ Իսահակ հեզութբ մեկնեցաւ անտի. և կրեաց վիշտս և նեղութիւնս բազումս 'ի յաչողկատաց, որք ընդ ամ անգամ խցին զջրհորս նորա՝ զորս տայր բանալ աստ և անդ.

այլ

կալ·· յետ մահու հօրն . իսկ յանկարծ խորա-
տու մօրն , համբերէ կրկին եւ օրհնու-
թեամբ հօր իւրոյ , մեկնեցաւ գնաց 'ի մի-
ջագետս առ լաբան քեռի իւր , մինչեւ անց-
ցէ ցասումն եղբօր իւրոյ ։ Այլ 'ի գնալ յակո-
բայ զճանապարհայն՝ յորժամ ննջեաց ուրեք
գիշերի , եւ տես զսքանչելին զայն տեսիլ երկ-
նաչափ սանդղոց , ը̃ որ ելանէին եւ իջանէին
հրեշտակք այ̃ , եւ տր̃ հաստատեալ կայր 'ի
գլուխ սանդղոցն . եւ ասէ . ես եմ տր̃ ած̃
աբրահամու հօր քոյ , եւ ած̃ իսահակայ . մի՛
երկնչիր , զի տեղիդ՝ յորում դու ննջեցեր ,
քեզ տաց զդա եւ զաւակի քում . եւ եղիցի
զաւակ քո իբրեւ զաւազ երկրի , եւ ը̃պարձա-
կեսցի ընդ չորեսին կողմանս երկրի . եւ օրհ-
նեսցին 'ի քեզ եւ 'ի զաւակի քում ամ̃ ազգք
երկրի . եւ ես աւասիկ ը̃ քեզ եմ՝ պահել զք-
եզ յամ̃ ճանապարհս քո՝ յո՛ր եւ գնասցես .
եւ դարձուցից զքեզ յերկիրս յայս . զի ոչ
թողից զքեզ , մինչեւ արարից զամ̃ ինչ՝ զոր
խօսեցայ արդ ը̃ քեզ ։

Այլ զարթեաւ յակոբ ահիւ մեծաւ եւ խըն-
դութե̃ . եւ ասէ . տր̃ է 'ի տեղւոջս յայսմիկ ,
եւ ես ոչ գիտէի . ահեղ իսկ է տեղիս այս . եւ
ո՛չ է այս , եթէ ոչ տուն այ̃ , եւ այս է դուռն
երկնից ։ Այլ յարուցեալ էառ զվէմն՝ զոր ե-
դեալ էր ը̃ մնաւ իւր , եւ կանգնեաց զնա
արձան , եւ էարկ իւղ 'ի գլուխ նր̃ , զի չունէր
ինչ այլ 'ի ձեռսին 'ի պահուն մատուցանել այ̃
'ի պատարագ գոհութեան . եւ կոչեաց զանուն
տեղւոյն այնորիկ բեթէլ , ոյ̃ տուն այ̃ . եւ

ուխ

[redacted]



ուխտեաց ուխտ ա̃յ, զի 'ի յաջողել ճանա-
պարհի իւրոյ և դարձի անդրէն 'ի տուն հօր
իւրոյ՝ վէմն այն կանգնեալ՝ եղիցի ինքեան
տեղի տանն ա̃յ. և յամէ՝ զոր տացէ նմ̃ ա̃ծ,
տացէ տասանորդս քահանայից նորա:

Եւ յայնմ հետէ զուարթացեալ սրտին յա-
կոբայ 'ի տեսլենէն ա̃յ՝ հաստատեալ էր խոր-
հրդովք 'ի գլուխ սանդղոցն 'ի տ̃ր ա̃ծ իւր,
և ինքն նմանեալ հրեշտակի՝ ակնունէր վերե-
լոց 'ի ժամանակին, յորում բացցի դուռն
երկնից 'ի ձեռն զաւակին խոստացելոյ. և
այնպէս թէպէտև յերկրի կայր, այլ քա-
ղաքավարութի̃ն նր̃ յերկինս էր. և նովին
ա̃ծային տեսլեամբ և խոստմամբքն մխիթա-
րէր յա̃մ տառապանս պանդխտութե̃ իւրոյ:

Ո ի յորմէ հետէ եմուտ յակոբ 'ի խառան
'ի տուն լաբանայ ասորւոյ՝ եղբօր մօր իւրոյ,
ոչ եգիտ հանգիստ. այլ հանապազ 'ի ծա-
ռայութի̃ և 'ի վաստակս էր, և զրկանս և
նեղութի̃ս կրէր անընդհատ:

Եօթն ամ ծառայեաց լաբանու 'ի կարգի
հովուութե̃՝ առ առնուլ զռաքէլ դուստր նր̃.
և խաբեաց զնա լաբան՝ տալով զլիայ զոչ
գեղեցիկն, զի հարկեսցի ծառայել այլ ևս
եօթն ամ վասն ռաքէլայ. և յակոբ յանձն
էառ սիրով և հեզութ̃բ, միայն թէ կանխաւ
տացի նմա և ռաքէլ. զի այն էր նախկին խօ-
սեցեալն իւր օրինօք: Եւ ծնան յակոբայ 'ի
խառան մետասան որդիք յերկուց կանանցն,
և յերկոցունց նաժշտաց նր̃, 'ի միջոցի անդ՝
երկրորդ եօթանց ամաց ծառայութենն: Եւ

եղև

եղև ՚ի չորեքտասաներորդ ամի գալստեանն յակոբայ ՚ի խառան, յորժամ ծնաւ զյով-սէփն գեղեցիկ՝ զաւակ առաջին ՚ի ռաքէ-լայ ցայն վայր ամուլ մնացելոյ, կամեցաւ յակոբ դառնալ առ հայր իւր իսահակ. այլ ՚ի նեղել զնա լաբանու վն վարձուց ծառայ-ութեն նր, որոշեաց յակոբ իւր խաշինս բաս գունոց՝ ՚ի խաշանց լաբանու, և յանձն էառ հովուել և զնորայսն այլ ևս ժամանակս. զի տեսցի՝ թէ ո՞յր խաշինք բազմանան, և յայտ-նի լիցի՝ թէ արդար վաստակօք անկանին նմ այնչափ խաշինք. և եկաց ամս վեց յայսմ ևս ծառայութե, և բազմացան յոյժ խաշինք յակոբայ քան զլաբանու ։

Ապա իբրև լցան քսան ամք կալոյ նր ՚ի մի-ջագետս, յորոց զամս չորեքտասան ծա-ռայեաց վն դստերաց լաբանու, և զամս վեց վն խաշանց նր, տեսեալ թէ ոչ թողու զնա աներ իւր բռնաւոր, էառ զկնատանիս իւր և զա̃մ աղխս, և գաղտ խուսեաց ՚ի նմանէ. և ՚ի պնդել լաբանու զհետ նորա՝ յանդիմանեալ յա̃յ ՚ի տեսլեան՝ հարկեցաւ մեղմով խօսել ը̃ յակոբայ. և արձակեաց զնա խաղաղութ̃ ։

Եւ յակոբ գնաց զճանապարհս իւր. և հայե-ցեալ ետես ՚ի վ̃ր ճանապարհին զբանակ ա̃յ բանակեալ, և ընդ առաջ եղեն նմա հրեշ-տակք ա̃յ. որով յայտ արար նմա ա̃ծ, թէ ինքն էր՝ որ պահեաց զնա և պահէ յա̃մ ժա-մանակի. և զօրացաւ յակոբ, և գիտաց՝ եթէ փրկէ զնա տ̃ր և ՚ի ձեռաց եսաւայ եղբօր իւ-րոյ, յորմէ կասկածէր ։

Եւ

Իսկ իբրեւ տառապեալ զծառայս իւր 'ի հաշտե-
ցուցանել զերեսս Եսաւայ պատարագաւք եւ
խոնարհ պաղատամաւորութբ` կոչելով զինքն
ծառայ նորա, ննջեաց յակոբ զայն գիշեր 'ի
հողմ` կարդալով առ ած. եւ ապա յարուցեալ
զգիշերային խաղացոյց զբանակ իւր յառաջ. եւ
ինքն մնաց զկնի առանձինն: Իսկ ահա մա-
տեաւ առ նա հրեշտակ 'ի դիմաց բանին այ
'ի կերպարանս որդւոյ մարդոյ, եւ մարտեաւ
ընդ յակոբայ մինչեւ ցառաւօտ. եւ իբրեւ ետես
հրեշտակն` եթէ անյաղթելի կայ յակոբ,
բուռն եհար զամոլաջլէ զբարի նր եւ ըւար-
մացոյց. եւ ասէ ցնա, արձակեա զիս, քանզի
այգ եղեւ. եւ նա ասէ, ոչ արձակեցից զքեզ,
եթէ ոչ օրհնեսցես զիս: Իսկ հրեշտակն 'ի
կողմանէ այ ետ նմա օրհնութիւն նոր` փոխելով
զանուն նր 'ի խորհուրդ աքանչելի. յայսմ`
հետէ ասէ ոչ կոչեսցեն զանուն քո Յակոբ,
այլ` Իսրայէլ եղիցի անուն քո. զի ժուժկա-
լեցեր ընդ այ, եւ ընդ մարդկան զօրաւոր լիջիր.
քանզի Իսրայէլ թարգմանի յաղթօղ այ, այլ
հարկօրէն տառագրաբանի 'ի մեզ ածատես,
կամ որ նոյն է` ըմնատես: Յաւել եւ յակոբ
հարցանել զանունն երեւեցելոյն. եւ նա ասէ.
զի՞ հարցանես զանունանէ իմմէ. յայտ արա-
րեալ` թէ ած է անանուն եւ անսահմանելի.
այլ օրհնեաց զնա երկնաւոր օրհնութբ. եւ
եղեւ 'ի նմանէ աներեւոյթ. եւ յակոբ կոչեաց
զանուն տեղւոյն փանուէլ, որ տեսիլ այ, կմ
երեւումն այ. զի տեսի ասէ զած դէմ յանդի-
ման, եւ ապրեցաւ անձն իմ. եւ այս ամ հայեր
'ի

'ի խորհուրդ մարդանալոյն Քյ 'ի զաւակէն
յակոբայ ։

Այլ եղև յետ հանդիպելոյ եսաւայ, և հաւբարերոյն զմիմեանս սիրով, քանզի խոնարհ երկրպագութիւ յաղթեաց նմա յակոբ, և չուհեցաւ զանդրո նր, եկեալ յակոբայ հանդէպ քաղաքին սիկիմացւոց՝ գնեաց յեմովրայ ամորհացւոյ զմիճակ անդին, ուր եհար զխորան իւր, և շինեաց անդ սեղան ․ և կարդաց զԱծ իւր ։ Յայնմ ժամանակի կոտորեցին ղևի և շմաւոն որդիքն լիայ զսիկիմացիս 'ի պատճառս դինայ քեռն իւրեանց, առանց գիտութն և ընդդէմ կամաց հօրն իւրեանց ։ Յետ այսորիկ հրաման ընկալեալ 'ի տեառնէ յակոբայ իսէլ կոչեցելոյ՝ ելանել 'ի բեթէլ, և կազմել անդ սեղան Այ, սրբեաց զընտանիս իւր յամ հեռոց հեթանոսական իրաց՝ յորս սովորեալ էին յերկրին ասորւոց ․ և եկեալ 'ի բեթէլ՝ ուր նախ ետես զտեսիլ սանդղոց, կանգնեաց սեղան Այ ։

Այլ Աստուած երևեցաւ նմա անդ վերստին, և օրհնեաց զնա ըստ առաջնոյ օրհնութեանն, և հաստատեաց զիսէլ կոչումն անուան նորա ․ և ասէ ցնա ․ Ես եմ Աստուած քո՝ Աստուած բաւական ․ աճեսջի՛ր և բազմասջի՛ր, ազգք և ժողովք ազգաց եղիցին 'ի քէն, և թագաւորք 'ի քէն ելցեն ։

Այլ 'ի չուելն 'ի բեթելայ յեփրաթա, մեռաւ հռաքէլ 'ի ծնանել զբենիամին ․ և թաղեցաւ 'ի ճանապարհին եփրաթայ, այն է բեթղեհէմ ․ վոյ և խորհրդապար մայր կոչի-

ան-

անմեղ մանկանցն բեթղեհեմի կոտորելոց 'ի
ծննդեանն քրի ։ Յետ այսորիկ հասեալ իւելի
'ի քերբան՝ եգիտ զհայր իւր դիւահակ կեն-
դանի ։ եւ եկաց մեծ նահապետն իսահակ
յայնմ հետէ այլ եւս ամս իբր հնգետասան ։
եւ լքեալ զաւուրս իւր՝ մեռաւ 'ի հասակի հա-
րիւր եւ ութսուն ամաց ։ եւ թաղեցին զնա յա-
կոբ եւ եսաւ որդիք իւր, որք յայնժամ ան-
ցեալ էին զհարիւրամենիւք ։

Այս այնուհետեւ զանեղի կալաւ յակոբ յեր-
կրին քանանացւոց պանդխտութեամբ իբրեւ
զհայրս իւր ։ մինչեւ վասն անցիցն յովսեփայ՝
որոյ վաճառումն յեղբարց իւրոց եղեւ յառաջ
քան զմահ իսահակայ, յորժամ բարձրացոյց
ա̃ծ զյովսէփ յեգիպտոս, 'ի հրաւիրմանէ նր̃
էջ յակոբ ա̃մ տամբ իւրով յեգիպտոս ։ եւ
եկաց անդ ամս եօթնեւտասն, եւ անդ վախ-
ճանեցաւ հարիւր քառասուն եւ եօթն ամաց ։
այլ ըստ պատուիրելոյ իւրոյ երդմամբ՝ բերեալ
եղեւ 'ի յովսեփայ փառօք յերկիրն քանանաց-
ւոց, եւ թաղեցաւ ընդ հարս իւր ։ զի յայտնի
լինիցի՝ թէ այն երկիր է, զոր խոստացաւ
տալ ա̃ծ 'ի ժամանակի իւրում որդւոցն իւրի,
եւ մի բաժանեսցի 'ի հարց իւրոց յիսահակայ
եւ յաբրահամէ ։

Այսպիսիք ոմանք էին այս երեք անձինք՝
ա̃ծարեալ նահապետք, բարեկամք ա̃յ բարձ-
րելոյ, աբրահամ, իսահակ, եւ յակոբ, նա-
խահարք որդւոյն ա̃յ, եւ հիմունք հին եւ նոր
եկեղեցւոյ ։ որոց ոչ ամօթ համարեցաւ ա̃ծ,
այլ՝ պարծանք յաւերժական, կոչիլ նց ա̃ծ ։

Երեւեմ սանելով սանէպ՝ մծ աբրահամու , մծ իսահակայ , եւ մծ յակոբայ , կամ որ նոյն է՝ մր մծ իէլի ։ Ամ իմիք նմանեցուցուք զմն-տրեալքս մոյ՝ զգարգարեալսն մծայլն եւ գեր-մարդկայինն քաղաքավարութը , բայց երից մծաբանականն անուանեալ աւաքինութեց . աբրահամ՝ հաւատոյ պատկեր ճշմարիտ՝ հայրն հաւատոց . իսահակ՝ յուսոյ տիպ գե-ղեցիկ յՈմանման . եւ յակոբ՝ սէր մոյ բոլորո-վին , է մծ միացեալ . քանզի մծ սէր է ։ Այս ահա այսպիսեաց ծննդոց աւաքինուեց հա-րազատ՝ գտաւ մի միայն յովսէփն ընտրեալ յորդիս յակոբայ , բարեզարդուեց մծի օրի-նակ եւ գործօնեայ սքանչելի , հայրենակա-նացն հետեւօղ աւաքինութեց , եւ իւիք իւիք գերազանցեալ զհարբք . զորոյ զպատմուէն ախորժելի սերտ 'ի բերան ունին ամենեքին . այլ ինձ ախորժական՝ է աւաքինի քաղաքա-վարուէն նր մի առ մի անցանել մեզ յօրինակ ։

# ՅԻՇԱՏԱԿ

Յովսէփայ Նահապետի ։

Հ · քերթ ·29 · և այլք ։

ՍՐԲ՝Ն ՉԵԱԼԻՆ ՅՈՎՍԷՓ՝ սիրեցեալ յաչս հօր իւրոյ իէլի մն լաւութեն . առաւել քան զայլ մետասան որդիս իւր , անդստին 'ի մանկութէ լցեալ հոգւոյն մոյ՝ խելամուտ

Փ. Օ. Զ եղեւ

եղև ամենայնի յայտնութեանց 'ի ձեռն երազոց․ զի եօթնևտասն ամաց էր՝ յորժամ եւանես զե-րազն, զոր պատմեաց եղբարց իւրոց․ որով գուշակեալ լինէր վերջին փառաւորութիւն նր, մինչև երկրպագութիւն առնուլ յնմ եղ-բարց իւրոց և 'ի ծնողէն ։ Նայև քանզի պարտ էր նմ յօրինակ քնի՝ նախ չարչարիլ, և ապա մտանել 'ի փառսն յայն, վոյ և 'ի նշանակ փրկչին վաճառեալ լինէր յեղբարցն՝ քն խոր-հրդոյ յուդայի եղբօր իւրոյ, հլութ և հնա-զանդութբ՝ 'ի կրել զնեղութիս ամ․ զի ոչ նեղութիւն յառաջէ քան զհանգիստ, նոյն-պէս և նախանձն կեց է քն պատուոյ և սիրոյ արծաթասիրաց՝ 'ի նեղել զնա և 'ի հալածել․ այլ այն իսկ է նշանակ և աւիթ բարձրութե իշխանութեանց և համբերողաց․ որոց գլուխ ճա-նաչի 'ի հնումն կերպարանին յոր յովսէփ ։

Ով վաճառեաց զյովսէփ, հարցանէր ոմն 'ի սրց․ և որք լռեանն, ասէր․ եղբարքն վա-ճառեցին․ և նա ասէ, ոչ, այլ՝ հնազան-դութիւն և խոնարհութիւն նր վաճառեաց զնա․ զի անմռունչ եկաց իբրև զգառն առաջի կտրչի քն նմանութե ամն․ ապա թէ ոչ՝ եթէ բողոքեալ էր նր առ զնողս, եթէ եղբարք եմ սոցա՝ ոյք զիս յանիրաւի վաճառեն, և կմ եթէ ասացեալ էր, գոյ իմ հայր կենդա-նի՝ այր մեծատուն և մեծանուն, չառնուին յանձն գնել զնա իսմայելացիք (այն են մա-դիանացիք սերեալք յիսմայելէ 'ի հօրեղբօ-րէն յակոբայ), այլ դուցէ դարձուցանէին ևս զնա ողջանդամ առ նէ, և պարգևս մե-

ծա

զէն նախանձ իւր որկաւ զիւրեաւ՝ դնել գայթակղութիւն արդարոյն . 'ի ձեռս առնոյր զհին զէնն իւր զկինն՝ դրդուելով զկին նորա յովսեփու ընդդէմ պատանւոյն : Բայց 'ի դե-րև եղանէր պիղծն , և յամօթ լինէր հան-դերձ գործակցաւն . ուր ողջախոհն յովսէփ՝ հայելի անարատ մաքրութեան ոչ թողացոյց շնչով անգամ պղծախոհին արատել զսրբութիւն անձին իւրոյ . այլ զերեսս 'ի բաց դարձու-ցեալ՝ բացէ 'ի բաց հերքէր զանօրէն հրա-պոյրս տիկնոջն , և հաստատ սուսերբ բանիւն այ միջակտուր առնէր զօձն թունաւոր . զի-արդ առնիցեմ ասէ զբանդ զայդ չար և զմեծ , և մեղանչիցեմ առաջի այ : Ուսցին առաջինիք զայս սուր երկսայրի շողացուցա-նել ընդդէմ փորձութեանց չարին , և յաջ և յա-հեակ հատցեն փութապէս զամ փուտ շա-ռաւիղս մեղաց . զխոտելով զչարն ընդ ինքեան չառնելի , և 'ի մեծ չարէն մեծապէս փախ-չելի . արդ որ ինչ հակառակ է օրինացն այ՝ է մեծն 'ի չարիս , այն իսկ է մեղքն . որ յո՛ր խորշս խաւարինս և գործիցի , առաջի այ գործի . և ոչինչ ծածկի յամենատես աչաց նորա :

Յայնուհետև 'ի յետին ձիգն բերել՝ սատա-նայի՝ 'ի փոխ էառ զձեռս կնոջն , և բուռն հարեալ զձորձոց արդարոյն՝ կարծէր կաշ-կանդել զնա անձողոպրելի 'ի թակարդս մե-ղաց : Իսկ նահատակն զի՞նչ . խոյս 'ի հրոյ 'ի բաց ոստուցեալ՝ թողու զձորձս 'ի ձեռս բռնողին , և փախչի 'ի ձեռաց նոր . զի մի՛ հաս

դար

դարչուն կուռնեալ ’ի հանդերձս՝ շաղախեսցէ զոգի նո՛ր նոր․ ահա յաղթութիւն գեղեցիկ՝ փախչելով վանել, և մերկամարմին ըմբշամարտութեամբ մեալ անըմբռնելի․ որոյ յաղթանակ ’ի տես՝ որ հանդիսադիրն է զօրականաց իւրոց, զգեցուցանել նմա պատմուճան շնորհաց, և պսակ դնել փառաց, և տալ ’ի ձեռս դաւաղան արքայութեան ը̄ յովսեփայ ։

Նոյն այն՝ որ կամէր զսիրելին իւր ընդ ամ̄ հանդէս անցուցանել առաքինի ճգնութեան, և բազմայաղթ մրցանօք բազմապատիկ զարդարել, ոչ յայտնեաց առ օրէն զանմեղութիւն յովսեփայ․ այլ թոյլ ետ՝ զի ը̄ չարախօսութեան չար տիկնոջն իբրև մեղապարտ ’ի բանտ արկցի անպարտն ։ Նորանի՛ տամ յովսեփու բանտարկել եղելոյ յանիրաւի վասն ճանապարհին արդարութեան՝ ը̄ նոր օրինացս շնորհի ը̄ առաքելոց, քանիրաւամբք վերաբաղմելոյ յերկրորդ դահ փարաւոնի․ զի տուն բանտին եղև նմա դպրատուն առաքինութեան, աթոռ քարոզութեան ճշմարտութեան, և վկայարան մարտիրոսութեան․ իսկ այլոց պատժաւորաց վէմ պատարան ուղղութեան, և դաբիրայ պատդամաւորութեան յամծակոյս կողմանէ․ զի զոր ինչ և հարցանէին՝ որք զայլեանն առ նա, իբրև ’ի բերանոյ նոյ լսէին զանվրէպ լուծումն տարակուսանաց ։ Մինչ զի և բանտապետն՝ որ տէրն էր յովսեփու, մատակիւր ծառայանայր նմա տրրով, յանձնելով զամ̄ իշխանութիւն ’ի ձեռս նոր․ զի տէրն տիեզերաց էր ը̄ նմա ։

եկեաց ստացականաց է այժմէ և
Օխտհազար ... խաչելոց տեսանեմ և 'ի քանն
է ձախակ... 'ի տանկառապետն և 'ի
...արքայլին եգիպտացւոց . յո-
...քն քանի արդարոյն՝ կենաց հաստա-
տոյ , և միւսն՝ մահու , և յայտնութե ամե-
...երազոցն : Նա ուր աջակողմեան ա-
...ակն աղաչելով զփրկիչն յիշել զինքն 'ի
քաւանդամ դալաստեան արքայութե իւրում
առ օրին միոյ դրախտին ուղեկից լինել
հրաւիրեցաւ , սա յովսէփ աղաչէ զտակա-
ռապետն յիշել զինքն 'ի յաջող ելս ազատու-
թե իւրոյ , և ոչ հասանէ խնդրոյն , այլ 'ի
մոռացօնս լինի առ մարդկան . զի ինքնին
տր յիշեաց զսիրելին իւր , և յիշեցուցէ 'ի
գլխովողագոյն պահու . ոպ զի փառօք լինիցի
ելք նր 'ի բանտէ , և ոչ լռելեայն . որպս և
եղև իսկ յետ երկուց ամաց , յորժամ երազ
ցուցաւ փարաւոնի արքայի առ յոյս . որոյ
լուծումն ոչ էր տանել ումեք 'ի մարդկանէ՝
բաց 'ի յովսեփայ :

Նահա այնուհետև ժամ , զի փառաւորեսցի
որդին իէլի , և իէլ ընդ նմա . զի գիտէ տր
զամ̃ծապաշտս փրկել 'ի փորձութե , և զփա-
ռաւորիչս իւր փառաւորել . փորձեաց ինք-
նին տր զյովսէփ , ոպ փորձի ոսկի 'ի բովս ,
'ի հանդէս ամ փորձանաց . և եգիտ իւր ար-
ժանի , և արժանաւոր փառաց արքունի . զի
մի ևս ընդ գրոհանաւ մնասցէ ծրագն լուսա-
ւոր , այլ 'ի վր աշտանակի եդեալ՝ լուսաւո-
րեսցէ զամ տունն եգիպտացւոց կարծեցեալ
ի-

խնամատանց, և զտուն հօր իւրոյ յակամայ։
Տես ինձ և զաստիճան ՟է՟ այ վերելիցն փա-
ռաց 'ի փառս՝ հաւատարիմ ծառայութե՟. զի 'ի տան զաւհճապետին գեղեցիկ տնտե-
սութե՟՝ ծառայն եղև զաւառապետ. և 'ի
տան բանտին՝ բանտարկեալն եղև բանտա-
պետ. յետոյ ուրեմն 'ի հասակի երեսուն
ամաց պաշտօնեայ ընտրեալ 'ի դուռն փարա-
ւոնի՝ պետ եղև եգիպտոսի, փրկիչ [illegible]ի, և
հայր փարաւոնի. Թագաւորական եհաս պատ-
ուոյ, այլ տակաւին խոնարհութի նորա խո-
րագոյն 'ի ծայրագոյն բարձրութե։
Այլ ես ի այն եմ զարմացեալ, զի յայնպի-
սի փառս հասեալ յովսեփու յեօթն ամս լի-
ութե երկրին եգիպտացւոց՝ տակաւին ժու-
ժկէր լսել, և ոչ տալ ծանօթս զանձնէ. տա-
կաւին երկայնամտեալ օտարութե 'ի տանէ
հօր իւրոյ՝ ոչ առաքէր աւետաւորս առ ծնօղն
ծերունի, զալ տեսանել զփառս իւր, և 'ի
միտ ածանել զխորհուրդ երազոյն՝ որ վասն
մարգարէաբար տեսանէր սերեցելոյ զաւա-
կին, եթէ գալո՞վ գայցեմք և երկի՞ր պա-
գանիցեմք քեզ։ Արդ թէպէտև յովսէփ ոչ
երբէք զհետ ընթացաւ փառաց, բայց յետ
փառքն զհետ ընթացան նր, և հասին։
Զի 'ի յաջորդել եօթն ամաց սովոյն՝ ին-
քեանք եղբարքն յովսեփու ՟Ժ՟ բանի հօր իւ-
րեանց հարկեցան իջանել յեգիպտոս 'ի գը-
նել ցորեան 'ի յովսեփայ. և այնպէս յան-
ծանօթս և յակամայ կամս լցեալ զխորհուրդն
այ՝ անկանէին առաջի յովսեփու և երկիրպագա-

զանէլին , և ծառայս անուանելին նմ՟ ոչ միայն զանձինս , այլև զհայր իւրեանց զինէլ : Տակաւին պնդէր զանձն յովսէփ փառաւորեալն յեղբարց իւրոց չյայտնել զանձն . զի մի լիցի անձնացոյց , այլ եղբարքն ինքնին ծանիցեն զնա . Իսկ նք՟ առ անակնկալ գիւտուածոյն՝ անկարացան ճանաչել զիւրեանց հարազատն . և այնպէս յովսէփ՝ որ ճանաչէր զոչ ճանաչօղս իւր , և սիրէր զոչ սիրօղսն , գորովէր և խորովէր յաղեկիզմանէ սիրոյն :

Այնուհետև ՚ի հնարս մտանէր՝ խաղալ ընդ եղբարս իւր խաղ եղբայրական խրատու , որ կարօղն էր միանգամայն բանալ զաչս նց՟ . մեծարէր զնս՟՝ առանց փոքր կացուցանելոյ զանձն յաչս նց՟ , զի ծանիցեն՝ թէ ոմ՟ որ ինքնին մեծացոյց զփոքրն յամենեսին . գգուէր իբրև սիրելիս , և ձգնէր զնոսա վերանալ ՚ի միտս զգաստութե՟ . զչմարմն առաւել ՚ի նեղ արկանէր , զի զառաջնորդն եղբայրատեցութե՟ յեղբայրաճանաչութի՟ նախ ձգեսցէ , և նա վաւ զայլսն ՚ի նոյն առաջնորդեսցէ : Իբրև եսես՝ եթէ առապաստեալ են միտք նց՟ , զբենիամին զկրտսերն իւր հարազատ տայր բերել պատճառանօք . զի թերևս աննախանձն համամայր՝ ծանիցէ զնախանձելին իւր եղբայր . և ՚ի նմ՟ ես անգիտանալ ՚ի պաշտամանէ չար համբաւոյն՝ եթէ զազանակուր եղև եղբայր իւր երէց , ապա ինքնին յովսէփ տայր նց՟ գիտել պարզապէս . զի մի յաւաւել վարանմանց՝ աւելի ք՟ զչափն նեղեսցին :

Ասէ յովսէփ ցեղբարս իւր . ես եմ յովսէփ .

ող

ոչ թէ ասել. ես եմ յովսէփն այն տառա-
պեալ, որ փոքրիկն էի 'ի միջի ձերում, և
յաչս ձեր անպիտան. և արար զիս տ̃ր պե-
տանի, և այնպէս փառաւորեաց՝ ոչ տեսա-
նէք դ. այլ ես նոյն եմ, և ոչ փոխեցայ. զի
ոչ փքացայ փառօք և մեծութ̃ք, այլ տակա-
ւին անպիտան եմ յաչս իմ։ Օ այս և առա-
ւել քան զայն կարէր ասել յովսէփ. այլ
զգուշացաւ, զի մի՛ յամօթ արասցէ զեղբարս
իւր, և մի՛ կարի ճմլեցուսցէ զսիրտս նոցա.
միայն զիւրոյ սրտի զճմլումն 'ի վերայ էած.
ասէ. արդարև տակաւին կենդանի՞ է հայրն
իմ։ Սակայն և ոչ այդմ բանի կարող եղեն
նոքա տալ պ̃խնի. զի խռովեցան յերեսաց
նորա, և ալեկոծ ծփանօք խորհրդոց յա-
պուշ կրթեցան ը̃ խորհուրդն ա̃յ։
Յայնժամ յովսէփ խանդաղատեալ զնոքօք՝
համարձակեցուցանէր մօտ մատչիլ առ նա
իբրև առ ընտանի հարազատ, և քաջալե-
րեալ սրտապնդէր սիրողապէս. ես եմ ասէ
յովսէփ եղբայրն ձեր, զոր դուք վաճառե-
ցիք յեգիպտոս. բայց մի՛ ինչ տրտմիք, և մի՛
խիստ թուեսցի ձեզ, զի վաճառեցիք զիս
այսր. քանզի 'ի փրկութ̃ի առաքեաց զիս ա̃ծ
առաջի ձեր՝ առ 'ի թողլոյ ձեզ զաւակ յեր-
կրի, և կերակրել զամենեսին. և արդ ո՛չ
եթէ դուք առաքեցիք զիս այսր, այլ՝ ա̃ծ.
և արար զիս հայր փարաւոնի, և տ̃ր ա̃մ տան
ն̃ր և իշխան ա̃մ երկրիս եգիպտացւոց։ Արդ
փութացեալ ելէ՛ք առ հայրն իմ, և ասացէ՛ք
ցնա, ո՛չ վ̃ն իմ ինչ պարծանաց, այլ յուրա-
խու-

խութեն պատւոյ ծերունւոյն առն իմոյ , թէ այս-
պէս առնէ որդին քո յովսէփ՝ որ ԻԲ մեռեալն
էր համարեալ . արար զիս ած՝ տր ամ եր-
կրիս եգիպտացւոց . արդ եկ էջ առ իս , և
մի հեղգար : Եւ յուշեալ հօրայր յովսէփ վասն
ծնողին . այլ առաւել հօրայր վճ եղբարցն ,
զի մի յառաւել տրտմութեն ընկղմեսցին յե-
շատակաւ չարեացն՝ զոր ընդ նա անցուցին .
Նմին իրի դարձեալ պատուիրէր նց՝ ասելով .
մի զայրանայցէք ինչ 'ի ճանապարհի :

Չուեաց իէլ իջանել յեգիպտոս ըստ բանին
ածն 'ի տեսլեան՝ ամ տամբ իւրով . և ել յով-
սէփ փառօք և կառօք ընդ առաջ հօր իւրոյ
դքաջաց քաղաքաւն . և անկեալ զպարանո-
ցաւ՝ լացին լալիւն մեծ 'ի մեծէ ուրախութէ .
և ասէ իէլ ցյովսէփ . մեռայց այսուհետև ,
որովհետև տեսի զերեսս քո , զի տակաւին
կենդանի ես : Եւ ել յովսէփ , և պատմեաց
փարաւոնի . և ետ բնակեցուցանել զտուն
հօր իւրոյ յերկիրն գեսեմ յերկիր բարի և
խաշնադարման :

Եւ եղև 'ի լնանալ աւուրց իէլի՝ յորժամ
երդուաւ յովսէփ ըստ խնդրոյ նորա չթա-
ղել զնա յեգիպտոս , այլ ընդ հարս իւր
յերկիրն քանանացւոց՝ յերկիր աւետեացն
ածյ , երկիրպագ իէլ 'ի վերայ գլխոյ գա-
ւազանի իւրոյ , այս է առ ծերութեն՝ յեցեալ
'ի գաւազան՝ խոնարհեցոյց զգլուխ իւր մինչև
'ի վերին ծագ գաւազանին , և այնպէս
երկիր եպագ յովսեփայ՝ որ էր իբրև ստորին
ծայր գաւազանի ծննդոց իւրոց :

Եւ

Այս կատարեցաւ տեսիլն յովսեփու, զի յետ ատեղահոյլ եղբարց իւրոց նաև արեգակ-նափայլ հայր նր̄ երկիր եպագ նմա. որ էր նշան երկիր պագանելոյ իէլի փրկչին բողոքից ծնելոյ 'ի զաւակէ իւրմէ. զի յովսէփ էր օրի-նակ յ̄ի փրկչի. վ̄յ և անուն կոչեցաւ նմա 'ի փարաւոնէ փսոմփթոմփանէ, որ թարգ-մանի փրկիչ ա̄ի ։ Այլև և օրինակ յովսեփայ ա̄ծահայր անուանելոյ՝ որ 'ի զաւակէն յու-դայ, յորմէ ազգէ ծագեաց տ̄րն մեր. զի և նահապետն յովսէփ եղև դաստիարակ և հայրօրէն խնամածու ա̄մ եղբարցն, նոյն-պէս և հօրն իւրոյ իէլի և յուդայի նախա-հարցն ք̄ի ։

Իսկ յակոբ՝ որ և իէլ, ո̄չ ինքն 'ի կրտսերու-թէ անդրանկացեալ, 'տեսանելով և զկրտ-սերն յորդւոց իւրոց վերապատուեալ զյով-սէփ յ̄ոյ և 'ի մարդկանէ, յօրհնելն իւրում զերկուս որդիսն յովսեփու զմանասէ և զե-փրեմ՝ զծնեալսն յասանեթայ յեգիպտոս, զաջն իւր ձգեաց 'ի վերայ կրտսերոյն, և զձախն 'ի վերայ երիցուն, և ասէ. 'ի ձեզ օրհնեսցի իէլ, և ասասցեն՝ թէ արասցէ զքեզ ա̄ծ իբրև զեփրեմ և զմանասէ. և եդ զեփրեմ յառաջ քան զմանասէ ։

Կոչեաց յակոբ և զերկոտասանեսին որդիս իւր, և մարգարէական հոգւով օրհնեաց զմի մի 'ի նոցանէ՝ իւրաքանչիւր ը̄. օրհնու̄ իւրում. յորս պանծալի է քան զա̄մ՝ օրհ-նութիւնն յուդայ, լինել ք̄ի 'ի զաւակէ նորա, յորում օրհնեցան ա̄մ ազինք. և յետ

նորա

Նորա փափաքելի օրհնութեն ժառանգ. զատու յովսէփ՝ իբրև նախանձելի առաքինութը ՚ի մէջ ա̃ծ եղբարց իւրոց ։

Այլ եղև յետ վախճանի և թաղման իւրոյ, երկեալ եղբարցն յովսեփու՝ անկան յոտս նր̃, և հնարեցան խնդրել թողութի ՚ի նմանէ վն̃ անցիցն անցելոց՝ որպ̃ թէ ՚ի բերանոյ հօր իւրեանց ։ Այլ եւլաց յովսէփ հեզն և անյիշաչար՝ վն̃ բանիցն, զոր խօսեցան ը̃ նմա. և յասել նց̃, ահաւասիկ մեք ծառայք քո եմք, յարոյց զնս̃ և քաջալերեաց. ասէ. մի՛ երկնչիք, քանզի և ես ա̃յ եմ, և ա̃ծսիրութը և եղբայրսիրութբ՝ ծառայակից ձեր եմ. դուք խորհեցայք զինէն ՚ի չարութի, և ա̃ծ խորհեցաւ վն̃ իմ՝ ՚ի բարութի. և այն ևս ՚ի բարին ձեր և ամենեցուն. որպս և եղև իսկ յաւուր յայսմիկ, զի կերակրեցի ժողովուրդ բզ̃մ. մի՛ երկնչիք, ես կերակրեցից զձեզ և զտունս ձեր. և այնպէս մխիթարեաց զնս̃, և սփոփեաց զսիրտս նց̃ ։

Յետ այսորիկ եկաց յովսէփ այլ ևս ամս բազումս, և ծերացաւ. և ասէ ցորդիսն իւրոյ ցեղբարս իւր և ցզաւակս նոցա. ես ահաւասիկ մեռանիմ. այցելութբ այց արասցէ ձեզ ա̃ծ, և հանցէ զձեզ յերկրէս յայսմանէ յերկիրն՝ զոր երդուաւ ա̃ծ տալ հարցն մերոց՝ աբրահամու, սահակայ և յակոբայ ։ Այլ երդմնեցոյց զնս̃, զի ՚ի ժամանակին՝ յորում հանցէ ա̃ծ զորդիսն իւրոյ յեգիպտոսէ, հանցեն և զոսկերս նորա ։ Այլ վախճանեցաւ յովսէփ ամաց հարիւր և տասանց. և թաղեցին զնա ՚ի

՚ի տապանի յեգիպտոս . մինչեւ յետ ամաց բազմաց՝ յորժամ եհան Մովսէս զորդիսն Իէլի յեգիպտոսէ, եւ առ Ը իւր եւ զոսկերսն յովսեփու . Զոր եւ թաղեցին յետոյ ՚ի սիկիմ, ՚ի բաժնի ագարակին՝ զոր ստացաւ յակոբ յեմովրայ ամորհացւոյ . քանզի եւ զսիկիմ . ետ յակոբ յառանձին ժառանգութն յովսե-փու արտաքոյ եղբարց իւրոց ։ (6)

# ՅԻՇԱՏԱԿ

## Մովսէսի, Ահարոնի, եւ Եղիազարու ։

Ծ. սեպտ. 18 ։ Յ. Լ. սեպտ. 4 ։ Բոլլանդեանն տոնլորէնք . ՚ի Է հատ. սեպտ. երես. 6 = 177 ։ Փիլոն ։ Յովսեպոս ։ Գիր. Ներս. ՚ի Մովսէս ։ եւ այլք ՚ի Նախնեաց ։



ԱԽԱՄԱՐԳԱՐԷՆ Մովսէս՝ ածախօս եւ ածատես, գլուխ տեսանողաց՝ բանիւ եւ գրով, եւ արդեամբք նշանագործութեանց, ած փառաւորի կարգեալ յայ, ըն տանի ծառայ եւ հաւատարիմ բարեկամ այ՝ բերան ՚ի բերան խօսակցութբ, որոյ նմանն ոչ յարեաւ ՚ի մէջ Իէլի, եւ որդի ամրամայ որդւոյ կահաթու որդւոյ ղեւեայ՝ որդւոյ ըենատեսին Իէլի յակոբայ, եօթներորդ յաբրահամէ ։ Այս էր երեց եղբայր մովսէ-սի

որ Ահարոն՝ գլուխ քահանայութեան ղեւտացւոց. եւ քոյր նոցա աւագ քան զերկոսին՝ Մարիամ. Երեքեան եւս ընտրեալք յԱյ, եւ կարգեալք 'ի փրկութիւն առաջնին յակոբայ պանդխտելոյն յաւուրց անտի յովսեփայ յեգիպտոս :

Որ անցեալ 'ի բազմամեայ որդւոցն Իէլի յերկրի անդ պանդխտութեան, նախանձեցան եգիպտացիք. եւ յաւուրս Թագաւորին՝ որ ոչ ճանաչէր զՅովսէփ, հնարեցան չարչարել զազգ նր ազգի ազգի տառապանօք. եւ զի Տր յաճախել նեղութեանց՝ եւս քան զեւս աճէին 'ի բազմութիւն, հրաման ետ փարաւոն արքայ անողորմ ընկեցիկ առնել 'ի գետն նեղոս զնորածին արու մանկունս եբրայեցւոց : Յայնմ ժամանակի ծնաւ եւ կրտսերն յորդիս ամրամայ, այն է կոչեցեալն յետոյ մովսէս. եւ անուն մօր նր յովքաբեդ : Ուստի իբրեւ տեսին ծնօղքն նր զմանուկն կայտառ իբրեւ հրեշտակ Այ, թաքուցին զնա 'ի տան ամիսս երիս. եւ իբրեւ ոչ եւս կարէին ծածկել, եդ մայրն զմանուկն 'ի պրտուճեայ տապանակ, եւ ընկեց 'ի խաղ մի առ ափն գետոյն. եւ դիտէր քոյր նորա Մարիամ 'ի հեռաստանէ : Եւ եղեւ խնամօքն Այ, զի դուստրն փարաւոնի տեսեալ զտապանակն՝ ետ 'ի վեր առնուլ. եւ իբրեւ ետես զմանուկն՝ զի լայր, խանդաղատեցաւ զնովաւ, եւ ասէ. 'ի մանկանց եբրայեցւոց է սա : Յայնժամ մատեաւ Մարիամ առ նա իբրեւ յանդէտս, եւ ասէ. կամիս, զի կոչեցից քեզ կին մի դայեակ յեբրայեցւոց անտի, եւ սնուցանիցէ քեզ զմանուկդ,

նուէկդ, քանզի եւտես զգութ նոր 'ի վերայ ման-
կանն. եւ նա ասէ, երթ:

Յայնժամ գնաց կոչեաց Մարիամ ուրախու-
թեամբ զմայր իւր. եւ դուստրն փարաւոնի՝ որ
ոչն գիտէր, թէ մայր իցէ նա մանկանն, ա-
սէ ցնա. առ զմանուկս, եւ սնո՛ ինձ զդա իբ-
րեւ իմ որդեգիր. եւ ես տաց քեզ զվարձս քո:
Այլ իբրեւ հաստատեցաւ մանուկն, եած զնա
առ դուստրն փարաւոնի. եւ եղեւ նմ յորդե-
գիրս. եւ անուանեաց զանուն նր Մովսէս,
թէ 'ի ջրոյ հանեալ. քանզի 'ի ջրոյ անուն ա-
սէ հանի զդա. իսկ անուն թլփատութե նր
ասի լինել ըստ աւանդութե իմիք յովակիմ.
այլ եւ յետ ելիցն յՅէ կոչեցին զնա ռաբբիք
մելքի:

Այլ զարգացաւ Մովսէս յարքունի դրան 'ի
տան փարաւոնի, եւ վարժեցաւ ամ իմաս-
տութե եգիպտացւոցն. եւ էր զօրաւոր բա-
նիւք եւ գործովք իւրովք: Այլ իբրեւ եղեւ քա-
ռասնամեայ, մինչդեռ խորհէր հնարս այցե-
լութե եղբարց իւրոց որդւոցն իէլի, որք 'ի գե-
րութե էին ընդ ձեռամբ եգիպտացւոց, տեսեալ
զոմն եգիպտացի՝ որ զրկէր զայր եբրայեցի,
սպան զզրկօղն, եւ թաղեաց առ ետեղ: Ի
վաղիւն անդր տեսեալ եւ զերկուս յեբրայեց-
ւոց՝ զի կռուէին ընդ միմեանս, վարեաց զնս 'ի
խաղաղութի. ասէ. արք եղբարք էք՝ ընդէ՞ր
զրկէք զմիմեանս. եւ սաստեաց այնմ՝ որ բռ-
նանայր 'ի վերայ եղբօրն: Իսկ անիրաւն այն
ասէ. ո՞ կացոյց զքեզ իշխան եւ դատաւոր 'ի
վերայ մեր. միթէ սպանանե՞լ կամիցիս զիս, զո՛ր
օրի-

օրինակ երէկ սպաներ զեգիպտացին ։
Զահի հարաւ Մովսէս, և ասէ, զիա՞րդ այդպէս յայտնի եղև բանն ։ զի ինքն կարծէր՝ թէ ոչ ոք գիտէ, եթէ ո՞ է սպանօղն եգիպտացւոյն ։ այլ յետոյ իմացաւ, զի հասեալ է բանն մինչև յունկն փարաւոնի, և խնդրէ սպանանել զինքն ։ Սոյ փախեաւ գնաց Մովսէս յերկիրն Մադիամու ի̃ Մադիանացւոց, և բնակեցաւ անդ պանդխտութ̃ ։ մինչև փեսայացաւ Հռագուէլի յոթորայ քրմի տեղւոյն՝ մը̃ ծառայութե̃ն, զոր արար ՚ի նպաստ դստերաց նր̃, որք արածէին զխաշինս հօրն իւրեանց ։ Նա ծնաւ անդ երկուս որդիս ։ յորոց զանդրանիկն կոչեաց գերսամ, ի̃ պանդուխտ կամ օտար ։ զի պանդուխտ եմ ասէ յօտար երկրի ։ և զերկրորդն անուանեաց եղիազար, ի̃ ա̃ծ իմ օգնական ։ զի ասէ, ա̃ծ հօր իմոյ օգնեաց ինձ, և ազարեցոյց զիս ՚ի ձեռաց փարաւոնի՝ միանգամ և երկիցս ։ Նա եկաց Մովսէս ՚ի պանդխտութ̃ անդ ամս քառասուն ՚ի գործ հովուութե̃, զի արածէր զխաշինս աներոյ իւրոյ ։ մինչև մեռաւ արքայն եգիպտացւոց՝ որ խնդրէր զանձն նր̃ ։ և նստաւ այլ թագաւոր՝ նոյնպէս փարաւոն կոչեցեալ առ եգիպտացիս ։ և նա Նա չարաչար տառապեցուցանէր զեբրայեցիս ։ մինչև աղաղակել որդւոցն իէլի հանապազ առ տր̃ ։ և տր̃ լուաւ նոցա և յիշեաց զուխտ իւր՝ որ ը̃ հարս նց̃ ։ և այց արար նց̃ ՚ի ձեռն Մովսէսի՝ ընտրեալ զհովիւն ոչխարաց ՚ի հովուել զժողովուրդ իւր զիէլ ։

Արդ զի էր այրն մովսէս՝ այր ըստ սրտին այ,
հեզ քան զամ մարդիկ՝ որ 'ի վերայ երկրի,
միանգամայն և վառեալ 'ի նախանձ փառացն
այ, ուսոյր և ածասէր, և եղբայրասէր ան-
նման՝ մինչև դնել զանձն 'ի վր եղբարց.
անփառասէր, և խոնարհ, և լի հաւատովք.
և այս է ասելն առաքելոյն. Հաւատովք
մովսէս իբրև անձեաց, ուրացաւ կոչիլ որդի
դստերն փարաւոնի. լաւ համարեցաւ չար-
չարիլ ընդ ժողովրդեանն այ՝ քան առ ժամա-
նակ մի վայելել 'ի մեղս. կարեւոր համարե-
ցաւ զնախատինսն քի քան զմեծութիւն գան-
ձուցն եգիպտացւոց. զի հայեցեալ ակն ու-
նէր վարձուցն հատուցմանն: Նա եթէ սկիզբն
նր այսպէս, քանի՞ ևս ընթացք կենացն յետ
կոչելոյ զնա Տն 'ի մորենւոյն, և տալոյ նմ
զառաջնորդութի տանելն ի՛նչ իւր մեծամեծ նշա-
նօք և արուեստիւք յեգիպտոս և յանապա-
տի զամս քառասուն. զորս չէ՛ տեղւոյս մի
առ մի երկրորդել:

Զի՞նչ ասեմ առաքինութեանց խոնարհութիւն նր
յայտնի եղև բազմօք յընտրութեան անդ իւ-
րում, յորժամ հրաժարէր բազում պատճա-
ռանօք, նրբաձայն և ծանրալեզու զինքն
ասելով. և թէ՝ չեմ խօսող ես. աղաչեմ
ասէ զքեզ Տր, ա՛ռ քեզ 'ի ձեռն զայլ ոք զօ-
րաւոր՝ զոր առաքիցես. մինչև բարկացաւ
Տր սրտմտութբ, և բռնադատեաց զնա 'ի
պաշտօն առաքելութեան և առաջնորդութեան,
տալով նմա գործակից զահարոն զեղբայր
նր. և յայնժամ յանձն էառ մովսէս: Այլ

Տէր՝ որ բարձր առնէ զխոնարհս , զկրտսերս
զՄովսէս բազմօք բարձրացոյց քան զաւագն
զԱհարոն . զի զՄովսէս արար բերան նմա՝ խօ-
սել ընդ Ահարոնի զպատգամս Տեառն , և զԱհա-
րոն՝ բերան Մովսեսի իբրև թարգման՝ խօ-
սել ընդ ժողովրդեան . զՄովսէս անուանեաց
Աստուած փարաւոնի , իբրև պատուհասող և հրամայող
նմա տիրաբար՝ զի արասցէ զբանն Տեառն . և
զԱհարոն մարգարէ Մովսէսի նախամարգա-
րէին , իբրև պատգամախօս ՚ի բերանոյ նորա .
վ̃յ և Մովսէս և Ահարոն միօրինակ կոչին
երիցունք Տեառն , զի թէպէտ Ահարոն միայն
քահանայացաւ , և քահանայապետ եղև ,
այլ ՚ի ձեռն Մովսեսի յԱստուծոյ կարգմանն է :
Իսկ հեզութիւն Մովսէսի սքանչելի՝ յամենայն առա-
քինութիւնս նորա առաւել հանդիսանայր . զի
որչափ իշխող աշխատ եղև ՚ի վերայ ժողովրդեանն
առաւել քան զՀայր և զՄայր , առաւել քան
զՀովիւ և զդաստիարակ , և յայսր նմի վ̃
քարկոծ եւսկամէին առնել զնա ապերախտ-
քըն : Նա ՚ի բարկութեան նմ ազատէր զնոսա՝
զանձն ՚ի մէջ մատուցանելով կրել զպատիժ-
նս . և նոքա տրտունջէին զնմանէ և յաչաղէին
և յոխորտային . իսկ նա զի՞նչ . այլ եւ ոչ
եմ ասէ , զի ոչ եթէ զմէնջ է տրտունջդ ձեր ,
այլ զնյ : Մեծ ևս համբերութիւն և հեզու-
թիւն եցոյց առ Ահարոն և առ Մարիամ , յա-
սել նր̃ . միթէ ընդ Մովսեսի՞ միայն խօսեցաւ
Տէր . ո՞չ ապաքէն և ընդ մեզ խօսեցաւ : Ոչ ամր
էր նմա լսել զայս բամբասանս . այլ լռեաց
հեզութեամբ . և ՚ի պատժել նմ զՄարիամ բա-
րօ-

բռնութեն ,յաղօթս եկաց մովսէս և բժշկեաց զնա . Թող զահագին բարկութիւն՝ զոր առ-Թիւք իւրովք անցոյց յահարոնէ 'ի ժամանակին , յորում անսաց նա ամբոխին , և արար զորթն պղնձի :

Չարչարակից էր և ահարոն յամ՟ ճգնութիւ եղբօր իւրոյ . զի ը՟ նմա կրեաց զամ՟ վիշտս յեգիպտոս և յանապատի , և ը՟ նմա եբարձ զխստապարանոցութի ազգին իւրոյ . զի և զնա կամէին՝ երբեմն քարկոծել , երբեմն ընկենուլ 'ի քահանայապետութե . այլ ա՟ր էր ընդ նմա , և բազում նշանօք արդարացոյց զնա , և յամօթ արար և սատակեաց զթշնամիս նր . և հաստատեաց զքահանայութի նր ուխտիւ , և յայտնի աքանչելեօք գաւազանին ծաղկելոյ : Այնպէս և 'ի նշանագործութիւս ա՟մ էր գործակից մովսէսի ահարոն . և բազում այն էր՝ զի ինքն առնէր ըննշանսն բանիւ մովսէսի :

Աւելից ասել զմեծամեծ խորհուրդս՝ որ յամ՟ գործս մովսէսի և ահարոնի օրինակել լինէին՝ 'ի նշանակ անօրէնութեանց փրկչին , և խորհրդոց նորա եկեղեցւոյ . նախ գաւազանն մովսէսի՝ որ դարձաւ յօձ , և դարձեալ եղև գաւազան , որով գործեցան այնչափ նշանք յեգիպտոս , և նովին պատառեցաւ ծովն կարմիր՝ յօրինակ պատուհասական և ամենայաղթ խաչին քի . նոյնպէս և օձն պղնձի բարձրացեալ 'ի վր նշանակէր՝ 'ի բժշկութի օձահարաց , յայտ առնէր զնոն բարձրանալ 'ի խաչ վր փրկութե հարուածելոց 'ի հնոյ

օձէն. և սիւն ամպոյն 'ի տուէ, և հրեղէնն լուսատու 'ի գիշերի, օրինակ կուսի՝ ԶԱ͞Ծ տապանակին, և ընդ ոսկի սափորոյ. և մանանայն՝ օրինակ ս͞ր խորհրդոյ. և խորանն վկայութեան՝ յօրինակ եկեղեցւոյ. և գր ելքն յեգիպտոսէ՝ օրինակ էր ազատութեան մերոյ 'ի ծառայութենէ դիւէն, և անապատն՝ ընթացք պանդխտութեան կենացս, նոյնպէս և երկիր աւետեաց՝ օրինակ երկնից արքայութեան: Օրէնք և տախտակք կտակարանաց՝ նախագիծ օրինակք աւետարանի նորոյ կըտակիս. և զատիկն և գառն օրինականն ա͞մ մասամբք՝ պատկեր չարչարանաց և խաչի անմեղ գառինն Ա͞յ, որ եղև փրկիչ աշխարհի արեամբ նորոյ ուխտի, և զԻ͞էլն հին փոխարկեաց 'ի նորս Ի͞էլ, և զստուերն 'ի լոյս ճշմարտեաց:

Արդ՝ Ա͞ծայինն մովսէս, որ այսմ Ա͞ծմի խորհրդագգած եղեալ յօրինակի անդ հանդերձ ահարոնիւ փառաբանէր և զերկիրն աւետեաց՝ յոր առաջնորդէր ժողովրդեանն, անձամբ տեսանել, արգելաւ 'ի մտանելոյ 'ի պատճառս դոյզն պակասութեան, որով միանգամ պակասեցաւ փոքր մի 'ի հեզութէ անտի իւրմէ. զի նեղեալ յերեսաց ապերախտ և ապառուամ ազգին, ասէր 'ի հարկանել անդ զաւազանաւ զվէմն. լուարուք ինձ անհաւանք, միթէ 'ի վիմէս յայսմանէ հանիցեմք ջուր. վ͞ոյ և ոչ զուարթ սրտիւ եհար միանգամ՝ ըստ յայլում նուագի, այլ երկիցս անգամ՝ իբր թուլացեալ սրտիւ առ նեղութեան:

Դ

Զնոյն կիրս ըմբռնեմ և ահարոնի՝ ոչ հօգա-
ցաւ ցածուցանել զսիրտ մովսեսի, և յորդո-
րել՝ ոպ̃ պարտական էր, զի հանդարտեալ
մտօք կատարեսցէ զգործ տէրական հրամա-
նի. վ̃յ երկոքեանն իսկ արգելան մտանել
՚ի պարգևական երկիրն ։ Այսպէս խրատէ
տ̃ր զսիրելիս իւր, և ոչ անպատիժ թողու
զո՛ր և է ներելի յանցանս նոցա. ուր զատե-
լիս իւր թողացուցանէ բազում անգամ յա-
տիս առանց երևելի պատժոյ. որ է խստա-
գոյն քան զա̃մ պատուհաս, պահել պա-
տուհասի ՚ի հանդերձեալն ։

Ահարոն ննջեաց ՚ի կամս այ̃ ՚ի հովր լերինն.
և քահանայացաւ եղիազար որդի նր̃ ը̃ նր̃,
այլ ընտրեալ և հաճոյ առաջի այ̃ և ա̃մ ժո-
ղովրդեան իբրև զահարոն, և թերևս առա-
ւել ևս քան զնա. զի ոչինչ պակասութիւն
նշանակէ գիրն. ոպ̃ և որդի եղիազարու փե-
նեհէս՝ որ զնր̃ կնի յաջորդեաց ՚ի քահանայ-
ութն̃, և ևս գովելի գտաւ նախընծայ ա-
ռաքինութ̃բ իւրով ՚ի նախանձայուզութեն փա-
ռացն այ̃, և ազգովին ժառանգ եղև քահա-
նայութն̃ ։ Նոյն եղիազար էր՝ որ ը̃ յեսուայ
էանց ը̃ յորդանան, և ժառանգեցոյց որդ-
ւոցն իէլի զերկիրն աւետեաց ։

Իսկ մովսէս ծառայ այ̃ն. յետ ելանելոյ ՚ի
լեառն նաբաւ, և տեսանելոյ անտի զեր-
կիրն աւետեաց, յորժամ բանակեալ էր իէլ
մօտ ՚ի յորդանան յանդիմանս երիքովի, հրա-
մանաւ այ̃ն վախճանեցաւ յերկրին մովաբու,
և թաղեցաւ ՚ի գայլի մերձ ՚ի տունն փոգո-

R 3 րայ՝

բայ՝ առէ գիր․ և ոչ՝ ոք գիտաց զգերեզման նորա մինչև ցայսօր․ զի մի՛ պաշտեսցեն զնա իբրև զա՟ծ որդիքն իէլի վ՟ մեծամեծ գործոցն, զոր արար ա՟ծ 'ի ձեռն նո՟ր ։ Եւ էր մովսէս ամաց հարիւր և քսանից 'ի վախճանելն իւրում․ և ոչ վատեցին աչք նո՟ր, և ոչ խորշոմեցան ծնօտք նո՟ր․ Թողից ասել զայլ ևս փառաւորութիւն նո՟ր յաւուրս լինելոյ նորա օրէնսդիր, զի լուսաւորեալ էին երեսք նո՟ր, և ճառագայթք հատանէին 'ի նմանէ․ մինչչև արկանել քօղ զերեսօք․ Թո՛ղ և զանթարգմանելի օրինակ ա՟ծատեսութե՟ նորա ը՟ն ծակ վիմին․ ուր տեսանել նո՟ր զյետոյսն ա՟յ նշանակէր զհանդերձեալ տեսութիւն, որով ետես զփառս ք՟ի 'ի Թաբորական լերին հանդերձ եղիայիւ․ ո՟ր և քառասնօրեայ պահելն երկոցունց հայէր 'ի պահս փրկչին վ՟ մեր ։

Այս ինքն նախամարգարէն մովսէս գրեաց նախ հոգւով ա՟յ զհնգամատեան նախկին գիրս ա՟ծաշունչ տառից․ ո՟ր են գիրք արարածոց կմ՟ ծննդոց, ելից, ղևտացւոց, Թուոց, և երկրորդ օրինաց․ ուր կարծեն յովսեպոս․ և փիլոն եբրայեցիք, թէ մովսէս ինքնին գրոշմեալ իցէ և զվերջին բանսն զմահուանէ իւրմէ․ զի մի՛ կարծեսցի 'ի յետնոց, եթէ ոչ մեռաւ․ բայց ասելի է ստուգութ՟բ, եթէ եկեղեցին ի՟էլի՝ կամ յեսու և եղիազար արձանագրեցին 'ի կատարած մատենին ընպատմութե՟ն վախճանելոյն մովսեսի առն ա՟յ, հանդերձ բանիւն՝ որ յաւիտենական յիշատա֊

տակաց է արժանի. քս է. * Եւ ոչ եւս ե-
,, կաց մարգարէ յԻսրայէլի իբրեւ զՄովսէս, այր՝
,, զոր ծանեաւ Տր դէմ յանդիման, ամենայն
,, նշանօք եւ արուեստիւք, զոր առաքեաց
,, Տր առնել յերկրին եգիպտացւոց՝ 'ի փա-
,, րաւոն եւ 'ի ծառայս նորա եւ յամ երկիր
,, նորա. զնշանս մեծամեծս, զձեռն հզօր եւ
,, զբազուկ բարձր՝ զոր արար Մովսէս առա-
,, ջի որդւոցն Իսրայէլի || : [7]

Եւ կարգեցաւ 'ի Մովսիսէ հրամանաւ Տն յաջորդ իւր՝ պաշտօնեայ նր Յեսու զօրավար, որ եւ առ Մովսիսիւ էր հզօրացեալ ընդդէմ Թշնամեաց մարտնչելով յանուն Տն. յայտ է 'ի պատերազմէն՝ որ ընդդէմ ամաղէկայ, ուր փրկական զօրութի խաչին քսի 'ի վանումն դիւին՝ կենդանի նկարագրեցաւ 'ի գործս Մովսեսի եւ Յեսուայ միանգամայն. զի Մովսէս յաղօթս կայր 'ի լերին բազկատարած ոպ 'ի խաչի. եւ լինէր՝ զի 'ի վաստակել ձեռացն Մովսեսի եւ 'ի Թուլանալ՝ զօրանայր ամաղէկ. եւ 'ի վեր համբառնալն՝ զօրանայր բանակ Յեսուայ. վնյ Ահարոն եւ Ովր օգնէին ձեռաց Մովսեսի, եւ քարինս 'ի ներքոյ եդեալ 'ի վեր ունէին զբազուկս նր. որով իսպառ զօրացաւ Յեսու, եւ 'ի գլուխ տարաւ զյաղթութի. այլ զառանձինն գործոց Յեսուայ զկնի Մովսեսի մնայ մեզ ասել եւս:

# ՅԻՇԱՏԱԿ

## Յեսուայ ։

Հ. Յ. Լ. սեպտ. 1 ։ Բոլլանդեանն ընծայեցնոս 'ի ա. հատ. սեպտ. էջ. 6=77. և այլք ։

ՅԵՍՈՒ ՓՐԿԻՉ ՄԵՐ անուանակիր և օրինակ՝ յեսու որդի նաւեայ էր 'ի ցեղէն եփրեմի որդւոյ յովսեփայ. և օրհնութիւնքն իւրովք առ յովսէփ և առ եփրեմ՝ առաւելապէս 'ի յեսու կատարեցան. մինչ զի և փսոմփթոմփանէ, ա՟յն փրկիչն անուն յովսեփայ՝ առաւել պայծառացաւ 'ի յեսու ։ Զի յառաջն իսկ անուն էր նորա ովսէ կամ օսէա, որ թարգմանի ապրեցուցիչ կամ փրկիչ. իսկ 'ի մովսիսէ կոչեցաւ յաւելուածով միոյ յովտի, ա՟յն եօդայի՝ յովսէ կամ յեսու, որ է փրկիչ տ՟ն, ա՟յն նոյն ընդ անուանն յ՟սի. զի եթէ յ՟ս և եթէ յեսու միօրինակ գրին առ եբրայեցիս տառիւք նոցա ישוע, և նոյնօրինակ հնչին իհուշա, կամ եհօսուա, կամ յեհօշուահ ։

Սորա յառաջագոյն էր յեսու գլխաւոր պաշտօնեայ մովսեսի՝ իբրև ձեռասուն աշակերտ նորա և փոքրաւոր. ելանէր և մտանէր յամ ժամ ը՟ն մովսեսի առաջի տ՟ն և առաջի ժողով-

վրդ-

վերգետն · և 'ի մտանել մովսեսի 'ի խորանն այ՝ 'ի սպասու կայր նմ յեսու առ դուրս խորանին վկայութե՛ աղօթակացութ՟ն ոմ սարկաւագ · և 'ի պահելն մովսեսի զքառասուն աւր և զքառասուն գիշեր ծոմով՝ պահեաց և յեսու ը նմա · զի ը նմա էր 'ի նք լերինն · և լսէր 'ի բացուստ զպատգամս այ՝ զոր խօսեցաւ տր ը մովսեսի : Նա էր յեսու կուսան և նք՝ պատկեր ճշմարտին յսի · միանգամայն և զօրավար բանակի նն 'ի փրկութի տանն իէլի՝ յօրինակ փրկչին մերոյ և զօրագլխի հաւատոց :

Նա եղև մին յերկոտասան ցեղապետաց կմ 'ի նահապետաց, որք առաքեցան 'ի մովսիսէ ը բանի տն՝ լրտեսել զերկիրն աւետեաց · և 'ի տալ այլոց տասանց համբաւ չար զերկրէն, միայն քաղէբն յեսու նաւեան իշխան ցեղին եփրեմի, և համանման նորուն քաղէբ որդի յեփոնեայ իշխան ցեղին յուդայ՝ բերին համբաւ բարի : Նա իբրև տեսին զտրտմութի՛ ժողովրդեանն, որք վատաբարտեալ կամէին կացուցանել իւրեանց զոք զօրավար, և դառնալ յեգիպտոս, երկոքին սոքա յեսու և քաղէբ պատառեցին զհանդերձս իւրեանց · և խօսեցան ընդ ամ ժողովրդեան որդւոցն իէլի, և ասեն · երկիրն՝ զոր մեք լրտեսեցաք, երկիր բարի է յոյժ · եթէ հաճեսցի միայն ը մեզ ած, և տարցի յերկիրն յայն, և տացէ զնա մեզ, երկիր է՝ որ բղխէ զկաթն և զմեղր · բայց 'ի տնէ միայն ապստամբք մի լինիցիք, և 'ի ժողովրդենէ երկերին մի երկն-

չի·

չիջիք․ քանզի կերակուրք մեր են․ զի մեկ-
նեցաւ ՚ի նոցանէ տր, և ընդ մեզ է տր․ մի՛
զանգիտիցէք ՚ի նոցանէ։

Յովկ ամբոխն անսասանեալ՝ ձայն ետուն մի-
մեանց, և կամէին քարկոծել զյեսու և ըզ-
քաղէբ քարամբք, եղեալ ՚ի բանս տասանց
բանսարկուաց։ Յայնժամ փառքն տն երևե-
ցան ամպով և ահարկութբ ՚ի վր խորանին
վկայութե յանդիման ամ որդւոցն իէլի․ և
մեռան արքն այնոքիկ չարաբանք՝ չարաչար
հարուածովք առաջի տն․ և փառաւոր եղեն
երկոքին արբեալքն յեսու և քաղէբ․ մինչ
զի և սոքա երկոքեան միայն ՚ի միջոյ ելե-
լոցն յեգիպտոսէ չափահաս տիօք՝ արժանի
եղեն մտանելոյ ՚ի խոստացեալ երկիրն․ ուր
այլքն ամ անհամար բազմութբ մեռան ՚ի ճա-
նապարհ անապատին, և որդիք նց ՚ի տեղի
նց մտին յերկիրն աւետեաց․ փոխանակ զի
ասէին խառապարանոցքն, թէ տանի տր
զմեզ ՚ի կոտորել զուստերս և զդստերս
մեր․ և տր եմոյծ զզաւակսն, և ոչ զծնօղսն։
Այլ իբրև մերձեցան աւուրք վախճանելոյ
մովսեսի, ասէ մովսէս ցտր․ տեսցէ տր ած
հոգւոյ և ամ մարմնոյ՝ այր ՚ի վերայ ժողո-
վրդեանս այսորիկ, որ ելանիցէ առաջի սո-
ցա, և որ հանիցէ և մուծանիցէ զսոսա․
և մի՛ լինիցի ժողովուրդս տն իբրև զոչ-
խար՝ որոց ոչ իցէ հովիւ։ Այլ խօսեցաւ տր
ընդ մովսեսի և ասէ․ առ դու քեզ զյեսու
որդի նաւեայ՝ զայր, յորում գոյ հոգի, և
դիցես զձեռս քո ՚ի վր նորա․ և կացուսցես

զնա

զնա յանդիմանն Եղիազարու քահանայի, և պատուիրեսցես վս նորա յանդիմանն նց · և տացես ՚ի փառաց քոց ՚ի վն նր · զի լուիցեն նմա որդիքն իէլի · և կացցէ առաջի Եղիազարու քահանայի, և հարցցեն ՚ի նմանէ զի-րաւունս յայտնութենց առաջի տն · ըս բանի բերանոյ նորա ելանիցեն, և ըս բանի բերա-նոյ նորա մտանիցեն, ինքն և որդիքն իէլի միաբան, և ամ ժողովուրդն ։ Այս արար մով-սէս զոմն · և առեալ տարաւ զյեսու առաջի խորանին վկայութե · և ՚ի կալ նցա առ դրան՝ եղ տր սեամբ ամպոյ, և յայտնեաց զփառս իւր ՚ի վկայութն ամ ժողովրդեան, եթէ ինքն

ընտրեաց զյեսու յետ մովսեսի ։

Այս առնէ մովսէս ծառայ տն զյեսու առաջի ամ իէլի և Եղիազարու քհնյի · քա՛ջ լեր և զօրացի՛ր · քանզի դու մտանելոց ես առաջի երեսաց ժողովրդեանդ այդորիկ՝ յերկիրն, զոր երդուաւ տր հարցն ձերոց տալ նոցա · և դու ժառանգեցուսցես զնս · և տր՝ որ եր-թալոց է ըն քեզ, ոչ թողցէ զքեզ, և ոչ ըն փայլը հարցէ · մի՛ երկնչիր և մի՛ զանգիտեր ։ Այս եդ մովսէս զձեռն իւր ՚ի վերայ նորա · և լցաւ յեսու հոգւով իմաստութե · և հնա-

զանդեցան նմա որդիքն իէլի ։

Այնպէս յետ վախճանին մովսեսի յեսու եղև յաջորդ նորա յառաջնորդութե տանն իէլի՝ հանդերձ զօրավարութեն · և ասէ ցնա տր · զօրացի՛ր և քա՛ջ լեր, զի որպ էի ըն մով-սէսի, նոյնպէս եղէց և ըն քեզ · և ոչ թողից զքեզ, և ոչ անտես արարից զքեզ · և ոչ ոք

կաց-

հայցէ ընդդէմ ձեր զա՟մ աւուրս կենաց քոց։ Այնու հետեւ 'ի հրամանէ տ՟ն պատուէիրեաց յեսու ա՟մ ժողովրդեան պատրաստ լինել անցանել ընդ յորդանան գետ . եւ կանխաւ պատմեաց նոցա զսքանչելիսն՝ զոր առնելոց էր տ՟ր՝ ոչինչ ընդհատ 'ի սքանչելեաց անցից կարմիր ծովուն առ մովսեսիւ́ . սրբեցարուք ասէ առ վաղիւ́ , զի վաղիւ́ արասցէ ձեզ տ՟ր սքանչելիս ։

Եւ ահա 'ի վաղիւ́ անդր խաղացոյց յեսու զբանակն իէլի 'ի մուսաս երկրէն աւետեաց . եւ եղեւ 'ի մխիլ ոտից քահանայիցն բարձողաց զտապանակ ուխտի տ՟ն յեզր յորդանանու , պակասեցաւ ջուր գետոյն . եւ որ իջանէր 'ի վերուստ՝ եկաց իբրեւ զկարկառակոյտ մի . եւ էանց ա՟մ ժողովուրդն ը՟ն յորդանան ցամաքէն . եւ ը՟ն գնել քահանայից զոտս յեզր գետոյն յայնմ կողմանէ՝ անդրէն եկաւ ջուրն խաղալ ը՟ն ճանապարհ իւր ։ Ա՛յց ը՟ն պատուէիրելոյ յեսուէայ բարձին մի մի քար 'ի յորդանանէ, երկոտասան նահապետք ցեղիցն իէլի . զորս կանգնեաց յեսու 'ի գաղգաղա . եւ ասէ ցժողովուրդն . յորժամ հարցանիցեն որդիքն ձեր առ վաղիւ́ , եւ ասասցեն՝ զի՞նչ-են քարինքս այսոքիկ , պատմեսջիք որդւոց ձերոց , թէ ցամաքաւ էանց իէլ ը՟ն յորդանան , 'ի ցամաքեցուցանել տ՟ն ա՟յ մերոյ ըզջուրն յորդանանու յերեսաց նց՝ մինչեւ անցին . ո՟պ արար տ՟ր ա՟ծ մեր ը՟ն ծովն կարմիր , զոր ցամաքեցոյց տ՟ր ա՟ծ մեր , մինչեւ անցաք . զի ծանիցեն ա՟մ ազգքն երկրի , թէ զօրութ՟ի

տ՟ն

տ՟ն զօրութեան է . և զի դուք պաշտիցէք զՏ՟ր Ա՟ծ մեր զա՟մ ժամանակս ։ Յայլ այն ա՟մ օրինակաւ անցանէր 'ի ձեռն յեսուայ ։ Ը՟ հինն իէլ՝ 'ի նշանակ ճշմարտութեան յոհի փրկչին մերոյ , որ մկրտութե՟ն 'ի յորդանանն առաջնորդեաց մեզ յերկիրն կենդանեաց . զի ոչ ոք մտցէ յերկինս առանց մկրտութե՟ ։

Այս եղև մինչ էր յեսու յանդիման երիքովի , ամբարձեալ զաչս իւր՝ ետես , զի կայր առաջի նր՟ այր զօրաւոր իբրև զօրավար , և սուսեր մերկ 'ի ձեռին նր՟ . և մատուցեալ յեսուայ՝ ասէ ցնա արիաբար . մե՞ր ես , թէ 'ի թշնամեաց մերոց . և նա ասէ . ես զօրավար եմ զօրու տ՟ն , և այժմ եկի . այն ինքն էր միքայէլ հրեշտակապետ ։ Յայնժամ անկաւ յեսու 'ի վ՟ր երեսաց իւրոց , և երկիր եպագ , և ասէ ցնա . տէ՛ր զի՞նչ հրամանն տացես ծառայի քում ։ Եւ ասէ զօրավարն տ՟ն ցյեսու . լո՛յծ զկօշիկս յոտից քոց , զի տեղիդ՝ յորում կաս՝ ս՟բ է . և արար այնպէս , յար և նման մովսեսի 'ի տեսլեանն՝ որ 'ի մորենւոջն ։ Եւ հրեշտակն զօրացոյց զնա՝ ցուցանելով զինքն նիզակակից լինել նմա յա՟մ պատերազմունս թշնամեաց տ՟ն ։

Յայնու հետև եւս քան զեւս զօրացեալ յեսուայ զօրութե՟ն տ՟ն՝ կործանեաց զեօթնապարիսպն զերիքով քաղաք սքանչելապէս , և վանեաց հետ զհետէ զա՟մ թշնամիս զբնակիչս երկրին քանանացւոց զեօթն ազգս . կալաւ և սատակեաց զթագաւորս և զիշխանս երկրին , և տիրեաց քաղաքաց նր՟ . և ետ անուն նորա

Ը՟

ընդ տմ տեղիս. և առհասարակ սարսէին 'ի նմանէ ազգք և ազինք իբրև 'ի զօրավարէ տն զօրութեց: Մանաւանդ զի յայտնի եղև տմ երկրի ահագին նշանն՝ որ եղև 'ի ձեռն յեսուռայ 'ի ժամ պատերազմին հանդէպ գաբաւոնի, երբ հրամանս ետ արեգական և լուսնի կալ 'ի տեղիս իւրեանց, մինչև վանեսցէ ըզթշնամիս տն: Եւ կացին՝ ասէ գիրն, արեգակն և լուսին 'ի կայի իւրեանց. ոչ ապաքէն գրեալ է այս 'ի գիրս ուղղութեան. և եկաց արեգակն 'ի մէջ երկնից, և ոչ խաղաց ընդ արևմուտս՝ մինչև ցկատարումն աւուր միոյ. և ոչ եղև այսպիսի որ՝ ոչ յառաջ և ոչ յետոյ, լսել այ ձայնի մարդոյ. զի տր պատերազմեցաւ խառն ընդ իէլի: Եւ այս դրձ յօրինակ Տշմարտին յեսուայ՝ յոր փրկչին. զի յաղաղակել 'ի խաչին՝ սուգ զգեցան արարածք ընդ չարչարանս և ընդ մահ արարչին մարդացելոյ, և արեգակն և լուսին խաւարեցան միանգամայն, որ 'ի վեր է քան զառ կայանալ նց 'ի տեղիսն: Ընդ յաղթեալ լինէր յետին թշնամին մահ՝ մահու անմահին. և թագաւորէր կեանք և փրկութի:

Որդ յետ վանելոյ յեսուայ զամ թշնամիս տն, զամ երկիրն՝ զոր էառ, բաժանեաց վիճակաւ իւրաքանչիւր ցեղից որդւոցն իէլի, և ժառանգեցոյց նց զխոստացեալն երկիր. ոնց և յմ զերկինս՝ զոր խոստացաւ սիրելեաց իւրոց: Եւ եղև իբրև ծերացաւ յեսու ծառայ տն, և մերձեցան աւուրք վախճանի նորա, կոչեաց առաջի իւր զամ որդիսն իէլի և

զծե

զծերակոյտս նոցա . և ասէ ցնոսա . Դուք ձեզէն
տեսջիք զամ , զոր արար Տր ած մեր ընդ ամ
ազգսն` զորս եբարձ յերեսաց ձերոց . և ոչ
ոք եկաց ընդդէմ ձեր մինչև ցայսօր . մի 'ի
ձէնջ հալածէր զհազարս , զի Տր ած ինքնին
տայր պատերազմ ընդ ձեր , որպէս խօսեցաւ ընդ
ձեզ ։ Ո՛վ զգոյշ լինիջիք յոյժ անձանց ձերոց`
սիրել զՏր ած ձեր . և ես ահա երթամ այ-
սօր զճանապարհ , որպէս ամենեքին` որք են
յերկրի . և արդ երկերուք դուք 'ի տէ , և
պաշտեցէք զնա ուղղութբ և արդարութբ .
ապա թէ` ոչ իցէ ձեզ հաճոյ պաշտել զՏր ;
ընտրեցէք այսօր` թէ զո՞ պաշտիցէք . ( քան-
զի սկսեալ էին հակամիտել զհետ կռոց ) .
այլ ես և տուն իմ պաշտեմք զՏր , զի սբ է ։
Պատասխանի ետուն ժղվրդն , և ասեն . քաւ լիցի
մեզ թողուլ զՏր ած մեր , և պաշտել զածս
օտարս . զի Տր ած մեր նա եհան զմեզ յե-
գիպտոսէ , և արար մեզ զնշանս մեծամեծս
զայնոսիկ . այլ և մեք պաշտեսցուք զՏր , զի
նա է ած մեր ։ Եւ ասէ յեսու ցժղվրդն . ո՛չ
կարէք դուք պաշտել զՏր , զի սբ է . և նա
'ի տեսանել զխոտորութիւն ձեր 'ի նմանէ` ո՛չ
ներիցէ չարեաց ձերոց , և սատակեսցէ զձեզ`
փոխանակ բարեացն , զոր արար ձեզ ։ Եւ
ասէ ժղվրդն ցյեսու . ո՛չ այդպէս , այլ զՏր
պաշտեսցուք ։

Յայնժամ ասէ ցնս յեսու . ահա դուք ձեզէն
եղերուք վկայք անձանց ձերոց , զի ընտրե-
ցիք զՏր` պաշտել զնա ։ Եւ ասեն . վկայ
եմք ։ Եւ ասէ . արդ 'ի բաց արարէք 'ի ձէնջ
իս

խաղաղ գլխաւորակ ծառայութի ա՟ծոց · և ալը-
ղեցէք զմիրոն ձեր առ ա՟ր ա՟ծ լինել : Այս
ուխտեաց յետոյ ուխտ ը՟ն ժողովրդեանն յա-
ւուր յայնմիկ · և ետ նմա օրէնս և դատաս-
տանս 'ի սեղով · և գրեաց յետոյ զբանս զայ-
սոսիկ 'ի գիրս օրինաց ա՟յ · և արար զվկեցե՟րդ-
մատեանն 'ի կարգի ա՟ծաշունչ գրոց՝ զկնի
հինգ գրոցն մովսեսի : (ծ)

Այս եղև յետ այնորիկ մեռանիլ յեսուայ
որդւոյ նաւեայ ծառայի ա՟ն հարիւր և տասն
ամաց · և թաղեցին զնա առ սահմանօք ժա-
ռանգութե իւրոյ 'ի թամնաթսարա 'ի լերինն
եփրեմայ հիւսիսոյ լերինն գայասու · և անդ
եդին ը՟ն նմա՝ ուր թաղեցին զնա՝ առ 'ի յի-
շատակէ զսուրսն քարեղէնս , որով թլփա-
տեաց զորդիսն ի՟էլի 'ի գաղգաղա : Այս պաշ-
տեաց ի՟էլ զա՟ր զա՟մ աւուրս յեսուայ , և զա՟մ
աւուրս ծերոցն՝ որք ձգեցին զժամանակս ը՟ն
յեսուայ · որք և տեսին զա՟մ գործսն ա՟ն՝
զորս արար յի՟էլ , 'ի մանկութե ելելոյ յե-
գիպտոսէ : Իսկ զկնի այնորիկ՝ էր զի ծառա-
յէին հեթանոսական պաշտամանց , և էր՝ զի
դառնային առ ա՟ր , երբ տեսանէին զանձինս
մատնեալ 'ի դառն ծառայութիւն հեթանո-
սաց · և ա՟ր խնայէր 'ի ժողովուրդ իւր՝ յաղա-
ղակել նո՟ց առ նա , և առաքէր առ նո՟ մարգա-
րէս՝ 'ի կանանց անգամ , և փրկէր զնոսա 'ի
ձեռաց այլազգեաց 'ի ձեռն դատաւորաց՝
զորս կացուցանէր 'ի վերայ նո՟ց · յորոց միջի
անուանիք եղեն զօրութ՟բ և առաքինութ՟բ
ըստ հաւատոց՝ յիշատակեալքն 'ի կարգս դա-


տու

պետութե աստուածեղական բանից, բարակ, գե-դէոն, յեփթայէ, և սամփսոնէ. մինչև յա-րեաւ սամուէլ մարգարէ մն՝ հետևօղ մով-սեսի և ահարոնի. ըստ, մովսէս և ահարոն երիցունք նր. սամուէլ ը այնոսիկ՝ որ կար-դան զանուան նորա ։

# ՅԻՇԱՏԱԿ

## Սամուէլի մարգարէի ։

Հ. օգոստ. 20, կամ 21 ։ Յ. Լ. օգոստ. 20 ։
Բոլլանդեանք. և այլք ։

Ի ՎԵՐՋ ԱԻ ԴԻ ՍԻՐԵՆԱ-ռաջնորդութե իւրն՝ ընդ դա-տաւորութե և ընդ քահանայու-թե ՚ի հեղի քահանայապետ ՚ի տանէ ահարոնի, և ՚ի խոտորիլ անարժան որդւոց նորա ՚ի սրբութե յանսրբութի և ՚ի զօշաքաղութիւն, ընտրեաց ած զսամուէլ ՚ի դատաւոր, ՚ի քահանայ, և ՚ի մարգարէ, ՚ի ցեղէն ղևեայ ՚ի տանէն կահաթու, և ոչ ահարոնի, ՚ի լեռնէն եփրեմի, որդի առն ածապաշտի եղկանայ արեմաթեմացւոյ, և մօր սքանչելւոյ աննայի, ուխտիւք խնդրեալ յայ և սքանչելեօք պարգևեալ զաւակ յա-մուլ արգանդէ. վսյ և անուն եդաւ նմա Սամուէլ, (որպէս թէ՝ խնդիր էլ), զի է ածա-

նուն , կամ անուն նորա յայ . զի ասէ աննա.
՚ի տնէ տյ զօրութեց խնդրեցի զսա . յորմէ
առեալ թարգմանեն ոմանք՝ խնդրուած
յայ :

Իբրև հասուցաւ մանուկն սամուէլ ՚ի սնա-նէ , տարաւ զնա մայր իւր , և մատոյց տյ ըստ ուխտին ՚ի ձեռն հեղեայ քահանայապետի՝ կալ ՚ի տան տն զամ աւուրս . տամ զդա ասէ փոխ տն զամ աւուրս , որչափ և կեցցէ . և եթող զնա առաջի տն , և դարձաւ ՚ի տուն իւր յարեմաթեմ . և տր հատոյց աննայի փոխանակ փոխոյն՝ զոր ետ տն . քանզի եղեն նմ այլ ևս երեք ուստերք և երեք դստերք . և այնպէս սամուէլն ծնաւ եօթն՝ ըստ ջերմ աղօ-թից և հաւատոց նորուն աննայի :

Եւ մանուկն սամուէլ կայր ՚ի սպասու երե-սաց տն առաջի հեղեայ քահանայի , և պաշ-տէր առաջի տն՝ արկեալ զիւրև եփուտ . և կրկնոց փոքրիկ առնէր նմա մայրն իւր , և տանէր նմա աւուրց յաւուրս յելանել ընդ-առն իւրում զոհել զզոհ աւուրցն : Եւ մե-ծացաւ մանուկն սամուէլ առաջի տն . իսկ հեղի ծերացեալ էր յոյժ . և որդիք նորա ոփնի և փենեհէս երթալով երթային չա-րեաց ՚ի չարիս ՚ի գայթակղութի ամ ժողո-վրդեան . իսկ հայր նց մեղմով ևեթ և թա-լութե խրատէր զնս , և ոչ ոպ պարտն էր :

Եւ էր գաղարեալ յաւուրսն յայնոսիկ տե-սիլ և մարգարէութի . վէյ ասէ գիր . բանն տն պատուհական էր՝ այս է անգիւտ՝ յա-ւուրսն յայնոսիկ , և ոչ գոյր տեսիլ որ գու-

շա

բանկէր ։ Ա՛ն որոյ եւ ոչ 'ի միտ էառ սամուէլ
զձայնին տն, յորժամ 'ի ննջել նր 'ի տան տն
'ի սեղանն՝ ուր էր տապանակն տն, կոչեաց
զնա տր, եւ ասէ. սամուէլ սամուէլ ։ Հա-
մարեցաւ՝ թէ հեղի ձայնէ զնա 'ի սենեկէ
իւրմէ. եւ յանկողնոյ՝ ընթացաւ առ նա, եւ
ասէ. աւասիկ եմ, զի՞ կոչեցեր զիս. եւ հե-
ղի ասէ ցնա. ո՛չ կոչեցի զքեզ որդեա՛կ իմ,
դարձի՛ր անդրէն եւ ննջեա՛ ։ Նայս եղեւ երկիցս
անգամ. եւ յերրորդ նուագի ընթանալոյ
նր միամիտ հնազանդութե առ հեղի, յայն-
ժամ իմացաւ հեղի՝ թէ տր կոչէ զմանուկն.
Եւ ասէ ցնա. դարձի՛ր անդրէն եւ ննջեա՛ որ-
դեակ. եւ եղիցի՝ եթէ կոչեսցէ զքեզ, ա-
սասցես. խօսեա՛ց տր, զի լսէ՛ ծառայ քո ։
Եւ նա արար այնպէս. եւ եկն տր եկաց 'ի
մէջ, եւ յայտնեաց սամուէլի, թէ որպէս հան-
դերձեալ է մերժել զտունն հեղեայ վասն
անօրէնութե որդւոց նր ։ Եւ իբրեւ էանց տե-
սիլն տն, երկեաւ սամուէլ պատմել հեղեայ
զիրսն. այլ 'ի ստիպել նորա յոյժ երդմամբ
հանդերձ, պատմեաց զամ զբանսն ։ Եւ մե-
ծացաւ սամուէլ, եւ էր տր ընդ նմ. եւ ոչ ան-
կաւ յամ բանից նր 'ի գետին. եւ գիտաց
ամ իէլ, թէ հաւատարիմ է սամուէլ 'ի մար-
գարէս տն. քանզի յաւել տր այլ եւս սքան-
չելեօք յայտնել առաջի ժողովրդեան զըն-
տրութի սամուէլի ։

Եւ եղեւ 'ի գերիլ տապանակին տն յայլազ-
գեաց, եւ յանկանիլ որդւոցն հեղեայ 'ի պա-
տերազմի, եւ 'ի մեռանիլ հեղեայ, սամուէլ

միայն էր՝ որ ելանէր և մտանէր առաջի տն և ամ ժողովրդեան ։ Իսկ իբրև դարձաւ տապանակն տն 'ի կարիաթարիմ՝ վն հարուածոցն , որ եղև 'ի տնէ 'ի վն այլազգեաց , խօսեցաւ սամուէլ ընդ ամ տանն իէլի , և ասէ ․ եթէ յամ սրտէ ձերմէ դարձեալ էք առ տր , 'ի բաց արարէք զածսն օտարոտիս 'ի միջոյ ձերմէ և զանտառսն ․ և պատրաստեցէք զսիրտս ձեր առ տր , և ծառայեցէք նմա միայնոյ , և փրկեսցէ զձեզ 'ի ձեռաց այլազգեաց ։

Յետ այսորիկ ժողովել սամուէլի զամ իէլ՝ 'ի մասեփաթ՝ ետ նց պահել պահս , և ասել արտասուօք , մեղաք առաջի տն ․ և ինքն յաղօթս կայր վն նց ։ Զայն իբրև գիտացին այլազգիքն , փութացան հասանել 'ի վն նց յանկարծակի ․ և ժողովուրդն զահի հարեալ՝ ասեն ցսամուէլ ․ մի դադարեր 'ի գոչելոյ վն մեր առ տր ած քո , և փրկեսցէ զմեզ 'ի ձեռաց այլազգեացն ։ Իսկ էառ սամուէլ զգառն մի դիեցիկ , և եհան զնա յողջակէզ տն հանդերձ ամ ժողովրդեամբն ․ և գոչեաց սամուէլ առ տր վն իէլի , և լուաւ նմա տր ․ զի 'ի ժամ ողջակիզելին իբրև մերձեցան այլազգիքն 'ի պատերազմ , որոտաց տր 'ի պարզոյ մեծաւ բարբառով ․ յորմէ խռովեալ թշնամիքն՝ անկան առաջի իէլի 'ի մասեփաթ , և որք մնացինն՝ 'ի փախուստ դարձան ։

Իսկ կանգնեաց սամուէլ վէմ մի 'ի մէջ մասեփաթայ և 'ի մէջ փաղեսայ , և կոչեաց

զա

զանուանն նր աբենեզէր , թր վէմ օգնականի . զի յիշեսցեն որդիքն իէլի , թէ մինչև ցայս վայր օգնեաց նց տծ : Եւ կորացոյց տր զայլազգիս , և ոչ ևս յաւելին ելանել 'ի վր սահմանացն իէլի զամ աւուրս սամուէլի : Սոյն եղև սամուէլ որդւոցն իէլի 'ի ժամանակին յայնմիկ իբրև մովսէս և ահարոն և յեսու միանգամայն , ազատիչ 'ի ձեռաց ատարաց , և օրէնսդիր և դատաւոր , քահանայ և մարգարէ յածակոյս կողմանէ . և դատեաց զիէլ ամ բարեկարգութբ զամ աւուրս կենաց իւրոց : Երթայր ամ յամէ անձամբ , և պատէր զհեռաւոր քաղաքօք և զբնակութբ որդւոցն իէլի՝ իբրև տիրապէս վերատեսուչ և այցելու հոգւոց և մարմնոց ժողովրդեանն այ . և ապա դարձ առնէր յարեմաթեմ 'ի տուն իւր . և անդ դատէր զիէլ . ուր և շինեաց սեղան տն :

Իսկ իբրև ծերացաւ , կացոյց զորդիս իւր զյովէլ և զաբիա դատաւորս իէլի . բայց նք ոչ գնացին զճանապարհ հօրն իւրեանց , այլ վարէին զօշաքաղութբ , առնուին կաշառս և թիւրէին զիրաւունս . և չեղև նց խրատ ուղղութե սքանչելի քաղաքավարութե ածամերձ հօրն իւրեանց : Զայն տեսեալ ժողովրդեանն՝ իսկ և իսկ անկանէ 'ի տրտունջ . և եկեալ առ սամուէլ՝ խնդրէին զնա դնել նց թագաւոր զոր հանգոյն այլոց ազգաց . և չար թուեցաւ բանն առաջի սամուէլի . այլ տծ ասէ ցնա . արա զկամս ժողովրդեանդ , զի փորձիւ ուսցին՝ եթէ ոչ ուղիղ էր խնդիր

նց 'ի խնդրելն 'ի քէն Թագաւոր. զի ոչ եթէ զքեզ անարգեցին, այլ զիս մերժեցին չԹագաւորել 'ի վր նց. բայց դիր վկայութն կանխաւ, թէ զինչ ունին կրել 'ի Թագաւորէ իւրեանց. և պատմեաց նց զիրաւունս Թագաւորին՝ որ Թագաւորեսցէ նց ը Ծի ։

Այս սամուէլ ծանոյց ժողովրդեանն զբանս Տն, և 'ի յանձն առնուլ նց կամակարութե զիմ դժուարութին՝ յայտնեաց զկամս նց առաջի Տն. և նր հրաման ետ՝ զի դիցէ նց Թագաւոր զայլն, զոր առաքեսցից առ է առ քեզ ։ Այս եղև յետ աւուրց ինչ առաքեաց Տծ առ սամուէլ զսաւուղ որդի կիսեայ 'ի ցեղէ բենիամենի՝ պատճառանօք որոնելոյ զկորուսեալ էշն հօր իւրոյ. քանզի 'ի գալ սաւուղայ հարցանել 'ի մն այնր բանի զտեսանօղն, յայտնեաց Տծ սամուէլի՝ թէ ահա այս է այրն, զոր կացուսցես 'ի Թգր իէլի ։ Այս արար սամուէլ համդէս ժողովրդեանն, և կացոյց զսաւուղ Թագաւոր օծեալ. և գրեալ 'ի մատենի զիրաւունս Թագաւորին՝ եդ առաջի Տն ։ Այս ժողովեալ միւսանգամ զորդիսն իէլի համդերձ Թագաւորաւն, ասէ ցնս. ահաւասիկ լուայ բանից ձերոց լուատմի, և Թգրեցուցի ձեզ Թգր, որ առաջնորդեսցէ ձեզ. և ես ծերացեալ եմ. արդ երԹայց և նստայց 'ի տան իմում. բայց կամիմ, զի վկայեսջիք ձեզէն առաջի Տն, թէ մրպէս շրջեցայ առաջի ձեր 'ի մանկութէ իմմէ. ահաւասիկ կամ ես, տուք զինէն պխնի առաջի Տն և առաջի օծելոյ նր. եթէ զըկե-

ցի

զոք ; կամ առի ինչ զուրուք , տո՛ւք զինէն զինին , և հատուցից ձեզ : Եւ ասեն ցսամուէլ . ո՛չ մեղար մեզ , և ո՛չ զրկեցեր զմեզ , և ո՛չ նեղեցեր զմեզ , և ո՛չ առեր ’ի ձեռաց ուրուք և ոչինչ . և երդուեան առաջի տ՟ն և Թագաւորին :

Յայնժամ ասէ սամուէլ . և արդ կացէք յառաջ , և դատեցայց զձեզ առաջի տ՟ն . և պատմեցից ձեզ զա՟մ արդարութիւն՝ զոր արար ը՟ ձեզ տ՟ր , և զապերախտութիւն ձեր յա՟մի ը՟դէմ նո՟ր : Եւ սկսեալ կարգաւ յուշ արար նոցա , թէ որպէս ազատեաց զնո՟ա ա՟ծ հզօր ձեռամբ ’ի ձեռաց եգիպտացւոց ’ի ձեռն մովսէսի և ահարոնի , և զիա՞րդ ժառանգեցոյց նոցա զերկիր օտարաց ’ի ձեռն յեսուայ . և թէ ’ի մոռանալ նո՟ց զտ՟ր՝ մատնեաց զնոսա ’ի ծառայութի այլազգեաց , և յաղաղակելն առ տ՟ր՝ առաքեաց առ նո՟ա ըզգեդէոն և զբարակ և զյեփթայէ և զսամփսոն , և ապրեցոյց ’ի ձեռաց թշնամեաց շուրջանակի . և բնակեցոյց վստահութ՟բ ’ի խոստացեալ երկիրն : Եւ արդ՝ ասէ , նոյնպէս կարող էր միշտ պահել և փրկել զձեզ տ՟ր ա՟ծ մեր թագաւոր մեր . իսկ դուք անսաստեղ խնդրեցիք ձեզ թագաւոր . և ահա ետ ձեզ տ՟ր թագաւոր . հա՛պա զգո՛յշ լերուք և տեսէք , թէ որպէս գնայցէք առաջի տ՟ն . ապա թէ ոչ՝ եղիցի ձեռն տ՟ն ’ի վ՟ր ձեր և ’ի վ՟ր թագաւորին ձերոյ :

Եւ ’ի հաստատութի ասացելոցն տ՟մի՝ յաւել ասել սամուէլ . և արդ կացէք և տեսէք

զքանս զայս մեծ, զոր արասցէ տր առաջի աչաց ձերոց. ո՞չ ապաքէն հունձք ցորենոյ են այսօր, և խաղաղութի օդոց, և ո՛չ մի նշան ամպոց. և ահա կարդացից առ տր, և տացէ ձայնս և անձրևս. և գիտասջիք և տեսջիք, թէ մեծ է չարութի ձեր՝ զոր արարիք առաջի տն՝ խնդրել ձեզ թագաւոր: Եւ կարդաց սամուէլ առ տր, և ետ տր ձայնս և անձրևս յաւուր յայնմիկ. և երկեաւ ամ ժողովուրդն յոյժ 'ի տնէ և 'ի սամուէլէ. և ասեն միաբան ցայրն այ. կա՛ց յաղօթս առ տր այ քո վս ծառայից քոց, և մի՛ մեռցուք. զի յաւելաք յամ մեղս մեր և 'ի չարիս, և խնդրեցաք մեզ թագաւոր:

Յայնժամ քաջալերեաց զնս սամուէլ՝ ասելով. մի՛ երկնչիք, այլ խրատեցարո՛ւք յանձինս ձեր՝ չխոտորիլ յայսմ հետէ 'ի տնէ, այլ ծառայել տն հանդերձ թագաւորաւն յամ սրտէ ձերմէ. և մի՛ երթայցէք զհետ ոչնչիցն՝ կռոց սնոտեաց, որք զոչինչ վճարեն և ո՛չ փրկեն, քանզի չեն այք. զի ոչ մերժեսցէ տր զժողովուրդ իւր վս անուան իւրոյ մեծի. զի հեզութբ էառ զձեզ տր իւր ժողովուրդ: Եւ ինձ քա՛ւ լիցի մեղանչել տն, հեղգալ առ 'ի չառնելոյ աղօթս վասն ձեր. և ցուցից ձեզ զճանապարհն բարի և զուղիղ. բայց դուք երկերո՛ւք 'ի տնէ, և ծառայեցէք նմա ճշմարտութբ յամ սրտէ ձերմէ. քանզի տեսիք զմեծամեծսն՝ զոր արար ը մեզ: Եւ եթէ խարդախութբ խարդախիցէք, սատակիցիք և դուք և թգւորն ձեր:

Մրդ՝

Սորա՝ սաւուղ արքայ զառաջինն իբրև զամս
երկուս թուէր ուղիղ վարել զթագաւորու-
թիւն իւր ՚ի վր որդւոցն իէլի առհասարակ․
այլ յետ այնորիկ գնալով գնաց և փոխեաց
զճանապարհս իւր․ քանզի միանգամ և եր-
կիցս յայտնապէս անհնազանդ եղև բանին
տն՝ զոր խօսեցաւ ՚ի բերանոյ սամուէլի․ մի՝
զի ոչ սպասեաց գալստեան սամուէլի ըստ
աւուր ժամադրութեն ՚ի գաղգաղա, այլ ժտե-
ցաւ և իշխեաց առանց նորա մատուցանել
զոհս․ որով զրկեցաւ ՚ի մեծ առթէ հաստա-
տելոյ տն զնա ՚ի թագաւորութե որդւոց յոր-
դիս ։ Այլ միւս ևս՝ զի ոչ ջնջեաց զամաղէկ
իսպառ, այլ ապրեցոյց զագագ թագաւոր
ամաղեկացւոց, և էառ յաւարի զընտիրս
յոչխարաց նր՝ պատճառանօք մատուցանե-
նելոյ զոհ տն ։ Այլ վասն խստագոյնս կշտամ-
բեաց զնա սամուէլ բանիւ տն․ և նա ոչ
զղջացաւ ճշմարտութ, այլ ՚ի վերին երեսս․
և զի մի անարգեսցի յազգէն՝ խնդրէր ՚ի սա-
մուէլէ մեծարել զնա յաչս ժողովրդեան․
իսկ սամուէլ ՚ի բաց եկաց ՚ի նմանէ․ և լը-
ծեալ օր ըստ օրէ զանկարգ գնացս նր՝ սուգ-
ունէր ՚ի վր նր զամ աւուրս ։
Այլ տր պատժեաց զսաւուղ այսահարութ․
և հրամանն ետ սամուէլի օծանել զդաւիթ
զկրտսերն յորդիս յեսսեայ բեթղեհեմաց-
ւոյ յազգէ յուդայ ՚ի թգր ՚ի վր ժղվրդեան
իւրոյ, որպ ընդարձակ պատմի ՚ի գիրս առաջինն
թգւորաց․ որ ասի գրեալ ՚ի նմին իսկ ՚ի սա-
մուէլէ ։ Այլ հասեալ սամուէլի ՚ի խոր ծե-
րու-

» զամէքայ. արդարոյն Նոյի. արդարոյն սեմայ. արդա-
» րոյն յաբեթի. արդարոյն արփաքսադայ. արդարոյն
» կայնանայ. արդարոյն սաղայի. արդարոյն եբերայ՝
» յորմէ և հրէայք եբրայեցիք կոչեցան. արդարոյն փա-
» ղեկայ, ռագաւայ. արդարոյն սերուքայ. արդարոյն
» Նաքովրայ. արդարոյն Թարայի: Նահապետին ար-
» րահամու, Նահապետին իսահակայ. Նահ՞՞ յակոբայ.
» Նահ՞՞ ռուբենի. Նահ՞՞ շմաւոնի. Նհ. ղեւեայ. Նհ.
» յուդայի. Նհ. զաբուղոնի. Նհ. իսաքարայ. Նհ. դա-
» նայ. Նհ. գադայ. ասերայ. Նհ. Նեփթաղիմայ. Նհ.
» յովսեփայ. Նհ. բենիամենի: Փարեզի և զարայի եր-
» կուորեկաց. եսմոնայ (կամ եզրոմայ). արամայ. ա-
» մինադաբայ. Նաասոնի. սաղմոնայ. բոոսի. ովբե-
» դայ. յեսսեայ: Դաւթի արքայի. սողոմոնի արքայի.
» ռոբովամու արք՞՞. աբիայ արք. ասայ արք. յովսա-
» փատայ արք. յովրամայ արք. ոզիայ արք. յովաթա-
» մայ արք. աքազու արք. եզեկիայ արք. մանասէի
» արք՞՞. ամոնի արք. յովսիայ արք. յեքոնիայ արք՞՞:
» Սաղաթիէլի. զօրաբաբէլի. աբիուդայ. եղիակիմայ.
» ազովրայ. սադովկայ. աքիմայ. եղիուդայ. եղիազա-
» րու. մատթանայ. յակոբայ. յովսեփայ փեսայացելոյ:
» Արդարոյն մելքիսեդեկի. արդարոյն յոբայ. որ̃ց
» մարգարէիցն՝ մովսէսի, ովրայ, և ահարոնի. յեսուայ
» որդւոյ Նաւեայ. սբ̃յ մարգարէին սամուէլի. Նաթա-
» նայ մարգարէի. որ̃ց երից մանկանց: Սառայի ար-
» գարոյ՝ կնոջ աբրահամու. ռեբեկայ արդարոյ. լիայի
» արդարոյ. հռաքելայ արդարոյ. ասենէթայ արդա-
» րոյ՝ կնոջ ամենագեղեցկին յովսեփայ. մարիամու ար-
» գարոյ քեռն մովսէսի. դեբովրայ արդարոյ. հռութայ
» արդարոյ. սարեփթուհւոյ արդարոյ՝ առ որ եղիա
» առաքեցաւ. սոմնացւոյն արդարոյ՝ որ հիւրընկալաւ
» զեղիսէ. յուդիթայ արդարոյ՝ որ սատակեաց զհողո-
» փեռնէս. եսթերայ արդարոյ՝ որ աղաչեաց զԷլ ՚ի
» մահուանէ. աննայի արդարոյ՝ մօրն սամուէլի մարգա-
» րէի. շուշանայ արդարոյ՝ դդաստերցն օրինակի: Սոցին
» Սք մաղթանօք ՔԾ ողորմեա՛ և փրկեա՛ զմեզ. ամէն ||:

Որ կարօղն է առնել՝ արասցի. և ո՞ կարէ առնել զխառ-
նակուածս խառնակաց արանց, և չարաց անդամ Ը բարիս.
եթէ առ հայս գտանէր նշմարանք ինչ այսպիսի անհե-
թեթ բանից, զի՞նչ ոչ առնէին յոյնք: Ո՛չ գիտեմ. զի՞նչ
առնէին առնել բոլլանդեանք, եթէ ՚ի լոյս ելանէին վեր-
ջին հատորք գործոյ նց. ուր ինքն բոլլանդ. այսպէս

հար-

հաշուէի նոյնանայ գին քսան և երեսուն կմ̃ քառասուն գահերկանաց. այլ զմ̃նչ պէտք են յաւելորդ բանս կըր-թել:

(7) Վն̃ մովսէսի բազում են բանք հրէական աւանդից և մահմետականց առ յովսեպոսի եբրայեցւոյ. յորոց առեալ գրի և ՚ի Հ. սեպտ. 18. պէսպիսապատումս սքերծառա-նութե. որպիսի է և պատմութիւն վն̃ կնոջ եթովպա-ցւոյ՝ զոր առ մովսէս. եթէ հայիւք ՚ի մեկնիչս, նոքա նոյնացուցանեն ԶԷ առաջին կնոջ մովսեսի, ՚Ծ ԶԷ սեպ-փորայ մադիանացւոյ. որ վն̃ մեծամեծ գործոց եղելոց ՚ի ձեռն առն իւրոյ՝ նախէր և պանծանայր առեն ՚ի վր̃ մարիամու. և յայնմանէ եւ մախանք և տրտունջ: Յով-հաննէս ոսկիբերան բոլլանդեան ծախսագոյն խօսի զմով-սիսէ երկարապատում խնդրովք և վիճաբանական քըն-նութեք. այլ այդ չէ՛ մեզ անկ. թէպ. մեկնիչք և շարժառ վիպասանք առսցեն. մեք փոյթ եղև զսայանի վարս և զառաքինութիւս մովսեսի նշանակել, զի նմանօղ լինի-ցիմք նմ̃ վարուց ո̃ց ԹԷ կարի:

Բաց ՚ի զանազան եկեղեցեաց կառուցելոց յանուն նա-խամարգարէին մովսեսի, յորոց մին և առաւել հռչա-կաւոր է ՚ի վենետիկ, երբեմն անշուք շինեալ յամի տն̃. 796. և ապա յամի. 1637, ՚ի հիմանց գեղեցիկ կառու-ցեալ, գոյր առեն ՚ի վաղ ժամուց և եկեղեցի և վանք մեծաշէն յանուն մովսեսի ՚ի թաբոր լերին. որոյ փո-խանակ յետոյ շինեցաւ փոքր և անզարդ ՚ի նմին տեղւոջ՝ ՚ի յիշատակ երից տաղաւարաց ԶԷ այլ մատուռն: Այլ և լինել և ընդ մէջ յորդանանու և երէքօ տաճար յանուն մովսեսի երբե ՚ի տեղւոջ գերեզմանի նր̃. որ յետոյ եղև մզկիթ այլազգեաց. բայց մեք անյայտ գիտեմք մեր-ձաւորի գերեզմանի նր̃ ԶԷ գրոց: Իսկ վն̃ թաղման նորա՝ են որ ասեն, թէ ինքնին եմուտ ՚ի գերեզման, և թա-ղեցաւ անյայտ ՚ի մարդկանէ. և են՝ որ գրեն, թէ յե-տոյ և եղիազար թաղեցին զնա, և ոչ ումեք պատմեցին զտեղին: Հին վէպք հասարակօրէն աւանդեն, թէ ած ՚ի ձեռն միքայելի հրեշտակապետի ետ թաղել զմարմին մովսեսի և անյայտացուցանել. և ՚ի կամիլ սատանայի՝ զի յերևելի տեղւոջ դիցի առ ՚ի լինել պաշտելի ՚ի ժո-ղովրդենէ, սաստեաց նմա հրեշտակն բանիւն տն̃. և յայս միտ խմանան զբանն յուդայի առաքելոյ վն̃ վիճա-մանն եղելոյ զմովսիսեան մարմնոյ ՚ի մէջ միքայելի և բանսարկուին. բայց յայտ է թէ այլք բազմօրինակ մեկ-նեն:

,, ցեն զայգ. այլ յայտ է՝ թէ ոչ կարասցեն ։ Իսկ բարե_
,, կամն այս հրաման տայր արարածոց բարեկամին. կամ
,, թէ ասել, աղաչեաց զբարեկամն իւր, և անդէն հնա_
,, զանդէին սմա՝ որք նմին ծառայէին. և սորինա այս
,, հրամանատար լինէր մերնոց ։ Տեսանես, զի նորա ՚ի
,, ծառայութիւն են կարգեալ՝ լնուլ զսահմանեալ ըն_
,, թացս ։ Մեծ են է այս քան զոր առ մովսէսին գոր_
,, ծեցան. Ընէր արդեօք. մի զի ոչ զուգահաւասար է
,, հրաման տալ ծովու, և որոց յերկինս են. զի թեպէտ
,, և այն մեծ, և յոյժ մեծ, այլ ոչ հաւասար այսմ ։ Այլ
,, լուր, թէ յոր սակս այսպիսի ինչ գործեցաւ, էր ա_
,, ղագաւ ։ Անուանն յեսուայ էր տիպ պատկերին քրի.
,, տպա յայն սակս և մի այդր անուանակոչուէ ՚ի պատ_
,, կերի՝ պատկառ կալեալ արարածն ։ Իսկ զի՞նչ. միթէ
,, ոչ մեք այլ՝ յեսու կմ յիսուս անուան ընկալեալ ։ Այլ
,, այս՝ զի կոչեցաւ, իբրև օրինակ ճշմարտին անուանե_
,, ցաւ ։

Յեսուայ գերեզմանն իբրև ուխտատեղի զայս օրինակ յիշատակի ՚ի հերոնիմոսէ յարձանականն սրբուհւոյն պաւղայի. * Ցոյց եւ պաւղա յորդանոք և գերեզմա_
,, նացն յեսուայ որդւոյ նաւեայ ՚ի լերինն եփրեմի, և
,, եղիազարու որդւոյ ահարոնի քահանայի՝ ՚ի հանդիպոյ
,, նր. յորոց առաջինն թաղեցաւ ՚ի թամնաթսարա ՚ի
,, հիւսիսոյ կողմանէ լերինն գաաշայ, և երկրորդն ՚ի
,, գաբաա որդւոյ իւրոյ փենեհեսի ։ Իսկ զարմանք կա_
,, լաւ զնա յոյժ, զի այն՝ որ բաժանեաց զժառանգու_
,, թիս, ընտրեալ էր անձին տեղիս լեռնայինս և առա_
,, պարս ։

Սա ինքն հերոնիմոս ՚ի գիրսն յաղագս եբրայական տեղեաց, զոր թարգմանեաց ՚ի յունական բանից եւսեբի կեսարացւոյ, գրէ այսպէս. * Գայաա լեառն է ՚ի ցեղն
,, եփրեմի. յորոյ ՚ի հիւսիսակողմն թաղեցաւ յեսու նա_
,, ւեան. և մինչև ցայսօր ցուցանի հոյակապ գերեզմանն
,, նր մօտ ՚ի գիւղն թամնա ։ Յաւելու սերարիոս ՚ի
Գւ. Իէ. յէս. Խէ. Ժէ. թէ ը աւանդութե րաբունեաց՝
* ՚ի վր գերեզմանին յեսուայ եդաւ պատկեր արեգա_
,, կան, մանաւանդ թէ արձան, ՚ի յաւերժական յիշա_
,, տակ այն յեանոց՝ վասն մեծահրաշ առկայացմանն ա_
,, րեւու, զոր արար յեսու բանիւն այ ։ Են և ոմանք՝ որք ասեն, թէ քարոյք գերեզմանին յեսուայ լեմաթաթ_ ատրաք, գոյղն յեանաստաչութե. ատանց մարթի գրել յեբրայականն թամանաթչերեն, (տե և գրէ ՚ի դաս. Է.



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Սրբց մարտիրոսացն Սահակայ և Յովսեփայ, որք 'ի կարնոյ քաղաքն կատարեցան :

Հ. յունուարի. 22. որ և արաց ծԵ. կամ ծԷ: Ըն- աւրնոր. Ի. երես. ՉՀԳ=ՉՀԸ: Սամուէլ: Աերա- կաս. ԼԶ:



ՓԱՌԱՒՈՐ ՎԿԱՅՔՆ քմի, սրբն սահակ և սրբն յովսէփ կարնեցիք, պարծանք բարձր հայոց, էին յամս Նիկեփորայ կայսեր յունաց, և հարոնայ կմ ահարոնայ ամիրապետին իսմայէլացւոց, բնակք 'ի կարին քաղաքի, որ և Թէոդուպօլիս կմ Էրզրում կոչեցեալ: Հայր սոցա էր այլազգի 'ի ցեղէն, որ կոչիւր կայս, և մայրն քրիստոնեայ՝ 'ի հայոց անտի կարնեցւոց. էր նոցա միւս ևս եղբայր, որոյ անունն ոչ նշանակի 'ի գիրս: Սրբեքին այս եղբարք 'ի բարեպաշտ մօրէն իւրեանց խրատեալք և վարժեալք 'ի մանկութենէ քրիստոնեական հաւատով և կարգաւորութբ 'ի քն, եռայլին հոգւով տն առաքելոյ բանին, և յուսով խնդայլին, և աղօթից ստէպ կայլին, և 'ի պէտս սրբց հաղորդէլին, և ամենայնորդոր էին 'ի բարեպաշտութեան



ըն

ընթացս. այլ 'ի ծածուկ ունէին զքրիստո-
նէութիւն յաղագս երկիւղի հօրն և ազգին
առ ժամանակ մի՝ մինչև 'ի կատարումն Ման-
կական տիոցն. և յայնմ հետէ ցանկային
յայտնապէս ունել զսբ հաւատս:

Այլ հնարս խորհեալ էին միմեանս վն իրացն՝
ծանուցին նիկեփորայ կայսեր 'ի ձեռն գրոյ
և գեսպանի զքրիստոնէութիւն իւրեանց. միան-
գամայն և զկամս երթալոյն առ նա, զայլ-
ազգի զդենս արհամարհելով, և առասպելս
վարկանելով: Այլ թագաւորն սիրով ընկա-
լեալ զբանս նոցա՝ յոյժ ուրախ եղև 'ի սր.
ապա առաքէ հրովարտակ, և երանէ զնոսա
վն 'ի քս հաւատոցն. և երդմամբք խոստա-
նայ զամն ինչ առնել՝ զոր ինչ կամիցին, բայց
միայն փութով եկեսցեն: Այլ նոցա ուրախ
եղեալ էին մխիթարութն թղթոյն՝ պատրաս-
տէին 'ի ճանապարհորդել. և 'ի նոյն միտս
յորդորէին զայլ ևս ազգականս իւրեանց՝ որ
զնոյն փոյթ հաւատոց ունէին 'ի քս. մինչև
ազդ եղև բանն 'ի ձեռն մատնչաց 'ի լսելիս
հօր նոցա. և նա անդէն և անդ խափանեաց
զպատրաստեալ ճանապարհորդութիւն. բայց
մին յեղբարց անտի (կրտսերագոյնն յերկուց,)
մինչ այս մինչ այն խոյս ետ 'ի սահմանէ հօրն
և գնացեալ անկաւ 'ի տրութի յունաց:

Զնոյն խորհէին առնել և յովսէփ և սահակ
այլ ոչ կարէին. քանզի յովսէփ՝ (որ և յա-
սուփ, կմէռուսուֆ, երիցագոյնն հաստա-
ամուսնացեալ էր, և ունէր որդիս. և
ցանկայր նաև նա փրկութն, ոչ կարէր է-

ղուլ

ղաւլ զնա և մեկնիլ. և յաղագս այնորիկ առ-
գելաւ յառանձին փախստենէ. և Սահակ եղ-
բայրն յանձն եառ վասն սիրոյ եղբօրն՝ մնալ
ընդ նմա, հաւանել նորա կամացն՝ սպասել
ժամանակին յաջողելոյ. մինչև հնարեսցին
ամենայն ընտանեօքն երթալ առաջնորդու-
թեամբն ն̃ոյ ։

Իսկ երբ յետ աւուրց լուր առին, թէ տ̃էրն
մամիկոնէից քուրդիկ անուն իշխան հայոց
խորհի անցանել 'ի տ̃էրութի̃ կայսեր՝ յաղագս
երկիւղի ապստամբութեն̃, որով ամբաստա-
նեալ էր 'ի չարախօսաց ։ Յայնժամ պատ-
ճառանօք իւիք գնացին առ նա առանձինն
յովսէփ և սահակ, և պատմեցին նմա զխոր-
հուրդ իւրեանց. և նա յանձն եառ տանել
զնոս ընդ իւր ը̃մ ընտանեօքն ։ Նայց քանզի
յապաղէր ասացեալն, զի և ինքն քուրդիկ
պարապոյ սպասէր, ելին երկոքեան եղբարքն
դառնալ 'ի կարին առ իւրեանցն. և 'ի ճա-
նապարհի պատահեցան գործակալի ումեք
քաղաքապետին կարնոյ, որ զօրօք շրջէր 'ի
գաւառի անդ, և դիտէր զել և զմուտ ծ̃ին.
և հարցաքննեալ զերկոսին եղբարսն՝ թէ
ո՞յք իցեն և ուստի՞ գան, 'ի վերայ եհաս ը̃ծ
գուշակելոյն՝ թէ զի՞նչ խորհուրդ իցէ եր-
թևեկութե̃ նց̃. վ̃ոյ և առեալ եած զնոս ը̃
իւր առ քաղաքապետն, որ զիշխանութի̃ ունէր
քաղաքին և գաւառին կարնոյ. և զեկուցա-
նէր նմա մի ը̃ միոջէ վ̃ս որանցն ։

Տեսեալ սահակայ և յովսեփայ՝ թէ ոչ ևս
հնար է ծածկել իրացն, գիտացին այնուհե-
տև՝

ան՝ եթէ կամքն մեն է խափանել նոցա 'ի կա-
մաց փախչելոյ յօտարութիւն, և ցուցանել
զսէր իւրեանց 'ի մօտոյ հանդիպիլ նահատա-
կութեան. վասն յաղօթս ապաստան եղեալ՝
խնդրէին յԱյ հասանել նոցա 'ի թիկունս
օգնականութեն յառաջիկայ պատերազմին.
և լցեալ հոգւով՝ քաջալերէին եղբարք զեղ-
բարս 'ի տր: Հրաման ետ իշխանն ածել զնոս
զառաջեաւ, և սկսաւ հարցանել յատենի,
յոր օրէնս իցեն, և յի՞նչ խորհուրդս կայցեն
կամ զի՞նչ խորհին յանձինս, երբ գիտեն՝ թէ
առաջի՛ կայ նոցա մի յերկուց աստի. կամ
պաշտել զդենն հայրենի, և կամ անյոյս լի-
նել 'ի կենաց:

Զայնժամ երկոքեան նոքա երանելիքն յԱծ
խոստովանեալք՝ մեծապէս համարձակութբ
ընդ մի բերան քարոզէին առաջի ատենին,
և ասէին. քրիստոնեայ եմք, և արհամար-
հեցաք զմոլար սնոտի աւանդս մեր հայրե-
նի, զի ճշմարտութեն լուցաք աշակերտք. և
ծանեաք և հաւատացաք, զի քս է որդի այ՝
արարիչ և տր երկնի և երկրի, և որ 'ի նմա
արարածք իցեն: Որ յաղագս իւրոյ մարդա-
սիրութեն և փրկութեն մերոյ խոնարհեցաւ
և էառ մարմին 'ի սբ ածածին կուսէն մա-
րիամայ. և էանց ընդ ամ կիրս մարդկային
կենցաղոյս կամաւորութբ առանց մեղաց.
և խաչեցաւ, թաղեցաւ, և յարեաւ յերրորդ
աւուր, և համբարձաւ յերկինս, և նստաւ
ընդ աջմէ հօր 'ի բարձունս՝ ուր էրն յառաջ,
նովին մարմնով՝ զոր էառ 'ի մէնջ: Սմա ամ

Նախահարք և մարգարէք վկայեն, և առաքելոց անձինք. և յամէն ազգինս քարոզի անուն նոցա և ա̃ծութիւն 'ի ձեռն հրեշտակաց, և զօրութեանցն՝ որ երևեցան յերկրի: Այլ գալոց է փառօքն՝ յարուցանել զմեռեալս, և հատուցանել ըստ բարեաց գործոց հաւատացելոց՝ որք զնա մեծ իմացան. միանգամայն և անհնազանդիցն ըստ գործս նոցա, որք զհետա չոքան անիրաւութեան և հայհոյութեան սբ̃ և անբիծ հաւատոց, որ 'ի հայր և յորդին և 'ի սբ̃ հոգին:

Բայց հաւանեալք մեր և հաւատացեալք՝ խոստովանիմք զհայր և զորդի և զսբ̃ հոգին՝ ա̃ծութիւն մի, միով փառօք և պատուով և բնութեամբ և թագաւորութեամբ: Զայս հաւատացաք, յայս մկրտեցաք, և յայս և 'ի սոյն հաստատեալ կամք՝ 'ի յայս կենացն յաւիտենից, և ոչ խոտորեսցուք յայս խոստովանութենէ յայլ կրօն, որ ոչ գոյ այլ. զի այլն ամէն մոլորութիւն է սնոտի: Մինչև ոչ իշխանութիւն, ոչ մեծութիւնք, ոչ պարգևք, ոչ գութք ընտանեաց, ոչ սուր, ոչ հուր, և ոչ ազգի ազգի տանջանք, և ոչ մահ, և ոչ այլ ինչ արարած կարէ մեկնել զմեզ 'ի սիրոյն քի̃. հա՛պա զոր ինչ կամիս՝ արա՛ վաղվաղակի:

Իսկ իշխանն և մեծ ատեանն զարմանային ընդ համարձակութիւն երանելեացն, միանգամայն ընդ իմաստութիւն և ընդ հզօր բանսն. և ոչ ոք կարէր պնդել առնել բանիցն զօրութեան, և հողւոյն՝ որով քարոզէին զճշմարտութիւն 'ի

քս̃

քս յս 'ի նոր մեր, և խայտառակեսցէն զմնացեալ աստուածն իւրեանց ։ Զյայնժամ ակն ածեալ իշխանքն 'ի համարձակութէ երանելեացն, և յանդորդութէ իւրեանցն օրինաց, հրամայեն տանել զնա 'ի բանտ. և ինքեան խորհէին ընդ միմեանս՝ թէ զի՞նչ արասցեն ։ Իսկ երանելւոյն 'ի բանտի անդ գոհանայրն և օրհնէրն զԱծ զցայգ և զցերեկ 'ի վերայ անպատուեալ պարգևացն նմա, որ շնորհեցաւ նմա, ոչ միայն 'ի նմա հաւատալ, այլ և վՏն նորա չարչարանս և մահ ընդունել՝ քարոզելով աներկիւղ ընդ-
բաննն Ճշմարտութեն, որ 'ի քս յս ։

Կոչեաց իշխանն զխորհրդակիցս իւր՝ տեսանել, թէ զի՞նչ արասցեն. և զայս ինչ հաւատացին 'ի խորհրդեան, առաքել 'ի բանտն յիւրեանց իմաստնոց՝ խօսել նմա ընդ իւրեանց ուսմանց դառնալ 'ի բաց 'ի հաւատոցն քոյ, և եթէ ոչ հաւանեսցին, որով բառնալ զնա 'ի կենաց ։ Եկին 'ի բանտն զարմն. որք երթեալ հրապուրէին զնա ; և ասէին. ընդէ՞ր մոլորեալ էք տարապարտուց յընդունայն խորհուրդս՝ որ 'ի քս. դարձարու՛ք յայդպիսի յամառութէ, և ընկալջի՛ք պարգևս և իշխանութիս. ապա եթէ ոչ հաւանիք, որով զպարգևանց ձեր հատցուք. վասն զի այս ձեր բան այսպէս սահմանեցաւ յատենի ։

Իսկ երանելւոյն ասեն զուարթութբ. և դուք, խորամանկութիւն զանհանճարսն ։ այլ. մեք ո՛չ խաբիմք 'ի Ճշմարտութենէն՝ զ ուսաք, և հաւատարիմ եղաք 'ի քս. զի վաւ կեցաք հաւատով և յուսով. և ցանկա-

ալ

սիրով եղանել 'ի մարմնոյս, և հանդիպել պարգևերուս երևմամբք առաջի տն, փայլեալք զառաջինկայ երանութիւն՝ որ 'ի քն յն։ Դուք մեզ զայս պատուիրէ՛ խոստանայք զանցաւորս, կամ 'ի յայսց կենաց կարծել համարիք. մեք պատրաստ եմք 'ի մեռանել՝ քան եթէ զճշմարտութիւնն ուրանալ. արագագոյն սպասաւորեսցէ սուրն, և յուղարկեսցէ զմեզ 'ի քն՝ առ որ անձկացեալքն եմք։

Յանկ արքն՝ որ եկեղէին, յետ բազում հարցափորձ բանից սքանչացեալ գնացին, և պատմեցին իշխանին. և հաստատ վճիռ մահու երանելեացն։ Նայլ հայր նց փութացաւ, և էառ հրաման երթալ 'ի բանտն, և խօսել ը որդիս իւր զնոյն բանս. զի թերևս հնարեսցի ապրեցուցանել զնս։ Իւ եկեալ առաջի արկանէր զալիսն և զծերութիւնն. ողոքէր մաղթէր և լայր ողբալով. որդեակք ասելով ողորմեցարու՛ք ինձ թշուառական հօրս, և խնայեցէ՛ք 'ի ձեզ. և յանձն առէք առաջի իշխանին և ամ սատենին՝ պահել զուսումն մեր և ուրանալ զքրիստոնէութիւնդ. որով 'ի մահուանէդ ապրեսջիք. և ապա երթեալ ունիջիք զքրիստոնէութիւնդ՝ ուր և կամեսջիք՝ 'ի քն յն յոյսն ձեր։

Իսկն երանելիքն. ով հայր՝ ոչ առողջ է խորհուրդ. 'ի բաց տար. մեք ուսաք յաւետարանէն զխոհեմագոյն զհանճար և զխրատ. որ ուրացցի զիս առաջի մարդկան՝ ասէ, ուրացայց և ես զնա առաջի հօրն իմոյ՝ որ յեր-

կինսն

կենդանի է. և որ ոք ոչ ատեայ զհայր իւր և զմայր զհակառակս ճշմարտութեան, և առնու զխաչ և երթայ զհետ Քրիստոսի, ոչ կարէ որդի լինել հօրն երկնաւորի և ժառանգակից Քրիստոսի։ Արդ և տեսես հայրն նորա, եթէ ամենեքին չխոտորեցան 'ի բանից իւր, 'ի բաց գնացին լալով և կոծելով յաղագս մահու նորա։ Իսկ նորա զանց արարեալ զնոյն արտասուօքն և զողբովք և զհառաչանօքն, գիտելով թէ այն է հնարք բանսարկուին չարի առ 'ի խափանումն վկայական մահուան իւրեանց, խնդամիտ կայր 'ի մէջ, և ցանկայր ելանել յայտէ բարի խոստովանութեամբ։

Այս զայս 'ի բանտին աղօթս մատուցանէին. Տէր Աստուած ամենակալ` գոհանամք զքէն, որ պահեցեր հաստատութեամբ զկրօնս մեր` որ 'ի քեզ; և յարգեցեր զմեզ 'ի խաւարէ 'ի լոյս, յանգիտութենէ յԱստուածգիտութիւն, յանօրէնութենէ յարդարութիւն. և հաստատեցեր մինչև 'ի տեղիս յայս 'ի տան կապանաց վասն անուան քո սրբոյ, և 'ի հանդէս վկայութեան` խոստովանելով զքեզ Աստուած ճշմարիտ առաջի ատենեաց քոց աներկիւղ համարձակութեամբ։ Ոչինչ այլ փոխարէնս տացուք շնորհաց քոց, որ առատացաւ 'ի մեզ իմաստութեամբ և գիտութեամբ, և ցուցեր մեզ խորհուրդս կամաց բարեհաճութեան քո. բայց եթէ անձինք մեր եղիցին վկայք ճշմարտութեան` մեռանել վասն անուանդ քո մեծի և ահաւորի։ Արդ ընկալ զմահս մեր, որ վասն անուանդ քո` ընդ սիրելիս քո, որք սիրեցին զքեզ յամենայն անձնէ և 'ի զօրութենէ. և խառնեա

Նման զմեզ 'ի Թիւն վկայից քոց , որք մեռան վ՛ս քո և կենդանացան ․ և վայելեսցեն յանփոխման և յանպատում բարիսն որ յաւիտենից ․ զի քո է փառաւորութի և երկրպագութի յա͞մ արարածոց՝ այժմ և յաւիտեանս յաւիտենից ։

Եւ որք 'ի բանտին էին՝ ասացեալ զամենին , փառս մատուցանէին ա͞յ ․ քանզի կային և այլ հաւատացեալ տոհմակիցք , զորս կալեալ ածեալ էին 'ի բանտն 'ի խոշտանգանս , և տոխպէին 'ի բաց կալ 'ի քնէ ․ այլ սրբքն քաջալերէին զն͞ս մի՛ զանգիտել 'ի մահուանէ , յիշելով զասացեալն՝ եթէ ոչ են արժանի չարչարանք ժամանակիս այսորիկ հանդերձեալ փառացն , որ յայտնելոց է 'ի մեզ ։ Եւ ահա եկեալ հասանէր հրաման յիշխանէն վ՛ս երանելեացն սահակայ և յովսեփայ սպանմանն ։

Իբրև տարան զնոսա 'ի տեղի կատարմանն , աղաչեաց սրբն յովսէփ զդահիճսն , զի նախ զերանելոյն սահակ կատարեսցեն ( վ՛ս մանկագոյն հասակին ) ․ և նա յօժարութ͞բ ըդպարանոցն խոնարհեցուցանէր ․ և դահիճն ձգեաց զսուրն , և եհատ զգլուխն ․ ապա է նմին օրինակի և երանելոյն յովսէփ կատարեցաւ ․ ( և է այսմ կարգի կատարմանն եդաւ տօն յիշատակի սրբցն սահակայ և յովսեփայ ։ ) Այսպէս վկայեցին սրբքն 'ի կարին բարի խոստովանութ͞բ 'ի ք͞ս , 'ի Թուին հայոց՝ մծէ ․ յամի փրկչին ․ 808 ․ յարաց ամսոյ ժԲ ․ որ է ժամանակին անկանէր 'ի հոկտեմբե-

թերի. 19. այլ ըստ հաշուի յայսմաւուրաց դնի ՛ի յունվարի. 22։

Իսկ զմարմինս սրբոցն քարշեցին և ընկեցին ՛ի բացի՝ կերակուր լինել շանց և թռչնոց. և քարոզն աղաղակէր, թէ մի ոք մերձեսցի ՛ի նոսա. ապա եթէ ոք յանդգնեսցի, ընդ նոցին օրինակի կորիցէ. և պահապանքն պահէին հրամանաւ իշխանին զմարմինս սրբոցն, զի մի ոք տարցի զնոսա։ Եւ ահա տեսիլ սքանչելի երևեցաւ ՛ի գիշերին յայնմիկ, լոյս ՛ի վերուստ իջեալ ՛ի վերայ սրբոցն. և զարմացումն և ահ ՛ի վերայ ամենեցուն լինէր. և արհաւիրք ՛ի տեառնէ ՛ի վերայ իշխանին անկանէին։ Արքայ զարհուրեալ հրամայէր քարոզել, զի որք կամիցին առնուլ զմարմինս սպանելոցն, համարձակ լիցին. և որք ՛ի բանտին էին՝ զամենեսեան արձակեաց առանց պատուհասի։ Եւ հաւատացելոցն մեծաւ խնդութեամբ բարձեալ զնշխարս սրբոցն՝ մատուցին ՛ի տեղի հանդըստեան. և (յետ ժամանակաց ինչ) շինեցին ՛ի վերայ վկայարան վայելուչ. ուր և բազում բժշկութիւնք կատարէին բարեխօսութեամբ սրբոցն ՛ի փառս ամենասուրբ երրորդութեան. որում վայելէ նմա փառաւորութիւն և պատիւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։ Կարնեցիք մինչև ցայսօր ցուցանեն զտեղի գերեզմանաց սրբոց մօտ ՛ի տաճար սրբոյ Աստուածածնի յարուարձանս քաղաքին, և են որ ՛ի բուն քաղաքին ասեն. ցուցանի և ուխտատեղի՝ նահատակի աղբիւր կոչեցեալ՝ ՛ի տեղւոջ կատարման սրբոց։



# ՎԱՐՔ ԵՒ ԿԱՏԱՐՈՒՄՆ

## Երկոտասան Մարգարէից։



ԶՈՐ ՕՐԻՆԱԿ ՉՈՐԵ-քեան մեծանուն մարգարէք, Եսայի, Երեմիա, Եզեկիէլ և Դանիէլ, մեծամեծ մատենիւք և տեսլեամբք կենդանի օրինակ եղեն չորե-ցունց աւետարանչաց, նոյնպէս և Երկոտա-սանեքին մարգարէքս ընտրեալք ըս՟ թուոյ երկոտասան ցեղիցն իՍլի՝ եղեն նախանկար պատկերք առաքելոցն երկոտասանից, առա-քեալք յայ՟ ՚ի քարոզել զպատգամս կենաց բանիւ և գրով, իբրև երիվարք փողփողըն-թացք ՚ի պատմել զհրամանս տն՟ և զնշա-նակս գալստեան միածնին յՌ։

Փոքր անուանեցան յոմանց մարգարէքս այս՝ առաւել ըս՟ համառօտագրութե գրոց իւր-եանց, յորս մեծամեծ խորհուրդք պարունա-կին ոչինչ ընդհատ ՚ի տառից չորից մարգարէ-իցն. և ահաւոր և զօրաւոր տեսիլք և պատ-գամք, հանդերձ խորին՝ միանգամայն և հա-դեշաւոր քաղցրութեամբ. զի ոչ եթէ ըս՟ կամաց մարդկան տուաւ երբեք մարգարէութիւն, ասէ վէմն հաւատոյ, այլ ՚ի հոգւոյն սրբոյ կրեալք խօսեցան մարդիկ յայ՟. որք վն՟ որոյ

ՅԺ ՚ի

'ի մեզ եղեն շնորհք՝ մարգարէանալին. այլ զայսցանէ մեկնիչք: Իսկ մեզ միայն նշանակել զհամառօտ պատմական յիշատակ միոյ միոյ յերկոտասան առաքելոցս իւրը, ըստ որում զտասներկուքն աւանդեցաւ 'ի նախնեաց. յորս եպիփան և դորոթէոս կարծիս հնագոյն հաւաքօղք աւանդից. և 'ի նոյն բանից են առեալ՝ որ ինչ դրոշմեալ գտանին յօրինակս ինչ ճաշոցի և ձայնոցի, որպէս և առ վկայաբանս և առ մեկնիչս՝ պէսպէս յարմարութը:

## ՈՎՍԷԷ:

Հ. նոյեմ. 18: Յ. նոյ. 17: Լ. յուլ. 4:

Ովսէէ (որ Թարգմանի փրկօղ կմ փրկեալ, յեբրայական ձայնէս եւաշա, կմ փրկեաց կամ ապրեցոյց,) էր որդի բէերեայ 'ի բեղամովթայ, կամ բուբրայ 'ի բեթղեմոթայ, 'ի ցեղէն իսաքարայ: Մարգարէացաւ յաւուրս Թագաւորացն իէլի և յուդայ՝ առ համօրէն տանն յակոբայ, յառաջագոյն գոգցես քան զամ գրաւոր մարգարէս, ժամանակակից եսայեայ, և երիցագոյն Յովելաւ քան զնա՝ սկսեալ յաւուրցն ոզիայ արքայի յուդայ: Սպառնացաւ իէլի զհարուածս 'ի ձեռաց ասորեստանեայց՝ վն մեղացն յերոբովամայ որդւոյ նաբատայ. և բարիս գուշակեաց ազգին յուդայ վն բարեպաշտութե-

է զաղմատացուաց , թէ մարմինն յաւէլեալ մարգարէի փոխադրեալ իցէ 'ի քաղաքն իւ- րեանց աղերայ՝ կիծարա , և թաղեալ յա- թուանիստ եկեղեցւոջ 'ի ներքոյ աւագ բե- մին . զոր և տաանց ը բանս խնչ անձեռյ յի- շատակին բովանդակեանք :

# ԱՄՈՎՍ :

Հ . մարտ . 2 : Ը . յունիս . 16 : Ժ . մարտ . 31 :

Սա էր հովիւ 'ի Թեկուայ՝ իբր վեց . մղո- նաւ հեռի 'ի Բեթղեհեմէ ը հարաւ . կոչի 'ի մարգարէութիւն յաւուրս Ոզիեայ , և Ե- սայեայ . որում և հայր կարծեցաւ յոմանց . բայց ոչ նոյն Ճանաչի : Նախաձայնեաց ա- մովս զգալուստ փրկչին տիեզերաց . պատ- մեաց կանխաւ և զգերութիւն իւրլի յասորես- տան , և զկուռայսն 'ի բագինսն , կշտամբե- լով զչարութիւնս հրէից , և տռաւել զանգր- թութիւն : Ի մարգարէանալ նորա 'ի Բեթէլ՝ ստատեաց նմա Ամասիա քուրմ Բեթելայ . երթ առէ 'ի յուդա , զի չէ օրէն քեզ մար- գարէանալ 'ի տեղւոջ երնջոցն՝ զոր կանգ- նեաց յերոբովամ արքայ իսրայէլ . բայց Ամովս յայտ արար , թէ ուր հրամայեաց նմա Տէր՝ անդ խօսել ուսանի զպատգամս նորա : Սոյն ասեն չարչարեաց Ամասիա քուրմն զԱմովս . և ա- պա ոզիէ որդին Ամասեայ մեռեաց գաւազան երկաթի ը ծամերիւ նորա . և այնպէս կիսա-

մահ բարձեալ ածաւ՝ ՚ի Թեկուա , և յետ ա-
ւուրց մեռաւ ՚ի ցաւոց անտի , և անդ թա-
ղեցաւ յերկրի իւրում . և գերեզման նորա
կայր ՚ի նմին վայրի մինչև ՚ի ժամանակս քրիս-
տոնէութեան : Բայց ոչ ամոսս միայն , այլև բա-
զումք ՚ի գրաւոր և յանգիր մարգարէից վը-
կայական մահուամբ ելին յաշխէ . այլ ոչ ա-
ւանդեցաւ գրով . յայտ է ՚ի բանիցն քսի և
առաքելոց՝ որք յանդիմանէին զհրէայս իբ-
րև զորդիս մարգարէասպանաց հարց :

# ՌԵԳԻՌՍ :

Հ. Նոյեմբ. 11 : Յ. և Լ. Նոյ. 19 :

Ռեգիոս կամ աբդիաս (այս է՝ ծառայ ա̃յ) ՚ի բեթխակարան աւանէ երկրին սիւքեմայ , է նա ինքն հազարապետն աքայաբու , և երրորդն այն յիսնապետս առաքեալ յոքոզիայ արքայէ առ եղիա . որ խոնարհութը ցածոյց զինքն եղիայի . և կրեաց հալածանս ոչ սակաւ ՚ի պատճառս նորա . այլ և յառաջագոյն պահեաց զհարիւր մարգարէս յայրս ծածուկս յերեսաց հարուածոցն յեզաբելի . և յետ աշակերտելոյն եղիայի ընտրեցաւ ՚ի պաշտօն մարգարէութե : Բայց այս ոչ աւանդութիւն եբրայեցւոց , և բազմաց ՚ի նախնեաց . բայց կան և հարք և մեկնիչք , որք ասեն՝ թէ որիշ էր մարգարէն աբդիաս , այլ թէ յաւուրս եսայեայ : Բանք աբդիաւ հայեն ՚ի

'ի գերութեն քաղդէացւոց և 'ի դարձ գերութեն, օրինակելով զփրկութիւն մեր քրի՛ 'ի գերութենէ բանսարկուին : Թաղեցաւ 'ի Սամարիա . ուր և յայտնեցան նշխարք նր՛ յաւուրս քրիստոնէութեն ընդ ոսկերաց եղիսէի մարգարէին, և յովհաննու մկրտչին :

# ՅՈՎՆԱՆ·

Հ. Յ. սեպտ. 22 : Լ. սեպտ. 21 :

Յովնան որդի ամաթեայ էր յերկրէն զաբուղոնի 'ի գէթ քաղաքէ քոբերայ կմ՛ աքոբերայ, որ յետոյ դիոկեսարիա կոչեցաւ : Ոմանք 'ի հարց ՟Ը եբրայականն աւանդեն համարեցան զյովնան լինել որդի կնոջ այրւոյ, այն՝ զոր յարոյց եղիա . ոմ՛ թէ լինել նմա 'ի համարս աշակերտաց եղիայի, և ապա մարգարէական քարոզութ՟բ առաքիլ 'ի տնէ 'ի նինուէ . որ և 'ի դարձին իւրում խոյս ետ սահմանն անդրէն հանդերձ մարբն յասորեստան, զի մի ամբաստանեսցի 'ի հրէից, եթէ ոչ ել 'ի գլուխ բանն նորա վս՛ կործանմանն նինուէի : Թող զի ոմանք ասացին՝ թէ ամաթիաս հայրն յովնանու իցէ նա նոյն աբդիաս մարգարէն : Իսկ այլք՝ թէ յովնան իցէ աշակերտ եղիսէի՝ առաքեալն 'ի նմանէ յօծանել զյէու 'ի թագաւոր :

Այլ ստոյգն այն է, թէ յովնան էր 'ի ժամանակս յերոբովամայ որդւոյ յովասու ար-

քայլ իջելի . որպէս է տեսանել 'ի գիրս ( Դ .
Թագ. ԺԴ. 25). վ՛ոյ և ժամանակակից ովսէէ և
եսայեայ ։ Նա ընդ այսմ քարոզութեամբ յովնա-
նաւ 'ի նինուէ լինի Ճահողակի յաւուրս սար-
դանապաղայ արքային ասորեստանեայց , առ
որով տիրեալ էր յոյժ զեղխութի և անառա-
կութի 'ի նինուէացիս ։ Արդ թէպէտև առ
ժամն զղջացաւ թագաւորն և ամենայն քաղաքն , որով
ապրեցան 'ի կործանմանէ ընդ անբաւ մար-
դասիրութե բարձրելոյն , բայց յետ անցա-
նելոյ պատուհասին առ փոքր փոքր 'ի նոյն
զառածանելին չարիս . վ՛ոյ և տէր մատնեաց
զնա 'ի ձեռս վարբակայ մարաց արքայի , ո-
րում գործակից էին բելեսի բաբելոնացի ,
և պարոյր առաջին պսակաւոր արքայ հայոց ։
Սոյ և տոբիթ պատուիրէր որդւոյ իւրում
թողուլ զնինուէ . զի գիտէր ասէ՝ զի կոր-
ծանեսցի քաղաքս ընդ բանին յովնանու մար-
գարէի ։

Մեծամեծ խորհուրդք նկարագրեցան յան-
ձին յովնանու , որ եղև ակամայ քարոզ հե-
թանոսաց՝ իբրև առաքեալ 'ի կարգի մար-
գարէից . և պատկեր օրինակի փրկչին , ա-
ռաւել ընդ թաղմանն և երեքօրեայ յարու-
թե . զորմէ բազում են բանք առ սր վրդս ։
Ընդ ննջեցեալս յարուցեալս առ խաչելութե
փրկչին թուեն ոմանք և զյովնան . որոյ գե-
րեզմանն էր 'ի գէթ զաբուղոնի . այլ են՝
որք շփոթեն զայն ընդ գէթ քաղաքի փղշտա-
ւոց ։

Պատմէ մեծն գրիգոր հռովմայ հայրապետ ,
թէ

Թէ ամն 'ի սմ միայնակեցաց իւրոց մերձ յեր
հոգւոյն ետես 'ի տեսլեան զերեսին սր մար-
գարէին, զյոնան, զեզեկիէլ և զդանիէլ. և
մեծարանօք խօսելով ընդ նոսա՝ աւանդեաց
զոգին 'ի ձեռս այ :

# Մ Ի Ք Ի Ա Ս :

Յ. ապր. 21. և յունվար. 5 : Լ. յունիս. 15 :

Միքիա մորասացի՝ ըստ ոմանց էր մորասթա-
ցի 'ի ցեղէն յուդայ, և ըստ այլոց մորաթացի
'ի ցեղէն եփրեմի : Ոմանք կարծեցին, թէ
սա այն է՝ որ մարգարէացաւ առաջի աքայա-
բու. և զի ոչ ըստ կամս արքային խօսեցաւ,
յանձնեցաւ 'ի ձեռս յովրամայ արքայորդւոյ
'ի տառապանս բանտի և սովու. այլ յոչ
դառնալ աքայաբու կենդանի 'ի պատերազ-
մէ՝ ըստ գուշակելոյ մարգարէին. բանիւ տն,
յովրամ սպան զնա ասեն վկայական մահ-
ուամբ՝ զահավէժ առնելով կամ կախելով :
Բայց ճշմարտագոյն է ասել ըստ այլոց, թէ
միքիասն այն մարգարէ որդի յեմլեայ յա-
ւուրս աքայաբու և յովրամայ՝ զանազանեալ
է 'ի միքիայ մարգարէէ, որ գրեաց զգիրս
մարգարէութն յետ ժամանակաց, փայլեալ
'ի մէջ յուդայ՝ քան իէլի, յաւուրս յովա-
թամայ, աքազու և եզեկիայ. և սա ևս ա-
ռի վկայական մահուամբ սրոյ կատարեալ :
Գրեն բազումք ըստ սոզոմենոսի՝ թէ յաւուրս

մեծին Թէոդոսի կայսեր, կամ որդւոց նորա արկադեայ և ոնորիոսի յայտնեցան նշխարք սրբոյն միքիայ մարգարէի և ամբակումայ՚ի հրէաստան, ՚ի ձեռն տեսլեան՝ որ եղև առ զեբեննոս եպիսկոպոս էղևթերուպօլսոյ. քանզի և մերձաւոր [illegible] մօտ է յէլևթերուպօլիս: Ս՝արմինն միքիայ գտաւ թաղեալ՚ի տեղին կոչեցեալ բարաթսատ. զորոյ զգերեզմանն բնակիչք տեղւոյն կոչէին նէֆեսա նէէմանայ, կամ մէֆսամէէմանայ. ՚Նա գերեզման և յիշատակ կոչ հօգի հաւատարիմ, ոչ գիտելով զանուն սրբոյն. այլ յայտնեցաւ յետոյ, թէ նա իսկն միքիաս մարգարէն է: Պանծալի հանդիսացաւ վկայութիւն նշխ վասն ծննդեան քնի ՚ի բեթղեհէմ յաւուրս հերովդի արքայի:

# ՆԱՀՈՒՄ:

Նաւումն նաւում, ը եբրայեցւոց՝ նախում կմ նահում, որ թարգմանի մխիթարութիւն, նոյն համարեալ է ը անուանս՝ նոյ: Սա էր յեղկեսեայ քաղաքէ յայնկոյս յորդանանու յերկրին բեգաբարայ՝ ՚ի ցեղէն շմաւոնի: Սկսաւ մարգարէանալ յաւուրս եզեկիայ արքայի, յորում ժամանակի գերեցաւ իսրլ յասորեստան և ՚ի նինուէ. վնյ մխիթարէ զժողովուրդն՝ գուշակելով զդարձ գերութեան նց: Բարգաւեաց ասեն և նինուէացւոց ապաշխարութիւն իբրև երկրորդ յոնան՝ իբր յիսուն

և

և եւս աւելի ամօք յետոյ քան զնա․ և յոչ-դասանալ նոցա ՚ի չարեացն, և ՚ի տառապեցուցանել զորդիսն իւրեանց, ապստամբեցաւ նոյ ղշխոյն կործանութեամբ և զկորուստ․ և այս կատարեցաւ յետ իբր 140 ամաց, յորժամ առին քաղդէացիք զնինուէ, և բարձին անտի զթագաւորութիւն ասորեստանեայց․ Այլ նաւում մխիթարեաց զը եսայեայ և զմնակիցս եղեն առ եզեկիայիւ, թէ ոչ մնացէ արքայն նինուէի յերեն ։ Նաւում մեռաւ խաղաղութեամբ յերկրի իւրում ՚ի բեգաբար ։

# ԱՄԲԱԿՈՒՄ ։

Հ ։ դեկտ․ 7 ։ Յ․ դեկտ․ 2 ։ Լ․ յունվ․ 15 ։

Ամբակում (ըստ այլոց՝ Համպագուգ) առին յամանց լինել որդի սոմնացւոյն, զոր եղիսէ դարձոյց ՚ի կեանս․ այլք ասացին լինել ըղժամանակն անդրոնելի․ այլ միայն թէ էր որդի սափատայ՝ ՚ի ցեղէն շմաւոնի ՚ի բեթէկուկար կամ բեշուքարաւանէ ։ Առաւել սովորական կարծիքն է, թէ էր յաւուրս եզեկիայ և մանասէի, մի ՚ի մարգարէից՝ զորս առաքեաց աստուած ՚ի յանդիմանել զչարիսն մանասէի ։ Բայց վս գուշակելոյն զգերութիւն և զդարձ տանն յուդայ յերկրէն քաղդէացւոց՝ բազումք եւս եդին զնա լինել ժամանակակից դանիէլի, և թէ սա ինքն էր՝ որ տարաւ առ նա կերակուր ՚ի ձեռն հրեշտակի

տն

# ԱՆԳԻԵԱՍ, ԿԱՄ ԱՆԳԻԵՈՍ.

Յ. դեկտ. 16 : Լ. յուլիս. 4 :

Սա էր մի 'ի դարձելոց 'ի գերութենէն բաբելացւոց 'ի Հրէաստան 'ի մանկութեան իւրում առ Կիւրոսիւ. և սկսաւ մարգարէանալ յերկրորդ ամի դարեհի յաւուրս շինութեան տաճարին զօրաբաբէլի՝ ձայնակցութեամբ զաքարիայ մարգարէի, գուշակելով յայտնապէս զփառաւորութիւն տաճարին 'ի գալստեան մեսիայի: Անգէաս առ եբրայեցիս ասի խագգայի, որ թարգմանի խրախ կամ տօնագըճարձ. և արդարև ըն խրախարար անուամբ իւրոյ զուարթացոյց զժողովուրդն այ՝ աւետարանելով զմերձակայ գալուստ փրկչին յս. որ եղև յետ իբր 500 ամաց: Սա կոչի հրեշտակ տն ամենակալի, որում 'ի դէպ գայ անուն նր ըն. յունականին անգէոս. կամ ագգէոս. ոչ թէ անգեղոս, որ է հրեշտակ. մինչև շփոթել զնա ոմանց ընդ մաղաքիայ՝ որ եբրայեցերէն հրեշտակ լսի. և արդարև երկոքեանն իսկ հրեշտակք էին 'ի մարմնի. ոչ և ամ. մարգարէք՝ հրեշտակք այ, զի պատգամաւորք տն առ մարդիկ. որոց վերջինն եղև հրեշտակ հրաշալի՝ մկրտիչն յովհաննէս: Այլ յայսպիսի խորհրդաւոր անուանց տխմարական մոլորութիւն եհան ասեն որոգինէս, այնչափ մեծացուցանելով զանգէաս

և

և զմաղաքիա և զյովհաննէս մկրտիչ , մինչև ասել , թէ նոքա յառաջին հրեշտակք էին , և ապա մարմին առեալ՝ եկին 'ի քարոզել 'ի մէջ մարդկան . փոխանակ ասելոյ՝ թէ մարդիկ էին հրեշտակահանգէտք վարուք և պատգամաւորութեամբ . զի հերոնիմոս ասէ 'ի վարս պօղոսի անապատականի . * Այլ եղիա ,, մեզ եղեւ մեծ քան զմիայնակեացս , և ,, յովհաննէս քան զծնեալսն իւր յառաջ ,, սկսաւ մարգարէանալ . և սոքա այսպիսիքս ,, նախնիք և անապատաւորք 'ի վեր ,, քան զմնաւորս են Ս . բայց ոչ եթէ արտաքոյ են համարոյ մարդկութեանս ․

# ԶԱՔԱՐԻԱ ։

Հ . ճայնս . 16 ։ Ձ . ձեռք . 8 ։ Ս . սեղր . 6 ։

Զաքարիա , որ թ. զեքեր իա , կմ զիքր եաւհ , որ յիշեաց զած , կմ յիշատակ այ , էր որդի բարաքեայ , ժամանակակից անգեայ մարգարէի . զի և սա յերկրորդ ամի դարեհի սկսաւ մարգարէանալ . թէպէտև նա յամսեանն վեցերորդի , և սա յութերորդի ամսեանն ։ Զաճախադոյն են խորհրդաւոր առածք և տեսիլք զաքարեայ քան զայլոցն , այնպէս օրինակաւ գուշակելով զգալուստ քրի և զկարգ անօրինականն գործոց նր , խաւարագոյն տեսութիւն . մինչև ասել ումեմն 'ի հարց մր դրոց զաքարիայ մարգարէի . խորք

խա

խորոց կարգաւն 'ի ձայն սաղմոսացն ն̃յ . զի
թէ սպարզ խօսեալ էր , ոչ այնչափ մարգա-
րէութի , որչափ աւետարանական պատմու-
թե երևէր , 'ի նախաձայնել անդ խորհուրդ զմնա-
նել ըն քնի փառօք յելեմ յաւուր արմաւենեաց,
զմատնութիւն յուդայի , զխորհուրդ հաղոր-
դութեն , զվէրս ձևաւոր քնի . զէջս նորա 'ի
դժոխս՝ 'ի վեր հանել զերամս արդարոց .
զյարութի ն̃ն և զփառաւորութի . որպ և
զկոչումն հեթանոսաց , և զմերժումն նորա յեկե-
ղեցւոյ : Ամենք համարին զզաքարիա՝ քա-
հանայ լինել և յազգէ ղևտացի . և բազումք
ասեն սա հայեցուցանէն զբանն ն̃ն մ̃ն զաքա-
րիայ որդւոյ բարաքեայ , որ վկայական մահ-
ուամբ կատարեցաւ ի̃ մէջ տաճարին և սե-
ղանոյն . զորմէ ձոխագոյն ասէ աք ծանօթու-
թի յառաւանձին տօնի նորին զաքարիայ մար-
գարէի՝ ասընթեր անոփրիոսի ս̃ր հօրն :

# ՄԱՐՏԻՈՍ :

Յ . յունվար . 3 : Լ . լուսին . 14 :

Ըստ եբրայական ձայնի՝ Մաղաք , հրեշտակ
լսի . (յորմէ ռամկօրէն՝ մելայիք . ) իսկ մա-
ղաքի , հրեշտակ իմ . և մաղաքիա՝ հրեշտակ
տ̃յ . զորմէ ասեն ռաբբիք , թէ յառաջինմէ
այլ անուն էր նր̃ . և մ̃ն անէպ ասեսանելոյ
զհրեշտակ տ̃յ 'ի տեսլեան , և ք̃ունելոյ 'ի
նմանէ զխորհուրդս և զմեկնութիւն մարգա-

րէ

տրոշեն 'ի սեղանոյ զոհիցն , և յ
րոյ • ուսուցանեն և նոցա զմի
զՀայրն յո՞ր քո՞ր :
Եւ առաքեաց Թագաւորն զօր
զի տարցէ զնա առաջի • և եկեա
րիս քոյրսն • և նք կալեալ զմի
նէ՝ որպէս 'ի պար երթային խնո
զՀետ և մայրն սոփիա : Եւ յո
'ի դուռն ապարանին , զանձինս
րացուցին նշանաւ նր խաչին , և
ջի Թագաւորին : Տեսեալ զնա
Է գեղեցկուհի երեսաց նց • եհ
յորմէ՞ գաւառէ էք • և զի՞նչ
և կմ դստերացդ : Եւ նա ասէ
քրիստոնեայ է • և իմ դստերս
Հաւատ , միոյն յոյս , միոյն.սէր
քն է • բայց 'ի ծնողաց իմոց սո
և եմք յերկրէն իտալացւոց • ( ո
Թեռնուն՝ միդուլեցւոց , ոք 'ի մե
ղաքէ իտալիոյ ) • առաջնորդե
և եկի 'ի քաղաքս յայս • զի զո
իմ ոյ պատարագ մատո
Եւ Թոյլ ետ Թագաւորն երեք
տուէք ումեմն իշխանուհւոյ՝ որ
պալատիա , պահել զնա 'ի տան
որն սոփիա խրատ տայր դստ
Հաստատուն կալ 'ի Հաւատս ք
ջանաց և 'ի մահուանէ ոչ եր
յետ երեք աւուրն կոչեաց առա
գաւորն , և բազում ողոքանօք և
խրատ տայր տղայոցն ուրանալ զ

կացցն ։ Այլ նքա ասեն ․ առանց տանջանաց ՚ի մէնջ պատասխանի ոչ լուիցես ․ քոյով զգարութեամբդ չարչարեա՛ զմեզ, որպէս և կամիս ․ և տեսցես զահեղ զօրութիւն քնի այ մերոյ ։ Այլ զարմացեալ թագաւորն ը քաջութեան հաստատուն հաւատոց նց, եհարց ցսոփիա, քանի՞ ամաց են դստերքդ քո ։ Ասէ սոփիա ․ առաջինն զաւակս իմ պիստիս՝ երեքտասանամ ամաց է ․ և երկրորդս ելպիս՝ մետասան ամաց ․ և երրորդն ագապիս՝ ինն ամաց է ։ Կոչեաց առաջի իւր զպիստիս, և սպառնացաւ յոյժ ․ և նա անարգել թշնամանեաց զթագաւորն և զածս իւր ։ Այլ բարկացեալ հրամայեաց կախել զնա, և գաւազանօք գան հարկանել ուժգին ․ և նքն ամենևին ոչ ըզգայց զցաւն, և ո՛չ վիրաւորեցաւ, և ոչ այլագունեցաւ մարմինն ։

Այլ ապա սուր առեալ՝ ծեծէին զմարմին նր ․ և որպէս երկաթ անխզելի մնաց ։ Դարձեալ ընկեցին ՚ի շանթս հրացեալս ․ և հուրն շիջաւ ․ և շանթն որպ զսառն ցուրտ եղև ։ Այլ նքն գոհանալով օրհնէր զած ․ և ասէ ․ ո՛վ թագաւոր՝ տեսե՞ր զզօրութիւն քնի իմոյ, և զանկարութիւն քոյոց չարուն մեքենայից ։ Այլ բարկացեալ հրամայեաց սրով հատանել ըզգլուխ նր ։ Յայնժամ գնաց երանելին առ մայրն և առ քոյրքն իւր ․ գիրկս արկեալ համբուրեաց արտասուօք ․ և ասէր ցքոյրսն իւր ․ մի՛ երկնչիք ՚ի տանջանաց, զի ամենևին ես ոչ զգացի ․ այլ՝ փութացէ՛ք և եկա՛յք զհետ իմ ․ և երթեալ գահիճն եհատ զգլուխ նր ։

Նոյնպէս և զայլ երկու քոյ
խիստ և դառն չարչարանօք տ
ոչ կարացին դարձուցանել 'ի
րեանց. և ապա հատին զգլուխ
ուրախ եղև սոփիա, զի երեք ս
սունս ետ պարգևս քնի: Նյ
բարի խոստովանութ՟ե կուսան ս
Իսկ բարեմիտ մայրն սոփիա ժ
նշխարս դստերաց իւրոց, և ե
կան գլուխն յիւրաքանչիւր տե
մաքուր կտաւօք և խնկով, և
մեծաւ փառօք, և եհան 'ի ք
մղոնաւ. և եդ 'ի մարմարիոն
շինեաց 'ի վ՟ր եկեղեցի ա՟ծ ար
անկեալ 'ի վ՟ր տապանի արտա
զքս, և զդստերսն. և ասէր.
ւակք իմ յիշեցէք զծնունդն
ձեր և զքաջալերութ՟ին, թե
և սնուցի և յօժարեցուցի զ
արքայութ՟ի. նոյնպէս և զու
առ ձեզ: Եւ այնպէս աղօթ
աւանդեաց զհոգին. և քրիստ
Եղին զնա 'ի տապանի ը՟ դս
Պատուական նշխարք ս՟ցս
աւանդին լինել 'ի հռովմ յեր
ցիս՝ ս՟րյն պետրոսի, և ս՟րյն ս
ոմ՟ և մասն ինչ սոի փոխադրե
բատոն քաղաք ալսացիոյ. ոմ՟
գաղղիա և 'ի սպանիա: Նյն
ռիա (կի՟'ի պուէշա) փոխադրե
մի ամ՟ն. 1600: (2)

խնդրէ ժամանակ աւելի. Այլն նման
տարբերութիւնք վկայագրաց ՚ի
Հին վկայագիրք լատինացւոց համաձ
՚ի միում աւուր գնեն զյիշատակ մօր
միայն բարոնիոս զատոյց զյիշատակս
զդստերս ՚ի տօնացոյցն հռովմէական յ
* ՚Ի Հռովմ՝ նահատակութիւն սրբոց կու
տոյ, Յուստոյ, և Սերոյ. որք յաւուր
ադրիանոսի առացան զպսակն վկայու
սեպտ. 30. այսպէս, * ՚Ի Հռովմ (
այրւոյն Սոփիայ՝ մօր սրբոց կուսանացն
տոյ, և սիրոյ || : Այլք ՚ի լատին գրչ
րածեալ էին և զդստերսն ՚ի նոյն սեւ
Նաև զմայրն վերածեալ ՚ի 1.
Վս Դաքարոզ մեծի տաճարին այս
տանդինուպօլիս, ՚ի վաղ ժամանակ
կարծէին շինեալ յանուն սրբոյն սոփիա
րաց նորա. յայս միտ խօսի և մերս ն
խաչին. բայց առաւել հանդիսացեալ
զոր ալինդ ունին ամ յետոյնք, թէ շինե
չին, որ է իմաստութիւն հօր յաւիտենա
գրութեան ՚ի հատորն բիւզանդիոյ
(2) Յաղագս նշխարաց սրբոյս այսպէս
ստուգագոյն համարեալ է առէ կարծ
ասեն՝ թէ նշխարք սրբոյս են ՚ի Հռովմ
պետրոսի և սրբոյն սեղբեստրոսի մինչև
ամբողջ, գէթ ըստ մեծի մասին: Վս
ւանդուն արգենտացւոց, որք համար
մեծին կարոլոսի հռեմիգիոս եպս հռե
իցէ զնշխարս սրբոյն սոփիայ և երից դ
սացիա. թերևս մասունք ինչ յոսկե
տարեալ եղեն. որպէս և ՚ի սպանիա ա
սունք նց սփռեցան: Անստոյգ մնայ
սելն, թէ մարմինք սրբոց փոխադրեալ
և թէ՝ եդեալ յարծաթի տապանակս
նին յեկեղեցւոջ սրբոյն մարիամու վիգա
կեան ագարակի: Բայց են՝ որ ասեն
րոյ սաւսայոսի զայսոսիկ՝ գողք բար
անտի զայն նշխարս: Որ թողցուք զ
սր կուսանացս պատուեալ ասին պահի
կուսանաց ՚ի բելլանկուրիա ՚ի արեկեն
դի կիստերսեանց. Այլք բերեն զայ

կմ՞ զտապանագիր՝ գտեալ՝ի պահեստ յեկեղեցւոջ կու-
սանոցի սրբուհւոյն յուլիայ ։ * Այսր բերեալ եղեն
,, ( սծ նշխարքս ) 'ի հին եկեղեցւոյ՝ սրբց կուսանաց և
,, մկայուհեաց՝ յուլիայ, պիստեսի, ելպիսի, ագապեի,
,, և սոփեայ մօր նց էն ... որոց մարմինք անհամար
,, ընդ նշխարօք հանդերձ, 'ի ժամանակս կղեմայ ութե-
,, րորդի ... փոխադրեալ եղեն 'ի յոբելեան ամին 1600 ։
,, 'ի 16 ։ աւուր կաղանդացն յունվարի ||։



[redacted]





# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սբ̄յն Քրիստափորի, և որոց ը̄ նմին : (1)

Հ. յես. մայիսի. 11 : Տր̄ էէլ. մայ. 9 : պաղ. յանուարի. 14 : Յ. մայիս. 9 : Լ. յուլիս. 24. և 25 : Ճառընտ. Ի. ՉՀԷ=ՉՅԷ : Բոլլանտեանն գլե. նիսս. 'ի Է հատ. յուլ. էջ. 125=149. Սուրիա 'ի ղանտալանեց. և այլք եստանց : (2)



ՔՐԻՍՏՈՍԱԶԳԵԱՑՆ Ի մարգարտափայլ՝ Ամենայնազգի վկայն քսի Քրիստափոր էր 'ի բարբարոսաց Ազգէն, յազգէ ընկիւթացւոց կմ̄ Հնդկաց, որք շանագլուխք կոչէին 'ի գժնէհայեաց և յահագնատեսիլ դիմաց, և 'ի թանձրահագագ և 'ի ղօղանջական կոկորդաձայնութէ (3) : Այս էր առաջին անուն նր̄ Մարգարիտ (4), որ 'ի բարբառս հնդկաց պերպելուի կմ̄ մեծամեծուի ասի (որք և առ արեւմտեայս՝ ռամկօրէն բերլա), ծնեալ 'ի հեթանոս ծնողաց. այլ 'ի հասանել յարբունս՝ մտեալ 'ի զինուորութի բարբարոսաց, ըմբռնեցաւ 'ի քրիստոնէից, ըս̄ 'ի զօրաց կոստանդեայ կայսեր որդւոյ կոստանդիանոսի. և տեղւէ կացեալ Ճանապարհին Ճշմարտութե՝ պաշտէր զքրիստոնէական հաւատս, և փափագէր

ըու-

Ընունել զՔր. մկրտութիւն ։

Յաւուրսն յայնոսիկ թագաւորեաց ուրա-ցողն քնոյի յուլիանոս. և մի ոմն 'ի պաշտօնէից նր դիկոս անուն (5), կարգեցաւ կուսակալ և դատաւոր 'ի վր կողմանցն ասորւոց իբրև փոխարքայ (զոր այլք շփոթեն ընդ դեկոսի կայսեր, և ոմանք դագնոս թագաւոր կոչեն) ։ Սա էր հալածումն քրիստոնէից, և հայհոյեալ լինէր անուն տն. և նեղէին ըզքրիստոնեայս ամ ուրեք ։ Նոյն յայնմ ժամանակի մարգարիտն շանագլուխ էր յասորիս. քանզի եգիտ զնա կոմս մի 'ի պատերազմին, և զինուորեցոյց 'ի զօրս իւր. և 'ի գալ յուլիանոսի յանտիոք՝ եած զնա առ թագաւորն իբրև այր անձնեայ և կորովի և գոռ պատերազմօղ. վն և պատուեալ լինէր յաչս մեծի և փոքու 'ի մէջ զօրականին ։

Սակ ինքն մարգարիտ՝ որ ակն ունէր յերկրի անդ քրիստոնէից համարձակ պաշտել զՔս, իբրև տեսանէր զգործս ամբարշտութե որ քան զոր զօրացեալ, զայրանայր յոգի իւր և խռովէր ։ Սա շարժմամբ սրտին 'ի շնորհաց հոգւոյն սբյ՝ աղաչէր զԱծ լինել ձեռնտու և ապաւէն յամի. և խնդրէր՝ զի համարձակեսցի խօսել զբանն կենաց նովին բարբառով և լեզուաւ, զոր վարէին զօրքն արքունի և հալածիչքն, այս յունարէն. զի ոչ էր տեղեակ լեզուացն. և թերևս անկարանայր կոկորդահնչիւն լեզուաւն վարել ըզքեկքեկ հելլենախօսութի ։ Սա ած շնորհեաց

ասեն՝ ո՞րպէս հաճոյ թուի, արասցես ։ Յայնժամ առաքեաց դատաւորն զօրական երկերիւր՝ տեղեկանալ վ՟ այնր, և ածել զնա յատեանն, զի ստուգագոյնս գիտասցէ վ՟ նորա ։

Իսկ երանելւոյն յայնմ պահու երթեալ էր 'ի տուն աղօթից, և կայր յաղօթս 'ի ծածուկ առաջի բեմին, և ասէր առ ա՟ծ. Գոհանամ զքէն տ՟ր վ՟ մեծի շնորհացն քոց, զոր շնորհեցեր ինձ ճանաչել զքեզ, և առնել զկամս քո. և այժմ մի՛ թողուր զիս 'ի քումմէ օգնականութենէ, այլ առաջնորդեա՛ ինձ 'ի խորհուրդս կամաց քոց ըստ հաճութեան քում. և բա՛ց զբերան իմ 'ի խօսել զբանն կենաց առաջի թագաւորաց և դատաւորաց վասն անուա՛ն քո 'ի վկայութեան. զի բարձրասցի անուն քո և փառաւորեսցի. զի դու միայն ես փառաց և պատուո՛յ արժանի ։ Զայս և զայլ ամ՟ն նման պաղատէր երանելին առաջի տ՟յ ջերմ արտասուօք ։

Եւ ահա 'ի վ՟ հասին զինուո՛րքն, և պատմեցին նմ՟ զբանս դատաւորին. և ասեն՝ թէ տանել զքեզ եկաք հանդերձ կապանօք յատեանն ։ Իսկ նա ասէ արիաբար. ք՟ս արձակեաց զիս 'ի կապանաց սատանայի և յամ՟ 'ի պատրանաց նր՟, և առաջնորդեաց 'ի խաւարէ 'ի լոյս, յանա՟ծութենէ յա՟ծգիտութիւն ճշմարիտ. խնդութ՟բ ընդունիմ զկապանս և զչարչարանս և զմահ վ՟ ք՟սի. զի նա վ՟ իմ կրեաց զայս ամ՟ կամաւորութ՟բ, որ տ՟րն է երկնի և երկրի. և որ ծանեան զնա և հաւ-

տա

քրիստափորի արժանացաւ առաջին զօրակա-
նաց, և այլ ևս աւանդութիւնք յետնոց՝ արքա-
քայ հին և հարազատ վկայաբանութեանս :(6)
Նորդ՝ երեքն, որ մկրտեաց զքրիստափոր,
և զերկերիւր զօրականսն, յանձն արարեալ
զնոսա շնորհացն՝ որ ՚ի ք՟ս յ՟ս, գնաց ՚ի նոցանէ :
Իսկ երանելին քրիստափոր մխիթարել ըս-
կսաւ զնորահաւատսն. ասէ. որդեակք իմ՝
զորս ՚ի ք՟ս յ՟ս աւետարանաւն ծնայ, տեսէք՝
թէ ում եսուք զանձինս ձեր ՚ի ծառայութի.
հաստատուն կացէք յամ՟ ՚ի գործս արդարու-
թե. և հանձոյ եղեալ ք՟ի յուսոյն մերոյ՝ ժա-
ռանգեսջիք զփառսն յաւիտենից : Այլ նոքա
միաբանոն ըմբռնի առնէին, եթէ ը՟դ քեզ եմք
՚ի կեալ և ՚ի մեռանել. զոր ինչ կամիս՝ արա :
Այլ ասէ ցնս. երթիցուք յատեան. և որպէս
հրամայեցաւն ձեզ ՚ի դատաւորէն, կապա-
նօք տարջիք զիս ը՟դ ձեզ. և ն՟ք ոչ կամէին.
այլ նա հաւանեցուցանէր անսալ. Այլ եղև
իբրև տարան զերանելին կապանօք առաջի
դատաւորին դիկոսի, ահաւոր իմն տեսլեամբ
երևեցաւ նմա ն՟րն ՚ի ձեռն շնորհացն ք՟ի,
թող զբնաւորական դէմսն ահագինս. և
հարցանէր ցնա մեղմով. զի՞նչ է այս՝ զոր
լսեմս զքէն, վրէժ խնդիր լինել քրիստոնէից,
և զանձն արհամարհել և զհրամանս թա-
գաւորաց. զի՞նչ անուն է քո, կամ յորմէ
ազգէ ես. ասէ սուրբ աստուածութեն :
Պատասխանի ետ ն՟րն. զազգն իմ կերպարանքս ցու-
ցանեն. և անուն իմ ՚ի քրիստափոր փոխե-
ցաւ միջնորդութե, զի զք՟ս զգեցեալ եմ. և
մեր

մերկացեալ զխաւար կռապաշտութեան՝ փա-
ռաւորեմ զԱծ Ճշմարիտ, և արհամարհեմ
զկուռս կռեալս կոփեալս և արարեալս. ան
և զհրամանս Թագաւորաց զհակառակս Ճշ-
մարտին Այ և Թագաւորին երկնաւորի, որ
միայն ունի զանմահութիւն բնակեալ 'ի լոյս
անմատոյց: Ասէ դատաւորն. մի՛ այդպէս
յանդուգն բարբառիր. այլ հաւանեալ զո-
հեա՛, և պարգևս մեծամեծս ընդունիցիս 'ի
Թագաւորէն և պատուի՛ս և իշխանութիւնս.
ապա թէ ոչ կամիցիս, ազգի ազգի տանջանաց
նեղել զքեզ վտանգեմ, մինչև անդէն մեռա-
ցիս. և ո՛չ փրկէ զքեզ Քս 'ի ձեռաց իմոց:
Քրիստոսափոր ասէ. ո՛չ իշխանութիւնդ քո պի-
տոյ է ինձ, և ո՛չ պատուի՛դ և ո՛չ պարգևքդ,
զոր խոստանաս առ 'ի հաւանեցուցանել զիս.
և ո՛չ 'ի տանջանաց քոց երկուցեալ հաւա-
նիմ, և ո՛չ 'ի մահուանէ՝ զոր ածելոց ես 'ի
վր իմ. ես յԱծ փրկիչ իմ յուսացեալ, որ
կարօղն է անշարժ պահել զիս 'ի Ճշմարիտ
խոստովանութեան. դի՛ւաց ես ո՛չ զոհեմ. զոր
ինչ առնելոց ես, արա՛ վաղվաղակի:

Յայնժամ հրամայեաց դատաւորն կախել
զնա. և քերել և այնպէս ընդերկար տան-
ջեալ՝ ամենևին ոչ խոտորեցաւ 'ի բանից բրա-
նաւորքն, այլ միայն գոհանայր և օրհնէր
զԱծ. մինչև զարմանալ դիկոսի, զի առ
ոչինչ համարեցաւ զտանջանսն. և խորհէր՝
թէ զինչ արասցէ: Անդ մատուցեալ ուրումն
յանօրինաց՝ ասէ ցիշխանն. կոչեսցեն կա-
նայք պոռնիկք, և արգելցի դա 'ի տան ու-
րեք

րեք նոքօք . և այնպէս հաւանեցի 'ի ձեռն նոցա : Զհաճոյ թուեցաւ դատաւորին խորհուրդն չար . և հրամայեաց կոչել երկուս պոռնիկ կանայս , որոց անուանք էին Կալլինիկէ և Ակիւլինէ . և խրատ ետ նց՟ զարդարել , և կերպարանօք պոռնկութե՟ լուծանել զն՟րա 'ի զգաստութե՟նն . և այնպէս ածել զնա 'ի հաւանութի՟ կամաց իւրոց :

Իբրև տարան զ՚Քրիստափոր 'ի տունն , և ըզպոռնիկսն զկնի , յաղօթս եկաց ն՟րն առ ա՟ծ խնդրելով զդարձ պոռնկացն . հեղոյր զարտասուսն առաջի ք՟ի վ՟ն նց՟ փրկութե՟ և թողութե՟ մեղաց , և առաջի արկանէր զշնորհս մարդասիրութե՟ն . զի քո են ամէ արարածք , և քեզ լիցին երկրպագուք՝ սրբեալ 'ի մեղաց հաւատով և մկրտութ՟բ արեան 'ի փառս քո : Իսկ յետ աղօթիցն սկսաւ քարոզել նց՟ զբանն կենաց և սրբութե՟ : Իսկ նք՟ հաւանեցին յազդմանէ ա՟յ 'ի ձեռն աղօթից ն՟րյն . քանզի հաւատացին յաւուր յայնմիկ երկոքեանն իսկ յա՟ծ , և խոստովան եղեն և լացին սրտի մտօք զմեղս իւրեանց . և յանձն առին զսըրբութի՟ և զմահ վ՟ն ք՟ի . միայն թէ ընկալցի ասեն զմեղաւորքս ողորմած տ՟րն :

Ապա հրաման 'ի դատաւորէն՝ կոչել զն՟ա առ ինքն . և իբրև գնացին , հարցանէր դատաւորն առանձինն ցԿալլինիկէ և ցԱկիւլինէ . հաւանեցուցի՞ք զայրս այլազգի 'ի կամս ձեր և 'ի փառս ա՟ծոցն . Իսկ նք՟ ասեն . ոչ եթէ դա 'ի մեր կողմն շրջեցաւ , այլ մեք դարձաք ծանեաք զք՟ն ա՟ծ , և զկուռսն արհա-

մար-

բանաւոր, զի ոչ կարացեր հաւանեցուցանել զիս տանջանօքդ՝ զոր ածեր 'ի վ(երայ) իմ. այլ զօրութ(եամ)բն ք(րիստոս)ի մարտեայ և յաղթեցի այնմ, որ 'ի ծածուկն քեւ պատերազմի ընդ իս, և յամօթ արարի: Այլ արդ փութամ երթանել 'ի մարմնոյս, և մտանել առ տ(եառ)ն՝ ընդ այնոսիկ, որք վկայեցին և փոխեցան 'ի ձեռն քո առ ք(րիստո)ս յոյսն մեր. զի մեր կեանք ք(րիստո)ս է, և մեռանելն շահ. և նոյն տ(է)ր է կենդանեաց և մեռելոց, որ հատուցանէ բարեգործաց բարիս, և չարագործացն տանջանս յաւիտենից, որ իբրև զքեզդ իցեն ամբարիշտ. զոր տալոց ես վրէժս յաւուրն այցելութե(ա)ն. այլ ք(րիստո)սի՛ կեցի, և վ(ասն) անուա(ն) նորա մեռայց՝ որ կեցուցանէն զիս:

Իբրև եսես բանաւորն զմիտս տ(ե)րյն հաստատուն, և զինքն յաղթահարեալ յինմէ, բարհեցաւ փութով կարծել զնա 'ի կենաց, զի մի և այլք հաւատասցեն նովաւ. 'ի ք(րիստո)ս; և արհամարհեսցին սնոտի պաշտամունքն. վ(ասն)յ հրամայեաց սրով բառնալ 'ի կենացս զերանելին: Այլ իբրև տարան 'ի տեղի սպանմանն, աղաչեաց զգահիճսն անսալ սակաւիկ մի, զի յաղօթս կացցէ. և խոնարհեցուցեալ ծունր՝ ասէր համարձակ արտասուօք այսպէս.

Տ(է)ր ա(ստուա)ծ յիշեա՛ զիս, որ վ(ասն) անուա(ն)դ քո մեռանիմ. և ընկա՛լ զիս ը(նդ) այնոսիկ, որոց փառաւորեալ են մահք իւրեանց առաջի քոյոյ տ(է)րութե(ա)ն. որ փրկեցեր զմեզ յա(մենայ)ն նեղութե(նէ) չարչարանաց, և զատելիս մեր յամօթ արարեր.



րեր. և զյոյսն իմ հաստատուն պահեսցես՝ որ առ քեզ։ Նաև ես զի՞նչ տաց տրիտուր տեառն ընդ ամի՝ զոր և ետուր ինձ, այլ զբաժակ մահու ընկալայց, և զանուն տեառն կարդացից. և խոստովան եղէց քեզ տէր վասն ողորմութեան և ճշմարտութեան քո։

Ընդ յոյս իմ և կեանք և փառք, տէ՛ր շնորհօ հանգստեան իմոյ՝ յօգուտ հաւատացելոց վասն փառաւորութեան անուան քո. զի որք յիշեսցեն զչարչարանս իմ, որ վասն անուան քո եղեն, և մերձեսցին 'ի նշխարս ոսկերաց իմոց, որք նեղեալ են 'ի պէսպէս ցաւս և 'ի տանջանս, եղիցի բժշկութիւն մարդոյ և անասունոյ. դիմաց հալածումն, հիւանդաց առողջութիւն, մեղաց լուծումն, պատերազմողաց հաւատացելոց յաղթութիւն. և ամենայն շնչոյ կենդանւոյ՝ որ տուեալ 'ի պէտս մարդկան, և բուսոց և տնկոց աճումն և պահպանութիւն. 'ի վերայ եկեղեցւոյ բարկութեան 'ի հրամանէ քումմէ՝ դարձումն ամի յամէ. զի դու ես տէր և արարիչ ամենայն արարածոց. որ հարկանես և բժշկես ողորմութեամբ քո, որպէս և կամիս։ Նաև զիս ընկա՛լ ընդ արժանաւորս քո 'ի յարկսդ յաւիտենից. յորմէ փախուցեալ են մեղք, և արդարութիւն հանգուցեալ՝ 'ի քում յում 'ի տէր մեր. ընդ որում և ես հանգեայց և փառաւորեսցից զամենասուրբ զերրորդութիւնդ ընդ տէր քո այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Նաև եղև յանկարծակի որոտումն, և ձայն՝ զի ասէր. ե՛կ զինուոր քո 'ի տեղին, զոր

հարաց . Թող զերևումն նշ՟ բազմաց 'ի տեսլեան, և զձեռնտուութի՟ւն յա՟մ կարիս հոգւոյ և մարմնոյ : Այլ և բազում խորանք և վկայարանք, եկեղեցիք և փանորայք յիշատակին շինեա՟լ յանուն սրբոյն Քրիստափորի յա՟մ երևելի քաղաքս արևելից և արևմտից 'ի հին դարուց հետէ . որպ՟ 'ի Հռոմ, 'ի Վենետիկ, 'ի Փարէզ, 'ի Մեդիոլան, 'ի Հռաւեննա, 'ի Տոռոմենա Սիկիլիոյ . 'ի Կոստանդինուպօլիս, յԱնկիւրիա . Լ՟Զ :

'Ի բազմաց անտի հին աւանդից՝ իբրև ստուգագոյն յառաջ բերէ Պինիոս Բոլլանդեան զերևումն սրբոյն Քրիստափորի 'ի վանս՝ որ յանուն իւր 'ի Գաղատիա . զի ը՟ն որում գրէ 'ի վարս սրբոյն Թէոդորոսի Սիկէովտացւոյ միոյ յաշակերտաց նորա, ածեալ եղև երբեմն առ նա մանուկ ոմն Արսէն անուն լլկեալ 'ի դիւէն . և զի ծառայն ք՟ի Թէոդորոս կամէր գնալ յայցելութի՟ 'ի վանս կուսանաց՝ որ յանուն սրբոյն Քրիստափորի վկային, ը՟ն իւր . առեալ տարաւ զԱրսէնն . և իբրև մերձ եղեն 'ի վանս, սկսաւ դևն չարչարել և լլկել զմանուկն և 'ի վեր ամբառնալ . և տագնապեա՟լ դիւ՟ին յինքեան՝ աղէր . եղանիմ ով երկաթակուռ, միայն արձակեա՛ զիս, և նոյնժամայն 'ի բաց մեկնեցայց : Այս զայս ասացեա՟լ՝ տեսանէ զս՟րբ վկայն ք՟ի զՔրիստափոր, զի գայր ընդառաջ ծառայինն ա՟յ . յայնժամ գոչեաց դևն մեծաձայն, և զգետնեալ զմանուկն առ ոտս նշ՟ ել 'ի նմանէ . և մանուկն զգաստացեալ՝ գնաց ընդ երանելւոյն Թէոդո-

և առաջիկայս վկայաբանութիւն սորին քրիստոսափորի , զոր տամք 'ի ճառընտրէն նշանակելոյ՝ ուրեք Ը իմաստից, և ուրեք Ը բառից. ուր առ այլս՝ մանաւանդ առ լատինս՝ պակասի հարազատ պատմութիւն սորա ։

Տանելի է Հ. և Հ=Յ. Է Ց. բս. և ԺՄ. որք համարին իբր համառօտութիւն մետափրաստեսի, կմ սուրիոսի, որոյ արգարացեալ են բանք առ համեմատութե այլոց վկայագրաց գտելոց յարևմուտս մի քան զմի բարգաւաճութբ և անհեթեթ հանգամանօք լի. մինչ զի դժուարին է իմաստնոց զատել զնոսին յառասպելաց. այլ վս Է քերան մատենեն այնինս և սուրբերինս բոլլանդեանք, զի գտնէ զգոյութիւն սորին քրիստոսափորի պաշտպանեացեն՝ գրեթէ առանց կարօղ լինելոյ պահել զգոյացութիւն պատմութեանց գտելոց 'ի մէջ իւրեանց. յորս հայեցեալ Նորաղանդից՝ կեղծիք անուանեցին զանձն և զանուն սորին զամ աւանդութբք հանդերձ որ զնմանէ ։

Յայս տեսարան ակնարկեալ մեր՝ երկու ինչ իմաստասիրեցաք. Նախ՝ թէ զանձ մեծ պարգևեալ լինէր բոլլանդեանց, եթէ 'ի ձեռս առեալ նչ որք զօրինակ հարազատ վկայաբանութեանս մերոյ, յորում չէք և ոչ մի 'ի խորտցուցիչ պարագայից, կամ 'ի սոսայօդ բանից անտի. և երկրորդ՝ թէ չէր արժան սուրբերեան և ընկերաց նց աշխատիլ 'ի հանել Էգիմութիս յամ վարուց սրց. այլ միայն այնպիսի աւելարան օրինակաց ընդդէմ կալ, զի երևեցի ընտրուն նց անաշառ. ոչ դիւրաւ վճռատու լինել Ը օրինակի Նորաղանդից՝ առ հաճելոյ ըղձիսս նց, այլ ասել՝ թէ ամ վարք ունին զօրինակ հարթ և անհարթ, ճշմարիտ և սուտ. և ցորչափ չունէին 'ի ձեռին զհարթ և զճշմարիտ օրինակ, պարտ էր խոստովանել՝ թէ ոչ կարեմք գտանել որոշել, թէ որ բան իցէ սոսայօդ 'ի խարգախեալ օրինակս, մինչև 'ի ձեռս բերցուք զստուգապատում օրինակ ։

Այսպէս այնինս բոլլանդեան բերեալ բազմապատիկ օրինակս վկայաբանութե անյայս լինի ընտրել և ոչ զմին. բայց քանզի Դաւարոց վկայ ճանաչէ զքրիստոսափոր, ճգնի զայն և եթ ցուցանել՝ թէ գոյ իրօք սր այս անուն հաշակեալ 'ի սկզբանէ հետէ յամ եկեղեցիս. և բերէ զընդարձակ վիճաբանութիւն սուրբերեան վս սոցին իրաց, թէ թէև պատմութիւն ուրուք 'ի սրց իցէ երկբայական, բայց ինքն սրն ոչ այ աներկբայելի ։ Եւ որ զարմանալին է, զի սա ինքն սուրբերեան՝ որ ոչ կամէր ընդունել զնշանական յառաւել անուն սորին սոփիայ և

մերում, այլև երևի առաւել յանաստոյգ աւանդութենէ՝ որ վն անցուցանելոյ քրիստոսափորի զմարգելն է գետ՝ յեցեղ 'ի գաւառդան, է որս և զմանկացեալն յն․ որ ոչ աստ_ ցուք՝ է ատուգաբանութի անունան քրիստոսափորի․ այս է քնակիր կմ քնազգեաց։ Այսու օրինակաւ գիւրին է ուղղագրել և զժամագիրս յունաց և զյայսմաւուրս հայոց և զայլս, որք ըստ օրինակի բասիլեան յայսմաւու_ րաց, կմ ըստ մետափրաստեսի խօսեցան։

Իսկ զատարացեալն և 'ի ոոցանէ, և զխաւկեալն այլ ևս անուանելի բանիւք, զանուանուն վկայագիրս արևմտեայս՝ զորս 'ի մէջ բերեն բոլլանդեանք և է վայր հարկանեն, և ոչ իսկ արժանի համարիմք ուղղագրելոյ․ այլ թէ կայցէ ինչ արժանի ուղղելոյ, անցեալ 'ի կարգիս։

(3) Պարզաբանես աւէ Ծառընտիրն մեր, թէ սէն քրիս_ տափոր էր ազգաւ շանագլուխ, առանց ամենևին յաւել_ ուածս առնելոյ՝ թէ զի՞նչ պարս է իմանալ զշանա_ գլուխն լինել, որպէս ոմանք յաւելուածոյ յայս և յայն մտաց իմացան։ Արդ թէ կայի՞ն մարդիկք յայն կերպ_ արան և անուն, թող Յագիրք ասացեն․ մեք այսչափ ծանուցանեմք, թէ աւլոս գելլիոս կմ ագելլիոս լատին քերթող և մատենագիր անուանի յաթէնս յերկրորդ դարու, գրէ 'ի Թ․ գիրս ատտիկի․ Գլ․ 41․ թէ * կային 'ի » լերինս Յին հնդկաց մարդիկ շանագլուխք և զռչան_ » չօղք ||։ Այլ է և ազգ մարդակերաց յՅին սկիւթաց_ ւոց 'ի հիւսիսակողման՝ ըստ պլինիոսի և այլոց հնախօսից։ Այսպ 'ի զուր է ոմանց 'ի յետնոց երկուճանալն՝ թէ գու_ ցէ փոխանակ գրելոյ վն ոճին քրիստոսափորի յազգէ քա_ նանացւոց (որ աստ 'ի լատ՝՝ քանանէոս), գրեալ իցէ քա_ նինէոս, որ է շանական․ եւ առաւել ծաղրական՝ զը_ նելն ուրումն յանխմաստ գրչաց, թէ սխման կանանա_ ցին մերոյաց զքրիստոսափոր, և յայնմանէ կոչեցաւ քա_ նանէոս․ ուր տմ վկայագիրք հյ․ յն․ և լտ․ բացայայտ գրեն, շանագլուխ, ոչ և ոմանք շանադէմ կամ շանե_ րես։

(4) Դարձեալ պարզաբանէ գրէ Ծառընտիրն 'ի վերնա_ գրի և 'ի կարգի պատմութեն, թէ անուն սբյն էր յա_ ռաջ Մարգարէս․ և այն եւս՝ առանց այլազգական հնչ_ ման․ բայց մեզ հարկ եղև յաւելուլ՝ ա․ 'ի բառնալ զխառնակս այլոց գրչաց․ քանզի 'ի Հ․ եգեալ էր այս_ պէս․ * ռէպրոբէս (կմ ռեբրոբէս, ըստ ոմ ինչ ), որ » թարգմանի մերժելի․ քանզի այս էր սաստկին ա_ » նուն նորա ||։ արդ ոչ այլ բառ պատշաճ յայլ ազգս

գաւոր կառապան : Արդ քանզի Ճառընտիրն մեր զնա զՔրիստափոր առ յուլիանոսիւ նահատակեալ 'ի Դեկոսէ զաստաւորէ, մեք զիւրաւ ուղղագրեմք զերկաքանչիւր կողման սխալանս, դնելով զՔրիստափոր ըմբռնեալ 'ի գերութեն առ կոստանդեաւ, և նահատակեալ առ յու-
լիանոսիւ 'ի Դեկոսէ :

Սխալանք անուանն Դեկոսի կայսեր առ բազումս է. իսկ որք զաստաւոր Դեկոս կամին ասել, նք և ս կոչեն զնա գազանոս կուսակալ կմ Թագաւորիկ կմ Թագաւոր : Սոլլերիոս՝ որ ընտրէ Դեկոս կայսր ասել, վայրապար աշխատակէ զիւրաւ զայն բան Կոմբեփիզայ առն ի- մաստնոյ. * Աւելի պատրանաց եղև Բարոնիոսի ա- ,, նուանս գազնոս, որով համարեցաւ՝ թէ Քրիստափոր ,, առ Դեկոսիւ ինքնակալաւ վկայեալ իցէ. ուր անուանն ,, այն ոչ զկայսր, այլ՝ զփոքրիկ Թագաւոր և զկուսա- ,, կալ ցուցանէ յայտնապէս, որ ունէր իշխանութիւն ,, այնու օրինակաւ նեղել զքրիստոնեայս ||: Զյուլիա- նոս յանուանէ յիշէ □ մեզ միայն Թովմաս ոմն տրու- գիլեան, յայտ է թէ յընտիր օրինակաց ուստեք գտեալ:
(6) Եթէ առ լատինս լոկ այդ աւանդութի լինէր, թէ Քրիստափոր բարձեալ իցէ յուս իւր զՔս, ոչինչ դըժ- ուարութի էր մեզ ներել այդմ. բայց զի իմացիր՝ թէ որք այսպիսի յաւելուածս ունին, զողջոյն իսկ պատ- մութեն տարապայման բանիւք կցկցեն, կմ յառասպե- լապատուամ զրչաց են քաղեալ, նշանակեցից զքանի. մի գիւտս անանիմոսի □ անանուն լատին հեղինակի՝ ըստ յառաջ բերելոյ բոլլանդեանց իրաւացի զծիծաղականութի. որով և յարգ հարազատ վկայաբանութեանս քաջ ևս ծա-
նիցի :

Դնէ անանիմոսն այն, թէ Քրիստափոր եկն 'ի կղզւոյ ուստեք յազգէ շանակամաց 'ի սամոս քաղաք ասորւոց (Թերևս իմանայ զլամ, որ է Դամասկոս) 'ի Թզրութե գազանաւ. և 'ի մկրտութ լուսաւորեալ՝ յորժամ աղօ- թեր առ ած, լոյս ծագեաց 'ի վր նր. և յերկնից ըն- կալաւ լուսաւոր ամպով զմկրտութի : Եւ ցուցանէ զնա յառաջագոյն իբր անբան ոչ լինել, և ապա ընկալեալ զխօսումն զօրն. նմին իրի և դնէ 'ի բերան նր աղօթս գոհութե, փառք քեզ ած ասէ՝ * որ փոխես զլեզուս
գազանաց, և տաս նց լեզու մարդկային ||:

Դնէ՝ թէ նախ կին ոմն հեթանոս ետես զնա, և զար- հուրեցաւ. քանզի մարմինն՝ մարդոյ, և գլուխն՝ շան է- րեւէր. և կոչեաց զայլս 'ի տեսանել զնա. և 'ի ժողովել
բազ-

# ՏՕՆ ԵՓԵՍՈՍԻ ՍՐ̃ ԺՈՂՈՎՈՅ

## Երկու հարիւր հայրապետացն ։

Հ. հոկտ. 14. և քեոր. 5 ։ Տր եէլ. քեոր. 6 ։ Սեանհոր. համ պատմուԹեան ժողովոյ ։ Խորէն. և այլք ։



ԳԵՂԵՑԻԿ ԽՈՐՀՐԴՈՎ յայսմ վայրի յառաջ քան զշաբաԹապահս նր̃ ա̃ծածնի՝ միով շաբաԹով յառաջ քան զվերափոխումն նորին, կարգեցեալ է 'ի մեզ յիշատակ սր̃յ ժողովոյս, որ եղև վրէժխնդիր պատուոյ ա̃ծամայրուԹ սր̃յ կուսին, և փառաց ա̃ծորդւոյ նր̃ միածնի, Եղեալ չար հերձուածոյ մարդադաւանն նեստորի ։ Վասնզի այս նեստոր աշակերտ Թէոդորոսի մոպսուեստացւոյ՝ աշակերտին դիոդորի տարսոնացւոյ, ազգաւ՝ ոմն ասորի՝ ասորի նասրանի, անարժանուԹբ նստեալ յաԹոռ պատրիարգուԹ կոստանդինուպօլսոյ զկնի արսակիոսի և ատտիկոսի յաջորդացն ոսկեբերանի՝ յամի տն. 428. չարաչար մոլորուԹն հրէական 'ի վեր երևցոյց 'ի խորհուրդ հրաշալի մարդեղուԹ բանին այ, և հայհոյեաց զամենամս̃ք կոյսն ոչ զոլ ա̃ծածին, այլ՝ լոկ քս̃ածին, որպէս Թէ

մար-

Զհայրապետեաց աստի եղեւ ս̄ն Պրոկղ՝ աշակերտ Ոսկեբերանի՝ եպ̄ս Կիւզիկոնի ( որ յետ Նեստորի եւ Մաքսիմիանոսի եղեւ պատրիարգ Կոստանդնուպօլսոյ ) . եւ առաւել եւս ս̄ն Կիւրեղ Աղեքսանդրու հայրապետ , այր լի ա̄ծային իմաստութ̄ եւ զօրաւոր գրով . որ զառաջինն 'ի ձեռն Թղթոյ խրատեաց զՆեստոր՝ ձայնակցութեամբ այլոց ողջամիտ եպ̄կոպաց , 'ի բաց կալ յայնպիսի մոլար վարդապետութենէ . եւ յանսաստել նր̄՝ ծանոյց զիրսն Կեղեստինոսի Հռովմայ հայրապետին ։ Նա եւ իբրեւ յա̄մ կողմանց յաճախեցին ազդարարութիւնք առ Նեստոր , եւ նա անլսող գտաւ , գումարեաց մեծն Կիւրեղ ժողով յեպ̄սացն Եգիպտոսի , եւ գրեաց երկոտասան նզովս ը̄դդէմ նորաձայն վ̄դպտութ̄ն Նեստորի . բայց իշխեաց նա զը̄դդէմսն գրել . Արդ 'ի յաճախել երկպառակութեանց եւ շփոթութեանց յեկեղեցւոջ ք̄սի , այնուհետեւ խաղհրդով եւ հաւանութ̄ կայսերն Թէոդոսի փոքու եւ Կեղեստինոսի պապին սահմանեցաւ լինել սիւնհոդոս տիեզերական 'ի փոքրն Ասիա 'ի ծովահայեացն Եփեսոս . եւ եկին 'ի ժողով անդր փոխանորդք Կեղեստինոսի , եւ այլ երեւելի եպ̄սունք յայլեայլ ազ̄ց իբր երկերիւր . յորս էր իբրեւ բերան ժողովոյն ս̄ն Կիւրեղ Աղեքսանդրացի , յամի ա̄ն 431 ։ Որք միաբան հաւանութ̄ եւ հոգւովն ս̄բ. հաստատեցին զհաւատս ուղղափառութե , եւ նզովիւք հերքեցին զչար աղանդն Նեստորի , եւ դաւանեցին զն̄ա կոյսն Մարիամ ա̄ծածին ,





նոր առաւել 'ի կողմանս ասորեստանի, որք Նաստուրիք նեստորականք կոչեցան, իմիք նմանն նմա, և իմիք տարօրինակ վրդպելով. որպ և զկնի սակաւուց ծայրայեղ խոտորմամբ ելին եւտիքեանք՝ խառնակիչք անշփոթ բնութեանց քո ։ * Իսկ ուղղափառքն ( առէ ձե-
,, ռագիր յայսմաւուրք հայոց 'ի հոկտ. ԺԴ.)
,, հաստատեցան 'ի հաւատս ամենասրբ եր-
,, րորդութեան և միասնական ածութեան, այլև
,, 'ի մարդեղութիւն քո, և 'ի Ճշմարիտ միու-
,, թեան ( կամ 'ի Ճշմարտութիւն ) երկուց յատուկ
,, բնութեանց քո այ մերոյ || ։

Այս ժողով հրաւիրեալ էր և սրբոյն սահակ պարթև հայրապետ հայոց. այլ անպարապ գտեալ՝ վն երթևեկելոյ իւրոյ 'ի պարս, թղթով ևեթ յայտնեաց զմիաբանութիւն իւր ընդ նըց հարց ժողովելոց. որ և յետ աւարտման սոյն ժողովոյն՝ գլխաւոր հարքն առաքեցին առ սրբն սահակ զվճիռ ժողովոյն և զկանոնս նր հանդերձ առանձինն նամակօք՝ 'ի ձեռն երանելոյն ղևոնդեայ և այլոց աշակերտակցաց նր, որք յայնժամ 'ի կոստանդինուպօլիս դեգերէին վն թարգմանութե ։ Իսկ մեծն սահակ իբրև ընկալաւ զիրսն, հաստատեաց զնոյն Ճշմարտութի ժողովով եպիսկոպոսաց և վրդպաց հայոց. և ամ իրօք զգուշացոյց և ամրացոյց զհօտ իւր՝ անարատ խոստովանութեամբ պարսպեալ զամենեսին 'ի քն յն 'ի տր մեր. որում փառք յաւիտեանս. ամէն ։

ԻԲ. Ee ՆՆՋՃՄԱՄՆ

յիշեցուցանել հաստատեցելոց զընթացս հը-
րաշալի վարուց և կենաց նր̃ · ոչ այնչափ ը̃
յղութեն և ծննդեանն և ընծայմանն 'ի տա-
ճարն, որք նշանակին 'ի պատմութե վարուց
ծնողաց նր̃ յովակիմայ և աննայի, և ոչ ըստ
խորհրդոյ՝ աւետմանն, կամ այցելութե, և
կմ ծննդեանն քի̃, և քառասնօրեայ գա-
լստեանն 'ի տաճարն, որք տէրապէս տօնա-
կանք են, այլ միայն՝ նախ ը̃ ծաղկաքաղ
յիշատակութե երկնային քաղաքավարութե
տիրուհւոյս տիեզերաց 'ի վր̃ երկրի՝ մեզ յա-
ընթնակ, որչափ ինչ նշմարեմք 'ի բանս սր̃ց
աւետարանչաց · և երկրորդ՝ ըստ ցանկալի
կատարածի կենաց նր̃ և յերկինս վերելու-
թե, որպէս և զիարդ ուսանիմք յաւանդութե
կաթողիկէ եկեղեցւոյն մր̃ ։

Արդ՝ ոչ̃ գիտելի է ամենեցուն 'ի սր̃ աւե-
տարանէ, փառաւորեալ կոյսն Մարիամ
ա̃ծածին, էր 'ի նազարէթ քաղաքէ գալի-
լեացւոց հրէաստանեայց՝ յազգէ յուդայ, 'ի
տանէ դաւթի, խօսեցեալ ը̃ օրինաց առն
արդարոյ 'ի նմին ցեղէ՝ յովսեփայ հիւսան,
հայրենեօք բեթղեհէմացւոյ, և բնակութե
նազարէթացւոյ ։ Այս եղև, զի մինչև եկեալ
էր նց̃ առ միմեանս, առաքմամբ հրեշտակա-
պետին գաբրիէլի յա̃յ՝ առ սերովբէն հոգե-
ղէն մարիամ, յղացաւ կոյսն մաքուր ան-
սերմն յղութե զբանն ա̃ծ՝ հովանաւորութե
հոգւոյն սր̃յ ը̃ հաճութե կամաց բարձրե-
լոյ հօր · և եղև օրիորդն անարատ՝ ոչ ծնող
մարդոյ լոկոյ, այլ՝ ա̃յ մարդացելոյ յանփոփու-

[redacted]



ճական արգանդի նր. վս զի որդւոյն այ եղեւ որդի մարդոյ՝ մարմին ճշմարիտ զգենլով՝ի սբյ կուսէն, ամիւ նման մեզ՝ բաց 'ի մեղաց, առաւելապէս նման մօր իւրոյ և կուսի՝ կերպարանօք և բնաւորականօք, անմայր ծընունդ. հօր ըս ածութն 'ի յաւիտենից՝ եկաւորեալ յանհայր ծնունդ մօր ըս մարդկութն 'ի ժամանակի, յաղագս մեր մարդկան և վս մերոյ փրկութն, ըս խոստմանն եղելոյ առ նահապետս ածահայր անուամբ պատուեալս, մանաւանդ առ աբրահամ և առ դաւիթ, որհնիլ 'ի զաւակի նոցա ամ ազանց:

Նաւ քանզի 'ի վեր էր բանս այս քան զամ միտս և զխորհուրդս, խորհուրդ խորհրդոց՝ հրաշափառագոյն, անճառ և անհաս արարածական տեսութն մտաց, թող թէ պատմողական բանիւք ըն գրով արկանելի, ըստ նմին և վարք կուսին ընտրելոյ յայսպիսի պատիւ անզուգականն՝ իմն յածամայրութիւն, հարկաւ պահիւր 'ի խորին թաքնութն անթարգմանելի պատմութն, և ոչ թողացուցեալ լինէր 'ի հոգւոյն արձանագրել աւետարանչաց աւելի ինչ քան զանձնէ նորա, բայց միայն 'ի պէտս կարգի լրման աւետեսութն մեծի խորհրդոյն. զի զինչ և ասէին, փոքր էր առ նր մեծութնն. նմին իրի շահամարեցան ցուցանել մասամբ, թէ ով է կոյսն այն զուշակեալ 'ի տեսանողէն. ահա կոյս յղասցի և ծնցի զորդի, և կոչեսցեն զանուն նորա էմմանուէլ, որ թարգմանի ընդ մեզ





մեզ ած ։ Բաւական համարեցան վկայել՝
մայր յոյժ զնա գոլ, և զայս լինել նոյն ինքն
քս որդի այ կենդանւոյ , բանն ած ծնեալ
'ի կուսէ ։ Զանուն կուսին նշանակեցին
Մարիամ (որ է ըստ եբրայականին Միրեամ,
և կամ Մարեամ) առ որոշելոյ զնա յայլ դըս-
տերաց եւայի՝ իբրև մի միայն աստղ լուսա-
պայծառ , և զմայրութիւն նր 'ի կուսութեան և
զկուսութիւն 'ի մայրութեան յայտնաբանեցին՝.

Նշանակ ածային տնտեսութեան ։

Բայց թէ որպիսի էր քաղաքավարութիւն այս-
պիսւոյ անարատ մօր և կուսի , միակ աղաւ-
նոյ կատարելոյ , լռութիւն առաւել հռչակե-
ցին , և մեզ թողին զառաւելագոյնն իմաս-
տասիրել յարդեանց գործոց պաշտամանն ,
յոր ընտրեցաւ , քն 'ի մայրութիւն որդւոյն այ .
միանգամայն և ուսուցին խելամուտ լինել
գէթ նշմարանաց գերհրեշտակային առա-
քինութեանց նր յիրս իրս , զորս արար կմ խո-
սեցաւ 'ի կարգի տնօրէնութեանց միածնին իւ-
րոյ ։

Զխոնարհութիւն նր և զզգաստութիւն միան-
գամայն խորագոյնս մեզ ծանոյց աւետա-
րանիչն , զի իբրև առնուլ ասէ զբերկրալիր ող-
ջոյն գաբրիէլեան աւետեաց մեծի , խռո-
վեցաւ իբրև այնպիսի բանս գերաստիճան ան-
ձին բարձրութեան կոյսն շնորհալից . և առ-
նմին զմեծանձնութիւն դշխոյական յայտնի
կացոյց , զի ոչ երկեաւ ինչ ոչ զայլոյն յերկ-
նաւոր հրեշտակէ , այլ բան առ բան պինդ
տանէր պատգամաւորութեան՝ որ յածակոյս

Մերաշխաւորութեն
կողմանէ :

Մնդանոր փայլեաց և գեղեցիկ մարգարիտ կուսական մաքրութե նր, ծայրագոյն պարկեշտութե յայտարարող զնէր ողջախոհութե՝ ուխտիւ չափ պահելոյ զանթառամ ծաղիկ անապականն կուսութե. մինչև չառնուլ յանձն և մայր այ լինել, եթէ ոչ՝ պայմանաւ միշտ կոյս մնալոյ. յորում միանգամայն և հանճար և իմաստութի և այլ ձիրք եօթնարփեան հոգւոյն շնորհաց համեղխառնեան տիրապէս, զոյգ է հլու հնազանդութե կամաց բարձրելոյն՝ 'ի հաստ լինել խորհրդոյ բանին այ :

Որդ՝ եթէ պատրաստուէ կուսին այսպէս, զի՞նչ ասիցէ ոք յետ կատարմանն խորհրդոյ ածամայրութե. լցեալն շնորհօք հոգւոյն սրբու փառօք միածնին է ինքեանել յարգանդնօքս. անդ կատարեցաւ առաւ բանին. այլ փառք դստեր թագաւորի 'ի ներքոյ. նոյն ինքն զաւառ հօր երկնաւորի, նոյն ինքն հարսն հոգւոյն սրբոյ, և նոյն ինքն մայր բանին այ : Այս խրատամբք գոչէ հոգեկիր հաւտոյն մեր. այլ որքան մեծ է 'ի քերթ առաջեալ խորհրդոյ որ'րբուհի : Այլ մեք 'ի կարգ աւետարանական պատմութեն յառաջացեալ՝ անկանիրկել 'ի հրաշակերտ այ յանձին կուսի և մօր. որ մայր այ ընտրեցաւ և եղև, և տակաւին աղախին զանձն անուանէ, և 'ի ապաստաւորել կամաց նր ձեռին յանձն :

Նոյն ածսորդութե՞ զոր 'ի ծոց կատարելութե ունէր որ ածամայր, խոկ և խոկ պատմել

մեզ

մեղ ընծայեցոյց սիրոյ ընկերին՝ Քս աւետա-
րանագիր կարգի. զի զայս յայտ առնէ ան-
յապաղ փոյթ նր երթալ 'ի լեռնակողմն 'ի
խնդակցութն եղիսաբեթի ազգականին իւ-
րոյ յամլութն և 'ի ծերութեան ծննդական
եղելոյ. ուր և խոնարհութիւն առ ստորինս
անհամեմատ. զի մայր Թագաւորին առ ծա-
ռայածին աղախին կանխէր յայցելութն,
Ածորդւոյն՝ որ յարգանդի՝ սրբել զկարա-
պետ նր յարգանդի մօրն : Յորմէ զարհու-
րել եղիսաբեթի, զի ծանեաւ հոգւով՝ զոր
'ի կուսին խորհուրդ գերագոյն, աղաղակէր.
օրհնեալ ես դու 'ի կանայս, և օրհնեալ է
պտուղ որովայնի քո. և ուստի՞ է ինձ այս,
զի եկեսցէ մայր Տն իմոյ առ իս : Որով բա-
նիւ՝ նախկին դաւանող Ածամայրութն մա-
րիամու եղև երանելին եղիսաբէթ՝ մկրտչին
մայր. ոչ և Ածութն որդւոյն մարիամու՝
քարոզ առաջին՝ մանուկն յոհաննէս, յորո-
վայնէ յորովայն երկրպագու ծնի. զի զի՞նչ
այլ է մայր Տն դաւանել զմարիամ, բայց
Ածածին զնա խոստովանել. և զի՞նչ երկիր-
պագանել քնի 'ի տղայութն, բայց Ած մա-
րդացեալ զնա հաւաստել: Զնոյն և քահա-
նայն զաքարիա յայտնաբարբառ դաւանէր,
մարգարէ բարձրելոյն ձայնելով զմանուկն
իւր յոհաննէս՝ որ կարապետ եղև որդւոյն
Այ և կուսին :

Իսկ զի՞նչ պարտ է ասել զխորհրդական
Ածաբանութենէ մօր բանին՝ 'ի մեծացուցանել
նորա նորահրաշ օրհներգութբ զԱծ փրկիչ

իւր, զայն, որ արար ընդ նա մեծամեծս, 'ի մայրութիւն տ՟ծորդւոյ բարձրացուցանելով զխոնարհութի՟ն նո՟ր, և երանելի առնելով զնա ա՟մ ազգաց. ո՟ր և յաւետարանի անդ երանեաց նմա միածնի՟ն իւրով՝ կինն, որ ձայն եբարձ 'ի ժողովրդեանն, ասելով առ յս. երանի՛ որովայնին որ կրեաց զքեզ, և ստեանց՝ որք դիեցուցին զքեզ: Իսկ եթէ ո՟ր տե՟ն բանի, նա՛ երանի այնոցիկ է՝ որք լսեն զբանն ա՟յ և առնեն, դրձլ և 'ի սմին կարգի դասագլուխ մարիամ մայր տ՟ն. որոյ ա՟մ խնդիր և բան և գործ՝ ո՛չ այլ ինչ էր յա՟մ 'ի կեանս իւր, եթէ ո՛չ՝ կատարել զխորհուրդն ա՟յ ըստ բանին ա՟յ:

Մ՟ծիմաստ տնտեսու՟թի տիրամօր՝ առաջնորդեալ յա՟մի հոգւով միածնին արտաքսայլէ ը՟ աւետարանին նաև 'ի դառնալ նո՟ր յետ երից ամսոց 'ի տուն իւր. զի ո՛չ տ՟ն արժան էր 'ի սպաս կալ ծննդեան ծառային, և ոչ անդ բատ կուսի մերձ լինել յերկունս եղիսաբեթի:

Իսկ զգօնամիտ և համբերատար լռութիւն՝ ազանչելի արթնութ՟բ հանդերձ, փայլէ յոչ պատմել իւր յովսեփայ խօսնաւն՝ զխորհուրդն մեծ, զոր անգիտանայր արդարն, ա՟յ և վարանէր, երբ օր քան զօր 'ի վե՟ր երևէր նշանակ մայրութե՟ն 'ի կուսութե՟. լռել լռեաց մարիամ զանպատմելիս, մինչև ինքնին ա՟ծ հաւաստարմացուցէ յովսեփայ զանհաւատալիս:

Հնազանդու՟թի էր անպարտական և երթային

ընդ

ընդ յովսեփայ 'ի բեթղեհէմ 'ի պատճառս
աշխարհագրի օգոստոս կայսեր․ իսկ ծնանել զթա-
գաւորն փառաց յօտարութե̃, և հանգուցա-
նել յայրի 'ի մսուր անքանից, ծայրագոյն
խոնարհութի̃, համբերութի̃, աղքատու-
թիւն, և հանդէս կերպարանակցութե̃ ա̃մ·
փշտաց միածնին ։ Ո̃չ և անքաւ առաքինու-
թեանց հայելի՝ բովանդակ ժամանակն այն
մեծամեծ անցից, 'ի գալ հովուաց՝ հրեշտա-
կին աւետարանութե̃, և մոգուց՝ աստեղն
առաջնորդութե̃, յերկրպագութի̃ ա̃ծորդ-
ւոյն, և 'ի գերյարգութի̃ ա̃ծամօր կուսի ։
Կամէի անդր հասանել յոտս ն̃ց անյագ փա-
փաքմամբ, զի թերևս լինէր և ինձ ճաշակ
մի առնուլ անթարգմանելի վայելչութեան
և սրբութե̃ միածնին և ծնողին ։
Ուր թողից զկետ այնորիկ զքառասնօրեայ
օրինաց կատարումն 'ի տաճարին, ո̃չ թէ
լցան աւուրք սրբութե̃ մօր անդրանչածնի․
որում անկարօտ էր կոյսն ամենասուրբ՝ ծնող
անարատ սրբութե̃ սբ̃ց հոգւոյն ս̃րբ, ինքնին
գոլով տաճար տիրական, որում ստուէր էր
տաճարն՝ յոր երթայր ։ Նաև այն՝ զի 'ի ժամ
ուրախութե̃ զկետին տխրութե̃ առնոյր անդ
զտպաւորութի̃, զառաջին վէրս անբուժելի
ցփախճան, զյիշատակ ասեմ սրոյն՝ որ ունէր
անցանել ը̃ անձն ն̃ր ը̃ մարգարէութե̃ ծե-
րունւոյն սիմէոնի ։ Ուր մաքուր աղաւնին
զգաստն ա̃յ ընծայէր հօր 'ի պատարագ բոլո-
րապտուղ, անդ և ինքն ողջակէզ մատչէր՝
կենդանախառուկեալ հոգւով ։

Ուր

գլխել զգիտաւորութիւն բանին, արդեօք միշտ 'ի տաճարի՞ բնականալ կամի իբրև 'ի տան հօր իւրոյ, եթէ իջանել 'ի Նազարէթ 'ի տուն մօր իւրոյ. մինչև յելից իւրաց իմացաւ և ցնծացաւ յոգի իւր, զի էջ յա̄ ը̄ մօրն և ը̄ յովսեփայ 'ի Նազարէթ. և էր նց̄ հնազանդ։ Օ որ խորհրդով յայտնաբանէ աւետարանիչն, զի ցուցցէ՝ թէ լռիկ 'ի տան նստաւ զա̄մ ժամանակս և 'ի պատանեկութե ը̄ հպատակութը̄ տիրամօր և երջանկին յովսեփայ, ո՛չ յառաջին 'ի տղայութեն։

Խոյզ խելամուտ լիցին հաւատացեալք 'ի սրտի իւրեանց՝ հոգւով մարիամու, թէ որպիսի էր քաղաքավարութի ածամօր ը̄ ածորդւոյն՝ 'ի կալ նը̄ ը̄ նմա մինչև 'ի չափ երիտասարդութե, դր̄ մինչև ց ժամանակ մկրտութե երեսնամեայ, և ցելս 'ի քարոզութի։ Ո՞ւր սերովբէք, ո՞ւր քերովբէք, և ա̄մ անմարմին զուարթունք՝ երկնից քաղաքակիցք, գերացունք և ածամերձք. չի՛ք և ո՛չ մի համեմատութի ը̄ սրբութի և ը̄ ածամերձութի նը̄ ածածնի, և համօրէն դասուց երկնաւորաց. զի մարիամ մայր ա̄յ, և նոքա ծառայք ա̄յ և ածամօր։ Այլ եթէ մարիամ քոյր մարթայի միան բարի ընտրեաց՝ զը̄ ա̄ն վկայեաց, զի առ ժամ մի յոտս նը̄ նստաւ 'ի լսել զբանս նը̄, ապա ուրեմն մարիամ մայր ա̄ն զբոլորն բարի՝ զաղբիւրն ա̄մ բարութեց ընտրեաց և ժառանգեաց, 'ի լսել և 'ի խօսել ը̄ նմա զա̄մ ժամանակս նը̄՝ մայրօրինակ ընտանութե̄, 'ի սնուցանել զնա՝ ջամբելով զկնի կա-

տա

[redacted]



տակաւն կաթին՝ զաշխատութ ձեռաց իւրոց
յամ՛ 'ի պէտս ապենիազ բնութե, 'ի զգե-
ցուցանել և 'ի հանգուցանել, 'ի յանձան-
ձել, 'ի տանել և 'ի բերել զանտանելին
բնութեց բոլորից, 'ի նստել և 'ի յառնել ընդ
նմա. և որ մեծն է՝ 'ի հրամայել նմա ծնո-
ղաբար, և յընդունել 'ի նմանէ զորդիական
պատիւ և զպատկառանս. ուր սէր ընդ սէր
միացեալ՝ անճառական. զի ած սէր է, և
մարիամ մայր այ՝ մայր գեղեցիկ սիրոյ։
Ահա զայս և առաւել քան զայս քարոզէ
մեզ դիրն լռութե՝ 'ի լռել անդ զմանկութե
յսի մինչև 'ի չափ հասակի կատարելութե.
անն, և զգործոց մօրն յսի ընդ յսի։ Այլ 'ի
մերձենալ աւուրց յայտնելոյ տն զանձն իւր
Ծի՝ զի՞նչ. իբրև 'ի հրամանէ մօրն 'ի կանա
գալիլեացւոց սկիզբն արար նշանաց յսի, ընդ
աւետարանի. հրաման առեալ մայրօրինակ
ակնարկութե և ազդման, որում զառաջինն
իբրև գժուարին խնդրոյ դժուարիլ ցուցա-
նէր ածորդին, զի մեզ օրինակ տացէ անսփա-
ռութե, ոչ յօժարիլ դիւրաւ զայնպիսիս գոր-
ծել՝ ուստի մեզ փառք և պատիւ ծագեն.
այլ յայսր ամի վն վերագոյն գրեաց զհնա-
զանդութի առ մայր իւր քան զամ իմն, և
արդեամբք ոչ միայն պատուեաց, այլև գո-
վեաց զմայր իւր իբրև զթագուհի առ այլս ալ-
րով, զի մի ամաչեսցեն առ պակասութեան
գինւոյն 'ի հարսանիսն, և ոչ փոյթ 'ի բարե-
խօսել առ միածինն վն ամ պիտոյից մերոց՝
որ հոգևոր և որ մարմնաւոր։ Այլ դու տես
զի-

զիմաստութիւն մօրն իմաստունէ , զի շատ հա-
մարեցաւ ասել , զինչ ոչ ունիմ . ո՛չ ասաց ,
աղաչեմ հրաշագործեա՛ , կամ կամիմ զի լցուա-
ցես զպէտս սոցա . զխտէր՝ զի բաւական էր
լսել որդւոյն զկարօտութիւն այլոց միջնորդութն
բերանոյ իւրոյ : Եւ զի անտարակոյս էր ընդ
հնազանդութիւն որդւոյն , ցապասաւորսն ազ-
դէր հնազանդիլ որդւոյ իւրում . զոր և մեզ
ասէ , զամ որ զինչ ասասցէ ձեզ՝ արասջի՛ք .
Յետ այսորիկ յիջանել նր 'ի կափառնաում
էջ ընդ նմա և մայրն . և 'ի շրջիլ այնուհե-
տև միածնին 'ի քարոզութեն ընդ ամ պաղես-
տին , առաւել 'ի հրէաստան՝ ամ յերկրին յու-
դայ և յեւէմ , և 'ի գալիլեա՝ ուստի էին մե-
ծաւ մասամբ աշակերտքն , թէպէտև ոչ շր-
ջէր մայրն յոր ընդ նմա , այլ սակայն ընդ ժամա-
ժամանակս տեղափոխէր՝ ոչինչ կարի հեռի
դեգերելով 'ի նմանէ , և հանդերձ պարկեշտ
կանամբք յայց ելանէր նմա երբեք երբեք .
զի զովացուսցէ զպապաքումն սրտին 'ի տեսու-
թէ ածային երեսաց նր և 'ի լրոյ կենարար
վդպութեն նր . և զայսօրինակ կցորդ եղև
ամ անցից ածորդւոյն 'ի ծննդենէ մինչև 'ի
կատարած :

Այնուհետև զկնի երեքամեայ քարոզութեն
յոր՝ ոչ հասանէր նմա մահ խաչի կամաւո-
րութե , նոյնպէս և մօրն կամաւոր խաչակ-
ցութե ընդ միածնին . զի ընդ թագաւորին վկայից
պսակեսցի և ինքն թագուհի մարտիրոսաց :
Աստանօր կարօտիմ գերմարդկային վկայա-
գրի , որ սակաւուք սաճներագրեսցէ ինձ

զվկայ-

[redacted]



զվկայաբանութին սրտին Մարիամու ըստ վկայա-
բանութեն խաչելեալ փրկչին. այլ 'ի զուր. զի եթէ աւետարանիչքն չիշխեցին գրոց. ձայ-
նել, և ոչ հրեշտակ յերկնից կարօղ է զաւ-
պատմօղ լինել խոկուն մարտիրոսութեան :

Ասել լուաք, թէ կայր առ խաչին յսի մա-
րիամ մայր նր. յայս բան բովանդակեալ իմացուք զամ բան. և զի յանձնեցաւ 'ի յսէ մայրն իւր յովհաննու սիրելի աշակերտին 'ի նորօրինակ մայրութի 'ի ժամ խաչին անդադար կտակաւ, և առաւ մարիամու փոխան յսի յովհաննէս 'ի նորօրինակ որդիութի, առաւ զայլն ամ իմաստասիրեսցուք : Ահա մարտի-
րոսութի անարիւն՝ վիրաւորեալ մօր այնպի-
սոյ՝ 'ի պահու հեղման արեան այնպիսի որդ-
ւոյ. ահա վկայաբանութի անբարբառ՝ 'ի բարբառել միածնին առ ածածին, կին զա-
ահա որդի քո. և առ աշակերտն, ահա մայր քո : Որդին այ հնազանդ լինի հօր մահա-
չափ և մահու խաչի. և մայրն այ հնազանդ լինի որդւոյն՝ նովին չափու խաչակից և մա-
հակից գոլոյ : Նա 'ի խաչին տարածեալ մար-
մնով. և մարիամ առ խաչին կանգնեալ կայ մարմնով, խաչելեալ հոգւով, և բևեռեալ սրտիւ, և կենդանւոյն խոցոտեալ սիրով. զոհ ընդ զոհի, և ողջակէզ ընդ ողջակիզի. զի զի մի էր պատարագ որդւոյն և մօրն՝ 'ի խա-
չին և առ խաչին :

Ընդ ամ անցանէր տխրամայրն անդադար փորձս վկայական տանջանաց՝ չարչարակցու-
թը անպարտական միածնին. արձանացեալ

կայր

կայր 'ի լերին անդ գողգոթայ առաջի որդ-
ւոյն՝ անպարտելի արութ·բ ոգւոյ , վկայել
առաջին ճշմարտութն յանդիման տիեզերաց ,
թէ սա է յս նազովրեցի՝ թագաւոր հրէից ,
խոստացեալն մեսիա՝ փրկիչ ծի . և նա ծնօղ
նր , որպ գիտակ է ամ տունդ իէլի , որ վկայէ
ինձ յատելն միաբանն . ո՞չ մայր սորա կոչի մա-
րիամ : Սա՛ ածորդին իմ՝ կուսածին մարդա-
ցեալ ած իմ յս , և եկեալ 'ի փրկութն բոլո-
րից , և նա ինքն ածամայր մշտակոյս՝ վկայա-
կից և խաչակից միածնիս ,'ի լինել միանգա-
մայն մայր ցաւոց և մայր փրկութեան : Սա
ստեղծօղ և նորոգօղ ադամայ՝ նորն ադամ
հնոյն որդիացեալ . և նա մօրն եւայի դստե-
րըր անմաման՝ բարձօղ անիծից և երկանց նր՝
տոհմին երկամբք առ ծառոյն կենաց :

Ընդ անցանէր ըն անձն մարիամու սուրն ան-
մեկնեան . անդ մխէր գեղարդն որդւոյն ըն
սիրտ մօրն՝ սայրասուր բևեռօքն հանդերձ .
անդ 'ի հուր անծախելի ծախիւր ոգին մա-
րիամու . անդ 'ի ջուր ընկղմէր խորագոյն՝
մարիամ , ծով առաջնջական ուղխից դառնու-
թն ամ ցաւոց . անդ սով և ծարաւ անքերելի
զնա տագնապէր՝ ըն լսել զձայն ծարաւելոյ
միածնին , և ըն տեսանել զբարձումն ամ
մխիթարութն՝ յորժամ բարձաւ 'ի նմանէ
միակ մխիթարութն իւր յս անմխիթար մահ-
ուամբ :

Ո՛չ ի՞նչ էր առ նովաւ կերք աբրահամու 'ի
ժամ զենմանն որդւոյն . ոչ ի՞նչ՝ կսկիծ յակո-
բայ ըն լուր գազանաբեկ լինելոյ յովսեփու՝
'ի

[redacted]



՚ի տես արիւնաղանգ պատմուճանին. ոչի՛նչ աղոց ամոլսածնին, և ոչի՛նչ քարկոծումն մար-
գարէից ։ Մ՛չ էր յիշելի առ նովաւ անցք շա-
մուներայ՝ որ զհետ որդւոց եօթանեցունց և
ինքն նահատակէր մայրն երանելի առնանքս
քաջութ̄. զի ո՞ տայր և մարիամու խաչիլ
ը̄ աչմէ միածնին, և զոյգ ը̄ նմա աւանդել
զոգին. ուր կայր մնայր նմա կենդանւոյն
մահանալ ընդ մեռանիլ անմահին, որ ան-
թարգմանելին է մարդկեղէն մտաց ։ Մ՛եզ
զայս միայն է ասելի. եթէ դժուարին է
մայր լինել, քանի՞ ևս մայր գոլ ա̄յ ։
Մ̀յ իրաւամբք լաեն աւետարանիչք զցա-
ւոց մօրն ա̄յ ՚ի ժամ չարչարանաց որդւոյն.
նովին իրաւամբք լռեցին և զմխիթարուէն՝
որ ՚ի յարուէ միածնին յաւուր երրորդի. զի
երկաքանչիւրն է ՚ի վեր քան զբան ։ Ո՛րա
լիցի մեզ որոճել զդաւթեանն առած. ըստ
երեկոյս հանգիցեն լալիք, առաւօտուց և-
ղիցի ուրախուի. և թէ՝ ը̄ բազում ցաւոց
սրտի իմոյ մխիթարութի քո ուրախ առնէր
զանձն իմ. մխիթարութի և ուրախութի,
որոյ ո՛չ գոյ չափ և ո՛չ կշիռ. միայն նա գիտէ՝
որ մխիթարեաց, և միայն նա իմանայ՝ որ
ուրախացաւ ։ Ի՞պա և մեզ լռուք պատուե-
ցի ա̄մն, մինչև հասցուք յոտս տիրամօրն ՚ի
յերկինս. և անդ մասնակից լիցուք անճառ
և անպատում ուրախուէ նր՝ զոր փոխան
անասելի տրտմուէն ընկալաւ ։
Մ̀նայ յիշեցուցանել ՚ի ժամուս՝ բանիւ գոր-
ծոց առաքելոց, թէ ո՛րպէս զկնի քառասնօ

 բեայ

ըեայ համբարձման փրկչին՝ ժողովեալ առաքելոց՝ ի վերնատունն սիոնի, ուր բնակութիւն էր այնուհետև սրբոյ կուսին ընդ սիրոյ աշակերտին, միաբան յաղօթս կանխէին հանդերձ կանամբք և մարեմաւ մարբն յսի և եղբարբք նորա. յորմէ ուսնիմք իմանալ՝ թէ նորածնեալ եկեղեցւոյ ժողովարան էր բնակարանն մօրն յսի. որ և մայր եկեղեցւոյ՝ նորոյ ափոփչի. և թէ՝ յետ յսի մայրն յսի էր երևեցուցիչ միածնին, որպէս կերպարանօք մարմնոյ՝ նոյնպէս և կերպարանօք հոգւոյ; միակ մխիթարութիւն համօրէն դասուց աշակերտելոց. և աղօթք մարիամու էր՝ որ կանխէր զառաքումն հոգւոյն սրբոյ ըստ խոստման միածնին. զի լցեալքն հոգւով փութացուցանէր զհոգին՝ զեղուլ յառաքեալս զպարգևս իւր իբրև պտուղ արդեանց էակցին իւրոյ՝ բանին հօր:

Նաև կարի իսկ քաջ, զի հոգին սբ՝ որ էջ և հովանացաւ կուսին՝ ի հիմնարկութիւն խորհրդոյ փրկութեան մերոյ, անդ իջանէր կրկին՝ ի կատարումն նորին խորհրդեան, ուր կոյս ածածինն նստէր ընդ առաքեալս: Նաև ուր հրեղէն լեզուօք շնորհք բազմաձայն լեզուաց յաշակերտս առատանային՝ աշակերտել զամ տիեզերս, անդ աղբիւր ամ շնորհաց բղխեալ յորդէր յանձնէ մարիամու՝ լռուն քարոզ եղելոյ բանին այ քան զտիեզերալուր փողս. մինչ զի որ ինչ և շնորհք և զօրութիւնք և նշանք ցուցան առաքելովք, ամի այնորիկ սկզբնաւորի ընդ միածնին մայրն ծնա-

Նաշլի անձնարհնեալ։

Զայս վայր յիշատակ պատմականս առ 'ի դըր-
բոց սրբոց մեր տիրամօր կուսի չափով եւեթ
ցուցեալ լիցի, առ իմանալոյ փոքր 'ի շատէ
զընթացս կենաց նորա անարատ քաղաքա-
վարութե 'ի մարմնի 'ի վեր քան զանմարմինս.
ժամ է անցանել մեզ յաւանդութիւն կաթո-
ղիկէ եկեղեցւոյ մեր հրաշալի կատարածի և
փոխման նր: Որում օրինակ կամ է ինձ առ-
նուլ յաւետարանէ նախ քան զնմ՝ զմնջ-
նասաց խոստումն փրկչին առ սիրելի աշա-
կերտն. եթէ կամիմ, զի կացցէ դա՝ մինչև
ես գամ: Որդ՝ եթէ մեր յովհաննու սիրեցե-
լոյ 'ի նմնէ և որդիացելոյն տիրամօր՝ զայս-
պիսի լսելք բան գերահրաշ, զոր առ նա-
մա իսկ հնարեցան լսօղք լինել նշա-
նակ՝ եթէ աշակերտն այն ոչ մեռանիցի. և
այլք զկնի մեկնեցին յելից իրաց՝ յարժամ
ոչ գտին զմարմին յովհաննու 'ի գերեզմա-
նի, յոր եմուտ, եթէ յարոյց զնա տր և վե-
րափոխեաց յերկինս, քանզի՞ն առաւել ըղ-
մարխամայ զնոյն է ասելի, ոչ և ասէ իսկ
եկեղեցի մյ 'ի սկզբանէ անտի մինչև ցայ-
սօր: Որագոյն ինձ թուի օրինակս, յոր-
ժամ զմտաւ ածեմ՝ թէ բան տն զյովհան-
նէ, եթէ կամիմ, զի կացցէ դա, մինչև ես
գամ, առաւել 'ի պատճառս տիրամօր առա-
ցաւ՝ որում պահապան կարգեցաւ որդիա-
բար. ոչ թէ ասել, կամիմ՝ զի կացցէ յով-
հաննէս, որում յանձնեցի զիմ մայր, մինչև
ես գամ և առնում զիմ ծնօղ յերկինս. եղ-

բայր

բայց նո՛ր յակոբոս յո՛չ նահատակեսցի , բայց
յովհաննէս՝ որ հաւասար նմին ցանկայր բա-
ժակի մահու վն իմ, յերկարեսցէ 'ի կեանս՝
մինչև ես գամ 'ի փոխումն մօրն իմոյ և նր . և
յետ այնորիկ եկեսցէ 'ի քարոզութն , և 'ի խորին
ծերութեան արբցէ զբաժակն , և առցէ զպը-
սակն՝ որ պատրաստեալ է նմա նորօրինակ
փախձանաւ թաքուն 'ի մարդկանէ :

Օ այս ո՛չ յանձնէ ինչ ասեմ , այլ զի տեսա-
նեմ և զսն վկայս՝ որք յայտնագոյն ևս ա-
ւանդեն , թէ տրն մեր խոստացաւ մօր իւ-
րում և կուսի յաւուր համբարձման իւրոյ՝
գալ և իջանել առնուլ զնա ՚ի ժամանակին .
որ ոչն է երկբայելի : Օ ի ո՛չ միայն շարակ-
նոցն նուագէ բանիւ՛ կիրակոս վկայէ երգելն-
կացուոյ . * Ո՛ւռագայթ հօր ծոցածին՝ յոր-
„ ժամ ելեր առ հայր յերկին , խոստանայիր
„ բանիւ՛ քոյին՝ 'ի կատարումն ամենածնին ,
„ քեզ միայնոյ զօրօք քոյին՝ գալ 'ի փոխումն
„ միշտ կուսին ||, այլև սբն ներսէս շնոր-
հալի կանխաւ յեղանակեաց 'ի գանձն վե-
րափոխման . * Յերեքօրեայ յարուցեալ՝ համ
„ բարձար առ հայր 'ի յերկինս . խոստա-
„ ցար կուսին տիրուհւոյ՝ 'ի տեղ համայ-
„ նիցս՝ գալ վերստին , առնուլ առ քեզ
„ յանձառ բնակութիւն || : Ո՛ւս կանխա-
գոյն և ձոխագոյն քն առաջնոցն աւանդութն
այսպէս նկարագրէ զերան երանելին զաքա-
րիա կթողկս 'ի ճառն վերափոխման :

* Նորժամ եկաւորեալ լինէր քաւչապետին
քն 'ի լեառն ձիթենեաց , և համդերձեալ

էր համբառնալ 'ի փառս անճառս աստուածութեան իւրոյ, կացեալ առաջի փառաց Թագաւորին ամեներջանիկն 'ի կանայս՝ Թախանձեալ և մորմոքեալ սրտիւ ասէ ցփրկագործն բոլորից. Տէր իմ և Աստուած իմ, և արարիչ իմ և որդի իմ, զի՞նչ հրամայես վասն իմ՝ յորժամ համբառնաս 'ի հայրական փառսն քո. և հի՞մ բացալքեալ Թողուս զիս անայցելու և անտէրունչ շրջել յայսմ կենցաղի. քանզի 'ի մէջ հեթանոսաց ոչ գոյ ինձ հանգիստ, և զհրէից զապիրատութիւն և զկատաղեալ ապարասանութիւն Տէր դու քաջ գիտես, որ զապանեաց գիտակ ես՝ և յայտնեաց. արդ առ ո՞վ

յապահովեալ ապաւինիմ։

Ասէ ցնա փրկագործն բոլորից. Մա՛յր իմ և տաճար և առագաստ անճառ մարդեղութեան իմոյ, և խորան բանաւոր անհասանելի, մի՛ երթէ արհամարհելով անտես առնեմ ըզքեզ, և կամ թէ բացալքեալ թողում, այլ այժմ յանձն արարի զքեզ սիրելի և հաւատարիմ աշակերտիս իմոյ, առ ժամանակ մի թողում զքեզ յաշխարհս 'ի մէջ ընտրելոց իմոց աշակերտացդ. որպէս զի նկատեալ օր ըստ օրէ սփոփեալ մխիթարեսցին. և դու նկատեալ վերատեսցես զարուեստս նշանացն և սքանչելեացն՝ զոր յանուն իմ կատարի 'ի ձեռս նոցա. 'ի զարմանս և 'ի հիացումն բոլոր տիեզերաց։ Տեսանես և զանպարտելի զօրութի հոգւոյն սրբոյ՝ գալ իջանել 'ի վերայ ձեր.... Իսկ 'ի լըրման կետի կենաց քոց՝ ես կամաց իմոց սահմանեալ 'ի վերայ քո, ո՛չ հրեշտակ առաքեցից.

առ





առ քեզ, և ոչ հրեշտակապետ, և ոչ զմի ոք 'ի գերագունից զօրաց վերնական իշխանութեանց. այլ՝ ես եկեալ պատուովս զարդափայլեալ և հրաշալի փառօք, առեալ վերափոխեցից զքեզ 'ի հրաշափառ և 'ի անճառելի գեղապանծ դրախտն‖ ։

Սովին մտօք խօսին և հնագոյն հարք, յորժամ աւանդեն՝ թէ որպէս բանքն արդիւնք եղեն. իբր զի ը՟ս որում գրէ Նիկոդեմոս ոմն 'ի կարգի հին հարց, իբրև մերձեցան աւուրք ննջման և փոխման ամենամօր կուսի, հրեշտակապետն գաբրիէլ՝ որ զառաջին աւետիսն ետ նմա, աւետաբեր եղև և վերջնոյս այս, եթէ ահա 'ի մօտոյ գայ առ քեզ միածին քո՝ վերառնուլ զքեզ յերկինս ։ Նա- այս աւետում՟ն ասի լինել 'ի լերին ձիթենեաց՝ ուր ստէպ այց առնէր տիրամայրն իւրև 'ի տեղի յետին հրաժարման որդւոյն. և զի անուշամբ դրախտի՝ յերկինս էր հրաւէրն, ը՟ս նմին բրաբիոն անթառամ յերանաւոր դրախտէ անտի եբեր ասեն գաբրիէլ, 'ի նշանակ անթառամ կուսութե՟ն՝ և մշտամըցանակ յաղթութե՟ն միանգամայն ։ Որ զզալի օրինակաւ ասէ լինել մելիտոն եպ՟ս սարդիացւոց՝ կարծեցեալ ականատես յայտնանու աւետարանչի, և իբրև 'ի նմանէ առեալ աւանդութե՟ն, ոչ թէ զայն բրաբիոն տեսեալ իցէ և առաքելոց, և ինքնին յայտնանէս որդեգիր կուսին եդեալ իցէ զայն ընդ կուսին 'ի տապանի ն՟ր. զնոյն երկրորդեն և վկայաբանք ՟Է յայսմաւուրաց ։

տեղին զնա, և որք միանգամ կային անդ 'ի դասուց աշակերտելոց, լուցանել ջահս և լապտերս, և մաքուր և պայծառ զգեստուք պատրաստիլ յուղարկել զնա ։ Միանգամայն և փափաքեաց տեսանել զդասս առաքելոց՝ որք սփռեալ էին 'ի քարոզութիւն ը̄ն աշ̄խ̄մ, զի տացէ նմ̄ զվերջին ողջոյն իւր մայրենի ։ Նա՛ւ զի ոչ տկարանայ առ ա̄յ տ̄մ բան, և ոչ ունայնանայ տ̄մ խնդիր տիրածին կուսի, յանկարծակի 'ի քթթելական անդր ժողովեալ գտան տ̄մ առաքեալքն և աշակերտք՝ որ միանգամ տակաւին կենդանի էին ։ և յառաջիկայութեան նմ̄ եկն.էջ միածինն 'ի փոխումն մօր իւրոյ երևելի կամ իմանալի օրինակաւ ։ Յայս հայեցուցանեն սմանք զասացեալն 'ի պօղոսէ ։ Գաղ ։ Բ ։ 12 ։ * ապա յետ ամաց չորեքտասանից միւսանգամ ելի յեՐէմ ը̄ բառնաբայ, առեալ ը̄ իս և զտիտոս ։ և ելի ը̄ յայտնութեան ‖ ։ քանզի և ժամանակն կարի 'ի դէպ, զի̄ որում փոխումն ս̄բյ կուսին եղև իբր զկնի երեքտասան կամ չորեքտասան ամի համբարձման փրկչին, կամ որ նոյն է՝ նոյնչափ ամօք զկնի դարձին պօղոսի ։

Նախնագոյն պատմօղ այսր աւանդից սո՛ւրբ դիոնեսիոս Արիսպագացին՝ աշակերտ պօղոսի ։ և այն՝ ոչ միայն 'ի թուղթն առ տիմոթէոս, որ բազմաց է գիտելի, այլև առաւելապէս 'ի թուղթն առ տիտոս, որ որչափ անծանօթ է այլոց՝ զի̄ որում առաքելոյ ասվորականն դրոց դիոնեսիոսի, նոյնչափ և ավելի 'ի խնդրողաց բանասիրացն, հզին թարգ-

հատոյց ոմն խուճկս անոյշս , և աւանդեաց զամենաւաճ հոգին 'ի ձեռս ած ։ Այլ այնպէս պարագարդեալ առ 'ի հրեշտակական դաս տուց՝ վերացաւ որպէս փայլակն գերարփի 'ի փառս վերինն եդեմի ։

Ասուի յայնժամ ապա արտասուաթոր հաւ տաչանօք և ողբերգական ձայնիւ , մանաւանդ թէ յուսապատար խնդամտութեամբ՝ հրճուական հնչմամբ , նոյց առաքելոցն և բոլորիցն պատուտկեալ հաւատացելոցն՝ յարինեալ բարեպաշտաբար զմարմինն ածընկալ , ըստ օրինակի ննջեցելոյ՝ զկեցեալն 'ի վեր քան զօրէնսն հասարակաց , հոգեշնորհ երգով և ծաղկազարդ վեհպութբ . զնոյն տօնել ածաբանական արտաձառութբք՝ ըստ պատշաճն պիտոյից , և ձայնիւ սաղմոսաց , բարձեալ առաքելոցն 'ի վն ածարեալ բազկաց իւրեանց զմարմինն ամենաւաճ սուրբապէս՝ ոմն զմայր լուսոյն , և զգանձն պատճառ անապական կենացն ազգի մարդկան ։ Որ ըստ ակնարկութեն 'ի բարձունս հասարակաց փրկչէն սորիզուցեալք՝ վաղվաղակի հրացեալք ածամուխ հրոյն կայծակամբք , եգին 'ի տեղւոյն կոչեցեալ գեթսամանի . լռելով մինչև ցերիս աւուրս 'ի վն ամենաւաճ թաղմանն ( որ գերեզմանին ) զաստմասերգութիս հրաշալուրս հրեշտակապետական ձայնիցն . և այլ ոչ ես ։

Այլ 'ի հաւատարմութի այսոցիկ իրակերտութեց՝ գտաւ ոմն մի առ 'ինոցանէ իսկ յառաքելոցն սոց նուաղեալ 'ի թուոյ նոցա 'ի

ժա

[redacted]



ժամանակի զուգահաւասարմանն : Այսպ եկել
յետոյ բռնազբօսել զառաքեալսն առ 'ի ցու-
ցանել. ակն յայտնի զգանձն անկողոպտելի՝
զմարմինն ամենօրհնեալ կուսին . հարկաւո-
րեալք յայնժամ լինել զատարփումն եղբօրն ,
բացեալ զգերեզմանն՝ գտին ունայն և թա-
փուր 'ի սբ մարմնոյն . և զգացեալք անդուստ
'ի միտ առին , թէ յետ գաղափարելոյ հրեշտա-
կական օրհնութեցն՝ փոխադրեալ եղև մար-
մինն սբ 'ի ձեռն նոցին իսկ հրաշուն զօրացն
գերաշխարհականս 'ի տեղի մեծարգոյ և մե-
ծապատիւ փառաց . որ գիտէ ինքն միայն՝ որ
հրաշիցն է ած , ծածկեալ առ 'ի բոլոր երևե-
լի և 'ի զգայական ձէ ||:

Նոյն աւանդ է հաստատուն , զոր եկեղեցի
հայաստանեայց գրով ունի յաւուրց անտի
նոցա թարգմանչաց . զոր և յայնժամ սբն
մովսէս քերթողահայր նովին ոճով երկրոր-
դեաց 'ի շարականի առաջին պատկերի մե-
րափոխման . և զկնի շնորհալին ներսէս նոյն
օրինակ յեղանակեաց յերկրորդ և յերրորդ
աւուրն . ոչինչ ընդհատ և կերպակոս վրդպ յան-
ձինքն աստուածածնի , այն է Մրևելք զերարփին :
Նա 'ի մի նորին հիման կառուցանին և այլ
աւանդութիւնք , զորս այլուստ յառաջ բերէ
խորենացին 'ի պատմութե պատկերի աստուա-
ծնին՝ որ 'ի հոգւոց վանս , ազգիս սեպհական :
Նոյն աւանդ հաստատութե իջանէ և յայլ
ամ եկեղեցիս քրիստոնէից՝ գրոշմեալ 'ի գիրս
վրդպաց և հարց իւրաքանչիւր ազգի , պէս-
պէս նկարագրութե նոցին իրաց . թէպէտև

չու-

չունիցին այժմ՝ ի ձեռին զնախագրեալ Թուղթ Դիոնեսիոսի առ Տիտոս , որ մեք ունիմք ։ Նոյն ծանուցեալ է ամենեցուն միւս Թուղթ Դիոնեսիոսի առ Տիմոթէոս . որ կան այլ հանգամանք պատմութեան . զոր և գտանեմք ՚ի տօնապատճառս հայոց յառաջ բերեալ համաձայն յունականին այսպէս .

* Վկայէ մեծն Դիոնեսիոսէ, Թէ ես և սրբազանակատարն իմ Յեռոթէոս հանդերձ ածընկալ քհնյպետիւքն մերովք , և բազումք ՚ի սրբազանից եղբարցն մերոց ՚ի տեսութիւն գնացաք կենդանապետականի և ածընկալ մարմնոյ կուսին . անդ էր և ածեղբայրն Յակոբոս , և Պետրոս գլխաւորն , և երիցագոյն ածաբանիցն ծայրութին Յովհաննէս . ապա յետ տեսութեն ( հաճոյ ) Թուեցաւ օրհնաբանել քահանայապետիցն ըն̄ իւրեանց կարի զանբաւազօր ածպետականին կարողութե ( ՚ի զօրվեսա տիրամօր ) ։ Յետ ածաբանիցն հզօրագոյն ցուցաւ ածաբանութեն Յեռոթէոսի . զի բոլորովինմբ սարսելով , բոլորովինմբ զարմացմամբ յինքեան , և առ օրհնաբանութիւն զհաղորդութի կրելով . և յամենեցունց՝ որք անդ էին , որք գիտէին և որք ոչն գիտէին ( զյեռոթէոս ) , ածընկալ և ածային օրհնաբանող կոչիւր . ժամանակի կրթութբ̄ և մտաց մաքրութբ̄ և ցուցմանց ստուգութբ̄ քան զբազումս առաւելեալ էր ‖ ։

Զնոյնս երկրորդէ պարզաբանութբ̄ և բաղձանացելն ներբողեա ՚ի Ճառն վերափոխման .

որք

ոնք և այլք ՚ի վիճակաց այլոց ազգաց ։ Թուող-
զոր նիկոդեմոս յաւելու ՚ի բերանոյ պետրո-
սի և պօղոսի բանս ներբողականս ՚ի վ͞ր ոճոյ
կուսին ․ յոր հայր և հարցաբանութիւն պետ-
րոսի ց͞մր՝ ըստ շարականին և վկայաբանից ,
հիացմամբ ը͞ս տեսիլ արփիափայլ գեղոյ հոգ-
ւոյն ամենասուրբ սրբամօր ը͞ս ելանելոյն ՚ի մարմ-
նոյ ․ և պճնանի փրկչին առ նա , եթէ յայտա-
նի մաքրութեան հոգւոյ ստեղծի ես զմարդն ․
և յետոյ կրկին ես նորոգեցի յերկնաւորդ ա-
րարչութեամ ։

Ահա այս է պարզ՝ միանգամայն և մթին պատմութիւն ննջման , թաղման , և վերափոխման ս͞րբ ա͞ծածնի ը͞ստ դիոնեսիոսի և հետեւղաց և մեկնչաց բանին նր͞ ։ Այլ քանզի կան և ինչ ինչ առանձին աւանդութիւնք հարց և վճ͞պաց ՚ի հանգամանս նոյն պատմութեան , զգլխաւորսն ՚ի նոցանէ յառաջ բերցուք բանիւք հեղինակաց ․ զի մի աւելորդ ինչ մեկնութիւն այլուստ խառնեցի ։

Պատմութիւն պատկերի տիրամօրն ,
՚ի Սորբենայայն ։

Գրեալ էր սահակ արծրունեաց իշխան առ երանելին մովսէս խորենացի , թէ ընթեռցաք զգիրս պատմութեան քո՝ որ ՚ի խնդրոյ բագրատունեաց իշխանին , և ուսեալ զհնութին նախնեաց մերոց՝ յոյժ ուրախացաք շնորհակալութ͞բ ․ * Այլ կամիմք ( ասէ ) ուսանել ՚ի քէն զսքանչելագործուն պատկերին ,

որ

որ յանուն տիրամօրն կայ 'ի հոգւոց վանս ( յերկրիս արծրունեաց ) , եթէ ուստի՞ կամ յորմէ՞ բերաւ յայն տեղի , զի բազում ինչ այլք այլապէս պատմեն իրս ոչ նման միմմեանց , և ոչ հաւատացաք ումեք զստոյգն գիտել : Այլ իմ ընկալեալ 'ի ձեռաց սրբ մատանցդ գիր՝ առաւել յուսով ընկալայց , քան զգիրս բագրատունեաց՝ 'ի ձեռս իմ : Առայս՝ ընդարձակ պճնի գրեաց խորենացին .

յորում կարգի են և այս բանք :

* Ո խնդիր ամենասէր իշխանիդ՝ որ մծ պատուական պատկերի Տիրամօրն , անմահ քաջին ազգի թողում յիշատակ . զի և զուարճանամ՝ 'ի յիշատակի տիրամօրն , որ զարեգակնն արդարութե յերկիր ծագեաց , ճշմարիտ արևելք եղեն արեգականն արդարութե . զի 'ի նմանէ փրկութի , 'ի նմանէ կենդանութի , 'ի նմանէ և քն ըստ մարմնոյ . որ է ամ

օրհնեալ յաւիտեանս . ամէն . . . . . :

Այս ինքն սրբ կոյսն սքանչելի վարուք սրբութբ առաւելեալ քան զամ ոք . զի բանիւն սողոմոնի , բազում դստերք ստացան զմեծութի , բայց դու առաւել եղեր . ոչ աւետարանեցաւ 'ի նազարէթ 'ի գաբրիէլէ : Ամահամուռն ամ ամք կենաց նր վաթսուն ամ . 'ի տասն և հինգ ամին ծնաւ զփրկիչն քի . և լգ ամ մինչև 'ի խաչելութի փրկչին . իսկ յետ համբառնալոյն յերկինս փրկչին՝ ժե ամ . ( զի այլոց՝ ժդ . կամ ժէ ) . որ լինի 'ի սկզբանէ կենաց նորա մինչև 'ի հրաշալի փոխումն՝ կ . ամ ( զի այլոց՝ կգ ) . . . .

Յով-

Զյաւելեփ քառասունամեայ էր՝ մինչ կոյսն յանձնեցաւ նմա. և յերեսուն և մի ամի կենաւորանն հանգեաւ ՚ի նազարէթ ՚ի տան իւրում (հմ ամաց). և աղաւաւորէր ոփյ կուսին յակոբ արդարն ՚ի յովսեփայ յանձնեալ. զի և առ յովսեփաւ նա հօրայր ծառայանքն՝ հերզն և արդարն. մինչև ՚ի քնէ յովանենս յանձնեցաւ: Նա ոբք կոյսն բազում չարչարանս կրեաց և փորձանս ՚ի կայիափայ, և հալածանս ՚ի հրէիցն. զի ոչ տային նմա գնալ ՚ի գերեզմանն՝ կալ յաղօթս, կամ ՚ի գեթսեմանի յայտնապէս, կամ յայլ տեղիս տնօրինականս փրկչին. բայց միայն գաղտնի: Նա հալածեալ զեղբայր տն զյակոբ, երթեալ հօր հարին տանն՝ յորում կայր որբուհին. և շրջապատեալ հուրն զհրէայսն՝ կիզեաց արս եօթն, և զկայիափա և զաննա և զղեւ քահանայապետսն, ոչինչ վնասեալ տանն. և երկուցեալքն՝ այլ ոչ ևս իշխէին համարձակել ՚ի սբ տանն: Յաւուր միրոտութենն տէր խաւժամանում ամբոխ հրէից գնացեալ հրատակք ՚ի յորդանանն ըմբռնել զտիրամայրն և զյովհաննէս. խոկ հրեշտակ տն եդ զնոսա յայն կոյս գետոյն. և հրէայքն անցանել կամեցեալ՝ արս քան ՚ի նոցանէ կորոյս յորդանան: Նա յաւուր համբարձմանն տն, ՚ի լեառն ձիթենեաց յախուռն քարամբք հառեալ հրէայքն ՚ի վր սրբուհւոյն՝ տատակեցին յինքեանց արս ծ քարամբքն: Բայլ զի ղաղղում հալածանս գրելով զտիրամօրն՝ ճառս ձանձրացեալ յընթեռնուլ, այսուհետև

՚ի

՚ի խնդիր սիրոյ պատկերին դարձայց :
Հրաւիրեալ սրբուհին ՚ի փոխումն առ որդին իւր, յայտնեալ աւետարանչին զփայտն կեպարիս՝ յորմէ կենսաբեր խաչն, մեծաւ թախանձմամբ կերպաձեւէ զպատկեր տիրամօրն, առ ՚ի մնալ նշխար կենաց մերոց, առ անձուկ սրտին իւրոյ յոյժ բաղձացեալ աւետարանիչն : Քանզի յետ համբառնալոյ փրկչին մերոյ՝ նովաւ մխիթարէին աշակերտքն, զնորա կոյսն տեսանելով որպէս զորդին իւր : Նա եւ պետրոս եւ պօղոս բազում անգամ եկանէին յԵրուսաղէմ՝ տեսանել զսուրբ տեղիսն, եւ ՚ի տեսութեան իսկուհւոյն : Արդ ՚ի ժողովել աշակերտացն համագումար միաբանութեամբ՝ ՚ի յղարկել զԱստուածամայրն իւրեանց, ըստ բանին տեառն՝ եթէ ուր մարմին է, անդ եւ արծուիք ժողովեսցին. որք թէպէտեւ ՚ի ժամ խաչելութեան ցրուեցան, այլ ՚ի ժամ յարութեան ժողովեցան. քանզի ասաց նոյն, քակեցէք զտաճարս զայս, եւ ես յերիս աւուրս շինեցից զսա. զոր մարգարէն ասէ, շինէ զԵրուսաղէմ Տէր, եւ զցրուեալսն Իսրայէլի ժողովէ : Խորհեցեալ այնուհետեւ յովհաննու եւ այլ առաքելոյն՝ աղաչել զտիրամայրն իւրեանց, ունել զփայտեղէն անօթն ՚ի վերայ աստուածատիպ պատկերին իւրոյ, եւ օրհնել զնա, եւ խնդրել ՚ի նմանէ բարի առնել երկրի ՚ի փոխմանն իւրում. քանզի ախտ բորոտութեան մեծապէս ցասմամբ եռայր յերկրի. բայց յԵրուսաղէմ առաւել եւս :
Խորհեալ պօղոսի եւ յովհաննու հանդերձ միաբան գնդիւն աղաչել զտիրամայրն, ասէ

պօ-

ռակէս 'ի սրբ կուսէդ . զոր մեքն խաչեցաք անգիտութբ՝ հակառակ քոյ կարծելով . միայն դթասցիք 'ի մեզ : Այլ առեալ զձեռանէ նոր պետրոսի՝ եբեր մերձեցոյց 'ի հատուածս ձեռացն , և միացեալ յարեցան իբրև զառաջինն : Այլ լուսաւորեցան խաւարեալքն . և մկրտեցան հրէայք և հեթանոսք յոյժ յոյժ բազմութբ . և բորոտք՝ որ էին 'ի քաղաքին . գային առ առաքեալսն , և օծանէին իւղով , և տնագրէին սրբ պատկերաւն , և առժամայն բժշկէին յախտից . և ամ ախտաժետք դային 'ի համբաւն՝ 'ի նմին տիրուհոյն . և լինէին նոյն ժամայն ողջացեալք . մինչ զի համբաւն ընդ ամ հրէաստան ընթանայր՝ ծագման լուսոյն :

Սրբ բարթողոմէոս առաքեալ մի յերկոտասանիցն ոչ գոյր ընդ նմա 'ի զուգահաւաքման կուսին . վս զի կամք էին տն այսմ այսպէս լինել . զի ընդ թովմայի 'ի հնդիկս էր երթեալ :

Այլ եկեալ նա յետոյ յառաքեալսն՝ բռնազբօսեաց զնս՝ ցուցանել նմ զգանձն ածային զմարմինն ամենօրհնեալ կուսին : Այլ յօժարեալ նք լնուլ զփափագ տենչանաց եղբօրն իւրեանց , բացեալ այնուհետև զսբ գերեզմանն՝ գտին ունայն յածակիր մարմնոյն : Այլ հիացեալք իմացան , թէ 'ի դադարել օրհնութե հրեշտակացն և սաղմոսերգութեցն՝ զկնի երից աւուրց , 'ի նոցանէ փոխադրեցաւ մարմինն նր՝ 'ի ձեռն նոցին հրեղինաց դասուցն :

հիմնարկեալ որ առաքելոյն զհիմն տաճարի որբուհոյն եւրովք իսկ ձեռօքն, շինեալ եկեղեցի փոքրագոյն. եւ անուանեաց զնա նր Ածածին. եւ եդ 'ի նմա զպատկեր սրբուհոյն: Այլ տայ զնա սրբ կանանց, եւ զլուխ կացուցանէ անդ զքոյր յուսկանն, եւ զքոյրն որմզդատայ, եւ զմաքսովորի. եւ զայլ կանայսն ԺԲ ձեռամբ նց կացուցանէ, շինէ խրճիթս վանիցն. եւ տեսուչս հրամայէ լինել հաւատացելոցն. եւ քահանայ կացուցանէ անդ յիւրոց աշակերտացն. եւ անուանէ զտեղին հոգեաց վանս՝ յանուն տիրամօրն եւ նր կուսին. զի բազում աքանչելիս կատարեր Ած 'ի ձեռն սրբ կուսին յայնմ տեղւոջ: Այլ ինքն սրբ առաքեալն ելեալ աւետարանել 'ի հայս. եւ կատարեցաւ յուրբանոս քաղաքի՝ 'ի բարմ (կմ բարա) անուանեալ տեղւոյն յանուն առաքելոյն:

Իսկ քոյր յուսկանն մարիամ կոչեցեալ՝ անցանէր յայնկոյս գետոյն մեծի, շինէր իւր խրճիթ առ ստորոտով քարին փոքրագունի. եւ միայնացեալ կատարեցաւ: Այլ 'ի նմին տեղւոջ կացուցանէ տեսուչս տեղւոյն զքոյրն զաննա եւ զմարթա, եւ զքոյրն որմզդատայ եւ մաքսովորի: Իսկ աննա շինէր իւր խրճիթ յայնկոյս ձորոյն՝ որ դարբնաքարն կոչեն. միայնացեալ անդ կատարեցաւ, տուեալ զտեսչութիւն տեղւոյն մարթայի. եւ բազում նշանս եւ աքանչելիս կատարէր Ած 'ի ձեռն նր կանանցն:

Զոր եկեալ յետոյ սրբյն գրիգորի՝ վանս հաւ

Հաստատեաց զտեղին, շինեալ եկեղեցիս. բայց զտաճար սրբուհոյն ոչ քակեաց. զի ձեռագործ առաքելական էր, թողեալ զնա 'ի փառս և 'ի պատիւ ամենասր̃բ երրորդութեան. և կայ մինչև ցայսօր ժամանակի. յորում բժշկութիւնք բազումք լինին, և ուրախութիւնք ոչ սակաւք. և լուսաւորէ զախտացեալս ա̃մ, որ գան առ նա հաւատով և յուսով. ունելով (ո̃մ ուխտողքն) բարեխօս զծնող միածնի բանին առ ծնեալն 'ի նմանէ տ̃րն իւր և ա̃ծ բոլորից, ընծայուն պտուղս և ողորմութ̃ հոգւոյն ս̃բյ, փառաւորելով զամենասր̃բ զերրորդութիւն` այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ‖:

Հանգոյն այս աւանդից խորհրդացւոյն` որ գտանի 'ի ճառընտիրն մեր (Ա). երես. յՃԵ=յՃԶ. կայ նոյն պատմութ̃ի ա̃ն իմաստից քաղուածով 'ի տօնապատճառն հին. երես. 343. ե̃ա. միայն յաւելեալ 'ի յակօբայ սրբեցւոյն զնկարագրութի̃ հանդիսի իջման միածնին ա̃մ դասուք հրեշտակաց և արդարոց 'ի փախուստն կուսին 'ի վ̃ր բանից դիոնեսիոսի, որ 'ի թղթոյն առ տիտոս և առ տիմոթէոս. և թէ` զմարմին կուսին պատեաց ս̃բ կուսանն յովհաննէս. և 'ի վերջոյ յարելով զդոյս աւանդութի̃ ազգային. * Յայնժամ երգեաց թովմաս. Փառաւորեալ և օրհնեալ միշտ տ̃ր կոյս ա̃ծածին մարիամ մայր ք̃սի` մատո զաղաչանս մեր որդւոյ քո և ա̃յ մերոյ. զի կենդանի ես առաջի ա̃յ: Ասեն` թէ կերակէ էր յարութե̃ օրն. 'ի ճ̃շգրի աւետիս առեալ.

տայն ծաղկարան . 'ի սմա ամենայն հա-ւոյն բազմաձայն և բազմալեզու և հրա-կերպեան եկաւորութին զեղու յառաքեալս . 'ի սմա ածարանն զածածինն ընկալեալ՝ պաշտէր զպէտսն . սա մայր անդաստին է ամ տիեզերս եկեղեցեաց՝ մօրն այ բնակարան բնաւորեցաւ , յետ որդւոյն 'ի մեռելոց վեր-բերութե . արդ 'ի սմա երանելի կոյսն յեր-
ջանիկ մահիճ անկեալ դնէր || :

Ապա 'ի վր բերէ զհամահաւաքումն առա-քելոց յանկարծակի , երկրորդելով ըստ դիո-նեսիոսի և ըստ խորհնացւոյն զայն՝ թէ ուր մարմինն է , անդր ժողովեսցին արծուիք . անդ էին ասէ և դասք զուարթնոց և նմ սրց . ինձ այսպէս թուի ասէ , թէ՝ և ինքն թագաւորն փառաց անձամբ իջեալ՝ սբ և ածային ձեռօք առնոյր զմաքրական հոգի տիրամօրն . որ և՝ ոչ 'ի դէպ է ասել , ասէր . 'ի ձեռս քո որդեակ իմ զհոգի իմ յանձն առ-նեմ , այլովքն հանդերձ . ուր և նկարագրէ զօրհնաբանութին հրեշտակական , և զբառ-նալն առաքելոց զնր մարմինն կուսին և զառ-նելն 'ի թաղել : Ի մէջ բերէ և զաւանդու-թին՝ որ վն իշխելոյ հրէից յարձակիլ 'ի վր դագաղին , և զպատուհասին և զբժշկելն ափանիայ՝ առանց տալոյ զանունն նորա : Այլ յետ գրելոյ զթաղումն 'ի գեթսեմանի՝ ստո-րագրէ զվերափոխումն մարմնով յերկինս , տալով և պատճառս վն այսպէս վայելուչ
գոլոյն՝ իմաստնօրէն :

Այսօրինակ խօսին և այլք վն սիօնի է մե-

տա

[redacted]



տափրաստեալ . Թող զի յաւելու անդրէն կրեացի վէմ լերինն սիոնի , Թէ * զամենայն որ մարմնոյն ծնրադրութիւն անդանօր՝ իբր պայծառ ձայնիւ քարոզեն առաքեալք յատակին ‖ : Տօնապատճառ հայոց եւս յետ ասելոյ՝ Թէ որ կոյսն միշտ բնակեցաւ 'ի տեղւոջ ծննդեան իւրոց , ասէ՝ Թէ 'ի սիոն եղեն ննջումն կուսին . ուր և զաքարիա կաթողիկոս գրէ . * բնակէր երանելի որ կոյսն յեդեմ 'ի տեղի ծննդեան իւրոց . և սպասաւորէր նմա յովհաննէս , և քարոզէր զանձն կենաց 'ի Թլփատութեան ‖ : Արդ յայտ է՝ Թէ յովհաննէս ոչ յառաջին , այլ՝ յետ փոխմանն կուսին փոխեաց զբնակութիւն իւր 'ի վիճակ իւր եփեսոս . և զի անդ շինեցաւ եկեղեցի յանուն որ Աստուածածնի , զոր յիշէ ժողովն եփեսոսի պարծանօք , մերձակայ կարծեցին ոմանք՝ Թէ անդր եկեալ իցէ և ննջեն որ կոյսն :

Երկրորդ աւանդութիւն առանձին բերէ զդամասկացին 'ի նոյն ճառ Է . 'ի պատմութեան եւթիմիոսի , Թէ յաւուրս մարկիանոսի կայսեր շինեցաւ տաճար 'ի վլաքերնա կոստանդնուպօլսոյ յանուն սրբ Աստուածածնի . և 'ի խնդրել պողքերիա Թագուհւոյն 'ի յերուսաղայ պատրիարքէն եւիմի պարզմութե , զի մարմինն կուսին կամ նշխարք ինչ նո տացին ինքեան՝ գտել յեկեղեցւոջ անդ , յայտ արար յոբենաղ՝ Թէ Թէպէտ և գերեզման Աստուածածնի է 'ի միջի մեռուն 'ի գեթսեմանի , այլ մարմինն նո ոչ է անդ , այլ յերկինս : Երրորդ յերկրորդ գտել զդամասկացւոյն աստանօր զպատմութիւն

մե-

վերափոխման ըստ հին աւանդութեան հանդերձ բանիւք դիոնեսիոսի 'ի Թղթոյն որ առ տի-մոթէոս, իբրև 'ի բերանոյ յորձնաղայ, այ-սու ևեթ տարբերի 'ի խորենացւոյն՝ զի փո-խանակ բարթուղիմեայ զԹովմաս համարի յետոյ եկեալ, և 'ի խնդրոյ Թովմայի բա-ցեալ զտապան տիրամօր ։ Եւ ըստ այսմ խօսե-ցան նաև այլ յոյն և լատին գրիչք ․ բայց քանզի չիք հնագոյն և ստուգագոյն աւանդ 'ի սմին կարգի քան զխորենացւոյն, որ ամ հանգամանօք զիրսն հետազօտեաց, վն որոյ զայն ունիմք և մեք իբրև անտարակոյս ։

Սն դիոնեսիոս զմի յառաքելոց ասաց յետոյ եկեալ՝ առանց անուան ․ խորենացին զբար-թուղիմէոս հաստատեաց հաստատուն ա-ւանդութբ ազգին վն պատկերի տիրամօրն՝ որ 'ի հոգւոյ վանս ․ իսկ այլք զԹովմաս առ-դնեն՝ որպէս կարծեմ, հայեցեալ յայն՝ թէ Թովմաս պակասեալ գտաւ 'ի ժողովիլ առա-քելոց և 'ի վերնատունն յաւուր յարութե քրի ․ ապա թէ ոչ՝ թերևս շփոթեալ իցէ ոմանց զպատկեր կուսին՝ զոր եբեր բարթու-ղիմէոս 'ի հայս, ընդ միւս փայտեայ պատկե-րի՝ զոր ցուցանեն 'ի մառրաս հնդկաց իբրև յիշատակ կամ ձեռագործ սրբոյն Թովմայի ․ ապ և ոմանք զնոյն ասեն վն արձանի կուսին՝ որ 'ի լաւրետոն կայ 'ի տան նազարեթի յա-րեմուտս ։ Այլ և ոչ մի 'ի սոցանէ ընդդէմ ե-լանէ աւանդութեան ազգիս մերոյ ․ օգտէր 'ի նպաստ կարծեաց այլոց՝ տօնել մեր զԹով-մաս առաքեալ զկնի վերափոխման ․ բայց

լաւ

Ուր երկրպագութեն եպիփանու՝ առաւել զե զոր կամիմք հաստատել զվերափոխումն կուսին, ոչ թէ արժան էր նմա և առանց մեռանելոյ փոխադրիլ յերկինս. և յիրաւի, զի չէր պարտական մահու. ոչ և Նարեկացին ասէ, մարմին՝ յորմէ պատկառեաց ամօթով պարտիքն մահու. զի էր ազատ 'ի նախաստեղծիցն յանցուածոյ, անկցորդ 'ի մասնէ հողածնելոցս հասարակաց. վասն և ոչ պարտաւոր մահու կամ հողադարձութեան. այլ առ 'ի նմանօղ լինելոյ անպարտական միածնին՝ մեռաւ ճշմարտապէս, և 'ի ձեռն միածնին յարեաւ ԳՌ նմին երեքօրեայ. այս է վերափոխումն յերկինս յետ ննջմանն։

'Ի հաստատութիւն ասացելոցս գրէ և Անդրէաս Կրետացի՝ 'ի սկիզբն առաջին ճառի վերափոխման. * Խորհուրդ է տօնս առաջիկայ՝ ննջումն առձայնեալ Ա͞ծամօր, 'ի վեր քան զբան։ Խորհուրդ՝ որ երբեմն ոչ առ բազումս հռչակեալ, այժմ յամենեցունց վերապատուեալ և սիրելի... ոչ ոչ թէ նորոգ գտեալ, այլ 'ի նախնեացն իւր վերածեալ վայելչութեան։ Որ ոչ եթէ յայն սակս՝ զի ամանց նախ քան զմեզ եղելոց անծանօթացաւ, և այժմ լուեալ արժան իցէ, այլ զի ոչ իսպառ անհետացաւ, զայն սրբութեան օրէն է քարոզել։ Նոյն արդ՝ մի տօն է հասարակաց այսօր, երկնաւորաց և երկրաւորաց Ա. և որ 'ի կարգին։

Նոյ առանց ԺԵ բանս ինչ ածելոյ՝ ոչ 'ի մեզ ոմն Մովսէս Խորենացին 'ի հինգերորդ դա-

րու





և գովաւթիւք տիրամօր վայելչագայն հանդի-
սացան 'ի բանս վճ̃պաց զկնի եկեղոց , հան-
դերձ ստուգութ̃ պատմական աւանդութեան՝
որ վ̃ն վերափոխման նորա ․ և յայնմհետէ
տաւնել մեկն իմանամք զասելն սբ̃ ա̃ծածնի․
*յայսմհետէ երանեսցեն ինձ ա̃մ ազգք ‖ ։

Կարգաւն տօնէ Վերափոխման ։

Յազգի մերում տօն վերափոխման ճանաչի
առաքելական աւանդ՝ առեալ 'ի սբ̃յն բար-
թուղիմէոսէ , և հաստատեալ 'ի սբ̃ լուսա-
ւորչէն ․ զի և խորենացին՝ որ փոքր մի յետոյ
է , ենթադրէ՝ թէ գոյր յազգին տօնն այն
իբրև վաղեմի սովորութի̃ ․ և ասէ իսկ առ-
սահակ արծրունի՝ որ հրաւիրէր զնա , թէ
* այժմ ո՛չ ժամանեմ առ հզօր իշխանդ 'ի
,, տեսութի̃ , մինչև կատարեսցի տօն իսկուհ-
,, ւոյն ‖ ։ Այլ որպէս յայտ է՝ 'ի նոյն խոր-
հուրդ յօրինեաց զշարական վերափոխման
զառաջին ։
Սովին մտօք գրէ և զաքարիա կթողիկոս զառա-
քելոց՝ մօտ 'ի վախճան ճառի վերափոխման ․
* Այլ կարգեալ արձանացուցին զյիշատակս
,, նորա՝ յօգոստոս ամսոյ տասն և հինգն ‖ ․
և 'ի վերայ բերէ վերջաբանութի̃ այսպիսի ․
* Արդ՝ ամենօրհնեալ սբ̃ ա̃ծածին , ոսկի և
,, արծաթ և կնդրուկ և զմուռ ո՛չ գոյ իմ ,
,, զի ո̃ղ մոգուցն ընթացեալ քեզ 'ի քո հրա-
,, շափառ ծննդեանն ընծայաբերեցից , և
,, կի̃ գեղեցկատես և բարձր տաճար շինեի ․
,, այլ

են որ առ ժամանակօք ժողովոյն եփեսոսի սահմանեալ, և են՝ որ զկնի 'ի վեցերորդ դարու եդեալ. յորս ստոյգ կարծի այն, թէ 'ի սկզբանէ հետէ տօնէին յանուն փոխման կուսին կմ՚ննջման. այլ զստուգութի մարմնով վերափոխման ոչ ամենեքին գիտէին, մինչև 'ի վեցերորդ դար: Նու. զօրն իսկ տօնին ոչ միօրինակ ասեն պահեալ. զի թէ ըստոյգ իցէ ասել ընդ նիկեփորոսի կալլիստեան Գիրք. ԺԷ. Գլ. 28. յոյնք յաւուրն տօնէին ԺԵ ասորիս 'ի յունվարի 18. և ապա մօրիկ կայսր հայկազն 'ի վեցերորդ դարու՝ փոխեաց 'ի 15. օգոստոսի:

Իսկ առ լատինս թէպէտև չէ յայտ, թէ յաւուրն երբ և որպէս տօնէին, բայց այս ինչ իբրև ստոյգ աւանդի, թէ լևոն չորրորդ յամի տն 847. սահմանեաց զութօրէս տօնի վերափոխման. քանզի պատմի, թէ 'ի սկզբան քահանայապետութե նր՝ վասիլիսկոս վիշապ մի բուներ 'ի հուոմ մերձ յեկեղեցի սրբուհւոյն լուկիայ, մահաշունչ թունիւք վնասէր անցաւորաց. վնյ յաւուր տօնի վերափոխման (իմա 'ի 15. օգոստ) հրամայեաց հայրապետն թափոր կազմել, և տանել յառաջոյ զպատկեր տիրամօրն. և եկեալ ուխտիւն և կղերցւոյն և ամ բազմութբ 'ի տեղին՝ ուր որջացեալ էր վիշապն, եկաց յաղօթս և խոնդրեաց յնյ զազատութի քաղաքին 'ի մահաբեր գազանէն. և յայնմ օրէ հետէ անդնդասոյզ կորեաւ վիշապն: Արդ՝ 'ի յիշատակ այսր աքանչելեաց սահմանեաց ասեն հայր-

բարպետոն, զի ամ՛ յամէ ուխտօրէնք կատա_
րեսցի յիշատակ վերափոխման կուսին՝ հան_
դերձ հոգեմամբք և պաշտամամբք՝ 'ի տաճա_
րի անդ սբ̃ ածածնի, որ արտաքոյ պարսպին՝
մերձ 'ի վկայարան սբ̃ յն լուսաւորչին վր-
կայի ։

Արքեսցուք զձայն զեղեցիկ բովանդակութն
խորհրդոյ տօնիս 'ի մեծէն վարդանայ 'ի տե_
սութե անթառամ ծաղկին ։ ուր 'ի բանն
շարականին, * վերափոխեցար յարքայութն
որդւոյ քո և այդ մերոյ ||, ասէ ։ * Այսօր փո_
խեցաւ թագուհին հոգւով մայրն թագա_
ւորին 'ի թագաւորութն որդւոյն իւրոյ և այ մե_
րոյ ։ և մարմինն լուսանշոյլ և ածամուխ 'ի
գերեզման եդեալ 'ի գեթսեմանի՝ ջահիւք
և լապտերօք 'ի ձորն ջահից կոչեցելոյ ։ և
սիւն լուսոյ, և շող երկնային փայլփլեալ 'ի
բարձանց ակն յայտնի տեսողաց մինչև յերիս
աւուրս, խառնեալ էր լուսոյն լուսեղինացն
զօրաց՝ յերգս հոգևորս գովէին, գգուէին,
մեծարէին, օրհնէին, մեծացուցանէին ան_
ձառելի ձայնիւ զմարմին տիրակիր ածած_
նին, ածասնոյց, ածահամբոյր, ածաշօշափ,
ածամուխ և գերծին ։ Այլ յերրորդումն ա_
ւուր յարուցեալ էր միածնի որդւոյ իւրոյ երկ_
նաւոր լուսամն և դասուք հրեշտակաց վե_
րանայ յարքայութն որդւոյ իւրոյ, զանմա_
հականն առեալ թագաւորութն անապառ_
յաւիտենիւ, անցեալ էր զգալի և էր իմա_
նալեացն ։ յածականն հասեալ խորան, 'ի
սբ̃ն սբ̃ց կոչեցեալ, 'ի ներքին կողմն վարա_
գուր





դուրին, յանհատականն փառս և յանզուգական պատիւն ॥ ։

Ը. ամնդաւթեն յաղագս գօտւոյ եւ հանդերձից ԱԷ ամամնէ ։

Ըստ յայսմաւուրաց Հայոց և յունաց՝ յօգոստոսի ԼԱ, լինի յիշատակ Քրիստոսի պատուական գօտւոյ Ածածնի. որ պահեալ կայր ամեն հանդերձ հանդերձիւք նորին ԺԲ քաղում ժամանակս առ. ումեմն կուսի յեհմ. մինչև կայսրն արկադէոս որդի մեծին Թէոդոսի 'ի խնդիր ելեալ սբ գօտւոյն՝ եւ բերել զայն 'ի կոստանդինուպօլիս. որում ԺԲ առաջ ելեալ Թափօրապէս՝ ընկալաւ զայն պատուով: Եւ ապա եդեալ 'ի փառաւոր գզրոցի՝ ի 'ի փոքրիկ արկեղ, և կնքեալ արքունի մատանեաւ՝ հանդերձ յիշատակագրութե տարւոյ և աւուր գիւտին կմ փոխագրութենն, եւ պահել 'ի նորաշէն եկեղեցւոյն Ածածնի: Իսկ յետ իբր յիսուն ամաց. 'ի տանջիլ զոյի Թագուհւոյն լևոնի կայսեր յայսոյն չարէ՝ եբաց կայսրն զայն գզրոց. և առեալ պատրիարգին զՍբ գօտի տիրամօրն՝ մերձեցոյց 'ի զոյի. որով ազատեցաւ նա 'ի ցաւոց իւրոց: Այլ Թէ զինչ եղև յետ այնորիկ, չիք ինչ սաստ յիշատակութի:

Դարձեալ յերկրորդ աւուր յունիսի յիշի Սբ Հայոց՝ Քրիստոսի պատուական տփին, յորում եդեալ էր գլխագիր սբյ կուսին. կամ ըստ յունաց՝ Փոխագրութի պատուական զգես-

տու ամենայն կուսին , եւ օրինակիս եւ այս-մին ։ Յաւուրս նախասացեալ լեւոնի կայսեր ասեն , որ Թիֆլիսեաց յամի տն 457 , եղբարք երկու պատրիկք՝ գալբիոս եւ կանդիդոս , շնորհօք ամենօրհնեալ Աստուածածնի դարձեալք յարիոսի աղանդոյն յուղղափառութի , ող-ջունեցին զկայսրն եւ գնացին յեմէմ վեր ուխ-տի • ուր 'ի շրջիլ իւրեանց 'ի գալիլեա՝ տե-սանեն առ դուրս պառաւ կնոջ միոյ այրւոյ հրէի զբազմութ ախտաժետաց , եւ 'ի ներքս 'ի տան տապանակ մի , հանդերձ մոմեղինօք լուցելովք եւ բուրմամբ խնկոց • եւ հարցեալ զպատճառն , եւ բազում աղաչանօք բանա-դատեալ զկինն հրէայ պատմել նմ զիրսն , լուեան 'ի նմանէ , թէ 'ի տապանակի աստ է զգեստադիրն , ոյր ծածկոյթ զգեստոյն , կմ հան-դերձն մարեմայ մօրն յսի • յորմէ լինին սքանչելիքս յամ նեղելոց ։ Յայնժամ իջեւանս կալեալ 'ի տան անդ իշխանքն երկոքին • եւ յետ աւուրց հնարիւք եդեալ 'ի տեղւոջն զայլ տապանակ համաչափ եւ յար եւ նման ա-ռաջնոյն՝ բարձին զայն , եւ բերին 'ի կոստան-դնուպօլիս ։ Զոր մեծաւ հանդիսիւ ընկա-լեալ թագաւորին եւ պատրիարքին՝ տարան եւ եդին 'ի տաճար մի Աստուածածնին՝ որ 'ի տե-ղին վլաշեռնաս կոչեցեալ , կատարելով տօն ցնծութեն ընդ զգեստ պատուական գանձուն • ուր եւ մնաց ցայսօր յիշատակ տօնիս 'ի յուլիսի Բ ։ Բայց զանձն այն կմ ընդ բոլորին եւ կամ ընդ մասին անկաւ յետոյ 'ի ձեռս հռովմայեց-ւոց , թերեւս յառման կոստանդնուպօլսոյ 'ի

'ի լատինացւոց . Եւ անուն են այն մասունք զգեստու կնՐ գլխադրի կուսին , որք գտանին մանրամասն բաշխեալ 'ի զանազան տեղիս ։ Յորոց առեալ և զմասանց ինչ հերաց կուսին , որք եթէ առոյգ իցեն՝ գուցէ 'ի ձեռն աւետարանչին յովհաննու կամ մարիամու մագդաղենացւոյ հատեալ մասամբ յաւուր ննջման կուսին՝ պահեալ իցեն 'ի մխիթարութիւն հաւատացելոց . ապա թէ ոչ՝ մնացեալ ամբողջութի հերացն ոչ է 'ի վՐ երկրի , այլ յերկինս ը փառաւորեալ մարմնոյ վերափոխելոյ ։ Առա լիցին մեզ 'ի յիշատակ անմահութե այլ ամ գանձք շնորհաց և ողորմութե սրբ Ածամօրն՝ հանդերձ օրինակաւ գերահրաշ վարուց սրբութե նր , և զօրաւոր բարեխօսութե և հովանաւորութե 'ի վերայ ջերմեռանդն պաշտօնէից իւրոց ։

Ընդ որս լիցի և մեզ մասն և վիճակ ընդունել՝ արժանի լինելոյ տեսանել յերկինս ըզտիրամայրն մեր կոյսն Մարիամ Ածածին , և փառաւորել յաւէժաբար ը միածնի իւրում . որ է 'ի վերայ ամի ած օրհնեալ յաւիտեանս ը հօր և ամենասուրբ հոգւոյն ։

Տենչ փափագոյս ։

Սերաբաղձանց՝ կայս փառաւոր ,
յերկնից խորան՝ արժանաւոր .
Որ տապանակ՝ խորհրդաւոր ,
յորում հանգչի՝ Որն ահաւոր ։
Տաճարդ վերին՝ զարմանաւոր ,
խոնարհութեան՝ սկզբնաւոր ,
ով հրաշակերտ՝ հիմնեալ 'ի խոր ,
յո՞ր բարձրութի՞ւն հասեր , և ո՞ւր ։
Ո՛վ շնորհալից դեռ երկրաւոր ,
ո՞րքան իցես՝ արդ երկնաւոր .
ուր շուք փառացդ՝ ածամօր ,
պսակ 'ի գլուխդ՝ անկանաւոր ։
Սեր անպատում՝ մնաց ելայր ,
իջէ՞ յերկնից՝ Թագաւորն առ գայր .
այլ ոչ հրեշտակք , և ոչ արդարք ,
զինքն ճառել՝ զո՞րդ հնարաւոր ։
Պարածածկեալ՝ խորհուրդ 'ի խոր ,
յերեքսրբեանն՝ զոր մերձաւոր .
յանջմէ որդւոյդ՝ որ յանջմէ հօր ,
դշխոյ փառաց՝ մայր միաւոր ։
Արդ աղաչեմք՝ աղերսաւոր ,
տօնակատարք՝ միահամուռ .
լո՛ւր տիրամայր , աղաչեմք , լո՛ւր ,
պաղատանացս՝ մեր ը̄հանուր ։
Սէրք են հիւանդ , ողջութիւն տո՛ւր .
բազումք մեռեալ , կեանք կարևոր .
յոլովք աղքատ , ժտեն ըղձնորհ ,
եւ առաւել ես չքաւոր ։

Սն

Ա՛ն որ անյոյս՝ մտամոլոր,
կա՛մ հոգեւոր՝ կամ մարմնաւոր.
գիտես զմեր՝ կարիս բոլոր,
ողորմած մա՛յր՝ դու շնորհաւոր։
Ա՛ն որ կարծիս՝ փարուք մաքուր,
այլ դու յաւե՛լ՝ մաքրութիւն նոր.
զի մեք մեղէն՝ միշտ մեղաւոր,
արդարացուք՝ արդեամբք մեր մօր։
Որով հասեալք՝ երբեմն յանդորր,
յերկնից գաւառ՝ յանսերէկ օր.
տեսցուք ըզփառսդ՝ մեր տիրամօր,
հուպ ՚ի յանմերձ՝ էին աթոռ։
Փառս տացուք Հօր երկնաւոր,
ընդ Միածնիդ քո եւ իւր հօր.
հանդերձ Հոգւով սբ միաւոր,
յաւէժաբար՝ յերգ նորանոր։



[redacted]



# ՑԱՆԿ
## ՎԱՐՈՒՑ ՍՐԲՈՑ
### որ ՚ի Հատորն Գ.

Երես.



ժբ.



Հանգստարան արանց արդարոց. և՝ ի սմա
շող անեղէն՝ ի հօրէ լուսոյ ծագեալ։ Հոգ․



Էին հանապազորդեալք հանդերձ
մարեմաւ մարբն յ՟նի ։

